# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ

## ՊԱՏՐԻԱՐՔԻ ԱՍՈՐԻՈՑ

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

Michael, Jacobite Patriarch of Antioch

Zhamanakagrutiwn Tearn...

# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ

## ՊԱՏՐԻԱՐՔԻ ԱՍՈՐԻՈՑ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

---

Ի ՀԱՅԵՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ

Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ

ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ՀՐԱՄԱՆԱՒ

ՊԱՏՐԻԱՐՔԻ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

Տ. ԵՍԱՅԵԱՅ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ

Տ. ՄԿՐՏՉԻ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

---

ԵՐՈՒՍԱՂԷՄ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ

1870




# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

ԶՄԻԽԱՅԵԼԻ պատրիարքի Ասորւոց ըզպատմութեան գիրսն, զհամբաւեալն յազգիս, 'ի լոյս ընծայեցաք 'ի խնդրոյ ուսումնասէր ազգայնոց, բնագիր կալեալ մեզ զօրինակն բոլորագիր ընդօրինակեալ 'ի Թուին Հայոց ՋԻԹ (1480), 'ի խնդրոյ Ամիր-Տօքաթ բժշկի և 'ի վայելումն որդւոյ նորին Ամիր-Խոտիլին, 'ի Կոստանդնուպօլիս քաղաքի, ձեռամբ Ներսէս քահանայի Ամասիացւոյ։ Էին առ մեզ և այլ ինն օրինակք զանազանք, ընդ որոց համեմատեալ՝ զտարբերութիւնսն եդաք 'ի ներքոյ իւրաքանչիւր էջից։ Իսկ զոր կոչեցաք Հ՛ն օրինակ, տարբերի յոյժ 'ի միւ- ընկերից օրինակաց եթէ թարգմանութեամբն և եթէ կարգաւ և ընթացիւք պատմութեանցն, զոր թողաք այլով բարեպատեհ առթիւ 'ի լոյս ընծայել։

Զհետ պատմութեանս յարեցաք անմիջապէս և զճառն քահանայութեան Նորին Տեառն Միխայելի ասացեալ և զխոստովա-

նութիւնն հաւատոյ, և զբանսն որ վասն աստիճանաց եկեղեցւոյ. որում հետեւէ Պաւղանագիրք աթոռակալացն Անտիոքայ, Հռոմայ, Աղեքսանդրիոյ, Եփեսոսի՝ որոյ աթոռն փոխեցաւ յետոյ 'ի Կոստանդինուպօլիս, և Երուսաղէմի, սկիզբն առեալ յառաջին հիմնադրաց նոցին յԱռաքելոց։ Ապա առանձինն դնէ և զկարգ կաթողիկոսացն Հայոց, զՔրիստոս եդեալ հիմն եկեղեցւոյն և զսուրբ Առաքեալսն Թադէոս և Բարդողիմէոս, և իջանէ մինչեւ 'ի Ս. Ներսէս Շնորհալի ժամանակակիցն իւր։ Իսկ Վարդան վարդապետ, որպէս ասէ 'ի վերնագրին, որ և համարի թարգմանիչ գրոցս, շարունակէ զանունանս յաջորդաց Շնորհալւոյն մինչեւ 'ի տէր Կոստանդին Բարձրբերդցի, և աւարտէ զբան իւր խօսելով զթարգմանութենէ գրոցս լեալ 'ի թուին Հայոց ՈՂԷ, գործակցութեամբ Իշօխ քահանայի ասորւոյ. խօսի և զՀեթմոյ Բ. արքայէ Հայոց, և ապա համառօտ բանիւ ճառէ զյարձակմանէ Թաթարաց 'ի Հայս։



# ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԵԼԻ

## ՊԱՏՐԻԱՐՔԻ ԱՍՈՐԻՈՑ

## ՀԱՄԱՌՕՏ ԺԱՄԱՆԱԿԱՑ ԶՐՈՅՑՔ

## ՔԱՂՈՒԱԾՈՒ ԱՐԱՐԵԱԼ ՅՈՒԼՈՎԻՑ ՊԱՏՄԱԳՐԱՑ]

## Ի ՎԱՐԺՍ ԲԱՆԱՍԻՐԱՑ ՍՂԱՄԱՆԱԿ ՏԻՂԵԿՈՒԹԻՒՆ (1)

յԱդամայ ճետէ մինչեւ յետին աւուրս թեւացեալ։

## ԳԼՈՒԽ Ա.

*Յաղագս յԱդամայ հետէ. մինչեւ յԱմազունս.*

*Ես արդ լուարուք (2) ուսումնասէրք և Աստուածասէրք կարօտեալք գիտոյց և ժամանակաց. և հաւաքեալ վէպս բազում ժրաջան աշխատութեամբ, խնայեցի յիս և ՚ի լսելիսդ ձեր յաճախութենէ զրուցաց. առնելով (3) միայն զառաւել պիտանացուն յեկեղեցական մատենից և յարտաքնոց՝ ընդաստուցանել զմիտս բանաւորաց ՚ի մանհաւբեր ծուլութեանց (4), թողլով զոչ կարեւոր-*

(1) Երկու օրինակք. ան. աստուածասէրք։
տեղեկութեամբ։ (3) Հնագոյն օրի. համա.
(2) Այլ օրինակք ոչ ունին [ուսուեցի քաղելով։
Ես եղբարք ուսումնասէրք և (4) Հնա. օրի. ընդոստու.

սրն 'ի նոցանէ ։ Բանզի նոքա 'ի ծագման առաւօտուն, և 'ի հասարակեալ տունջեանն գոլով, և տեսանելով զբանաւորութիւն արանց ժամանակին՝ փարթամագոյնս գրեցին ։

Իսկ մեր վատաբախտութեամբ ․ դիպեալ յերեկոյացեալ ժամանակիս և հայելով բըդեալ հեղգութեամբ յօժարութիւնս մեր և բազմաց՝ կարճաբանութեամբ և թեթեւակի անցցուք ընդ իւրաքանչիւրան ․ փչելով հողմով հոգւոյն յանդիմանութեանն խաւար ․ (1) զի եկեսցեն ճառագայթք արեւուն արդարութեան 'ի սիրտս մեր ․ զի և մեր առեալ տայցուք զայս ճրագ Սիօնի մօր մերոյ որբոյ՝ լինել վարժարան մանկանց նորա, ակըն ունելով ողորմութեանն վերին ․ զոր տացէ մեզ աղօթիւք ձերովք պատուղ 'ի սատար վաստակոյս մերոյ ։

Այլ արժան է մեզ ծանօթս առնել ձեզ յանուանէ զպատմագիրսն յորոց հանդերձեալ եմք զնիւթ շինուածոյս մերոյ հաւաքել ։

Արդ 'ի յարմատոյ անուանի մարդկութեաննըս մինչեւ 'ի գալուստն Քրիստոսի գրեցին

ցանել զմահաբեր ծուլութիւնըս բազմաց ։

(1) Հին օրէ ․ 'ի բաց հանել զանգիտութեանն խաւար ․

Ափրիկանոս և Յեսով և Հեգսիպոս և Յովսեպոս հրեայք ։

Անանոս կրօնաւորն Աղէքսանդրացի գըրեաց յԱդամայ մինչև 'ի Կոստանդիանոս թագաւոր ։

Եւսեբի Պամփիլեայ 'ի սոցանէ և յայլոց պատմագրաց ժողովեալ արար գիրք մի, և անուանեաց եկեղեցականս ։

Զոսիմոս և Սոկրատ և Թէոդորոս (1) հերետիկոս 'ի Կոստանդիանոսէ մինչև 'ի Թէոդոս փոքրն գրեցին ։

Յովհաննէս Աղէքսանդրացի (2) և Զեպերու և Թէոդորէ գրակարդաց կոստանդինուպօլսեցին . և Զաքարիա եպիսկոպոս Մելետինայ գրեցին 'ի Թէոդոսէ մինչև Յուստինիանոս ծերն ։

Յովհաննէս Ասիացին գրեաց յԱնաստաս թագաւորէ մինչ 'ի Մօրիկ (3) թագաւոր ։

Կուրիա իմաստունն գրեաց Յուստինիանոսէ մինչև 'ի Հերակլ թագաւոր ։

Եւ զմտանելն Տաճկաց յԱսորիս 'ի ժամանակս Հերակլեայ ։ Սուրբն Յակովբ ուռհայեցին էանց համառօտ ընդ ասացեալդ ։

(1) Ոմանք ընդ հնագունեին Թէոդորիտոս ։

(2) Ոմանք Անտիոքացի . Աւրին . հնագոյնն ունէ Յովհաննէս Անտիոքայ և Ճեպելու ։

(3) Ոմանք Մաւրիկ ։

Դիոնեսիոս սարկաւագն (1) գրեաց ՚ի Մօրկայ մինչեւ ՚ի Թէոփիլոս Թագաւոր Յունաց . և զՄհարոն ամիրայն տաճկաց ։

Իգնատիոս եպիսկոպոսն Մելտինեայ . և Մլիւեայ երէց ՚ի նմին քաղաքէ . և Յովհաննէս ՚ի Բեսնոյ, և Դիոնեսիոս Աղէքսանդրացին (2) գրեցին յԱդամայ մինչեւ յիւրեանց ժամանակն կարճառօտ պատմութիւնս ։ (3)

Իւ մեք օգնականութեամբն Աստուծոյ զնոյն ջան առաջի եդեալ, հիւսեցուք ՚ի սոցանէ, և յոմանց արտաքնոց զոստայնս մեր ցանկալի ծաղկերանգ յօրինուածով ՚ի փառս Աստուծոյ ։

Բայց պարտ է հանճարեղ մտաց ոչ տըկարանալ յաղագս աւելի և պակաս բերելոյն զԹիւս ժամանակաց . քանզի յոլով զանազանութիւնս գտանեմք յեւթանասնիցն և յայլոց Թարգմանչացն գրութիւնս . և մանաւանդ զոր Աբգար արքայն է Թարգմանեալ (4) հրամանաւ Թադէոսի Առաքելոյն (5) ։

(1) Հին . օրի . պատրիարք . Գրոյն ՚ի սարկաւագութեան [illegible] [illegible] իջէ [illegible] . և [illegible] ՚ի [illegible] [illegible] . [illegible] ոչ [illegible] այլ [illegible] օրինակ ։

(2) Այս ըստ հնոյն [illegible] [illegible] Սաղիմայց [illegible] ։

(3) Հնագոյնն ունէ . սրա- րին կարճառօտ պատմագրու- Թիւնս ։

(4) Հնագոյնն և այլք ունին ետ Թարգմանել ։

(5) Հնագոյն օրի . չունի հրամանաւ Թադէոսի Առաքելոյն ։

Նա զոր ստուգեաց Յակոբ ուռհայեցի մի-աբեալ ընդ հրէութեանն յաղագս կարծե-լոյն թէ չեստուն զքաւանդակ (1) գրեանն իւրեանց ճշմարտութեանն հեթանոսաց սա-կրս նախանձու ։

Նա զի՞ զարմանս եթէ բան Տեառն ճշմարիտ է ակարանալ մարդկան 'ի գիտու-թիւն ժամուց և ժամանակաց, և գիտել մի-այն արարչին և տեառն ժամանակաց ։

Նա արդ սկիզբն դիցուք գրոցս մերում զսկիզբն մարդկութեանս զԱդամ․ և առաջին իսկ յայտ արասցուք զանմիաբանութիւն պատմողաց 'ի թիւս ժամանակաց կալով մեր հաստատուն 'ի հաւատս ։

Արդ ըստ եւթանասնիցն գրուճեան (2) Ադամ լեալ երկու հարիւր երեսուն ամաց ծնաւ զՍէթ․ և եկաց այլ եւս չորս հարիւր վաթսուն ամ․ և են ամենայն կեանք նորա ինն հարիւր երեսուն ամ; մինչեւ 'ի հարիւր երեսուն և եւթն (3) ամն Սադայէլի․ և մե-ռաւ վաթսուն ամաւ յառաջ քան զծնունդն Ենովքայ, և է յայժ սխալ միջոցն ։

Իսկ ըստ Եբրայեցւոց, որով Ասորիք վարին Ադամ լեալ երկու հարիւր երեսուն (4) ամաց․

(1) Այլք բովանդակ ։

(2) Հին օրի․ գիտութեան

(3) Ոմանք ՃԼԵ․ (135) ։

(4) Հին օրի․ ՃԼ․ (130)

ծնանի զՍէթ. և եկաց այլ ևս եւթն հարեւր[1] ամ. և է ստուգապէս ամենայն ժամանակք նորա ինն հարիւր երեսուն ամ։ Ենանոս առնու վկայութիւն յԵնովքայ գրոյն թէ Ադամ յետ ելանելոյն ՚ի դրախտէն՝ յետ եւթանասուն ամի գիտաց զԵւայ՝ և ծնաւ զԿայէն. և եւթն ամաւ յետոյ ծնաւ զԱբէլ. և յետ յիսուն և երեք[2] ամի ծննդեանն Աբելի սպան զնա Կայէն, և սգացին զնա ծնողք նորա հարիւր և վեց ամ. և ապա ծնաւ զՍէթ որդի մխիթարութեան։ Եւ Անդրիդիմոս պատրիացի ասէ. յետ երեսուն ամի ելիցն ՚ի դրախտէն՝ Ադամ ծնաւ զԿայէն, և զԿլիմայ[3] քոյր իւր. և երեսուն ամաւ զկնի ծնաւ ՚զԱբէլ, և զԱբելուհի[4] քոյր իւր. և յետ հարիւր երեսուն ամի ըսպանաւ Աբէլ. և երկու հարիւր երեսուն[5] ամաց լեալ Ադամ՝ ծնաւ զՍէթ. և այսու գիտասցես զաննմանութիւն[6] առիցն ըստ ժամանակաց։

Սէթ կեցեալ ամս երկու հարիւր և հինգ[7] ծնաւ զԵնովս. իսկ ըստ Ասորոցն հարիւր

(1) Հին օրին. Պ. (800)։
(2) Վեց օրին. ԺԳ. (13)։
(3) Հին օրին. զԿահէլ և զԿլիմիայ։ Վեց օրին. զԿահէլ և զԿլամիայ։
(4) Հին օրին. զԲէլուդա.
(5) Վեց օրին. ՃԼ. (130)։
(6) Վեց օրին. զանմիաբանութիւն
(7) Վեց օրին. ՄԷ. (207). Հնագոյնն. ՄԵ. (205)

և վախճանումն ամ. և ամենայն աւուրք ժամանակաց նորա ինն հարիւր եւթանասուն, ըստ Յունաց և Ասորւոց։ Ենովս լեալ ամաց հարիւր իննսուն՝ ծնաւ զԿայնան ըստ Ափրիկանոսի (1). իսկ ըստ Ասորւոց՝ հարիւր վաթսուն ամաց։

Այս Ենովս ՚ի բնութենէ օրինացն պատկառեալ սկսաւ գործս բարիս առնել. և ուսուցանել որդւոց իւրոց. և յուսով կոչեաց զանուն Տեառն Աստուծոյ յօգնութիւն բարւոք մտածութեանցն։ (2)

Ի սմանէ ուսեալ որդիքն նորա և եղբարք յիշեցին զկեանս դրախտին և հրաժարեցին յամուսնանալոյ անձինք երկու հարիւր. և ելին ՚ի լեառն Ահերմոն և կային ժուժկալութեամբ, պարապեալք երկնաւոր առաքինութեանց. և յաղագս այսորիկ անուանեցան Որդիք Աստուծոյ. և եղեն ժամանակք Ենովսայ ամք ինն հարիւր և հինգ (3), և վճարեցաւ։ Կայնան լեալ ամաց հարիւր երեսուն՝ ծնաւ զՄաղաղիէլ ըստ եւթանասնիցն. և ըստ Ասորոցն՝ եւթանասուն ամաց. և եղեն ամենայն աւուրք նորա ութն հա-

(1) Հին օրի. և Ենանոսի

(2) Վեց օրի. ՚ի բարւոք մտածութեանցն։

(3) Վեց օրի. Ջ.Է. (907)։ Հնն. Ջ.Բ. (902)։ ըստ Ափրիկիանոսի։

րիւր վաթսուն ամ ։ Մաղաղիէլ լեալ ամաց հարիւր վաթսուն և եւթն՝ ծնաւ զՅարեդ (1), և ըստ Ասորոցն, վաթսուն և եւթն ամաց. և ութն հարիւր երեսուն և եւթն (2) ամաց մեռաւ ։

Յարեդ լեալ հարիւր վաթսուն և երկու ամաց, ծնաւ զԵնովք ըստ եւթանասնից (3), և ըստ Ասորոյն (4) վաթսուն և երկու ամաց. և ամենայն ժամանակքն լինին հարիւր վաթսուն և երկու, մինչեւ 'ի վեց հարիւր ամն Նոյի ։

Եւ սորա. (Ենովքայ) քառասուն ամին լըցաւ հազար ամն. յելիցն Ադամայ ։

Յայսքան ժամանակս ոչ գոյր թագաւոր, զի Ադամ նախաստեղծն բաւականայէս խըրատէր զնոսա մինչեւ 'ի հարիւր երեսուն և եւթն ամն Մաղաղիէլի, և վճարեաց հարիւր ամաւ յառաջ քան զծնունդն Յարեդի. և Սէթ և որդիք նորա առեալ հրամանս 'ի Տեառնէ ոչ խառնէին յազգն Կայենի ։

Իսկ 'ի հազար ամին լցեալ կացուցին որդիքն Կայենի իւրեանց թագաւոր Սամիրոս (5) անուն ։

(1) Ոմանք՝ Արեդ.

(2) Վեց օրի. ՊՂԵ (895) ։

(3) Հին օրի. Եւս Ասորոցն ։

(4) Հին օրի. Սամարացւոցն ։

(5) Հին օրի. կացուցին

Եւ յայսմ ժամանակի որդիքն Սեթայ. որ կային յԱհերմոն լերան ձանձրացեալք իջին 'ի լեռնէ անտի և 'ի կրօնաւորական (1) վարուցն որպէս պատմէ Ենանոս 'ի գրոց անտի Ենովքայ. Եւ բարկացեալ եղբարց իւրեանց 'ի վերայ նոցա՝ հալածեցին և ոչ ետուն նոցա կանայս. և նոքա գնացին խառնեցան յազգն Կայենի, և առին իւրեանց կանայս յամենայնէ զորս ընտրեցին. և աստի սկսաւ յաճախութիւն չարեաց 'ի վերայ երկրի, պոռնկութիւն և զրկողութիւն (2), և յայսմանէ պատերազմունք և սպանութիւնք։

Ի նմին ժամանակի որդիքն Սեթայ որ կային յերրորդ կլիմի որ է բաժին երկրի, կացուցին և նոքա իւրեանց թագաւոր (3) Սազորոս անուն. որ սա եգիտ նախ զԹիւս կենդանակերպից և մոլորակաց (4), և դշխմունս (5) նոցա, և 'ի սմանէ անուանեցաւ քաղդէութիւն՝ և աշխարհն այն երկիր Քաղդէացւոց. սա թագաւորեաց ամս իննսուն

Թագաւոր՝ որում անուն էր Սամարիտոս Երկու օրի. Թագաւոր՝ Սամիրոս անուն։ Այլ երեք օրի. կացուցին Թագաւորս Ամիրոս անուն։

(1) Հին օրի. և այլ երեք. 'ի հրեշտակական վարուցն։

(2) Երեք օրի. զրկութիւն

(3) Հինն յաւելու 'ի քաղդեացւոց երկրին։

(4) Հինն և այլ երեք օրի. մոլորականաց։

(5) Երեք օրի. զշարժմունս։

և ութն, և աւուրս երկու հարիւր երեսուն։ Իսկ զկնի նորա որդին Իղփարոս ամս քսան և ինն և աւուրս երկու հարիւր տասնեւհինգ։ Իսկ զհետ նորա Ալմիոն քաղդէացի [1] ա-մըս իննսուն և եւթն, [2] և աւուրս ութ-սուն։ [3]

Իսկ զկնի նորա Ամանոն քաղդէացի ամս երկու հարիւր տասնեւութն, և աւուրս հարիւր տասնեւութն [4]։ Իսկ զկնի նորա Ամակորոս [5] քաղդէացի ամս հարիւր իննը-սուն և եւթն. և աւուրս հարիւր իննսուն և հինգ։ Իսկ յետ նորա Դինոս հովիւ քաղ-դէացի ամս իննսուն և ութն, և աւուրս ութսուն [6]։ Յետ սորա Իւաուրինքոս [7] ամս հարիւր եւթանասուն և հինգ [8] և ա-ւուրս երկու հարիւր երեսուն [9]։ Իսկ ա-պա Ամփիլոս յԱնարքոն քաղաքէ ամս հա-րիւր իննսուն և եւթն [10], և աւուրս երկու

(1) Հինն յաւելու 'ի փու-գիտինն քաղաքէ։

(2) Հինն ՃԻԸ. (128)։

(3) Հինգ օրի. ՄԽ. (240)։

(4) Հին օրի. ՃԼ. (150)։

(5) Հին օրի. Ամակարոս։

(6) Հին օրի. ՃԼ. (150)։

(7) Ոմանք օրի. Եւաուր-քինոս. և մի օրի. Տուրինոս։

(8) Վեց օրինակ. ՃՀԷ. (177)։

(9) Հինն օրի. ՃՂԵ. (195)։ այլ ՃՂԷ. (197)։

(10) Հին օրինակք ՃՂԵ. (195)։

հարիւր երեսուն։ Եւ զկնի սորա Աւտիարտիոս (1) յԱնարքոն քաղաքէ ամս եւթանասուն և ութն, և աւուրս երեք հարիւր և երեսուն. Եւ յետ սորա Պոխուսթրոս (2) որդի նորա թագաւորեաց հարիւր եւթանասուն և հինգ ամ. և աւուրս հարիւր յիսուն և հինգ. ժողովին ամք թագաւորացս հազար հարիւր ութսուն.(*) և աւուրք երկու հարիւր ութն։ Ըստ զամս թագաւորացս և զաւանց թագաւորութեան ժամանակին հազար յիսուն և երկու (3). ամք լինին երկու հազար երկու հարիւր քառասուն և երկու։ Զայսու ժամանակաւ էջ ջրհեղեղն մեծ։

Այլ մեք դարձցուք անդրէն յոճ կարգին։ Ենովք լեալ հարիւր վաթսուն և հինգ ամաց(4)՝ ծնաւ զՄաթուսաղա, և զամս եր-

(1) Հին օրի․ Աւտիարտոս։ մի օրի․ Աւսարխոսոս։ մի օրի․ Աւտարտիոս։ այլք Աւտարքիոս։

(2) Հին օրի․ Քոխոսթրոս։

(*) Ասա հազար հարիւր ութսուն թիւն ախալ թուի մեզ․ զի ոչ պատասխանէ գումարի ամաց իշխանութեան նշանակեալ թագաւորացն։

(3) Հին օրի․ և այլք ՌԿԲ․ (1062)։ և այս իսկ անհամաձայն է ասացելոցն ՚ի վերոյ։ զի ասաց եթէ ՚ի 40 ամի Յարեդի լնուն հազար ամք․ և եթէ Յարեդ ծնաւ ՚ի 165 ամին Մաղաղիելի․ եւ եթէ Ադամ ննջեաց 930 ամաց՝ ՚ի հարիւր երեսուն և եւթն ամի Մաղաղիելի։

(4) Հին օրի․ յաւելու ըստ եւթանասնիցն և ըստ Ասորւոցն ԿԵ․ (65) ամաց։

կու հարիւր հաճոյ եղեւ Աստուծոյ. և տ-
ուաւ սմա շնորհք մարգարէութեան ապա-
գայից. և սա արար նշանագիրս կարճատու-
նըս (1) և բազմատարս, և այնու եթող զկեա-
նըս վարուց առաջնոցն և զմարգարէութիւն
իւր, և փոխեալ կենդանւոյն յաստեացս ոչ
ուրեք գտանիւր. և գիտէ զտեղի փոխմանն
փոխադրողն Աստուած. Բայց ասեն ոմանք
՚ի դրախտին և այլք իմանան (2) թէ դրախ-
տըն աւազակին բացաւ. Այլ յայտ է թէ ՚ի
վերոյ դրախտին յօդն ըստ կարելոյն Աս-
տուծոյ զամենայն ինչ. և յորժամ բացաւ
խաչիւն, էջ ՚ի դրախտն. թէ հաճոյ է քեզ
ընկալ անմիտս է:

Մաթուսաղա լեալ ամաց հարիւր ութ-
սուն և եօթն՝ ծնաւ զՂամեք ըստ եւթա-
նասնից. իսկ Եբանոս հարիւր վաթսուն և
հինգ ամէ: Եւ Սամարացիքն ութսուն և
երկու ասեն. և լինին ժամանակք նորա ինն
հարիւր վաթսուն երկու ամք, մինչեւ յին-
նսուն և եւթն ամն Սեմայ. այլք ասեն ինն
հարիւր վաթսուն և ինն ամք. և Աղէքսանդ-
րոս ասէ թէ յետ որդեծնութեան եկաց եւթն

(1) Ոմանք կարճառօտութիւն: գիմանան. զոր թւէ հնա-
(2) Երեք օրի. ընդիմա- գոյն:
ւան. և երկու օրինակք ընդ.

հարիւր ութսուն և եւթն ամ. և առ Ջըրոյն մեծի մեռաւ :

Ղամէք լեալ հարիւր ութսուն և եւթն ամաց՝ ծնաւ զՆոյ. (1) և ըստ Ասորոցն հարիւր ութսուն երկու՝ ըստ Սամարացւոցն յիսուն երեք. և եղեն ամենայն աւուրք եօթն հարիւր եւթանասուն և երեք ամք. մինչեւ ՚ի վաթսուն և հինն ամի Սեմայ, եւ մեռաւ նախ քան զհայր իւր քսան և հինն ամօք. այլք քառասուն և հինն ամաւ ասեն : Ի հազար վեց հարիւր վաթսուն և վեց ամի ելից Ադամայ ՚ի դրախտէն ծնաւ Նոյ արդար, որ և հասեալ ՚ի չափս հանճոյ եղեւ ՚ի վարս արանց ժամանակին. ոչ ամուսնացաւ զամս հինգ հարիւր առանձնացեալ բնակութեամբ. ՚ի սորա յիսուն և ութն (2) ամին լցան երկու դարքն : Պատմէ Անանոս եթէ հսկայք մեծամեծք և անճոռնիք էին յաւուրսն յայնոսիկ, և թողեալք էին (3) ՚ի ձեռաց Աստուծոյ. և յաճախեաց անիրաւ-

(1) Հին օրի. յաւելու ըստ եւթանասնիցն.

(2) Հինն և այլ վեց օրի. ունին զթիւս ՅԾԸ. (358) բաց ՚ի յերկուց որոց մին եւս հնագոյն. որում եւս հետեւիմք ՚ի տպագրութեան. սակայն երեւի թէ ընդօրինակողն զՅ կարծելով նախադիր աւելորդ՝ ՚ի բաց հանեալ իցէ ՚ի թուահամարութենէ. և այս կրկին օրինակք ՚ի նմանէ կամ յայնպիսեաց իցեն ընդօրինակեալք.

(3) Հինն և այլ վեցք՝ եղեն :

ւութիւն. և անդ էր տեսանել սպառերազմօք զաշխարհս լցեալ. և դիզեալք լինէին դիակունք կոտորելոցն կոյտս կոյտս 'ի կատարս լերանց, և ցրուեալք ընդ երեսս դաշտաց զի վերացաւ 'ի նոցանէ հոգի տեառն զօրութեանց :

Իսկ արքասէրն Նոյ հրամանաւ Տեառն առեալ կին Նեմզարայ (1) անուն՝ ծնաւ երիս որդիս, զՍէմ, զՔամ, և զՅաբեթ. և շինեաց զարկղն (2) մեծ եռայարկ 'ի բնակութիւն սերմանեաց երկրորդի աճման 'ի խնամոց Արարչին :

Ի լնուլ հինգ հարիւր երրորդի կենաց Նոյի եղեւ ջրհեղեղ մեծ սկսեալ յերրորդում ամսեանն ի ար. (3) քսան և եւթն օր ամսեանն. և տեւեաց ջուրն ամ մի ողջոյն. մինչեւ 'ի նոյն ամիսն և 'ի նոյն քանիսն. և ել Նոյ 'ի տապանէն որդւովքն և կենդանեօքն(4) որք ընդ նմա մտեալ էին : Ու պատուեաց զԱստուած պատարագօք և էառ զօրհնութիւն առաջին մարդոյն. և պատուիրան չհեղուլ արիւն (5) բանականի և չուտել

(1) Մի օրի. Նեմզարայ :
(2) Երեք օրի. զՑարկն
(3) Երեք օրի. ի արի :
(4) Այլօրինակ. կենդա- կանեօքն :

Նոքա որ էրէսի սիրոյ ընդօրինակու-
թեան լինել :
(5) Այլք՝ զարիւն բանա-

տորիւն տնքանի, (1) և ետ նմա նշան ուխտի ոչ հարկանել զամենայն մարմին կենդանի վասն մեղաց. այլ ըստ մասին խրատել զպար- տաւորն: (2)

Բայց զարմանամ զի Յովսեպոս ասէ, ըզ- տապանն 'ի Կորդուացւոց աշխարհն յԵւփի- մէս. (3) լեառն որ է ստուգապէս 'ի մեծն Հայք 'ի լեառն Մասիք (4) ըստ բնագրոյն ոյութեան: Եւ եկաց Նոյ յետ ջրոյն ամս երեք հարիւր յիսուն. և ծնաւ որդի մի Մանիտոն անուն. և բաժանեաց նոցա զեր- կիր:

Սեմայ ետ զԳարուից աշխարհն. և զԱ- սորոց. և զՊաղեստինէ մինչեւ յՌինոկո- ռուրս (5) որ է Նեղոս, և զՌեկոսուրիայ: Եւ Քամայ ետ յՌինոկոռուրս մինչեւ 'ի Գա- դիրոն: Իսկ Յաբեթի ետ 'ի Մադիէ մին- չեւ 'ի Գադիրոն հիւսիսոյ:

Եւ արդ ունի ազգն Յաբեթի յԱհկնէն (6) Տիգրիս գետոյ որ բաժանէ ընդ Մադէ և ընդ Պարսս: Եւ ազգն Սեմայ ունի յարեւե-

(1) Այլ վեց օրի. բանա- կանի:

(2) Երեք օրի. զպարտաւո- ւորն ամենայն:

(3) Երեք օրի. յԵւփեմիէս

(4) Երեք օրի: Մասիս. Հին օր Արարադայ՝ որ է Մա- սիս:

(5) Երեք օրի. և հինն. յՌինոկոռուրսայ:

(6) Այլ օրինակք. յԱհկա- նէն:

լից և յարևմտից Եւփրատ գետոյ և Դկլաթու: Եւ ազգն Քամայ ունի զԳեհոն գետ որ բաժանէ զսահմանս նոցա:

Եւ որդիք Յաբեթի են Հայք, և Մակեդոնացիք, և Մադացիք, Յոյնք, և Լատինացիք,(1) և Աղուանք,(2) և Վրացիք:

Եւ որդիք Քամայ են Եգիպտացիք, և Հնդիկք, Հեթացիք, Յեբուսացիք, Հաբաշիք, որք են Քուշացիք, Ամուրացիք, Գերգեսացիք, Արուաթացիք, և այլք:

Եւ որդիք Սեմայ են Աթուրացիք, Քաղդեացիք, որք են Ասորիք, Եբրայեցիք. Փրուանգք,(3) Պարսիկք, և այլք:

Եւ ունին Սեմացիք՝ յարևելից մինչև յարևմուտս ընդ մէջ երկրի:

Յաբեթացիք ունին զհիւսիս յարևելից մինչև յարևմուտս: Եւ որդիքն Քամայ ունին զհարաւ: Եւ Մանիտոն (4) էառ յայնկոյս ծովուն զվիճակ իւր: Նա խնդրեաց 'ի հօրէ իւրմէ յոսկերացն Ադամայ, զոր ունէին 'ի տապանին. և ետ նմա զկառունս ծրնգացն. և արձակեաց զնա յարևմուտս այս: Նա անեցոյց զաստեղագիտութիւն, և ե-

(1) Մերս օրս Դ[illegible]ացիք:

(2) Հինն և այլ հինգ. Ալանք:

(3) Ոմանք վերջին օրինակք Փռանկք:

(4) Հին օրս Մանտինոս.

գիտ զհաւահմայութիւն եւ զխորութիւն երեւման. և ոմանք 'ի սմանէ ասեն զՄադիանացիսն: Ասեն և այլ դուստր մի Նոյի Աստղ անուն. որ էառ 'ի հօրէ զմասն ինչ հարաւոյ 'ի ժառանգութիւն:

Եւ զգուշացաւ Նոյ. և կացոյց 'ի վերայ երդումն. և ետ նզովս. զի մի զրկեսցեն զմիմեանս. այլ կալցին արդարութեամբ զիւրաքանչիւր վիճակս երկիւղիւն Աստուծոյ զի մի սատակեսցին: Եւ եկաց Նոյ մինչեւ յերեք հարիւր ութսներորդ ամն Եբերայ. և մեռաւ: Սեմ լեալ ամաց հարիւր երեսուն՝ ծնաւ զԱրփաքսաթ ըստ եւթանասնիցն: Իսկ ասորոցն հարիւր երկու (1) ամաց: Սեմ ժառանգեաց զօսկերս նախաստեղծիցն և ամփոփեաց 'ի վիճակի կալուածոց իւրոց (2) զի մշտացուցանէին զնա Քամ և որդիքն իւր: Արփաքսադ լեալ ամաց հարիւր յիսուն և եւթն (3)՝ ծնաւ զկայնան՝ սա բազմացոյց զՔաղդէացւոյն մոլորութիւնն, և զկախարդելն (4) եգիտ. և եցոյց բախտ և ճակատագրութիւն ըստ աստեղացդ ընթացից, և շրջագայութիւն մոլորակացդ: Եւ որդիք

(1) Հին օրի. (ՃԸ) 108:

(2) Երկու օրի. կալուածոց իւրոց:

(3) Հինն և այլ երեք օրի. ՃԼԵ. (135):

(4) Հինն և միւս այլ օրի

նորա իբրեւ Աստուածս (1) համարեցան ըզ-
նա, և երկրպագանէին նմա, և կանգնե-
ցին նմա պատկեր 'ի կենդանութեանն իւ-
րում։ Եւ այս եղեւ սկիզբն պատկերապաշ-
տութեան մեծի չարեացն։ Սա շինեաց քա-
ղաք և անուանեաց Խառան յանուն որդւոյ
իւրոյ Խառանայ, զոր Ղուկաս աւետարա-
նիչն յիշէ (2), զի եկեալ էր բարձողն կռա-
պաշտութեան՝ և Մովսէս արածապատումն
ոչ յիշէ վասն ասացելոյ պատճառին։ Կայ-
նան լեալ ամաց հարիւր երեսուն և ինն (3)
ծնաւ զՍաղայ։ Եւ Սաղայ լեալ ամաց հա-
րիւր երեսուն՝ ծնաւ զԵբեր և զԵկտան (4)
ըստ Անանիայ պատմողի. և ըստ Ասորոց՝ ե-
րեսուն և չորս ամաց։ Եբեր լեալ ամաց
հարիւր երեսուն և չորս՝ ծնաւ զՓաղեկ. յա-
ւուրս սորա բազմացան ազգ մարդկան, և
սկսան զմիմեամբք ելանել և զրկել զմիմեանս.
և ժողովեալք 'ի միասին հին արանց՝ դար-
ձեալ բաժանեցին զերկիր, և ստուգաքանե-

կախարդութիւն։
(1) Մի օրի. չաստուածս։
(2) Ղուկ. Գ. գլ. 36։
(3) Երկու օրի. ՃԼ. (130)։
վաղուէ այս ընդօրինակութեան։
զի Լուինէն զՍաղա. զծնունդն
Կայնանայ և զծնունդն Սաղայի

ոչ 'ի հարիւր երեսուն ամի հասա-
կին իւրում, այլ Կայնանայ. սա-
ալ մանկաբերել Իզէ օրինակ այսպ ծը-
նանել իջէ զմի պազն։
(4) Հին օրինակն ըստ որմն 'ի
ըստ ծննդոց Եբերայ. առել բառնն Ս-
բեր ՃԼԳ. ամի ծնաւ ըզ-

յաւ փաղէկ անունն, զի բաժանումն ըսի. և լեալ փաղէկ հարիւր երեսուն և երեք ամաց (1)՝ ծնաւ զՌագաւ ։

Յայնմ ժամանակի տանուտեարք երկրի հաւաքեալք ՚ի միասին խորհեցան գնալ յարեւելս խնդրել զառաջին բնակութիւնն Ադամայ, և գնացին ։ Եւ ահա ծով անջրպետեալ էր ՚ի մէջ Եդեմայ. և յիշեցին ըզջրհեղեղն մեծ, թէ յայնմ հետէ է ջուրս այս, և զահի հարան. քանզի և գործք իւրեանց նոյնպիսիք էին. որպէս կորուսելոցն ջուրբ ։ Եւ զի անցեալ էին զուխտիւ, և զնզովիւքն Նոյի արդարոյ, և փոխեալ էին զեդեալ սահմանս նորա, և առէն ցմիմեանս և մեք մի անհոգացուք յանկնկալութենէ նոյնպիսի անցից ապականիլ դարձեալ երկրի, և կործանիլ մեզ ջրով նոյն օրինակաւ ։ Վասն որոյ դարձան և եկին յերկիրն Սենաար ՚ի լայնանիստ դաշտն Բաղնէ և անդ արկին հիմն շինուածոյ աշտարակին, գտանել հը-

փաղէկ. և ասա զեկտան ըստ Եւսեբիոսի ժամանակագրի խակ ըստ Ասորոցն ԼԴ. ամաց. և եկաց ՅԽԳ. ամ. և են որ ասեն թէ առլաւ կոչեցան Եբրայեցիքն ։ Եւ զի այսոքիկ ապականին Ե բերայ. զոր այ փաղէկայ և Եկտանայ.

ուստի միաբանութեամբ կուցուք զրա առ սխալ ընդօրինակութեան ։ Զի և զոր կցեալքն պատմութեան. և այն մերաքերի փաղէկայ ։ Զոր օնակ առէ. բաժանեցաւ երկիր յանձանել ազգին ։

(1) Հին օրի. ՃԼ. (130).

նարս փրկութեան անձանց յարկածից ջուրցն ։

Ի սկիզբն ծննդեան Ռագաւայ սկսան շինել զաշտարակն մինչեւ ցքառասներրորդամն նորա (1). և բերին (2) զծախս պիտոյիցն յերկրէ իւրեանց. այլ և Նեբրովթ որսայր շինողացն գազանս և անասունս, և կերակրէր զնոսա ։ Եւ գլխաւորք էին Լամուր. և Հայկն. և Նեբրովթ, և մինչդեռ շինէին զնա ժրացեալք անհեղգաբար զքաղաքն բազմատար, և զամբարտակն (3) ամրակառոյց, էջ Տէր հողմով. և փլոյց (փլոյզ) զնա. և զբազումս կորոյս 'ի շինողացն ։ Ոմանք ասեն զՆեբրովթ 'ի յաշտարակին անկմանէն մեռանիլ. (4) բայց մեք ստուգեցաք յեւս ժամանակի սպանանիլ նմա 'ի Հայկայ որդւոյ Թորգոմայ, (5) որդւոյ Թիրասայ. որդւոյ Գամերայ. որդւոյ Յաբեթի. զի ոչ արար Հայկն զպատկերն Բելայ, և ոչ համարեցաւ զնա Աստուած. և եկն 'ի վերայ նորա ծանր ամբոխիւ Բէլ. և սպան զնա Հայկ ։

(1) Յօրինակին Միրեամ Բեկմոս սխալմամբ գրի "ցքառասուն երրորդումն" ։

(2) Երկու օրի. բերէին ։

(3) Մերս օրինակ. բաղմապարտակն. սխալ ոչ և հեշտական անհամապարտանաց օրինակողին ։

(4) Մերս և այլ երկու. մեռաւ ։

(5) Զաս չունի մերս Բ օրինակ. ում հետեւեցաք. այլք ամենայն նշանակեն ։

Իսկ ՚ի փլանիլ աշտարակին խառնակեցան լեզուքն ։ Եւ բաժանեաց Աստուած զմի լեզուն յեւթանասուն և երկու ։ Հնգետասան լեզու առին (1) ազգն Յաբեթի ։ Երեսուն երկու ազգն Քամայ ։ Քսան և հինգ ազգն Սեմայ ։ և գնացին այր իւրաքանչիւր զճանապարհ իւր . և շինեաց Նեբրովթ զԱրեգ քաղաք , և զԱծքին և զՈւռհայ ։ Իսկ իշխանն Եգեր այր աստուածապաշտ (2) ոչ միաբանեցաւ ընդ շինողս աշտարակին . և ՚ի յաւերմանն նա կոչեաց զերկիրն Բաբիլոն, որ թարգմանի աւերումն ։ Եւ ասեն թէ մնաց բուն լեզուն առ նմա ։ Եւ վկայեն Սուրբն Յակոբ . և Սուրբն Եփրեմ . և Յովհաննէս իթրուցին ։

Բայց զարմանամ, զի ոմանք ասեն թէ յԵբերայ կոչեցան Իսրայէլացիքն Եբրայեցիք Եւ թէ զնորա լեզուն ունին տակաւին ազգքն Գ հազաց, (Հրէից) ։ Եւ այսպէս անգիտացաւ ՚ի նոցանէ, զի ազգին Իսրայելի բակիզբն ՚ի Յակոբայ է , և յանցանելն ընդ ծովըն կարմիր կոչեցան Եբրայեցիք . զի եբերան՝ (3) անցիք թարգմանի ։ Եւ առին նոր

(1) Ոմանք օրինակք առարին ։ ... այր ձեր և աստուածապաշտ ։

(2) Այլ օրինակք . յաւէ- (3) Հին որք . զի Եբրայե-

լեզու խրբեւ զայլ պարգեւսն. ըստ այնմ որ ասէ "լեզու զոր ոչ գիտէր, լուաւ": Նոյն առաջին լեզուն բարձաւ որ էր Ադամայն, զոր Քաղդէացիք ունին այժմ. զի Աբրահամ Քաղդէացի էր, և հայրենի լեզուն Աբրահամու որ մնաց առ Եբեր, այս է զոր մեք ունիմք Քաղդէացիքս (1):

Ուստի լեալ ամաց հարիւր երեսուն երկու (2)՝ ծնաւ զՍերուք: Սերուք լեալ ամաց հարիւր երեսուն՝ ծնաւ զՆաքովր: Յայսմ ժամանակի լցաւ երկիր ժխորօք պատերազմաց, և սպանութեամբ: Քանզի որդիքն Քամայ 'ի դառնալն իւրեանց 'ի ցրմանէ աշտարակին եկեալ յերկիրն Փղշտացւոց, և առ լերամբն Կարմեղայ և Լիբանանու, և հայեցեալ 'ի պարարտութիւն երկրին, և 'ի վայելչութիւն նորա, և բռնացեալ 'ի վերայ ազգին Սեմայ առին զնա, և բնակեցան անդ. և ոչ կամեցան գնալ (3) 'ի վիճակն իւրեանց. և առին կրկին զնզովս Նահապետին Նոյի. վասն ծիծաղելոյն՝ և յաղագս սահմանափոխութեանն: Նոյ յայտնեալ յանձնեաց

ցին՝ անցին Թարգմանի: Ոմանք՝ եբերան, և ոմանք՝ եբերան:

(1) Ոմանք. Ասորիքն՝ [illegible]

նմք Քաղդէացիք:

(2) Երկու օրի. ԾԿԲ. (162:)

(3) Երկու օրի. գառնալ:

հեղմունք արեանց ի վերայ երկրի, այլ և անկաւ խռովութիւն յորդիսն Սեմայ այսպիսի պատճառաւ։

Որդիքն Յեկտանայ ՚ի մեռանել հօրն իւրեանց ոչ հաճեցան ընդ բաժինս իւրեանց, այլ եդին իւրեանց իշխանս զՍաբա և զԵւիլայ․ զՍուփիր կամ՝ (զՍվփեր), և կազմեցին զէնս զոր գտեալ էին առաջինք․ և յաւելին ինքեանք, Թուր, և աղեղն․ զրահ, և սաղաւարտ և վահան․ և այսու հալածէին զեղբարս իւրեանց և զօտարս․ և յաղթողացն կանգնէին պատկեր՝ յաղթութեան․ և երկուցեալքն մտանէին յամուրս անձեռագործս, և յայնմանէ իմացեալ շինէին բերդս և ամրոցս և մտանէին անդ յերկիւղէ (1) որդւոցն Յեկտանայ։ Վասն որոյ եւ յայնմանէ դարձեալ իմացան զմեքենայս առման Ներդից և Քաղաքաց և տապալէին զնոսա․ մինչեւ յողոք անկեալ աղաչէին ըզնոսա, զի առցեն բաժինս իւրեանց տեղի զորս ընտրեսցեն, և արասցեն խաղաղութիւն, և դադարեսցէ խռովութիւնն, եւ լուան նոցա։ Եւ էառ Սաբայն զխնկաբեր երկիրն, զոր սաբայ անուանեաց իւրով անուամբն։ Եւ Սուփիր էառ Տեառն ոսկեհա-

(1) Ոմանք յերկեղէ։

նաց որ է Հնդիկք, և էառ Նուխայ վերջին պատուական ակամբ, որև շինեցաւ և կոչե֊ցաւ անուամբ նորա Նուխա։ Իսկ սերուք յետ ծնանելոյ նորա զՆաքովր. շինեաց քաղաք և կոչեաց զանուն նորա Սրուճ։ Բայց գիտասցես զի 'ի Ջրհեղեղէն մինչև ցայս վայր յամէն նահապետաց հարիւր ամ պակաս բերէ Ասորոց Թարգմանն։ Նաքովր լեալ ամաց եւթանասուն և ութն, ծնաւ զԹա֊րայ. և Թարայ լեալ ամաց եւթանասուն՝ ծնաւ զԱբրահամ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

*Ամաղունիք, որ և կին էր թագաւոր, և այլ կարգ թագաւորացն Բաբիլոնացւոց. և ոսկեհանութիւն. և հաւատալն Աբրահամու.*

Յայսմ ժամանակի եղեն Ամաղունիքն, որ է զօրութիւն կանանց պատերազմողաց այսպիսի պատճառաւ. զի կին միայ թա֊գակալ թագաւորութեանն Թորգոմայ հա֊տեալ արու զաւակացն, և ոչ կամեցա֊ւ առն լինել, և էր քաջասիրտ և քաջազն. և ելանէր ծանր զօրու, և աւերէր և գերէր զաշխարհս բազումս մեծաւ յաղթութեամբ. և աջողէր նմա. և ոչ ոք կարէր 'ի դիմի հարկանել նմա։ Նա եղեւ դաւ ինչ և նեն֊գութեան խորհուրդ ի զօրսն. զի առցեն

զթագաւորութիւն 'ի նմանէ : Իսկ նորա նախադէտ եղեալ՝ կոտորեաց առ սակաւ սակաւ զամենայն արտաքական զօրսն, և արար իւր զօր կանայսի : Եւ նոյնպէս յաջողէր յաղթութիւն 'ի ձեռս նորա, և սաստացաւ աշխարհս բաղումս. Եւ զատտոյց զօրուս աշխարհաւ. և միանգամ յամին խառնէին ընդ նոսա և դարձեալ մեկնէին. և զծնեալ արուոյն, էր զի սպանանէին և էր զի տային յայրան և եդ իւր հզօր իշխանութիւն, և քաղաք ամուր. սաստացաւ իւր 'ի կողմանս հիւսիսոյ Ալիոն անուն : Եւ նեղեցան ձանձրացան 'ի նմանէ ամենայն Թագաւորք երկրի և ժողովեցան 'ի միասին մետասան Թագաւորութիւնք և գնացին 'ի վերայ նորա. և առին զամրոց Թագաւորութեան նոցա. և բարձին զանարգութիւն յաշխարհէն, և արքն առին զԹագաւորութիւնն բունք ազգին՝ (1) օրինօք ամենայն երկրի :

Այլ մեք անդրէն դարձուսցուք զկարգ պատմութեան 'ի կարգ Թագաւորացն Նաբիլացւոց որ և առաջին Թագաւորեաց անդ Նեբրովթ ամս վաթսուն և ինն. և էր Թագ նորա հիւսածու՝ որպէս Մենադրոս (2)

(1) Հին օրի. որք ծնեալք էին ի կանանց անտի :

(2) Հին. օրի. Մենադրոս. ամենք. Մենանդրիոս :

բազումս յաշխարհին (1) Քաղդէացւոց, և Պարթևաց։ Սա սկսաւ չափ դնել և կշիռ և գոյնս ներկուածոց. և խայտուածս. և նըկարս տաճարաց. և դրամս, և դահեկանս անուամբ կնքոյ իւրոյ, և կատարածութիւնս. և դնել պատկերս ՚ի կտաւս. որպէս վկայէ ընդ նմանէ Սամանդրոս (2) Մով. և ասէ թէ երեք աչք ունէր, և եղջիւրք. այր ուժգին, և հսկայ անձն. և ասէ թէ հան ՚ի Քաղդէացւոց աշխարհէ զազգն Նեբրովթայ։ Ի քսան և եւթն ամին Նաքովրայ էր ճգնութիւնն Յովբայ, որպէս ասէ զնմանէ. Նորա քննանացին ասէ այսպէս, ո Այր մի էր մեծատուն յորդւոց Յեկտանայ՝ անուն նորա Յովբ, պատերազմեցաւ Եւթն ժամանակս ընդ սատանայի. և զօրութեամբն Աստուծոյ յաղթող գտաւ ՚ի վերայ նորա ։։ Իսկ Յովսէփ (3) դպիր ասէ ՚ի յիննսուն ամին Նաքովրայ եղեւ ճգնումն Յովբայ։ Բայց ոմանք ասեն թէ էր նա յորդւոցն Եսաւայ, այն որ ասէ ՚ի կարգ որդւոցն նորա, թէ Յոբաբ որդի Զարեհի. և հինգ հարիւր ամաւ յառաջ է քան զՄովսէս։ Յեւթներրորդ ամին Թարայի Թագաւորեաց ՚ի Նա-

(1) Եւթն օրի. աշխարհին։

(2) Հին օրի. Սամարոս։

(3) Ա. Ձ. օրինակք Յովսեփպոս։

քելոյն. Արփիաքսատ ամս ութն և տասն։ Եւ յետ սորա խափանեցաւ թագաւորութիւն Քաղդէացւոց ամս եւթն, մինչեւ 'ի Կիլոս թագաւորն աթուրացի. զի պատերազմէին ընդ միմեանս Քաղդէացիք, և Աթուրացիք և Մարացիք. յաղագս թագաւորութեանն, մինչեւ զօրացաւ Կիլոս Աթուրացի. և ել 'ի հնազանդութենէն Բաբելացւոց և թագաւորեաց և իշխեաց ամենայն Ասիոյ (1) ամս վաթսուն և երկու։ Եւ Աթուրա քաղաք է առ ընթեր Մօսլայ, զոր Ասորիս կոչեն, յԱսուրէ զինեալ զատուածն։ Քաորոս ամս թագաւորեաց 'ի Բաբելոն և Ասհերոն եղբայր Թարայի սպան զնա. և ասեն թէ վասն ոսկեզէն պատկերին զոր էառ 'ի Նաքովրայ որ էր քրմապետ Կայնան կռոցն։ Նա շինեցաւ Դամասկոս 'ի Սարիդոս (2) հիւթացւոյ նախ քան զծնանիլն Աբրահամու քսան ամաւ։ Եւ Յովսեպոս ասէ թէ „Յովսէէ որդւոյ Արամայ շինեցաւ Դամասկոս„։ Անդրոնիկոս պատմագիր ասէ թէ 'ի Ջրոյն մինչեւ ցԱբրահամ են ամք, հազար ութսուն և մի. և յԱդամայ երեք հազար երեսուն և հինգ. Եւ 'ի բաժանմանէ երկրին մինչեւ ցԱբրա-

(1) Երկու օրի. առաջնոյն հիւթացւոյն։ մի օրի. ի Մար- Ասիայ։ քերա։ մի օրի. 'ի Մարքսա

(2) Մի օրի. 'ի Մարքսա հիւթացւոյ.

համ չորս հարիւր քսան և մի ամ, և տա հաւատարեցան Յունաց և Ասորւոց Թիւն ։ Ի ծնանելն Աբրահամու մեռաւ Նաքովր ։ Աբրահամու մօրն Ամլքա Թուէր անուն։ Եւ յետ ժամանակի ծննդեան Աբրահամու ծընաւ Սարա դուստր Թարայի, 'ի Արմութայ կնոջէ, և ոչ 'ի մօրէն Աբրահամու ․ որպէս ինքն ասէ առ Փարաւոն, և առ Աբիմելէք։ Եւ եղեալ Աբրահամ եւթն և տասն ամաց, սկսաւ խնդրել զաստուած այսպիսի պատճառաւ ։ Աշխարհն Քաղդէացւոց պարարտ և արգաւանդ է, վասն որոյ յղփացեալ բընակչաց աշխարհին պարապեցին աստեղագիտութեան եւ հմայութեան ․ և զայլոր գործոց։ Եւ գտեալ Տեառն Աստուծոյ զնոսա յանբաւ չարիսն ․ Ետ նոցա պատուհաստարակոյս, և կարօտութիւն, և եբեր 'ի վերայ նոցա բազմութիւն ձագուց զոր ճայ կոչեն ․ և 'ի ժամանակս հասմանն այգեաց և անդաստանաց ուտէին զբեր երկրին ․ և այս եղեւ զամս բազումս ։ Եւ Քաղդէացիքն իւրաքանչիւր ոք սակաւ̀ ինչ հերկեր և ցանէր ․ և արամբք պահէին զնոսա 'ի բաց քըշելով զԹռչունսն, և զոհեցին զոհս դիցն իւրեանց, և ուխտեցին ուխտս և ոչ լինէր դիւրութիւն, և ոչ կախարդութեամբն կա-

րէին հնարս գտանել ։ Իսկ Աբրահամ եօթն և տասն ամաց եղեալ պահէր զանդաստանս հօրն իւրոյ , և ձանձրանայր . և փոստակէր 'ի վարել զհաւսն, և յոգւոց ելանէր (հանէր)[1] խնդրէր յամենայն անուանեալ չԱստուածո-ցըն, տալ նմա սակաւ մի հանգիստ . յարեգա-կնէ , և 'ի լուսնէ , և յաստեղաց , և 'ի ձու-լածու կռոց , և ոչ լինէր լսելի ։ Եւ 'ի գի-շերի միում մտախորհ եղեւ եթէ պատու-հաս այս յԱստուծոյ է , և ոչ է սա դիպու-ւած , զի բազմաժամանակեայ եղեւ , և ոչ է չարս յաստուածոցս մերոց զի թէ 'ի սոցանէ էր , բառնալ կարէին աղաչեալք ի մէնջ յոր-ժամ՝ զկամս նոցա կատարեմք ։ Եւ զի ուսա-նէր 'ի հօրէ իւրմէ զաստեղագիտութիւն՝ յորում քաջ տեղեակ էին 'ի նախնեացն . հայեցաւ Աբրահամ յարուեստն այն , և ե-գիտ զամենայն գունդն երկնից եւ աս-տեղօքն որք 'ի նմա կան , զամենեսեան 'ի ներքոյ հարկի . ապա ծագեաց ի միտս նորա ։ ՙՆշոյլ լուսոյ մեծին Աստուծոյ . և ասաց է ումն անծանօթ Աստուած շարժիչ և հարկա-նող ամենայնի և արարիչ կազմիչ նա է բոլո-րից , և մոռացօնք լեալ է արարածոց իւ-րոց , և կամք հրամանի նորա ոչ է առ մեզ

(1) Երկու օրի . յոգւոց հանէր ։

և 'ի նմանէ է վրէժխնդրութիւնք պատու-հասիս 'ի վերայ մեր։ Եւ զգիշեր ամենայն հաստատեաց 'ի սրտի իւրում զբանս զայս. և 'ի տունջեանն երթեալ յանդն ել 'ի վե-րայ ծնգաց իւրոց և ամբարձեալ 'ի վեր ըզ-բազուկսն իւր ասաց. անծանօթ Աստուած. արարիչդ ամենայնի, և շարժիչ. և այս Թռչնոցս ստեղծիչ և հարկիչ, հալածեա՛ ըզ-սոսա, և ծանո մեզ զքեզ. և զկամս քո։ Եւ ընդ ասելն զբանս զայս վաղվաղակի անձայր եղեն ձագքն յամենայն անդաստանաց քա-ղաքին, և ասաց Աբրահամ՝ մեծութիւն և փառք 'ի բարձունս՝ ահա գտայ (1) զԱստու-ած. ոչ է այլ Աստուած բաց 'ի քէն Տէր արագալուր և բարի և զօրութիւնն քո ընդ քեզ, և փառք քո լցցէ զամենայն երկիր։ Եւ գնաց Աբրամ խնդութեամբ 'ի տուն իւր. և պատմեաց 'ի տան հօր իւրոյ, և ոչ հաւատացին նմա, այլ նա ոչ դադարեաց 'ի խնդրելոյ զճշմարիտ Աստուած. զի յայտ-նեսցի նմա ծանօթապէս։

Յայն ժամանակի մեռաւ Վէլոս Թագա-ւորն և Թագաւորեաց Նինոս որդի նորա ամս յիսուն երկու (2)։ Երկրորդ Թագաւոր

(1) Մի օրի. գտայք։ Միւս (2) Երկու օրի. ԺԲ. (12։) օրի. գտայ.

Ասթուրացւոց. Սա շինեաց զՆինուէ և եդ զարքայութիւն իւր անդ. սա կազմեաց կուռս հօր իւր ոսկեղէն (1), և ետ երկրպագանել նմա։ Ի ժամանակս նորա շինեցան Աքաբովթ. և Ասսան, և Բաղանէ, ի սոյն ժամանակս շինեցաւ Երուսաղէմ ՚ի Մելքիսեդեկէ Քանանացւոյ, զոր ասեն որդի թագաւորին Քանանացոց որում անունն Մելքի ճանաչիւր. և կամեցաւ հայր նորա զոհել զնա կռոցն, և տեսեալ Աստուծոյ զզօրութիւն որ կայր ծածկեալ ՚ի մանուկն. և արժանի իսկ էր լինել օրինակ միածնի իւրոյ. սաստեաց մեհենին, և ընկղմեցան ծնողքն նորա քրմօք, (2) և յափշտակեցաւ մանուկն յանապատ և սնաւ խնամօքն Աստուծոյ. և եղեւ այր հրաշալի Քահանայ Աստուծոյ և թագաւոր երկրին. և շինեալ քաղաք դնէր նմա անուն Ուրիշ ղէմ (3). որ թարգմանի գեօղ խաղաղութեան։

(1) Մի օրի. կազմեաց կուռըս հարկիւր ոսկեղէն։

Մի օրի. կանգնեաց կուռք մեծարկու հօր իւրոյ ոսկեղէն։

Մի օրի. կանգնեաց կուռք մեծ ահարկու հօր իւրոյ ոսկեղէն։

Հին օրի. շինեաց զՆինուէ և փոխեաց զաթոռ թագաւորութեան իւրոյ յԱթուրեայ ՚ի Նինուէ. և կազմեաց կուռք մեծ արկածու հօր իւրոյ Բիլոսի, և ետ երկրպագել նմա։

(2) Երկու օրի յաւէլեալ հանգերձ։

(3) Երկու օրի. Ուրիշլէմ։

Իսկ Աբրահամ եղեւ յառաջադէմ հաճոյ Աստուծոյ և էր նա վաթսնամեայ. եւ լուաւ Աստուած բազմաժամանակեայ և անձանձրոյթ աղօթից նորա և աներկբայ հաւատոցն և ասէ ցնա. ել յերկրէդ յազգանէ և տարայց զքեզ 'ի զրկեալ վիճակ ժառանգութեան Սեմայ հօր քո. և անդ ծանուցայց քեզ ըստ կարօտութեան քո. եւ տաց զերկիրն քեզ, և զաւակի քում յաւիտեան:

Իսկ լուեալ Աբրահամու պատմեաց հօր իւրոյ, և կամեցաւ ելանել ընդ նմա. և եկին մինչեւ 'ի Խառան ելեալ յՈւռհայէ քաղդէացւոց. և անդ զօտեղի առին և ըստացան անդ տունս և ստացուածս, և կանգնեաց հայր նորա անդ կուռս, և պղծեաց Աբրահամ զմեհեանն յորում կանգնեցաւ կուռքն. և Առան եղբայր նորա կամեցաւ շիջուցանել զհուրն, և անդէն այրեցաւ առաջի հօր իւրոյ:

Բայց ոմանք զիշակէան 'ի հնարից նորա ասեն լեալ, և 'ի Տեառնէ սպանեալ:

Իսկ եղեալ Աբրահամու եւթանասուն և հինգ ամաց՝ դարձեալ լինի նմա հրաման յԱստուծոյ գնալ յերկիրն Քանանու. եւ թողեալ նորա զազգատոհմն իւր 'ի Խառան:

Նմէն ոմանք այլ կին նորա բայց 'ի Սաւայէ և որդի Սկրեստէ անուն, որք ոչ յօժարեցին երանել ընդ նմա ։ Իսկ նորա անդրխնդաբար եղեալ հրամանի Ամենակալին (1) ել և գնաց։

Բայց խնդիր տարակուսի (2) է 'ի սեղուա-ջըս, զի հայր նորա եւթանասուն ամաց ծը-նաւ զնա, և երկու հարիւր հինգ ամաց մե-ռաւ ։ Եւ Ստեփաննոս ասէ, թէ յետ մե-ռանելոյ հօրն փոխեցաւ զնա անտի։ Եւ Աբ-րահամ եւթանասուն և հինգ ամաց էր. զարմանք է զի Աբրահամ հարիւր երեսուն և հինգ ամաց գայ ։ Բայց թէ Սամարացւոյն որք ճշմարտէ (3) զի առեն թարայ լեալ եւթ-անասուն ամաց ծնաւ զԱբրահամ և եկաց այլ եւս եւթանասուն և հինգ ամ. կամ որք զՍառայ յԵսքանայ առեն և դուստր Ա-ռանայ. զի՞արդ Առան քան զտասն ամին ծը-նանել կարէր զՍառայ. զի գիր յայտնապէս ասէ զԱբրամ տասն ամաւ երէց քան զՍա-ռայ. այլ որպէս ասացաքն այնպէս ճշմարիտ համարիմ գոլ զիրդ ։

Եւ եկեալ Աբրամ յերկիրն Քանանաց-ւոց և եղեալ ութսուն և հինգ ամաց՝ մը-տաւ (եմուտ) յԵգիպտոս ։

(1) Երկու օրի, յանկելուն սէլէ ։
Աստուծոյ. (3) Երեք օրի. բայց զՍա-
(2) Երկու օրի, տարակու- մարացւոյն որք ճշմարտէ.

Աբրամ նորոգեալ Աստուածածանօթութեամբն, և նոր իմն ծնեալ պանդխտութեամբ օտարութեամբն կոչեցաւ Աբրահամ՝ և կին նորա Սառա, անուանեցաւ Սարրա, որ իմացեալ լինի հայր ընտիր, և իշխանական տիկին :

Եւ եղեալ Աբրահամ իննսուն և ինն ամաց թլփատի, և զատչի այնու յազգացն [1] յորոց միջի բնակեալն էր : Եւ եղեալ հարիւր ամաց ծնաւ նմա Սահակ ըստ աւետեացն Աստուծոյ : Եւ հարիւր տասն և եւթն [2] ամաց լեալ էած զորդին ՚ի զենումն, և տըւաւ նմա կրկին պարգեւօք նորագոյն խոյիւն փոխանակեալ յօրինակ մեծին : Ոմանք առեն երեսնամեայ զՍահակ ած ՚ի զենումն : Ի յենըն ամին Սահակայ՝ պատմեցաւ Աբրահամու թէ ծնան ուստերք և դստերք Նաքովրայ եղբօր քո . և յերեսուն և եւթն [3] ամին Սահակայ մեռաւ Սարրա :

Ոմանք առեն սատանայ գոյժ ետ Սառայի թէ զենաւ որդին քո և մահացաւ ՚ի ժամըն՝ չէ ընդունելի բնաւ : Եւ եղեալ Աբրահամ հարիւր եւթանասուն և հինգ ամաց

(1) Ոմանք ազգացն.

(3) Հին. և երկու օրէ.

(2) Հինն. և այլ երկու ԼԵ. (35).

ոյք. ՃԺԵ. (115).

մինչեւ յերեսուն և եւթն (1) ամին Յակովբայ, կատարի լի բարութեամբ, և հաճոյիւք Աստուծոյ։

Ի հարիւր քառասուն և ութն (2) ամին ա-գլենոտուր (3) և ստացաւ վեց որդիս 'ի նմանէ։

Եւ յաւուրս սորա Համիրամ հարթեաց զհող երկրին Ասորոց (4) վասն ջրհեղեղաց։ Եւ զԱբրահամ ասեն ոմանք աշխատեալ 'ի գործն։ Եւ 'ի ժամանակս յայս է Թագաւորութիւնն Սիկիոնացւոց։ Նոյնպէս և Արգիացւոց (5) Թագաւորեաց Արգէս անուն, որով կոչեցաւ և երկիրն՝ և յայսմ ժամանակս էր Պիսայ (6) որ և Պեղոպոնէս (7) ասի, և յանուն նորա կոչի երկիրն։ Յութսուն և հինգ ամին Աբրահամու Իսմայէլ ծնաւ, ուստի Ագարացիք (8) և Սարակինոսք, և Իսմայէլացիք և Տաճիկք կոչին։ Ի քառասուն (9) ամին առ Սահակ զՌեբեկա, և 'ի վախճան ամին յըղացաւ, և գնաց հարցանել զԱստուած 'ի

(1) Երեք օրի. ԼԵ. (35)։

(2) Հին օրի. ՃԽԵ. (145)։

(3) Հին օրի. Կենդաւրա։

(4) Երկու օրի. Ասորոց Բերէոյ սահմանք։

(5) Եւթն օրի. Արգեացւոց. որ է սխալ. զի 'ի նոյն է կոչեցաւ նաև երկիրն։

(6) Երեք օրի. Պիսա։

(7) Երկու օրի. Պեղոպոնէնեացի։

(8) Երկու օրի. Հագարացիք։

(9) Հին օրի. ԼԸ. (38)։

ձեռն Մելքիսեդեկի, որ Նախածանօթ (1) էր նոցա . քանզի երկու որդիքս էր յղացեալ, և վիճէին մանկունքն ։

Եւ ասէ Մելքիսեդեկ Քահանայն Աստուծոյ բանիւ տեառն, երկու ազգք են յարգանդի քում, և երկու ժողովուրդք . որք էին Յակոբ՝ յորմէ Իսրայէլացիք։ Եւ Եսաւ՝ յորմէ Եդովմայեցիք որք են Ֆրանկք ։

Օ այսու ժամանակօք Թագաւորեաց Եգիպտացւոյն Ինաքոս, զոր Եգիպտացիքն Իսիս և Սերուսիս (2) կոչեցին ։ Եւ էր սա կին դուստր Ովլայ, և սա կոչեաց զԵրգոս գետն Ինաքիոս ։

Ի յեւթանասուն և հինգ ամին Աբրահամու եւթն և տասներրորդ իշխանացն Եգիպտոս Եղիս, և Եստուած կոչեցաւ (3) և ոմանք Սարապին (4) կոչեցին . և եկաց Աբրահամ հարիւր ութսուն ամ մինչեւ յերեսուն և մի (5) ամն Նեւեայ ։

Եւ Եբիմելէք ագարայի (6) Թագաւոր

(1) Ոմանք . Նախ ընծանօթ ։

(2) Մի օրի . ասէ միայն Իսիս . և չէ Սերուսիս ։

(3) Ոմանք՝ չաստուած կոչեցաւ . ոմանք աստուած կարծեցաւ ։

(4) Մի օրի . Սարապին ։

(5) Երկու օրի . Լ . (30) ։ Մի օրի . ԼԲ . (32) ։

( ) Հին օրի . Աբիմելէք Թագաւոր քաղդեացի որ է Գերարայ փղշտացւոց քաղաքակամ տան Աբրահամու ։

փղշտացւոց բարեկամ էր նոցա (1)։ Ի հա֊րիւր երեսուն և եւթն (2) ամին Սահակայ գնաց Յակոբ օրհնութեամբ հօր իւրոյ 'ի Խառան։

Զայսու ժամանակաւ յերկիրն փղշտա֊ցւոց շինեաց Եմովր իշխանն զՍիւքեմ քա֊ղաք. յանուն որդւոյ իւրոյ Սիւքեմայ յորմէ յափշտակեցաւ Դինայ։

Յակոբը եղաւ անդ ութն ամաց՝ առ զԼիայ դուստր Լաբանայ Ասորւոյ. և ութսուն և հինգ ամաց, ծնաւ զՌուբէն (3) և յութսուն և ինն ամաց՝ (4) ծնաւ զՂեւի, և յիննսուն և մի ամին ծնաւ զՅովսէփ. և 'ի հարիւր ամին եկ առ Սահակ հայր իւր։

Ի յիսուն ամին Յակոբայ Փորոն և ս թա֊գաւորեաց Արգիացւոյն, որ նախ օրէնս և ատեանս և դատաւորս եդ. և յեւթանա֊սուն և հինգ ամին Յակոբայ Եգիպտոս շի֊նեաց զՄեմփիս Յասոբիկէ, և Թէսաղս Թագաւոր Թեսաղացւոցն (5) որով կոչեցաւ

(1) Հին օրի. Եւ լեալ Յա֊կոբ ՀԵ. (75) ամաց 'ի ՃԼԵ. (135) ամին . . .

(2) Մի օրի. ՃԼԵ. (135)։

(3) Հին օրի. գնէ նախ Ըռ֊թուջէն, զՇմաւոն ապա զՂևի։

Երկու օրի. չյիշէն զՌու֊բէն և զՇմաւոն։

(4) Հին օրի. 'ի Ժ. (10) ամին Ղեւայ, չիշէ զիննսուն և ինն ամին խորամ.

(5) Երկու օրի. Թեսաղա֊նիկեցւոց։

աշխարհն։ Եւ Մեսինէ քաղաք շինեցաւ։ Ի հարիւր տասն ամին Յակոբայ Թագաւորէ Երգիացւոցն Եպիս։ Ոմանք ասեն Թէ զեղբայր իւր եԹող Թագաւոր Երգիացւոցն, և ինքն չոքաւ յԵգիպտոս, և սա է Եպիսն Եգիպտոսի։ Սա շինեաց զՄեմփիս յԵգիպտոս։

Ի տասն և եւԹն (1) ամին վախճանեցաւ Յովսէփ. և յերեսուն ամին տիրեաց Եգիպտացւոցն ամս ուԹսուն. զոր պատմուԹիւնք Եգիպտացւոցն, եւԹն և տասներրորդ հարստուԹիւնք հովուաց անուանեն։

Ի հարիւր երեսուն ամին էջ Յակոբ յԵգիպտոս. 'ի յիսուն ամին Յովսեփայ Սպարտա շինեցաւ 'ի Սպարտայ որդւոյ Փորոնեայ (2)։

Իսկ յետ Շամիրամայ Թագաւորէ Զամէս և զկնի նորա Բեղոքոս, յետ նորա Մեննա։ Յակոբ եղեալ հարիւր քառասուն և հինգ ամաց վախճանի։ Բայց մինչդեռ էր նա յերկիրն Քանանացւոց զկնի մահուանն Սահակայ վարձեաց Եսաւ զորդիսն Ամոնայ և Մովաբու և զԱրամ, և եկն 'ի վերայ նորա և սպանաւ 'ի Յակոբայ. և հարկեցան որդիքն Եսաւայ՝ Յակոբայ։

(1) Երկու օրի. ԺԵ. (15)։ Այս օրէ. 'ի նորգին [illegible]
(2) Մի օրի. Փոնորեայ։ [illegible]։

Եւ 'ի մտանելն Յակովբայ յԵգիպտոս՝ Ա-սորոց թարգմանն եւթանասուն ոգի ասէ ։ Եւթանասունքն՝ եւթանասուն եւ հինգ ո-գի (1) ։ Քանզի որդիսն Յովսեփու եւ զորդիս որդւոց նորա որ չէին ծնեալ՝ 'ի համար ա-նուն եւթանասունքն ։

Ղեւի լեալ քառասուն եւ հինգ ամաց ծնաւ զԿահաթ, ամանք զփորձանքն Յովբայ ասեն ։ Կահաթ լեալ վաթսուն ամաց ծնաւ զԱմրամ (2). Ամրամ եւթանասուն ա-մաց ծնաւ զՄովսէս ։

Յայսմ ժամանակի թագաւորեաց Աթու-րացւոցն Աղապարոս ։

Յովսէփ եղեալ հարիւր տասն ամաց վախ-ճանի, եւ 'ի վեց ամին Ամրամայ. եւ խոստ-մանն Աստուծոյ յերկու հարիւր ութսուն եւ վեց ամին ։

Մտին որդիքն Իսրայելի 'ի ծառայութիւն յետ մահուանն Յովսեփու ։ Եւ թագաւո-րեաց Քեբրոն՝ ամս երեքտասան, եւ յետ նորա Ամենափթիս ամս քառասուն երեք. սա սկը-սաւ հեղձուցանել զտղայսն Իսրայելի 'ի Նեղոս գետ ։

(1) Առաքեաց Յովսէփ եւ կոչեաց զՅակովբ զհայր իւր եւ զամենայն ազգատոհմն ոգիս եւթանասուն եւ հինգ ։ Գործ. Է. 14 ։

(2) Հին օրի. յաւելու. եւ եկաց ՃԼԳ. (135). ամ. մինչեւ յերկեք ամն Մովսիսի ։

Եւ Մովսէս ընկեցեալ լոտ ոճոյն եբարձ զնա Թերմութէս դուստր Փարաւոնի, զոր Եբրայեցիքն Մառի կոչեն, որ եղեւ կին Քանադրա Թագաւորին Մեմփիս քաղաքի։ Եւ ապրեալ Մովսէս ՚ի ջրոյն յերեք հարիւր յեսուն ամի խոստմանն Աստուծոյ. և եղեալ տասնամեայ՝ ուսաւ յուսումն Յունեան եւ յԱմրեան որք էին յորդւոյն Բարխաբայ կախարդի քաղդէացւոյ։ Եւ հալածեալք անտի վասն գողանալոյ զոսկիս երկրին և զշելոյն կուոյն զոր յանուն հօրն իւրեանց կանգնեալ էին. և էին սաքա հմտացեալք քաղդէական և յունական ճարտարութեամբ, եւ յաւելին զԵգիպտոսին, և այնու վարժեցաւ Մովսէս ուսեալ զնոսա Համբշանն Մառիայ։

Ի քսան երկու. ամին Մովսէս իշխանացաւ, և շինեաց զքաղաքն Հերմուպօլիս (1), որ և կոչեցաւ յանուն սնուցչին Մովսիսի Մառիա։

Յայնմ ժամանակի Եթովպացիքն որ լեալ էին հարկատուք Եգիպտացւոյն, և գտին

(1) Երկու օրի. ՚ի քսան երկու ամին Մովսիսի սկսաւ կաւագործութիւն իսրայէլի. ՚ի քսան և ութն ամին Մովսէս իշխանացաւ, և շինեաց զՀերմուպօլիս քաղաք . . . ։

Հին օրի. ՚ի քսան երկու ամին Մովսիսի նեղել սկսաւ Թագաւորն զԻսրայէլ շինուածօք քաղաքաց։ Եւ ՚ի քսան և ութն ամին Մովսիսի շինեցին զՀերմուպօլիս։

զնոսա, և այսպէս ապստամբեցին, և եկին 'ի վերայ Եգիպտացւոց և գտին զնոսա անպատրաստս, և գերեցին և առին զամենա-նեայ մայրն Սովսիսի, և տարան: Եւ Սովսէս ընդ զօրավար Եգիպտոսի՝ կռուեցաւ ընդ Եթովպիոյ զաւառն ամ, և գնացեալ 'ի վերայ նոցա ընդ օձուտ անապատն երամբք և արագլօք՝ ուստի նոքա անկ ոչ ունէին, և զկնի տասն ամի առ զԵթովպիա՝ Զև առ ընդ թագուհի նոցա զՓեւսբա և զՍարի մայր իւր, և դարձաւ յԵգիպտոս քաջ և արի անուանք: Եւ նախանձեցաւ ընդ նմա այրն Սառեայ և կամէր սպանանել զնա, բայց պատկառէր 'ի կնոջէ իւրմէ:

Եւ մեռաւ Սառի, և թաղեցաւ զնա Սովսէս, և առաքեաց այրն Սառեայ զՔանթիս (1) չարաշարիչն Եգիպտոսի սպանանել ըզՍովսէս՝ և յառաջեաց Սովսէս, և սպան զնա և ինքն փախեաւ 'ի Մադիամ: Եւ զկնի փախչելոյն Սովսիսի առին Յանէսն և Յամրէսն զորդին Եգիպտոսի, և տարան զնոսա յանապատ Հնդկաստան (2) առ ուր ճանապարհաւ՝ և շինեցին անդ դրախտ զեւթն և տասն (3) ամ, և ամրացուցին յոյժ յոյժ, և 'ի կա-

(1) Մի օրի. Քանոր.

(2) Մի օրի. ԺԷ. (17):

(3) Մի օրի. ԺԵ. (15):

տարման չքնաւածոյն առին 'ի տղայոյն Իս-րայելի ինն հարիւր ութսուն մանկունս ան-մեղս, և զոհեցին դիւաց՝ և կոչեցին զեր-խանն դիւաց 'ի զոհն, և եդին պահապան դրախտին. և յայնմ հետէ մանաւանդ հնա-զանդեցան դեւք կախարդացն 'ի գործս ար-բմայ և յամենայն հնարս:

Զայսու ժամանակաւ էր Պրամիթեւս և մատուտաւէր՝ որ ստեղծանել ասեն զմարդիկ, զի իմաստութեամբ 'ի գիտութիւն ածէր զազգէտսն:

Իսկ Մովսէս գնացեալ 'ի Քուշացիսն (1) առ Ռագուէլ որդի Դադանայ որդի (2) Յեկտանայ յորդւոց անտի Կենդուրայ. և առ զդուստր նորա 'ի կնութիւն և ծնաւ 'ի նմանէ երկուս որդիս՝ և էր Մովսէս քա-ռասուն ամաց: Յայսմ ժամանակի ասեն զԱսկղեպիդէս բժիշկ երեւեալ ճարտար, և Ատղաս (3) Պրամիթեայ եղբայր՝ աստեղագէտ որ զերկինս կրեալ (4) ասիւր, զոր Իւրիպի-դիս լեառն անուանէ 'ի վերոյ քան զամպս:

Եւ զայսու ժամանակաւ ասեն Եթով-պացիք 'ի Հնդիկէս գետոյ գնացեալ առ

(1) Մի օրի. 'ի Քուշացիսն:
(2) Մի օրի. որդի դադա-նայ որ յԵկտանայ:
(3) Ոմանք Ատղաս:
(4) Երկու օրի. կրել:

Եգիպտոսի բնակեցան ։ Եւ Կորիտացիք և Կորիւբանդք զզինուք Կապաւան գտին ։

Եւ աստ ասեն առ Դեւկաղիոնիւ ԵԹե-սաղիայ եղեւ ջրհեղեղ, և առ Փայիթոնիւ յԵթովպիոյ հրայրեցան . և բազում ապա-կանութիւնք 'ի տեղիս տեղիս ըստ Պղատո-նի պատմելոյն . և զԿիկրոպս յԱտտիկեայ որ է Ատտիկէ Թագաւորել (1) ասեն ոմանք, եւ-կէսք յԵգիպտոս ասեն Թագաւորել նախ, և ապա յԱտտիկէ ։ Իսկ Յոյնք ասեն սա շի-նեաց զԱթէնս յանուն կնոջ իւրոյ ։ Զսա կոչեն երկբոյս կամ զի երկայն էր և կամ զի երկու լեզու գիտէր զԵգիպտոսին և զՅու-նացն ։ Տիրեաց սա և միջերկրեայց և յանուն սորա կոչեցաւ Կապադովկիա ։

Եւ յաւուրս սորա երեւեցաւ ձիթենի 'ի Դղեկին Աթենայ ուստի առասպելն ե-ղեւ ստեղծեալ ։ Եւ սա կոչեաց զԱրամազդ Զեւս, և նախ եզն զոհեաց և յայսմ ամի Դեւկաղիոն Պառնասացւոց (2) կողմանցն սկիզբն արար Թագաւորելոյ ։

Եւ յԵլլենոսէ որդւոյ Դեւկաղիոնի Եղղադացիք կոչեցան, Դրեկք Եղենքն, (3) և յԱկտէ Ատտիկեցիք ։

(1) Կէսք Թագաւորեալ ։ Թուի երկուք լինել ։

(2) Մի օրի . Պառնասա-ցւոց ։ Սխալ ընդօրինակու..

(3) Հելլէնք և Գրեկք ։

Ի քսան և հինգ (1) ամի աւետեացն Աբրահամու Կորնթոս քաղաք շինեցաւ՝ որ երբեմն Եփիրա կոչէր ։ Եւսեբի ասէ թէ Կրանայի Աթենացւոց դուստր էր Ատթիս անուն 'ի նմանէ կոչեցաւ աշխահն Ատտիկէ ։

---

## ԳԼՈՒԽ Գ.

Յաղագս Մովսիսի ընդ ծովն կարմիր ։

ՄՈՎՍԷՍ լեալ եւթանասնամեայ, երեւմանն Աստուծոյ արժանացաւ . և զատման ամին յապաղէր գնալ յԵգիպտոս , և հարկեալ 'ի Տեառնէ գնաց ութսուն ամաց . և յաւետեացն Աստուծոյ չորս հարիւր երեսուն ամ էր լծուին . և յեւթանասուն և հինգ ամին Աբրահամու ։ Երկու հարիւր հինգ ամ, մինչ 'ի գալն (2) Յակովբու յԵգիպտոս . և երկու հարիւր քսան և հինգ ամ կացին յԵգիպտոս . և չորս հարիւր ամին լցեալ էր ըստ հրամանի Տեառն սպանանել զԵգիպտացին՝ և ոչ կամեցան փրկել որդիքն Իսրայելի՝ այլ մերժեցին զփրկիչն ։ Եւ զատաորն ամին Մովսէս յապաղեաց զի սա Աստ-

(1) Մի օրի . 'ի ՆԻ . (420)։ (2) Բժանք 'ի գնալն ։

ուած վճարեալ էր. և գնացեալ Մովսէս յԵգիպտոս տասն հարուածով տանջեաց զԵգիպտոս, փոխանակ տասն փորձանացն Աբրահամու, և փոխարէն հարիւր քառասուն և չորս ամի չարչարանացն Իսրայելի։

Եւ Եգիպտոսն Թարգմանի հալոց երկաթի։ Զառաջինն շինեաց զնա Մեծրայիմ որդի Քուշեայ որդւոյ Քամայ. և կոչեցաւ յանուն նորա Մսր։ Եւ զկնի յԱրիանէ Արիա կոչեցաւ՝ և Եգիպտոս Թագաւոր կոչեաց (1) զնա յանուն գետոյն Եգիպտոս. զի Նեղոս Եգիպտոս կոչիւր, որ է ինքնաբուղխ։ Եւ անուն Թագաւորին ընդ որ պատերազմէր Մովսէս, Փղէսիոս (կամ Փէսիոս) (2) կոչէր, այլք Կանաքարիս անուանեն։

Եւ յորժամ արիւն ըմպէին Եգիպտացիքն տաղտկանային, և երթային ՚ի Գեսեմ, և խնդրէին ջուր՝ և յորժամ՝ տային՝ արիւն լինէր (3) և այսպէս կամէին ՚ի բերանացն Իսրայելի առնուլ ՚ի բերանս իւրեանց, և ՚ի կլանելն իւրեանց փոխէր յարիւն։ Նոյնպէս և զխաւարն նոցա ոչինչ կարէր լուսաւորել, ոչ կրակ և ոչ ճրագ. և նողկոտէին ՚ի ծծել լը-

(1) Ոմանք շինեաց։
(2) Հին օրի. Փասնոս։
(3) Երկու օրի. յաւելու. և Զանազգին ըմպել ՚ի ձեռացն Իսրայելի, և լինէր արիւն։

թանձրութիւնն խաւարեալ օդոյն. և 'ի մահ անդ անդրանկացն Եգիպտացւոց ելին որդիքն Իսրայելի վեց հարիւր հազար արու 'ի քսանամենից մինչև 'ի վաթսուն ամս թըւեալք: Եւ էր յելիցն Ադամայ երեք հազար ութ հարիւր քառասուն և երկու ամ: Եւ ելին յաւուր հինգշաբաթի և անցին ընդ. ծովն 'ի կիւրակէի:

Եւ 'ի ձգելն Մովսէսի զգաւազան 'ի վերայ ծովուն զայն ասաց. Այս Աստուած իմ (1), Որպէս դու հանէր զմեզ Աստուած, և 'ի ձախն ասաց, Ադոնայ տէր Աստուած ընդ մեզ, և խաչանիշ նկարու դրոշմն արար նոցա ճանապարհ նոր՝ ոչ միայն ցամաքեալ՝ այլ և կանանչացեալ լայնացեալ յոյժ, մինչև երկոտասան ցեղքն Իսրայելի աղխիւք իւրեանց հանդէպ միմեանց չուէին:

Նախ եմուտ ցեղն Բենիամինի և ապա ցեղն Ղեւեայ ապա Յուդային և այլոցն՝ և ապա կոչեցան Եբրայեցիք. և տուաւ նոցա նոր լեզու և բարձաւ Եգիպտոսին, և նման է հայրենի լեզուին, զոր և արդ ունին, և այնու երգէին «օրհնեսցուք զՏէր զի փառօք է փառաւորեալ»:

Եւ զկնի նոցա եմուտ Փարաւոն և սու-

(1) Երկու օրի. յանէլան և 'ի յաջ կողմն ձգեալ ասէ:

զամ ՚ի Ջուրան փոխանակ մանկանցն Իսրայելի։ Եւ եհան Ջուրն զպատանեալսն՝ մասն բազում ՚ի կողմն Իսրայելի զինուքն խուրեանց, և իւրաքանչիւր զոէր իւր ծանաչեաց և Թաղեաց. և առ ինն զպատառաւպինս Թիւնս նոցա, և այնու կատարեցին զԱմաղէկ. և յայնժամ կոչմանէ զհանեալսն ՚ի ծովէն առ ինն Եթովպացիքն որք եկեալ էին ՚ի Գանդէս (1) գետոյն, և կատարեցաւ բան Սողոմոնի (2) կերակրել զԵթովպացիսն։

Աստ երեւեցաւ Երակլէս ՚ի Փիւնիկէ և ղգիւտ որթոյ առասպելեալն ՚ի Պինտիտոյ ոչ ՚ի Երովմայեցոյն (3)։

Եւ ՚ի սոյն ժամանակս Աւրոպադոս (4) կոչեցաւ դատաւորանն, և յետ ելիցն Իսրայելի շարժեցաւ Եգիպտոս զեւթն ամիս՝ և ՚ի սաւնս ոչ բնակեցին։ Եւ ասեն թէ յընկղմիլն Փարաւոնի՝ մնացեալքն յԵգիպտոս իւրաքանչիւր ոք զգործս իւր աստուածացուցին, իբր թէ եղեալ նոցա փրկութեան պատճառ։ Ի նոյն ամի ութսներորդի Մովսէսի պարտեցաւ Ամաղէկ հարձորդքն Եսաւայ՝ քինախնդիր լինել (5) նախնւոյն իւրոյ։ Եւ ՚ի

(1) Մի օրի. Գանդէս։
(2) Ոմանք՝ մարգարէին։
(3) Երկու օրի. Իւմայելացւոյն։
(4) Երկու օրի. Աւրիսպադոս։
(5) Եղեալ։

նմին տարւոյ յերկրորդումն ամսեանն ել ՚ի լեառն մթապատ առ տէր ։

Եպողեմոս իմաստնաւոր իբրայեցի ազգաւ ասէ . թէ նախ Մովսէս շնորհիւ Աստուծոյ գիր արար ՚ի վերայ նոր լեզուին, զոր առին . և այն գրովն ետ Աստուած Մովսեսի ՚ի տախտակսն յետ յիսուն աւուր ելից նոցա ։ Եւ յառաջ զԵլից գիրքն գրեաց Մովսէս զոր տեսանէր և գրէր . և ասաց զԱստուած՝ զոր չեմ տեսեալ զմիութիւն արարածոյս որպէս գրեցից . վասն այսորիկ իմանալի և անմարմնապէս արար առաջի նորա զաշխարհս աւուրս քառասուն. և զգալապէս ետ հրաման ձեւակերպել զսա ՚ի կազմութիւն խորանին՝ որ գործեցաւ զեւթն ամիս ընդ եւթն աւուր պատրաստութեանն ։

Եւ ապա գրեաց զգիրս Օրինացն և զայլ երկսն. և ՚ի մուտս երկրորդի ամի ելից կանգնեցաւ խորանն. և անդրէն դարձան կեանք դրախտին . անաշխատ և անցաւ ։ Ի կարճոյ կամէր տանել զնոսա Աստուած յերկիրն պարգեւաց զաւուրս քառասուն յետ լրտեսելոյ զերկիրն, որ էր յերկրորդում ամի ելիցն յորժամ կանգնեցաւ խորանն ։ Բայց զի բամբասեցին զերկիրն օրհնեալ ՚ի Տեառնէ, և ՚ի կոխմանէ ոտից Աբրահամու զարբեալն, որ

լոտ․ տարւոյ. եւ նոցա յաւելլ զամս քառա-սուն. եւ ոչ Մովսէս եմուտ յերկիրն. զի երկ-մտեցաւ եւ զայրացաւ 'ի հարկանելն զվէմն. զի նորա սուգ էր 'ի վերայ Մարիամու քե-ռըն իւրոյ.

Զկնի վեց ամի ելիցն Իսրայելի՝ Թագա-ւորեաց Աթենացւոցն Կրօնոս, յորոյ դստե-րըն անուն կոչեցաւ աշխարհն Ատտիկէ. Տէ-րեաց եւ Միջերկրեաց աշխարհին որ Կապա-դովկիայ կոչեցաւ 'ի Կիկրոպեայ, որ նախ Եքրու կոչէր. Իքսան ամի իշխանութեանն Մովսիսի Թագաւորեաց յԵգիպտոս Եգիպ-տոս անուն ամս վաթսուն եւ ութ. ասեն թէ նա անուամբ կոչեցաւ երկիրն Եգիպտոս. Ապա ասեն շինել տաճար Ապողոնի յԱթէնս, եւ անուանիլ Արիսպագոս. Մովսէս լեալ հա-րեւր քսան ամաց կատարի, եւ այն է սկիզբն Յոբելինին Եբրայեցւոց. Եւ կատարեցան հինգ գիրքն Մովսիսի. որ ունին գործք եւ պատմութիւնք երեք հազար եւթն հարիւր ութն ամաց ըստ Եւսեբեայ.

Եւ առ Յեսու որդի Նաւեայ զգաւա-զանն եւ զիշխանութիւն Մովսիսի, եւ առաջ-նորդեաց ժողովրդեանն Իսրայելի ամս քսան եւ եւթն. Ի վեցերորդ ամի իշխանութեանն Յեսուայ Դանաւոս եղբայր Եգիպտոսի Թա-

դաւորի յիսուն դստերօք զյիսուն որդիս եղբօր իւրոյ կոտորեաց. բայց 'ի Լինկեայ՝ որ յետ նորա թագաւորեաց՝ սա է յամենայն կողմանց աչացեալն։

Ի տասն և ութերորդ ամին Յեսուայ Փիւնիկս և Կադմոս 'ի Թեբայեցւոց Եգիպտոսէ յԱսորիս եկեալ՝ թագաւորեցին Տիւրոսի և Սիդոնի. և անուամբ նոցա կոչեցաւ երկիրն Փիւնիկէ և տունն Կադմեայ։ Եւ զկնի սոցա բերաւ իմաստութիւն յաշխարհըն յայն որպէս Կիկրոպս եբեր զբնակիչս Ատտիկիս քաղաքի 'ի յԱթէնս. և Սերմանեցաւ աղանդն իմաստասիրութեան 'ի Յոյնս (1). և նա արար Յունաց գիր, զոր այլք զԿադմոսէ ասեն թէ Յունաց գիր արար։

Յետոյ կատարեցաւ Հարիւր եւթն ամաց, և դատաւորացաւ Գոդոնիէղ եղբայր Քաղեբայ կրտսեր ամս քառասուն։

Եփրիկանոս երեսուն ամ դնէ 'ի մէջ Յեսուայ և Գոդոնիէղի։ Եւ Յոյնք յիսուն ամ դնեն զԳոդոնիէղի դատաւորութիւնն։ Բայց ութն ամ ծառայեցին Քուսայ զոր սպան Գոդոնիէղ՝ այն այլ ամս է համարեալ։ Յաւուրս սորա շինեցաւ քաղաքն Կիւթանիոյ

(1) Ոմանք փոխանակ ասելոյ 'ի Յոյնս ասեն անդ իմաստա-աղանդն իմաստասիրութեան թեան 'ի Յոյն։

որ կոչին Մարոս, Պարպոս, Թեսաղէ, Մա-գնէսէ, Մակեդոնիա, և այս շինեցան բազմա-քըն Ամփիպոլիս։

Ի սոյն ժամանակի թագաւորեաց Արգ-գիացւոցն Պալասոս, ուստի և Փիլօսոն ե-րեւեցաւ բարբառախօսն անասնոց և թռչնոց։

Յետ Գոդոնիէլի ծառայեաց Իսրայէլ Եգղոնայ արքային Մովաբացւոց տասն և-ութ ամ, զոր յարեալ էն յամս Աւոդայ (1) Եփրեմեացւոյ որ դատեաց զԻսրայէլ ամս ութսուն։

Եւս շինեցաւ Ակատմին Քաղաք 'ի Պա-ղամոնէ. և յութ ամին սորա թագաւորէ Աթենայ Արքիսաթոս. և 'ի քսան ամին սո-րա թագաւորէ Աթուրացւոցն Լամբարի-դոս ամս երեսուն և երկու. և շինեցաւ ըզ-Բաղաքն. և աստ կատարեցաւ չորեք դար-քըն, որ է չորս հազար ամք։ յԱդամայ մին-չեւ ցՄովսէս քսան և հինգ (2) ծնունդ է, և անտի ոչ զծնունդն թուէ ոճով այլ զանո-ւանս դատաւորացն։ Յետ Աւոդայ ծառա-յեցին այլազգեացն ամս քսան. և զօրացաւ Սամեգար և սպան 'ի Փղշտացւոյն վեց հա-րիւր այր մածով արօրոյն. և թագաւորեաց Բարակ Դեբովրայիւ. ամս քառասուն. զայ-

(1) Մի օրի. Յաւդուդայ։ (2) Երկու օրի. քսան և ութ։

ըազդեայն ծառայութիւնն նոցա համարին։ Յաւուրս սորա Յովէն կացեալ ապարապեա Աթենացւոց Յոյնս անուանեաց զԱթենացիս։ Եւ Կիրինէ քաղաք շինեցաւ ՚ի Լիբիայ. և Արգիացւոց թագաւորքն դադարեցին, զորս մեք ոչ գրեցաք յանուանէ։ Միկոնացւոց թագաւորեաց Ակրոն, և ՚ի նմանէ Միկոնացիք անուանեցան՝ որ նախ կոչէին Եգեղացիք։ Ի սմին և եւթն ամին Բարակայի Իղիոն շինեցաւ յԻղիոսէ, և Ասպարտաւոց իրքն, որ ասեն թէ վասն ամենայն կողմանց զուգմարելոյ Թշնամեայն Ասպարտայ անուանեցաւ, որ է ցան ժողովածոյ։

Յաւուրս Բարակայ եկն Միսարայ զօրավարն Յաբենայ և կոտորեցաւ։ Եւ Յայէլ կին Քաբերայ խոխս վարսեաց ընդ փողս նորա որ էր յանկերացն Մովսեսի. և աստ էր տեսիլ հարիւր իմաստասիրացն ՚ի Հռովմ, որք տեսին ՚ի միում գիշերի զմի տեսիլ եւթըն արեգակն. զոր Սիբիլէ կին իմաստուն մեկնեաց ՚ի վերայ եւթն դարուց և եւթն նշանաւոր թագաւորաց. և զվեցերրորդն ՚ի Քրիստոս մեկնեաց, որոյ ձնտաադայթն ծածկէր զայլսն և ոչ մնանէր նման այլոցն։

Եւ թագաւորեաց Միդոն ՚ի վերայ Սիրիկեցւոցն. և Աթուրացւոցն Պանաւոս ամս քառասուն և չորս։ Յետ Բարակայ իշխե-

ցին Մադիամացիք ՚ի վերայ Իսրայէլի ամս եւթն, եւ ել Գեդէոնին կոտորեաց զնոսա հարիւր քսան հազար (անձինս) եւ դադարեաց զԻսրայէլ ամս քառասուն. յայլազգեացն յարքն ՚ի Գեդէոնինեան։

Պեգասոս (1) հիւսն առա երեւեցաւ. որ կարծեցուցանէր շարժուն զպատկերսն զոր առնէր՝ զի նախ զոտսն պատանէր, զոր այլք կից գործէին։ Ի մետասան ամի Գեդէոնի Կիզիկեան քաղաք շինեցաւ. եւ Տիւրոս քաղաք շինի նախ քան զտաճարն Երուսաղեմի երկու հարիւր քառասուն ամաւ, որպէս ասէ Յովսեպոս։

Յաւուրս Գեդէոնին Որփէոս Թրակացին, եւ Պինոս վարդապետն Հերակլի երեւէին, Թամիրաս Փիլամոնեայ։ Յերեսուն երեք ամին Գեդէոնի Թագաւորէ Աթուրացւոյն Սոսարամոս ամս տասն եւ ինն. եւ Թագաւորէ ՚ի Թեբայիս Ամողան երաժիշտ, որ (ասեն) նուագօքն շարժէր զքարինսն։

Զգեդէոնին եւ Թանաատուն որդիսն կոտորեաց Աբիմելէք հարճորդին, եւ իշխեաց Իսրայէլի ամս երեք. եւ յետ նորա Թովղաս ամս քսան եւ երիս. եւ առա երեւեցաւ կինն Հերդրաս (2) անհնարին Սոփեստէսն զոր ասէ

(1) Երկու օրին. Դեդաղոս։ (2) Երկու օրին. Հիդրաս։

Պղատոն ։ Սա Հերակլէս զԻղիոն առաւար հարկանէր և զԱնդէոս սպանանէր զոր երկրածին ասէին ։ Սա Աթենացւոյն Թագաւորեաց Թեսեւս ամս քսան և ութ ։ Սա Աթուրացւոյն Մեթրոս տիրեաց ։

Ի քսան և մի ամին Թովղայ շինեցաւ Տարսուս Կիլիկեցւոց ՚ի Պերսեայ որդւոց Տանայի ։ Շինեցաւ և Կարկեդոն . և Իղիոն առաւ ։

Յետ Թովղայ Յայիր դատաւորէ ամս քսան և երկու. ՚ի վեցերորդ ամին սորա Թագաւորէ Աթուրացւոյն Տուտղոս ամս երեսուն և մի. Յոյնք Ամն Տիտոնիս (1) ասեն. և ասեն Թէ՝ սա էառ զԻղիոն քաղաք. ՚ի սորա վեշտասաներորդ ամին Թագաւորէ Աթենացւոյն Մոսթոս (2) ամս քսան և երկու . և նախ քան զսա Թեսեւս զԱթենացւոց զօրութեանն ժողովեաց . և զխեցեկցան մահու վճիռ եղ ։

Այս երեւեցաւ Փիլոն երաժիշտ , որ արար դասս երաժշտաց ։

Զկնի Յայիրայ ծառայեցին այլազգեացն որդիքն Իսրայէլի ամս ութ . և ոմանք տասն և ութ ամ ասեն , որ յայլոցն խառնեն ։

(1) Մի օրի . Տիթոլուն. մի՝ Տիթոլունիս . մի՝ Տիթանիոս

(2) Մի օրի . Մենեթիւս. մի՝ Մենեթաս ։

Յեփթայէ ամս վեց[1]։

Նոյն ամին թագաւորել զԼակեդեմոն Իմենադոս[2]։ Եսեբոն դատաւորեաց Իսրայելի ամս հինգ[3]։ Սմանք ասեն թէ Աղեքսանդրոս զԵլինէ առեւանգեաց, եւ զԻլիոնականն պատերազմն վասն նախանձու ըղձանն ամ։ Եւ Հերակլէս խոցեալ սրով, այրեաց զանձն հրով։ Իսկ յետ Եսեբոնի կաց յեբրայական մատենին դատաւոր Իղոն, եւ տասն ամ ոչ կայ[4] յեւթանասնիցն ։

Աբդոն ամս ութ, եւ ասա թագաւորեցին Լատինացիք որ կոչին Հռովմայեցիք։ Առաջին թագաւորն Ենեաս անուն։ Յետ Աբդոնի ծառայեցին որդիքն Իսրայելի Փղշտացւոցն ամս քառասուն. եւ յարեաւ Սամփսոն փրկել զԻսրայէլ ամս քսան։

Ի յեւթն ամին սորա եղեն իրքն Հռութայ։ Եւ թագաւորեաց Աթուրացւոցն Տոտէմէոս ամս քառասուն։ Եւ 'ի տասն եւ իններրորդ ամին Սամփսոնի մեռաւ Օրեւս, եւ թաղեցաւ 'ի Կրետէս. զոր ասեն կեցեալ ամս ութ հարիւր ութսուն. եւ վասն շատակեցութեանն Օրեւս կոչեցաւ յանուն աստե-

(1) Մի օրի. առ. դդատաւորութեանն Յեփթայի ամս վեց։
(2) Մի օրի. զԼակեդեմոն 'ի Մենադոյ։
(3) Մի օրի. եւթն։
(4) Երկու օրի. որ չկայ։

թիւնն մինչ 'ի Բարիտոն քուրմն, որ առ 'ի չժուժալ ծախուցն փախստական եղեւ. եւ Աթենացւոց թագաւորութիւնն յայլ ազգ փոխեցաւ. զի Մելանթոս Թիմիտոէ յաղթեաց Պայազատի. և տօն սկսան կատարել խաբեբայից, զի խաբէութեամբ յաղթեաց:

Յետ մահուանն Հեղեայ եղեւ տապանակն 'ի տան Ադեդարայ[1] ամս քսան. դարձեալ այլազգեացն. և դատաւորեաց Սամուէլ ըստ Եբրայեցւոցն ամս քառասուն:

Բայց 'ի քսան ամի իշխանութեան նորա խնդրեցին իւրեանց թագաւոր և կատարեցաւ ժամանակ դատաւորայ, և սկսաւ թագաւորայն: Բայց Սաւուղայ ժամանակն Սամուելի է համարեալ[2]: Սաւուղ թագաւորեաց ամս քառասուն. յերրորդ ամի թագաւորութեանն իւրոյ կոտորեաց զԱմաղէկ:

Եւ 'ի տասներորդ ամի թագաւորութեան նորա ծնաւ Դաւիթ՝ և 'ի քսան երեք ամի թագաւորութեան նորա օծաւ Դաւիթ: Եւ 'ի քսան և ութերորդ ամին իւրոյ Դաւիթ սպան զԳողիաթ: Եւ յերեսուն

(1) Երկու օրի. Ամինադաբայ. ըստ Աստուածաշունչ գրոց:

(2) Հնագոյն օրի. ունի այսպէս. Եւ 'ի քառասուն և երկու ամի կենացն Սամուէլի և 'ի քսան ամի իշխանութեան նորա:

և ՚ի մի ամի թագաւորութեան իւրոյ Աւուդ մարգարէանայր ՚ի Նաւաթհռամա, մարգարէութիւն չար՝ տան իւրոյ, թէ Դաւիթ է թագաւորելոց։ Յերեսուն ամի ծննդեան Դաւթի մեռաւ Սամուէլ, և յետ եւթն ամի մահուանն Սամուէլի սպանան Սաւուղ, Յովնաթան, և Դաւիթ արքայացաւ ՚ի Քեբրոն եւթն ամ։ Սա առ զԵրուսաղէմ և շինեաց զՍիոն, և թագաւորեաց անդ ամս երեսուն և երիս՝ և ՚ի տասն ամի թագաւորութեան իւրոյ եհան զտապանակն ՚ի տանէն Աբեդարայ (1), և ՚ի բերելն մեռաւ Ոզիա, զի արգելուլ կամէր զշնորհն Աստուծոյ որ ՚ի տապանակին ՚ի սիրելոյն իւր յԱդամայ. զի անկաւ ՚ի վերայ գերեզմանի նորա, որպէս սիրելիք առնեն խանդաղատեալ գթովք իւրեանց, որպէս ասաց Սուրբն Յակոբ Սեռհայեցին։ Եւ այլք այլ պատճառ ասեն։ Եւ էր Քահանայապետ Աբիաթար և մարգարէք Գան (2) և Ասափ։ Եւ Նաթան որ խնամէր զԴաւիթ միշտ կալով ընդ նմա. և մինչ էր Նաթան ՚ի Գաբաւոն, յայտնեցաւ նմա մեղքն Դաւթի ՚ի Բերսաբէ՝ և եկն փրկել զնա. և ՚ի գալն պատահեաց նմա մեռեալ մի, և ՚ի թաղելն զնա յամեաց

(1) Ամինադաբայ.

(2) Երկու գիր. Գադ։

և գործեցաւ շնութիւնն. և դարձաւ տրտմութեամբ. և 'ի սպանանելն զՈւրիա, եկն յանդիմանեաց զնա 'ի վերայ երկուց չարեացն. և 'ի զղջմանսն՝ թողութեան յոյս ետ նմա. և նշան ետ զմահ առաջին որդւոյն Բերսաբեայ. և երկրեաւ Դաւիթ յԱստուծոյ՝ և ապաշխարեաց զամենայն ժամանակս իւր:

Յաւուրս Դաւթի Բաղկեդոն շինեցաւ 'ի Բաղկեդոնէ Տիւրացւոյ. նոյնպէս և Սամոս շինեցաւ: Յերեսուն և ինն ամի թագաւորութեանն իւրոյ Դաւիթ ընտրեաց 'ի Ղեւտացւոց անձն հարիւր ութսուն և ութ անձինս, և արար դասս քսան և չորս, երկոտասան այր 'ի դաս մի սաղմոսասաց և սպասաւորս տապանակին: Եւ յամենայն ժամանակս ետ պատերազմ ընդ այլազգիս մեծաւ յաղթութեամբ: Կեցեալ ամս եւթանասուն՝ թագաւորեալ ամս քառասուն՝ կատարի:

Եւ թագաւորեաց Սողոմոն որդի նորա ամս քառասուն. երկոտասան ամաց էր 'ի թագաւորելն իւրում, և յառաջին ամին եղև նմա որդի Ռոբովամ 'ի Նաամայէ կնոջէ յԱմմանացւոյն. սա 'ի չորրորդ ամի թագաւորութեան իւրոյ, սկսաւ շինել զտաճարն, և կատարեաց զնա ութ ամ. 'ի չորս հարիւր ութսուն և մի ամի ելիցն Իսրայելի յԵգիպտոսէ:

ամենէր, զի լուծք երինջոյ կոխէին զխոտուաշէմ, և զտաւարն, և զքահանայսն. և առայ
Սողոմոնի թէ կանայք դստերք հեռացուցանեն զքեզ ՚ի տեառնէ. որպէս և եղեւն։

---

## ԳԼՈՒԽ Դ.

Յաղագս թէ Դշխոյ եկն առ Սողոմոն։

Աւր սա եկն Դշխոյն հարաւոյ զոր ասեն յազգէ զաւակին Նոյի Ասաղկէ սերեալ, որ և իշխան (1) կանայք կողմանցն հարաւոյ ժառանգութիւն առեալ ՚ի նախահայրէ տէն Նոյէ մինչեւ ցայսօր, և անուն Դշխոյին Նոյայ կոչի. որ եկն ՚ի հանդէս իմաստութեան նորա և փորձեաց զնա բանիւք ՚ի հարցուածս առակաց զոր կարգեսցուք աստ սակաւ ինչ։

Ա. Նախ եհարց յաղագս Աստուծոյ։ Ո՞ ինչ է Աստուածն քո. և ո՞ւմ նմանն է և որո՞վ կերպարանի։

Ասէ Սողոմոն Աստուածն իմ Տր է, և ամենայն էից վեհագոյն, և յոչ ինչ կերպարանի. զի ամենայն ինչ եղեալ, և հակառակ

(1) Մի օրին. իշխեին.

ունի, և իմ Աստուածն անեղ և անմերձանալ է։

Բ. Որպէ՞ս շարժի գունդն երկնից. յա՞ջ թէ յահեակ, բոլորին շրջիլ թէ մասամբ։

Երկուս օրինակս ունի անուանադրութեան՝ որ շրջաբոլորն երկնից յարեւելից յաջակողմն շարժմամբ ընդ հարաւ յարեւմուտս գնայցեալ՝ դառնայ ընդ հիւսիսի ՚ի նոյն՝ հրամանաւ հարկի ընդ տիւ և ընդ գիշեր շուրջ մի կատարէ անմոլար գնդիւն աստեղաց։ Իսկ մոլորակքդ կոչեցեալ յամանց շրջագային յարեւմտից ընդ ձախակողմն կոյս յարեւելս. եւ իւրաքանչիւր ըստ բարձրութեան՝ և ըստ ցածութեան՝ ըստ նեղութեան՝ և ըստ արձակութեան՝ զօտեացդ կատարեն զշուրջն իւրեանց յամաց երեսնից մինչեւ յաւուրս երեսուն, ՚ի Կռօնեայ որ է Երեւակն մինչեւ ՚ի Սահրա, որ է Լուսին։

Գ. Նախ քան զէանալն ամենայնի ու՞ր էր ամենարարն, և զկնի լուծմանն ու՞ր դադարէ անշարժականն։

Յառաջ քան զէանալն ամենայնի, կայր միշտ Նա ՚ի յինքեան, և լինէր (1) էական բնութեամն և զուարձանայր յանեզրական

(1) Այլք՝ լի էր էական բնու։

քարինն։ Եւ այժմ 'ի նա են, և կան արա-րեալքս, և յետ լուծմանն մեզ նոյնպէս 'ի յմիքեան և 'ի սրբոյն հոգւոյն և սուրբքն 'ի նա, միաւորէ և միաւորի։

Դ. Զի՞նչ է զի կին Հնդկաց յետ ու-տելոյ նուռն ոչ եւս յղանայ։

Նուռն ցրտին է և գիճին. և Հնդկաց երկիրն ջերմին է և չորին. և կին Հնդկացի ցրտին է և գիճին. բնութիւն կնոջ և նռան խառնեալ 'ի միմեանս հակառակ բնութեան երկրին՝ ոչ յղանայ։

Ե. Ո՞յր հնդուգին ըմպու անպտուղ է սերմամբ։

Բնութիւն գինւոյ ջերմին է և չորին՝ և յաւելու քուն. և բնութիւն առն նոյն-պէս, և յաճախեալ առն 'ի հակառակն՝ լինի անսերմն։

Զ. Իմաստութիւն ընդհանուր է թէ մասնական. և բնութեամբ է թէ ուսմամբ. թէ պարգեւօք։

Իմաստութիւն ընդհանուր է սեռի, և մասնական է տեսակօք, և է բնութեամբ գոյից շնչաւորաց և անկոց և բուսոց։ Իսկ մարդկան ազգի է 'ի բնական խառնուածոյ (1). և է ուսմամբ յաշխատանաց գոյացեալ 'ի

(1) Երկու օրի. բնական 'ի խառնուածոց։

բնութեանց գիւտից· և է պարգևօք 'ի վե-րոյ տուողին Աստուծոյ. և այս ոչ է հա-սարակաց, այլ ընտրութեանք արժանեաց:

Առակ. Տունկն թագաւորդ, և ոչ 'ի բը-նութենէ, և փառեւայն նմա շառաւիղք յոռոգմանէ բայց և հիւսեցան պսակք ա-նարժան որդւոց:

Լուծումն. Լուեալ է քո զի Աստուած վառեալ մորենեաւ յայտնեցաւ Մովսիսի, և յերեւմանէ անտի հարցուածք և դար-ձուածք պատասխանաց եղեն:

Առակ. Մայր օտար և որդիք պղծութեան սպանող և սնուցանող անօրինաց, յայտնեալ գողութիւն և ապրեալ թագաւորք արա-տովք:

Լուծումն. Զհարքն իմ և զիս այպանես, Թամար կարծեալ սպանող արանցն մնայց ըն-հայրն իմ գողացեալ 'ի Յուդայէ:

Առակ. Ո՞ր է գարշն և զազիրն՝ որ փախու-խեալ ամպօք սնուցանէ զթագաւորս:

Լուծումն. Ի դաշտանէ կանանց թագա-ւորք և աղքատք մնանին պատուելի տոհմս ազգաց (1):

(1) Մի օրէ. 'ի դաշտանէ· կանանց փոխեալք 'ի տոհմս ազգաց թագաւորք և աղքատ մնանին: Ն. Ա. մի օրէ. 'ի դաշ-տանէ կանանց թագաւորք և աղքատք մնանին պատուեալք 'ի տոհմս ազգաց:

Առակ. Խորտիկայն ըմպահանջոյն յաճա-խեաց զխոհականերոն. յայլայլս զանազանու-թեան համայն աշխարհի և աշխարհէ, և մի է ճաշակն:

Լուծումն. Եթէ ունիս ազնիւ խոհագործ յաւել 'ի հացարս մեր, սակայն որպէս թը-ւի քեզ մի է ճաշակն. բայց օտար է անօ-րէնն 'ի տեառնէ մերմէ (1) և դառն է մեզ 'ի դատաստան:

Առակ. Փեսայն աներեւոյթ և հարսանի-քըն անփոփոխ. և սենեակն անարատ և կա-տարեալ հարսինն դիւրի ամօթոյ մեծի:

Լուծումն. Մի նախատեր զժողովուրդս մեր անմխիթարապէս հարսնացեալ Աստուծոյ անճառելի խորհրդաւք. և ոչ դիւրինք ամօթոյ պռունկելով յօտար Աստուածս. և ձեռք է ամաչելն պաշտողացդ զթուչութնն Թըրխանէ որ է արմանն: Բայց առ և դու 'ի մէնջ ա-ռակ մի այդու:

Աշտարակ մի զօրաւոր և անօթ վիրաւո-րութեան. և 'ի նմա տաճար եռանկիւնի որոյ քարինքն յմնութիւն, և հիմունք նորա սէր. շինուածք նորա ջուր, սկզբունք արձակմանն զգուանք՝ ձեռղունք նորա կաքաւք. սիւնք նորա ուրախութիւն. գլուխ նորա օտար, և

(1) Մի օրի. իւրմէ, մի օ. զի. իմէ:

բնակչաց նորա ոչ գոն անձինք. և հետե-
ւողք նորա ընդ վայր, և մահարձանք նորա
'ի նմանէ և յինքն. և պատուհանք նորա մեկ-
նակք. և գործիք նորա հակառակ են կազ-
մուածոյն (1), և պահապանք նորա ոչ երևին։

Իսկ սակս Դշխոյն լուեալ էաք զքեղ ի
մատուն, այլ ծածկատես ոչ կարծէաք. և
արդ գիտեմ (2) զի Աստուածն քո միայն է Աս-
տուած երևելեաց և աներևութից։ Գո-
վեաց Դշխոյն և զկազմուած տաճարին. և
զսպասաւորս տաճարին, որք ըստ ամսոյ-
պաշտէին առաջի տեառն երկոտասան դասք
քսան և չորս հազար 'ի դաս մի, և վեց հա-
զար դատաւորք. և չորս հազար քնարեր-
գուք և չորս հազար դռնապանք, զոր Դա-
ւիթ հայր նորա կարգեալ էր. և չափ տա-
ճարին վաթսուն կանգուն, և քսան լայն,
և հարիւր քսան՝ բարձր. տասն սեղան ոսկի
և տասն աշտանակ ոսկի. և երկու սիւն ար-
տաքոյ երեսուն և ութն կանգուն յաջմէ և
'ի ձախմէ, որոց անուանք Բոոզ և Յաքում,
որք ասին զօրութիւն և ուղղութիւն։ Իսկ
Սուրբն սրբոց քսան կանգուն լայն, և քսան
երկայն՝ ընդ որ շատ զարմացաւ Դշխոյն։

(1) Մի օրի. կազմածոյն։ հաւատամ, եթէ։
(2) Մի օրի. խնացայ ես.

*Եւ գնաց 'ի նմանէ բազում օգտութեամբ ։*

*Եւ Սողոմոն զկնի մեղացն զղջացաւ, և յիշեաց զպատուէր հօր իւրոյ, և մտեալ 'ի սենեակ ապաշաւեաց, և մեռաւ յիսուն և երկու ամաց, թագաւորեալ ամս քառասուն։*

*Եւ էառ զթագաւորութիւնն Ռոբովամ որդի նորա ամս տասն և եւթն. և բաժանեցան տասն ցեղքն և եղին իւրեանց թագաւոր զԵրոբովամ որդի Նաբատայ 'ի ցեղէն Եփրեմի ։ Եւ Յուդա և Բենիամին եղեն ընդ Ռոբովամու և անուանեցան Յուդայեանք և տասն ազգն կոչէր Իսրայէլ եւ Եփրեմ ։*

*Յաւուրս յայսոսիկ մարգարէքն էին Սադովկ և Աքիաս սիլոնացի և Սամեայ. եւ խմաստասէրքն Հոմերոս և Իսադոս (1) զոր այլք քան զսա յառաջ պատմեն ։*

*Եւ էր քահանայապետ Սադովկ 'ի ցեղէն Եղիազարու և ութերորդ յԱհարոնէ ։ Եւ 'ի տասն և եւթներորդ ամին Ռոբովամու ել Սուսակիմ արքայ Եգիպտոսի յԵրուսաղէմ և կողոպտեաց զտաճարն Տեառն և գնաց ։*

*Զկնի Ռոբովամու թագաւորեաց Աբիա որդի նորա ամս երեք ։ Եւ յետ նորա որդի*

(1) Մի օրի. Սիոդոս. մի դոս. մի օրի. Հոմերոս ա- օրի. Հոմերոս անուն և Սի- նուն և Իսեդոս ։

նորա Ասա ամս քառասուն և մի ։ Իսկ Իսրայելի թագաւորեաց Յերոբովամ ամս քսան և երկու. և զկնի նորա Նաբատ որդի նորա ամս երկու, և յետ նորա Բաասա ամս քսան և չորս։

Ի սոյն յաւուրս Ասայի և Բաասայ էր քահանայապետ Աքիմելէք ՚ի ցեղէն Իթամարայ։ Ի սոյն մարգարէք Աքիա, Սամիա և Յովէլ. Ազարիա որ և Ադդովլանուանի, և Յով որ յանդիմանեաց զԲոբովամ, կէսք զՕդարիա ասեն։ Ի սոյն Եպիփան՝ Իուդ կոչէ, զոր այլքն ատիեծն։

Ի տասն և եւթն ամին իւրոյ Ասայ այրեաց զպատեալ կուռսն յԵրուսաղէմ, և զմայր իւր եհան ՚ի տիկնութենէն զի պաշտէր զԱստարոտն։

Ի քսան և իննն ամի նորա թագաւորեաց Ելայ ՚ի վերայ Իսրայելի ամս երկուս. և Զամբրի ծառայ նորա սպան զնա և թագաւորեաց աւուրս եւթն, և յարեան երկու արք որք Ամրի և Փամնի թագաւորել. և աջողեցաւ թագաւորել Ամրիայ ամս երկոտասան. սա գնեաց զլեառն Սամիրոն ՚ի Սամարիայ, և շինեաց քաղաք, և կոչեաց Սամարիայ յանուն տեառն լերինն, և յետոյ կոչեցաւ Սեբաստիա. և այժմ ասի Սամլուղ։

Իսկ Փամնի այրեաց զարքունիսն ՚ի Սամա-

րիայ և ինքն ընդ նմին այրեցաւ. 'ի քառասուն և մի ամին Ասայի թագաւորեաց Եգիպ-տոս Փալքիրիս (1):

Եւ յետ Ասայի թագաւորեաց Յովսա-փաթ որդի նորա ամս քսան և հինգ: Ի յեր-րորդ ամին սորա թագաւորեաց Իսրայէլի Աքաաբ որդի Ամրեայ ամս քսան երեք. սա առ կին զԵզաբէլ դուստր Եթբաղի թագա-ւորին Տիրոյ և Տաղացի (2) և շինեաց զԵրի-քով զնզովեալն 'ի Յեսուայ. և Աբիրոն անդ-րանիկ նորա մեռաւ 'ի սկիզբն շինուածոյն: Եւ Սաւ կրտսերն 'ի դնել դրանն. և այլք զԻզան Բեթելացի ասեն շինիչ Երիքովի, և այս որդւոցն հայր և զՍաւէ Օբեծել կոչեն:

Յերկրորդ ամի Յովսափաթու թագա-ւորէ Լատինացւոցն Կարպանդոս ամս տասն և երեք. և չորս ամին թագաւորէ Աթենաց-ւոցն Ամիւլոս: Եւ 'ի նոյն ամի թագաւորէ Աթուրայւոց Ուրբանոփոս ամս յիսուն: Եւ յերեքտասան ամի նորա թագաւորէ Ե-գիպտացւոցն Իսաքարոս ամս վեց, և 'ի քը-սաներեք (3) ամի նորա թագաւորէ Լատինաց-ւոցն Ագրիպաս ամս քառասուն և մի. և 'ի քսան և հինգերորդ ամին սորա թագաւորէ

(1) Ոմն փալքերոս. այլ ոմն փալքիրոս:
(2) Տիր և Ծայդան, (3) Չորս երկ. քսան և հինգ:

Իսրայէլի Ոքոզիա ամ մի։ Եւ յետ նորա Յովրամ եղբայր իւր ամս երկոտասան։ Եւ ՚ի նոյն ամի Թագաւորէ ՚ի վերայ Յուդայ Յովրամ ամս ութ։ Եւ զկնի նորա Ոքոզիա ամ մի։ Եւ յետ նորա Ոքոզիայի մայրն ամս եւթն։ Եւ յեւթներրորդ ամին Ովրամայ վերացաւ Եղիա։

Եւ Գոդողիայ կին Յովրամայ քոյր էր Աքաաբու, և Տէր սպան զՈվրամ զի սպան զեղբարս իւր. և յաւել ՚ի չարն, և առ ըզ-Գոդողիայ կինն կատարիչս։ Ոմանք դաւա-տըք ասեն զնա Եզաբելի։ Եւ առաքեաց Ե-ղիսէէ և օծ զՅէու արքայ ՚ի վերայ Իսրայէ-լի որդի Ամղեայ որ սպան զՈվրամ որդի Ա-քաաբու, և զՈքոզիա որդի Յովրամայ. և սպան զԱքաաբու զեւթնասուն երկա-որդիսն, և զկնի տասն և եւթն ամի սպան զԱքաաբու զկինն զԵզաբէլ։

Իսկ Յովիդայ քահանայ սպան զԳոդո-ղիա. և Թագաւորեցոյց զՅովաս վեցամեայ ՚ի վերայ Յուդայ ամս քառասուն։ Եւ Յո-վիդիա եկեաց միայն յետ Ովսեսի ամս հա-րիւր երեսուն. և մարգարէանայ Ազարիա որ-դի իւր։ Յէու Թագաւորեալ ամս քսան և ութ յետ նորա Յովաքազ ամս տասն եւ եւթն։

Յերեսուն ամին Յովաս սպան զԱզարիա մարգարէ, և յերեսուն և եւթներորդ ամի նորա վախճանեցաւ Եղիսէ մարգարէ։

Եւ յայնմ ժամանակի թագաւորեաց Աթուրացւոց Սկրապանիս ամս քառասուն և երկու։ Եւ Եգիպտացւոց թագաւորեաց Եւքինոս. և Լատինացւոց թագաւորեաց Հռոմելոս, որ և ամբարտաւանեալ այրեցաւ 'ի բարկութենէն Տեառն արքունովքն։

Յերեսուն և մի ամին Յովասայ եղև դատաւոր Աթենացւոց Բարակլես ամս տասն եւ հինգ. և 'ի քսաներորդ ամին սպանաւ Յովաս 'ի ծառայից իւրոց, զի 'ի բաց 'ի տեառնէ եկաց յետ մահուանն Յովիդայ. և սպան զորդի նորա զքահանայ եւ զմարգարէ։

Եւ թագաւորէ 'ի վերայ Յուդայ Ամասիա որդի Յովասայ ամս տասն և հինգ։ Սա Աստուծով յաղթեաց Եդովմայեցւոց, և բերեալ զԱստուածս նոցա պաշտէր։ Եւ 'ի սորա տասներորդ ամին թագաւորեաց Իսրայելի Յովաս ամս տասն և վեց. և 'ի վերայ Լատինացւոց Նումինինոս (1) ամս քառասուն և հինգ։ Եւ Եգիպտացւոց Եսթրոս ամս տասն և վեց։ Եւ աստ եղև դատա-

(1) Չոր. օրի. Նուաբինոս։

ւոր Աթենացւոց Արիփոն ամս քսան ։

Ի սման և իններրորդ ամին Ամասիայ թագաւորէ Աթուրայեցւոցն Թոնոսկոն Կոնկերոս, որ ասի յունարէն Սարդանի՝ ամս քսան ։ Յորոյ ՚ի ժամանակս քարոզեաց Յովնան մարգարէ , և զղջացաւ և դարձաւ յերկիւղածութիւն . որ և զԿնի ապրեցոյն Աթուրայ որ է Նինուէ, պատերազմեցաւ ընդ Արբակէք մադացին որ է Մար ։ Եւ տեսեալ թէ յաղթի ՚ի Մարէն , այրեաց զանձն հրով և բարձաւ թագաւորութիւնն յԱթուրայ, տեւեալ ամըս հազար հարիւր իննսուն և վեց ։ Եւ. ՚ի խափանուածէ թագաւորութեանն Քաղդէացւոց որ է Բաբելացւոցն յառաջին ամէնի Կ իլօսի հօրն Նինոսի լինին ամք հազար երեք հարիւր ։ Եւ Արբակէս Մար Արբակիս օգնութեամբն հայոց եբարձ զթագաւորութիւնն Աթուրայեցւոց. և փոխեցաւ ՚ի Մարս , և զԿնի մահուանն Արբակայ Արքակոյ թագաւորէ ՚ի Նինուէ որ զառաջին Աթուր կոչէր . և ՚ի Նինոսէ Նինուէ կոչեցաւ . Փուլ անուն Որ ամբարձ զգուխ իւր՝ և կոչեցաւ թագաւոր յորոյ Տաղմանասար և Թակղաթքաս(1) և Սենեքերիմ թագաւորք գերիչք Իսրայելի ։

(1) Ոմանք Սաղմանասար և  և Թակլաթբաղասար ։

Յիշեն զսոյանէ Աստուածայինն գիրք, որք տիրեցին Միջագետաց եւ Կապադովկիոյ եւ Կիւլիկոյ եւ Փիլիպեցւոյ. եւ 'ի սոցանէ են Նաքոնոս եւ Նաքուբողոս եւ Նաբուպալասար եւ Նաբուգոդոնոսոր. եւ թուին ամք սոցա 'ի Փուլայէ մինչեւ յԱղեքսանդր Մակեդոնացին չորս հարիւր քսան եւ չ րս: Իսկ զկնի մահուանն Աղեքսանդրի, Սելեւկիոս, Անտիոքոս, Կիլիքոս, որ զԿիւլիկիա շինեաց, Սուրոս՝ որ զՍուրիա շինեաց, յորմէ Սուրիք կոչեցան Քաղդէացիքն:

Ի տասն եւ ութերորդ ամին Ամասիայ թագաւորէ Րոբովամ 'ի վերայ Իսրայէլի ամս քառասուն. եւ յԵգիպտոս Տուլութիս ամս երեքտասան: Ոմանք ասեն թէ Յովաս արքայ Իսրայէլի սպան զԱմասիա արքայ Յուդայ, զի չքաւ պատերազմել ընդ նմա. եւ յետ մահուանն Ամասիայ եկին Իսրայէլացիքն եւ քակեցին 'ի պարսպէն Երուսաղեմի չորս հարիւր գիրկս, եւ առին զոսկին եւ զարծաթն որ կայր 'ի տաճարին տեառն եւ 'ի տան արքունեացն, եւ դարձան 'ի Սամարիա:

Եւ Ամասիա թաղեցաւ յԵրուսաղէմ, եւ թագաւորեաց Ազարիա՝ որդի նորա ամս յիսուն եւ երկու:

Եւ առաջին ամին Ազարիայ որ եւ Ոզիա ե-

կաց դատաւոր Աթենայ Թեսպիոս ամս քը-
սան և եւթն : Եւ յԵգիպտոս թագաւորեաց
Իսփս : Եւ 'ի տասներորդ ամին Ոզիայ թագա-
ւորեաց Լատինացւոցն Փրոկաս : Եւ 'ի քսան
և ութերորդ ամին Ոզիայ եկաց դատա-
ւոր Աթենայ Աքմիտոդիր . և 'ի քսան և ինն
ամին Ոզիայ թագաւորեաց Իսրայէլի Զա-
քարիա ամս վեց : Եւ զկնի նորա Սեղղում ա-
միս մի, և յետ նորա Մանայեմ ամս տասն :

Եւ 'ի քսան և չորս ամի թագաւորու-
թեան իւրոյ Ոզիայ արկ խունկ 'ի տաճարին
տեառն և բորոտեալ եղեւ . և արգել 'ի մար-
գարէանալոյ տէր զԵսայի վասն մեղացն Ո-
զիայ . և ժամանակ լռութեան նորա ամք
քսան և ութն, մինչեւ մեռաւ Ոզիայ, եւ
վերստին մարգարէացաւ վաթսուն և մի ամ :
Եւ նախ քան զլռութիւն նորա, քսան եւ
չորս ամ էր մարգարէութեան նորա բովան-
դակ ութսուն և եւթն ամ . յերեսներորդ
երրորդ ամի թագաւորութեանն Ոզիայ թա-
գաւորեաց յԵգիպտոսի Պսամոս ամս տասն.
և յերեսներորդ չորրորդ ամին Ոզիայ ել
Փուլ արքայ Քաղդէացւոց 'ի Սամարիայ .
և առ 'ի Մանայեմայ հազար քանքար ոսկւոյ,
և դարձաւ :

Եւ 'ի քառասներորդ ամին Ոզիայ թա-

գաւորեալ Իսրայէլի Փակէէ ամս տասն ։ Ի քառասներրորդ առաջներրորդ ամին Ոզիայ Թագաւորէ Մակեդոնացւոյն Կաւոս երկրորդ Թագաւոր ամս երկոտասան . և 'ի վերայ՝ Ափնուէի Թագաւորէ Թուկղաթփաղասար ամս երեսուն և եւթն ։ Ի քառասուն և վեցերրորդ ամին Ոզիայ Թագաւորէ Եգիպտոս Կուքր ամս քառասուն և չորս . և 'ի քառասուն և ութերրորդ ամին Ոզիայ ել Թուկղաթփաղասար 'ի վերայ Իսրայէլի, և գերեաց զմեծ մասն տասն ցեղիցն՝ և իշխանք մեծամեծք գերելեցան որոց անուանք այսոքիկ էին Աբէլ. Բոլթմաք, Ենոք, Կանծ, Եսուր, Գեղաթ, Գաւլթի, և զբոլոր վիճակըն Նեփթաղիմայ ։

Եւ յորժամ մեռաւ Ոզիա երեւեցան փառքն տեառն 'ի Տաճարին, որ մեկնեցաւ 'ի խնկարկութեան նորա և Թագաւորեաց Յովաթամ որդի Ոզիայ ամս վեշտասան. սա արար ուղղութիւն առաջի Տեառն, և հնազանդեաց զԱմնացիս ։

Յերրորդ ամին Յովաթամայ Թագաւորէ Մակեդոնացւոյն Տունխիմո ամս երեսուն և ութ՝ սոքա են ազգայինք հայոց Պորփիւրոս (1) Պուեաէս ։

(1) Հինգ օրի. Պորփիւրոս

Զայսու ժամանակաւ էին և մարզպանք Նաայի, Շմալու, Ովսէէ, Յուշկան ։ Եւ Բոկքոր արքայ Եգիպտոսի օրէնս դնէր, առ որով ասի թէ գառն խօսեցաւ ․ եւ աստ սկսաւ Լիւդացւոց թագաւորութիւնն ։

Զկնի Յովաթամու թագաւորէ Աքազ որդի նորա ամս վեշտասան. սա արար չարիս առաջի տեառն . և Փակէէ արքայ Իսրայէլի առեալ ընդ իւր զՌասոն արքայ Դամասկեայ, և պնդեցաւ յԵրուսաղէմ կոտորեաց անդ երկոտասան բիւր ։ Եւ առաքեաց Աքազ վարձեաց զԹակլա, և եկն ի Դամասկոս և սպան զՌասոն և գերեաց զԵդովմայեցիս և գնաց ։

Եւ յերկրորդ ամին Աքազու ապստամբ եղեալ Ովսէ սպան զՓակէէ, և թագաւորեաց Իսրայէլի ամս ինն . և յութերորդ ամին Աքազու թագաւորեաց ի Նինուէ Սաղմանասար ամս չորեքտասան . և եկն ի վերայ Իսրայէլի, և արար ընդ հարկաւ և առեալ գերի, գնաց ։

Եւ առաքեաց Յովսիա առ Աբիմելէք քուշացին գալ օգնել նմա, և լուեալ Սաղմանասար եկն ի վերայ Սամարիայ յեւթներորդ ամի թագաւորութեանն Յովսեայ և յութերորդ ամին Աքազու . և պաշարեաց

ամս երկու. և առ զնա և գերեաց զոստան ցեղ-
ոյն, և տարաւ 'ի Բաբելոն. և բարձաւ թա-
գաւորութիւնն Իսրայելի որ տեւեաց ամս
երկու հարիւր և յիսուն. և լինի յԱդամայ
չորս հազար երեք հարիւր երեսուն ամ։

Յայսմ ժամանակի դատաւորէ Աթենա-
ցւոյն Եսքողոս, առ որով եղաւ ագոնն,
որ է մրցութիւն, Ողոմպիադն կոչեցեալ.
որով Հելլենացիքն վարեն զժամանակս իւ-
րեանց. և հնարեցաւ զայս Իփիտոս. որ-
պէս թէ 'ի հրամանէ Հերակլեայ առ 'ի
խաղաղել խիստ զպատերազմ. կացէք առէ
մինչեւ 'ի տարին ուրախութեան և ապա
ցուցցէ իւրաքանչիւր ոք զոյժ իւր և զար-
ուեստս և պսակեսցի։ Բայց Եւսեբի առ
Յովաթամու արքայիւ առէ Ափրիկանոսի
բանիւ։ Բայց առնեն զագոնն 'ի հինգ ա-
մին յորժամ չորքն լնու, և 'ի հնգէն սկսա-
նի և առէ նահանջ։

Իսկ զգերին Իսրայելի բնակեցոյց Սաղ-
մանասար 'ի լերինն Մարաց, և առաքեաց
Ասորիս 'ի Սամարիայ տեղապահս. որպէս և
ասուն է։ Եւ մարգարէք էին Եսայի և Յով-
ւէլ։ Իսկ Արիստոտէլ 'ի Մակեդոնիայ պա-
րէտ երեւէր։

Իսկ զկնի մահուանն Աքազու թագաւո-

րեաց Եզեկիա որդի Նորա ամս քսան և ինն. և Թագաւորեաց Լատինացւոցն Հռոմուլոս, և շինեաց զՀռովմ յանուն իւր. կամ ըստ ոմանց յանուն դստերն որում անունն էր Ռոմէ, և մինչեւ ցայս Լատինացիք կոչէին Թագաւորք եւթն և տասն. և են արդ Հռովմայեցիք:

Յայսմ ժամանակի շինեցաւ Սոդոմ կղզի որոյ պտուղք ծառոցն մաղմաք (1) էին, և շինեցաւ Սաղինոս քաղաք 'ի Սիկիլեայ. և Տիւթանիայ, Կիզիկիոն. և 'ի Պոնտոս Տրա- փոր քաղաք և յԻտալիայ: Կալաւ Նոյն և Լիւկիայ: Եւ սոսա սկսաւ Թագաւորութիւն 'ի Լակեդեմոն ամս երեք հարիւր քառասուն յերկարեալ. որոյ առաջինն Եբիոս անուն. և սոսա շինեցան 'ի Հռովմ տաճարք քսան և չորս. փողոցք երեք հարիւր քսան և չորս. կուռք ոսկեղէնք ութսուն, փղոսկրեայ պատկերք վաթսուն և չորս. դարապասք քառասուն և վեց հազար. իշխանաց նիստք հազար եւթն հարիւր յիսուն և հինգ. փողերանկք ջուրց՝ հազար երեք հարիւր յիսուն երկու. խաղաղք՝ երկու հազար եւթանասուն և չորս. ալրմունք պղնձիք՝ երեք հազար եւթն հարիւր ութսուն

(1) Թերեւս մաղաղք:

և ևւթն. Արուպագոսք՝ երկու. և արտաքոյ քաղաքին գայր շուրջն քառասուն մղոն, և 'ի մէջ քաղաքին 'ի չորից կողմանց երկոտասան երկոտասան. և է միջն երկոտասան ոտն որ է հինգ դարձս եղանց արօրաձգայ. և Թիւ տրանց՝ երկոտասան բիւր. և երկրորդ անգամ Թուեալ գտան բիւրն, և երրորդ անգամ Թուեալ գտան ևւթն բիւր. և չորրորդ անգամ Թուեալ գչորս հարիւր տասն և վեց բիւրն: Այլ 'ի Թագաւորութեանն Կղօդեայ վեց հարիւր յիսուն և չորս բիւր:

Իսկ զՍամարացիսն ուտէին առիւծք. և առաքեաց նոցա Սաղմանասար քահանայ մի Եզր անուն որ եկեալ ուսոյց նոցա զօրէնսն, զհինգ դիրսն Մովսիսի. և զայն միայն ընդունէին Սամարացիք յօրինաց և 'ի մարգարէից:

Իսկ Եզեկիա երկիւղիւ Աստուծոյ զարդարեալ արար ուղղութիւն յաչս տեառն և սրբեաց զԵրուսաղէմ 'ի կռոց. զի Թէպէտ հայր նորա չարաւ գնայր, այլ մայր նորա բարի էր դուստր Զաքարիայ Աբիուդ անուն աստուածպաշտութեամբ մնայր ընդ նմա: Զի Աբիուդ խորտակեաց զօձն պղնձի, զոր պաշտէին Հրեայքն. քանզի 'ի վեցերորդ ամի Թագաւորութեանն Եզեկիայ, Թագա-

զան. և ողջերայ նմա, և երկրպագեաց նմա.
և հրամայեաց խուրացն զնոյն առնել. և հրա-
մայեաց մի պաշտել զարեգականն զծառայս հար-
կի, այլ զշարժողն նորա. և եհան դյօրովս ՚ի
քանակէ Հրէից, և ուսուցին ընդ նմա ուղե-
գնօք, և զգեցոյց նոցա պատմուճանս ազ-
նիւ. ՚ի քսանեւերրորդ ամին Եզեկիայ՝ թագա-
ւորեաց Ադգխայոս Տրաքոս Հնդկացի ամս
քառն. և Մադայացւոցն Կարտակոս ամս ե-
րեքտասան։

Յետ Եզեկիայ թագաւորեաց Մանասէ
որդի նորա ամս յիսուն և հինգ։ Սա ոչ
գնաց ՚ի ճանապարհս հօր իւրոյ. այլ յերրորդ
ամի թագաւորութեան իւրոյ սպան զԵսայի
մարգարէն սղոցիւք. և թաղումն արին ե-
հեղ արդար ՚ի մէջ Երուսաղեմի, և թողու
՚ի ձեռանէ Աստուծոյ. և եղեւ ՚ի գնալն իւ-
րում առաջնորդն Ասորւոց մատնեաց զնա
Տէր ՚ի ձեռս զօրացն և կալան զնա և տարան
յԱթուրիս, և արկին զնա ցուպակին կա-
պանօք ՚ի հօր խորագոյն. և անդ եհար զնա
սիրտ իւր ապաշխարանօք. և եա կիսուոյն
Տեառն, և ապաշխարեաց յարտասուօք և
անդ առաց զխոստովանութեան աղօթքն ապաշ-
խարողաց. և լուեալ Աստուած զաղաչումն
նորա, և արձակեցին ձգի, և եկն յԵրուսա-

ղէմ յերեսներորդ հինգերորդ ամին ար-
քայութեան իւրոյ ։

Իսկ Եսայի մարգարէն եղաւ 'ի Սելովմ. ընովաւ գնացեալ ժողովրդեան 'ի պաշարմանն Ասորոցն, եբանէր ջուրն և 'ի դալն այլազգեացն արգելոյր յաւուրս Աքազու և յաւուրս Եզեկիայ. և 'ի պատճառս գերեզմանին Եսայեայ առաքեաց Աստուած շնորհըս բժշկութեան ջրոյն Սելովմայ. որ ասի Առաքեալ ։

Յերեսներորդ երրորդ ամին Մանասէի թագաւորեաց յԵգիպտոս Թեփանթաս ամս քսան և վեց. և յերեսներորդ վեցերորդ ամին Մանասէի թագաւորեաց Ասորոց փոքր Սենեքերիմ ամս երեսուն և եւթն ։

Ի քառասներորդ ամին Մանասէի թագաւորեաց Հռովմայեցւոցն Տակիոս ամս երեսուն և երեք ։ Սա եգիտ զհանդերձն ծիրանի արքունի և զմականան ոսկի. այլք Տուլլոս ասեն ամս ։

Յաւուրս Մանասէի Նումաս Պոմպիլոս երկու ամիս յաւել 'ի տարին Հռովմայեցւոց. զի յառաջ քան զնա տասն էր ամիս, և յաւել նա զՅունուար և զՓետրուար. և Նիկոմիդիայ շինեցաւ, որ նախ Աստակոն կոչէր. և Եկբատան շինեցաւ 'ի Դիոկեայ.

և աստ խնայցաւ Գողիաս զերկիւածոյ զօրն :

Եւ թագաւորն Փռիւգացւոց ցլու արիւն արբ, և մեռաւ . և Կաղքեդոն քաղաք շինեցաւ : Ի քառասներորդին (1) ամին Մանասէի թագաւորութեան Եգիպտոսի Փսամետիքոս (2) ամս քսան և հինգ : Եւ Աթենացւոյն թագաւորք և դատաւորք դադարեցին : Եւ Բիւզանդիոն շինեցաւ 'ի Պիւզաս իշխանէ , որ յետ ինն հարիւր եւթանասուն ամի ընդարձակեցաւ 'ի Կոստանդիանոսէ :

Յետ Մանասէի թագաւորեաց Ամոն որդի նորա 'ի վերայ Յուդայ ամս երկոտասան. և յերրորդ ամին սորա թագաւորեաց Մադայւոյն Փռաւորտէս ամս քսան և չորս , և յերկոտասան ամին Ամոնի թագաւորեաց Աթուրացւոյն Նաբուպալասար ամս երեսուն և երեք . և էր սա Մոգ քաջ . և 'ի սոյն ամի թագաւորեաց Մակեդոնացւոյն Փիլիպպոս ամս երեսուն և ութ :

Յերրորդ ամի թագաւորութեանն Ամոնի ծնաւ Յովսիա , և Ամոն պաշտէր կուռս և սպանաւ 'ի ծառայից իւրոց . և ամենայն ժամանակ նորա քսան և երկու (3) ամ :

(1) Երկու օրի . 'ի քառա. կոս . մի օրի . Իփիմիտիկոսսան և չորս :

(2) Երկու օրի . փոխեալ- չորս :

(3) Երկու օրի . քսան և

Նա թագաւորեաց Յովսիա որդի Ամոնի Երուսաղէմ ամս երեսուն և մի. և արար ուղղութիւն առաջի Տեառն, և եղեն նմա որդիք չորք՝ Յովհաննէս, Յովակիմ, Յովաքազ, Սատաթանի. և մարգարէացաւ Սոփոնիա յազգէ Շմաւոնի:

Ի տասներորդի ամին Յովսիայ թագաւորեաց ի Հռոմ, Անկոս Մարկիոս ամս քսան և չորս: Յերեքտասան ամին սորա մարգարէացաւ Երեմիա. ի վեշտասաներորդ ամին մարգարէացաւ Ողդի կին քահանայի, և զտաւ օրէնքն կորուսեալ առ Քեղկիաւ քահանայիւ որ է հայրն Երեմիայի:

Նա եկաց Յովսիա առաջի տեառն և հատոյ վճիռ եւթանասուն ամի գերութեանըն Իսրայելի: Յերեսներորդ առաջներորդ ամին Յովսիայ թագաւորեաց յԵգիպտոս Նեփաւ Նեքաւով (1) ամս վեց: Սա եկ ի վերայ Աթուրայ և Ասորոց. և գնաց ընդ առաջ նորա Յովսիա և սպանաւ ի նմանէ. Իսկ Նեփաւ գնաց և առ զերկիրն Աթուրայ գերի. և դարձաւ յետ երեք ամաց, և եկն յԵրուսաղէմ. և տարաւ զՅովաքազ յԵգիպտոս զոր թագաւորեցուցեալ էին յԵրուսաղէմ և կացոյց նորա թագաւոր զՅովակիմ եղբայր

(1) Երկու օրի. Նեփաւ Նեքաւով:

Սաղաթիէլի որդւոյ Յեքոնեայ առաջնորդ-դարձի գերութեան. և Յեսու Յովսեդե-կեայ Քահանայապետ: Ոմանք զՍաղաթիէլ ասեն որդի Սեդեկիայ 'ի Բաբելոն ծնեալ 'ի կուրութեանն: Զայսու ժամանակօք Իլոն յետ Թն իմաստնոյն պարէտ եղեւ. Լակեդե-մոնացւոցն. սա և Տարկինոս ասեն եգիտ տանջանարանս, բանտս, կոճեղս, շղթայս և տուեալ 'ի պղնձահատս գործել հրամա-յեաց և Պիսոգնիս Պուետէս ճանաչէր:

Զկնի Դարեհի թագաւորեաց Քսերք-սէս որդի իւր ամս քսան և մի: Սա յերկ-րորդ ամի թագաւորութեան իւրոյ առ զԵ-գիպտոս. և 'ի մետասաներորդ ամին առ զԱթէնս, և հրով այրեաց զնա. և էառ սա քաղաքս բազումս, և աշխարհս յոլովս, և հարիւր քսան գաւառս. Նա յաւուրս սորա եղեն իրքն Եսթերայ. Մուրթքէի և Համանայ, որ էր յազգէն Ամաղեկայ: Բայց Յովհաննէս Եփրացին ասէ. թէ առ լեալ էր Եսթերայ իրքն Նոր ընդէ՞ր ոչ գրեաց: Նա սոփաւ ասեն. ոմանք զդարձն Հրէից. յետ սորա թագաւորեաց Արտաւան եւթն ամիս:

Նա զկնի սորա Արտաշէս երկայնաձեռն ամս քառասուն և մի: Ի սորա եւթներորդ

ամին եւ Եզրաս դպիրն Երուսաղէմ՝ օգնել չինուածոյն ։ Այլ և նա 'ի պարգևաց Հոգ-ւոյն գրեաց վերստին զհին մատեանսն ։ Եւ 'ի քսաներրորդ ամին Արտաշիսի եւ Նեեմի-ա տակառապետն չինել զպարիսպն Երուսաղէ-մի հրամանաւ նորին . եւ կատարեցաւ գործն ամս երկոտասան 'ի ձեռն Նէ-յեմայ ։ Եւ սա ետ բերել զնմխիր ողջակի-զացն մոռացեալ 'ի ջրհորն և սրսկեալ 'ի սե-ղանն վառեցաւ հուր ։

Յետ Արտաշիսի միւս Արտաշէս զոր Քը-սերքսեան կոչեն ամս երկու ։ Եւ զկնի նորա Սեկդիանոս ամիսս եւթն . և յետ նորա Դա-րեհ Նոդոս հարճորդի ամս տասն և ինն (1) . և 'ի հնգետասան ամին սորա ապստամբեաց Եգիպտոս 'ի Պարսից և եդին իւրեանց թա-գաւոր զԱմիւրտէոս , զկնի հարիւր քսան և չորս ամի դադարելոյն . և 'ի տասն և իններ-որդ ամին Դարեհի թագաւորեաց Մակե-դոնացւոյն Արքեղաոս ամս երիս ։ Իսկ 'ի Հը-ռոմ պատերազմ՝ սաստիկ էր . զի Վալորիանս պատերազմէր ընդ Վալսաուկք և ընդ Գա-ղատացիս կեղտս , և յետ հարիւր ամի յաղ-թեցան Հռովմայեցիք . և առաւ Հռոմ և քակեցաւ 'ի հիմանց , և մնաց միայն արքու-

(1) Մի օրք . քսան և ինն ։

նիքն ։ Եւ ՚ի նոյն ժամանակս եղեւ շարժ սաստիկ, և կլաւ երկիր քաղաքս բազումս ։

Եւ Պարսից Թագաւորեաց Արտաշէս ուշեղ ամս քառասուն ։ Եբրայեցիք առ սովաւ առին զԵսթեր ։ Յեւթն և տասներորդ ամին սորա յԱփրիկէ Աստակարտ Հռոմայ աւերեաց զԿարքեդոն, և յանուն իւր կոչեաց զնա վերստին շինելով ։ Եւ յԵգիպտոս Թագաւորեաց Ամիւրտեոս ամս վեց. և Նափերիտեայն Աքորեայս ամս ութ (1). և դարձեալ Ամուտոս ամ մի ։ Եւ այլս Կարքիս ամ մի ։ Եւ այլս Նեփերտոսիս ամս տասն և ութ ։ Եւ յերեսուն և հինգերորդ ամին Արտաշիսի Թագաւորէ Նեկտենաբոսայն Աղեքսանդրոս ամ մի. և զկնի նորա Պտղոմէոս ամս երիս ։

Ի քառասներորդ ամին Արտաշիսի Թագաւորէ Եգիպտացւոց Ովխոս ամս երկուս. և զկնի նորա Նեկտանեբոս ամս երկոտասան։ Յետ մահուանն Արտաշիսի Թագաւորէ Պարսից միւս Արտաշէս Ոքոս ամս քսան և եւթն. այլք երկուսն և վեց ասեն ։ Սա եբարձ զԹագաւորութիւնն Եգիպտացւոց հնազանդել զնոսա. զի Նեկտանեբէ աղանդով իմացեալ զլրումն իւրեանց փախեաւ

(1) Ոմանք՝ տասն և վեց ։

Յեթմալխա․ և անտի եկն 'ի Մակեդոնիա․ զատ տանեն ոմանք հայր Աղեքսանդրի ։

Եւ մնաց Եգիպտոս անթագաւոր ամս քսան և երկու մինչեւ 'ի Պուլթիմոս․ որ է Պտղոմէոս մի 'ի բարեկամացն Աղեքսանդրի ։

Իսկ Արտաշէս թագաւոր Պարսից բնակեցոյց զ'Հրեայսն առ ընթեր Կասբից ծովուն յԱւռականա քաղաք ։ Եւ յայնմ ժամանակի թագաւորէ Մակեդոնացւոյն Փիլիպպոս հայրն Աղեքսանդրի ամս քսան և եւթն․ և անուն կնոջ նորա Ոլոմպիադայ․ և հնազանդեցաւ Պարսից ։ Եւ իմաստասէրքն էին Արիստոտէլ և Եպիկուրոս ։

Յերեքտասաներրորդ ամին Ոքոսայ ծընաւ Աղեքսանդր որդի Փիլիպպեայ յութերորդ ամի թագաւորութեանն հօր իւրոյ․ յետ Արտաշիսի Ոքոսայ թագաւորեաց Պարսից Արշէս որդի նորա ամս չորս ։

Եւ զկնի նորա թագաւորէ Պարսից Դարեհ որդի Արշաւրի ամս վեց ։ Եւ յառաջին ամի նորա թագաւորէ Մակեդոնացւոցն Աղեքսանդրոս որդի Փիլիպպեայ ամս երկոտասան՝ և էր ամաց քսանից, հասակաւ երեք կանգուն և երկայն իմաստութեամբ և բարձր քաջութեամբ ։ Սա կորոյս երեսուն և եւթն թագաւոր, որոց մի էր Վահէ Հայոց

մեծաց Թագաւոր. և զառաջինն Թագաւորեաց Յեւլոսց (1), և ունէր զօրս երկոտասան բիւր և բնակէր անդ երկոտասան հազարօք:

Եւ 'ի վեցերորդ ամի Թագաւորութեան Կիւրոյ, և 'ի նոյն քանիս Դարեհի Պարսից, պատերազմեցաւ ընդ Դարեհի 'ի Սիս Կիւլիկեցւոց, և սպանաւ Դարեհ և կատարեցաւ 'ի նա Թագաւորութիւնն Պարսից տեւեալ ամս երկերիւր երեսուն և մի: Եւ շինեաց քաղաք երկոտասան յանուն իւր. սա եդ դուռն 'ի կողմ Հռոմայ՝ չապականել նոցա զերկիր. և դուռն երկաթի, երկայնութիւն ունելով կանգունս երկոտասան, և լայնութիւն կանգունս ութ: Եւ եկն յԵրուսաղէմ և պատարագս մատոյց Աստուծոյ և պատուեաց զքահանայապետն Ենդրիմաքոս, և գնաց յԵգիպտոս. և լուան Սամարացիքն զիրսն, եւ սպանին զԵնդրիմաքոս զի ոչ արգել զհեթանոսն 'ի տաճարէն և 'ի պատարագելոյն. և լուր եղեւ Աղեքսանդրեայ. և եկն ցասմամբ, և քակեաց զՍամարիա և բընաւին ջնջեաց զազգն Սամարացւոց. և ածեալ 'ի տեղի նոցա Մակեդոնացիս բնակեցոյց անդ. սա կոչի առաջին Թագաւոր Յունաց:

(1) Մի օրի. Մեդայ:

Սա մեռաւ ՚ի Բաբելոն գերդաստանու-
թեամբ. և առին զմիապետութիւն նորա
չորեքին բարեկամք նորա. և կատարեցաւ
բանն, եթէ քօշն այծեաց կոտրեցաւ ընդ
խոյին Դարեհի. և բարձաւ մի եղջիւր: Եւ
յայտնեցան չորեքին եղջիւրք՝ բարեկամքն
Աղեքսանդրի. և առ զթագաւորութիւնն Եգ-
իպտոսի Պտղոմէոս ամս քառասուն: Սա
առաւ զմարմինն Աղեքսանդրի յԵգիպտոս,
և անդ թաղեաց. սա յառաջին ամին առ զԵ-
րուսաղէմ նենգութեամբ առ Ոնիաւ քա-
հանայապետիւ. ևած գերիս յԵգիպտոս.
անուանք սորա կոչէին. և այլ թագաւորք
Պտղոմեանք:

Ի յերկրորդ ամի սորա թագաւորեաց
յԱսիա Անտիոքոս ամս տասն և ութ: Սա
ընդարձակեաց զԱնտիոք. և անուանք որդ-
ւոց իւրոյ կոչեաց:

Երեքտասան ամին Պտղոմեայ թագա-
ւորեաց Ասորոց և Բաբելացւոց մինչեւ ՚ի
Հնդիկս Սելեւկոս ամս երեսուն և երկու:
Եւ սա յինքն գրաւեաց զԱնտիոք. և եւս
ընդարձակեաց և շինեաց զՍելեւկիա յանուն
իւր առ լերամբն Սամախանձրայ. և զԱնտիոք
կոչեաց յանուն որդւոյ իւրոյ. որ նախ Ան-
տեղիա կոչէր առ ադիւսաչէն գետովն, զոր

Պտղոմէոսեանս եւս մեծացոյց։ Ունէր Սե-լեւկոս չորս դստերս, Լէոդիկա յորոյ անուն շինեաց զԼաւոդիկէ, որ է Օատիկ. զԵփե-միա, յորոյ անուն շինեաց զԵփեմիա. զՍէ-ռիա, յորոյ անուն շինեաց զԲերրիա որ է Հա-լապ։ զԵդեսէ, յորոյ անուն շինեաց զԵ-դեսէ որ է Ուռհայ։ Շինեաց եւ զԲալու եւ զՄարաշ եւ բնակեցոյց ի նոսա Հրեայս։ Եւ պատուեաց զԻսրայէլ. եւ հրամայեաց մտանել առ նա ընդ ոփրելիս նորա ըստ կա-մաց իւրեանց։ Եւ սա կոտորեցաւ մեծ աշտարակն ի մէջ ծովուն Նեփրոսի եւ կո-չեցաւ Պրոսոս (1). եւ շինեաց զնա Սոստրա-տոս Կնիդոսացի, դէտ լինել Աղեքսանդ-րու ընդ ծով եւ ընդ ցամաք։

Եւ Սելեւկոս ըմբռնեաց զԴեմետրոս քանզի ի բարեկամացն Աղեքսանդրի էր։ Կասանդրոս թագաւորեաց ի Մակեդոնիա ամս ութն։ Եւ յետ նորա Դեմետրիոս, որ եւ յինքն գրաւեաց զԿիլիկիա եւ թագաւոր կոչեցաւ. Զսոյն զոր կալաւ Սելեւկոս, եւ տիրեաց ամենայն Ասիոյ։ Ի սկիզբն թագա-ւորութեանն Սելեւկեայ, որ է երկոտասան ամ զկնի մահուանն Աղեքսանդրի, սկսաւ-թուականն Ասորոց։ Իսկ յետ մահուանն ա-

(1) Յունք՝ Փարոս։

ռաջինն Պտղոմեայ, Թագաւորեաց Եգիպտոս Պտղոմէոս Փիլադելփոս ամս երեսուն և հինգ։ Յառաջին ամին սորա Թագաւորեաց Մակեդոնացւոց Կռոնոս ամ մի. Պալագարոս՝ ամիս երկուս. Անթիպատրոս՝ աւուրս քառասուն և վեց. Սոսթենէս՝ (1) ամս երկու, զկնի Սելեւկոսի Թագաւորեաց Անտիոքոս Սոտէր՝ ամս տասն և հինգ։

Յերկրորդ ամին սորա Թագաւորեաց Մակեդոնացւոցն Անտիգոնոս՝ ամս երեսուն և վեց։

## ԳԼՈՒԽ Ե.

Յաղագս Թարգմանութեան հին կտակարանացն 'ի Կիպրոս կղզի։

Ի վեցերորդ ամին Պտղոմեայ Թարգմանեցան հին կտակարանքն 'ի Կիպրոս կղզի, այլք ասեն յԱղեքսանդրիա Եգիպտոսի, եւթանասուն երկու արամբք, վեց վեց այր 'ի ցեղիցն Իսրայելի. որք էին յանուանէ այսոքիկ. Ի ցեղէն Ռուբենի՝ Յովսեպոս, Եզեկիէլ, Եղիսէէ, Զաքարիայ, Յովհաննէս,

(1) Երկու օրէ. Սոսթենէս

Եզեկիէլ։ Ի ցեղէն Շմաւոնի՝ Յուդայ, Շմաւոն, Եղդէ, Սամուէլ, Մաթէ, Սաղամիա։ Յազգէն Ղեւեայ՝ Նոյեմի, Յովսէփ, Թէոդոս, Իբրոտոս, Ուրանիայ, Տուկիոս։ Ի ցեղէն Յուդայ՝ Յովնաթան, Եբարի, Եղիաէ, Անանիա, Զաքարիա, Եզեկիա։ Ի ցեղէն Իսաքարայ՝ Իսահակ, Յակոբ, Յեսու, Համպատ, Շմաւոն, Ղեւի։ Յազգէն Զաբուղոնի՝ Յուդայ, Յովսէփ, Շըմաւոն, Զաքարիա, Շմաւոն, Սաղամիա։ Ի ցեղէն Գադայ՝ Ամպատիա, Սեդեկիա, Յակոբ, Իսահակ, Եսայի, Մատթէոս։ Ի ցեղէն Ասերայ՝ Թէոդոս, Իսաոն, Յեսու, Թէոդորոս, Յովհաննէս, Յովնաթան։ Ի ցեղէն Դանայ՝ Թէոփիլէ, Աբրահամ, Իդամոս, Իսաոն, Երեմիա, Դանիէլ։ Ի ցեղէն Նեփթաղիմայ՝ Երեմիա, Ղազար, Զաքարիա, Բանիա, Եղիշէ, Տաթան։ Ի ցեղէն Բենիամինի՝ Յովհաննէս, Իւղոս, Եկոր, Թէոդոս, Ներսամ, Եզեկիէլ։ Ի ցեղէն Յովսէփայ, Բաղէք, Սամուէլ, Յովսէփ, Յուդա, Յովնաթ Եւթոպի։ Յարանց սոտի թարգմանեցան հին մատեանք ՚ի Կիպրոս կղզւոջ և տարեալ յԵգիպտոս եդան յարքունական տան. այլք յԵգիպտոս ասեն ՚ի Փարան կղզւոջ։ Եւ մեք ստոյգն խուզե-

ցուք յետ եւթանասուն և չորս ամի իշխանութեանն Յունաց, և 'ի վախճանին երկութուին Ասորւոց 'ի խորհուրդ մտին կողմանք Արեւելից Պարթեւք, և Պարսիկք և առեն. պատառեցաւ թագաւորութիւնն Մակեդոնացւոց և տկարացաւ, զի կայ մեր և նոցա այնչափ հեռաւորաց. դիպուք մեզ թագաւոր 'ի միջի մերում: Իսկ թագաւորեցուցին յորդւոցն Աբրահամու որ 'ի Քետդուրայ 'ի ցեղէ Սմիամայ զԱրշակ քաջ 'ի Բահլ մայրաքաղաքի աշխարհին, և հնազանդեցան նմա Պարթեւք և Պարսք և Մարացիք սահմանակիցք նոցա:

Իսկ զայն տեսեալ վերին աշխարհին. որ կայ 'ի հիւսիսոյ Պարսից, եդին և նոքա իւրեանց թագաւոր; բայց հնազանդեցան Պարթեւաց: Նմանապէս և Հայք եդին իւրեանց թագաւոր զկնի քաջ և յաղթող և տիեզերակալ թագաւորացն Հայկազանց, որք բարձին զթագաւորութիւնն Մարացւոց և հնազանդեցուցին զամենայն թագաւորութիւնս հիւսիսոյ, և զամենայն ազգս շուրջանակի զոր մեք ոչ տեսաք 'ի գրի գրչարս նոցա և զժամանակս, վասն որոյ ոչ գրեցաք աստ:

Քանզի ձգեցաւ թագաւորութիւնն

Հայկայ մինչեւ ՚ի Մաժէ, զոր առան Աղեքսանդր և վերստին տիրեցին ՚ի Պաղեստինէ մինչեւ ցԹեսաղիա ՚ի ծովն Կասպից յայնկոյս լերինն Կաւկասու։ Եւ Թագաւորեաց ՚ի վերայ նոցա մի յորդւոց Արշակայ Մաղարշակ անուն, հզօր Թագաւորութիւն զոր Թողումք մեք համառօտ գրողացս։

Եւ զկնի Պտղոմեայ խոհեմագունին Թագաւորեաց յԵգիպտոս Պտղոմէոս Արկադիա։ Եւ ՚ի կողմանս Ասորւոց Թագաւորեաց Սելեւկոս, Կալինիկոս։ Եւ Մակեդոնացւոցն Թագաւորեաց Դեմետրոս Փիլիպպոս։

Եւ յայսմ ժամանակի Քահանայապետն Հրէից Սիմոն որդի Ոնեանի արդարոյ ոչ կամեցաւ տալ զհարկն Պտղոմեայ։ Եւ զայրացեալ Պտղոմէոս կամեցաւ գալ ՚ի վերայ Երուսաղեմի. և Հրեայքն առաքեցին առ նա զՅովսեպոս առնել խաղաղութիւն. և եգիտ շնորհս առաջի նորա, և արար զնա զօրագլուխ ամենայն Հրէաստանի։ Ի յութսուն և հնգերորդ Թուին Ասորւոց Թագաւորեաց Ասիոյ Սելեւկոս Կրաւնոս ամս երիս. և զհետ նորա Անտիոքոս մեծ ամս երեսուն և վեց։ որով նահատակեցան Մակաբայեցիք։

Եւ յինսուն և երեք Թուին Ասորւոց Թագաւորեաց յԵգիպտոս Պտղոմէոս Փիլոպա-

տոր ամս տասն եւ ութն. սա յոյժ նեղէր զՀրեայսն. Սա գնաց Անտիոքոս եւ հնազանդեաց զԵգիպտոս կոտորմամբ սրոյ. եւ դարձաւ յԵրուսաղէմ, եւ առ զնա. եւ աստ կատարի առաջին գիրքն Մակաբայեցւոցն. Ի հարիւր տասն թուին Ասորոց թագաւորեաց յԵգիպտոս Պտղոմէս Եպիփանէս ամս քսան եւ մի. սա առաքեաց զՍկոպաս զօրավար եւ հնազանդեցոյց զՀրեայս եւ զՓղշտացիս: Ել Անտիոքոս ընդդէմ նորա, եւ կոտորեաց զնա, եւ առ յինքն գրաւեաց զքաղաքն զոր առեալ էր:

Այս Անտիոքոս արար սալայարկս զփողոց քաղաքաց բազմաց. եւ սա արար նշանս չափածոյս իշխանաց ի ճանապարհս. զոր փարսախն կոչեն. եւ շինեաց կամուրջս քարակուռս յանցս գետոց եւ առուոց. եւ հարթեաց զխոշորութիւն ճանապարհաց ի դիւրագնացութիւն. եւ ի մետասան ամին իւրոյ արար պատերազմ ընդ Հռոմայ եւ պարտեցաւ ի նոցանէ, եւ ըմբռնեցաւ: Եւ ետ զորդին իւր պատանդս տալ զգինս անձին իւրոյ, եւ հարկս ամի ամի հազար քանքար ոսկւոյ. եւ այս եղեւ սկիզբն հարկելոյ Ասիոյ եւ Ասորւոյ ի Հռոմայեցւոյն:

Ի սոյն ժամանակս թագաւորեաց Մակե-

կեդանացուցն Փիլիպպոս ամն քառասուն և
չորս (1). և աստ կատարեցաւ մարգարէու-
թիւնն Դանիէլի թէ թագաւորն հիւսիսոյ
տացէ պատերազմ ընդ արքային հարաւոյ.
որ է Անտիոքոս ընդ Պտղոմեայ, որ ետ նմա
զդուստր իւր. և անդրէն եհաս վերջանին:

Այս Անտիոքոս սպան զՕնիայ և զոր-
դիսն իւր, և այսահարեալ չարչարէր զաւա-
ռուս իւր. և գնաց առ յերկիրն Ամոնացւոց բը-
ժշկել անդ 'ի դիւցն իւրոց: Եւ անդ ասացին
ցնա ծերքն եթէ տուր բերել զոսկերս ըս-
պանելոցն 'ի քէն. և անկեալ առաջի նոցա
ողջացուցիս. և առաքեաց փութանակի յԱն-
տիոք և բարձին սակաւոք զնշխարս սրբոյն
և գնացին: Եւ հասեալ 'ի Ճամթախ քաղաք
դիպեցան նոցա արք, որք ասացին եթէ քար-
կոծեցաւ թագաւորն 'ի տան աստուածուհ-
ւոյն իւրոյ վասն չարեաց իւրոց: Եւ իբրև
լուան զայն եդին 'ի տեղւոյն զսուրբսն առ
ընթեր կաղնւոյն մեծի: Եւ յետ ժամանա-
կաց յայտնեցան նշխարք նոցա, և շինեցաւ
տեղին Վանք և է մինչեւ ցայսօր ժամանակի:

Եւ թագաւորեաց Անտիոք Սելեւկոս. և
Դիոդորոս հաւատարիմ նորա նեղէր զՀը-
րեայսն. և պատժեաց զնա Տէր:

(1) Մի օրին. քսան. և չորս:

Ի հարիւր երեսուն և մի թուին արձա-
կեցաւ Նիկեփորոս 'ի Հռոմայ և թագաւո-
րեաց 'ի տեղի հօր իւրոյ ։ Սա կոչէր Եպի-
փանէս և թագաւորեաց ամս մետասան.
կամեցաւ փնտալ յԵգիպտոս և արգելին զնա
Հռոմայեցիքն, և դարձաւ եկն 'ի Հրէաս-
տան և եառ զՔահանայապետութիւնն յՈ-
նիա՝ յեղբօրէն Սիմոնի. և յետ սակաւուց ետ
'ի նմանէ և ետ յՄենելա. և եղեւ աղմուկ 'ի
մէջ եղբարցն ։ Իսկ Մատաթէ որդի Յովհան-
նու որդւոյ Շմաւոնի Քահանայի յորդւոցն
Յովիադարու նստէր 'ի Մովդիմ քաղաք. և
եւթն որդիք նորա ընդ նմա Յովհաննէս,
Շմաւոն, Յուդա, Մակաբէ, Եղիազար,
Աւարէ, Յովնաթան. սա մարտեցաւ նախան-
ձու Աստուծոյ և տեսեալ մեղս անհնարինս
ազգին զյանցաւորս. և ապստամբեալ եւ 'ի
լեառն իւրայօքն ։
Իսկ Նիկիփորոս հարուածովք հօր իւրոյ
մեռաւ 'ի Պարսս 'ի յասմանէ Տեառն, զի նա
գնաց զճանապարհս հօր իւրոյ, այն որ պղ-
ծեաց զտաճարն կանգնելով 'ի նմա պատկեր
Զեւսայ. և 'ի լեառն Գարիզին շինեաց տա-
ճար յանուն Զեւսայ և Քսանթեայ՝ պղ-
ծեցեալ զնա Սամարացւոցն ։
Յութուտասներորդ ամին Պտղոմեայ

թագաւորեաց Եպիփան Եւպատոր ամս երկու. սա առաքեաց զՇաւրղորա զօրապետն իւր հարիւր քսան հազար զօրօք և փղօք ՚ի Հրէաստան, և կոտորեցան ՚ի նմանէ բազմութիւն Հրէից, եւ մեռաւ Եղիազար ՚ի ներքոյ փղի. և եղեւ ՚ի թաղելն զսպանեալսն Յամնայելի գտան ՚ի ներքոյ հանդերձիցն, նկարք և պատկերք կռոց :

Յայսմ ժամանակի Մնիա Քահանայապետն պնդեցաւ յԵգիպտոս. շինեաց տաճար Տեառն նման տաճարին որ յԵրուսաղէմ, առանց հրամանի տեառն. և առնէին անդ քահանայապետութիւն ըստ օրինացն : Եւ զտաճարն որ յԵրուսաղէմ նորոգեաց Յուդա Մակաբէ և մնաց չէն մինչեւ յաւերն վերջին ՚ի Հռոմայեցւոցն, զի նա էր առաջնորդ Հրէիցն :

Եւ յետ Յուդայի եկաց Յովնաթան, որ սպանաւ ընդ Աղեքսանդրի ՚ի Տրիփանայ : Եւ եկաց ՚ի տեղի նորա Շմաւոն. սա առաքեաց ՚ի Հռոմ վահան ոսկեղէն, և խնդրեաց դաշն և բերին նմա տախտակ պղնձի նշան ուխտի : Եւ սա առաքեաց զՅովհաննէս զորդին իւր. և կոտորել ետ զզօրն Անտիոքոսի և ազատեցան ՚ի հարկէ նոցա : Եւ աստ կատարեցան երկրորդ գիրքն Մակաբայեցւոց :

Ի հարիւր եւթանասուն և չորս թուին սպանաւ Շմաւոն ՚ի Պտղոմեայ. և առ ըզ-տեղի նորա Յովհաննէս որդի նորա։ Յայ-սըմ ժամանակի իշխանեցաւ ոմն Հրեայ յՈւռհայ, և մնաց մինչեւ ՚ի հայրն Աբգա-րու Արքայի։

Եւ զայսու ժամանակաւ գնաց Յովհան-նէս յՈւրկանիայ, և եհար զնոսա. և կո-չեցաւ անուն նորա Հիւրկանոս։

Եւ թագաւորեաց Անտիոքոս Ակրիպաս, և եկն յԵրուսաղէմ խնդրեաց հարկս յոյժ ծանրագոյն. և եբաց Յովհաննէս զգերեզ-մանս Դաւթի թագաւորի, և եհան անտի զոսկին և զզարդն ամենայն թագաւորացն Յուդայ, և երեք հազար քանքար ոսկւոյ առեալ՝ ամփոփեաց զայլսն. և տուեալ երեք հարիւր քանքար Անտիոքոս գնաց ՚ի նմանէ՝ և չոքաւ Հիւրկանոս որ և Յովհաննէս, եւ քակեաց զՍամարիա։

Ի թուին հարիւր իննսուն և վեց թա-գաւորեաց յԵգիպտոս Պտղոմէոս Սովտէր ամս եւթն և տասն։ Եւ գնաց Անտի-ոքոս, և Հիւրկանոս ընդ նմա, և սպա-նին զՏիտոս թագաւորն պարթեւաց։

Ի չորրորդ ամին Պտղոմեայ թագաւո-րեաց յԱսիա Անտիոքոս Կիզիկոս ամս ութ

և տասն ։ Ի մետասաներրորդ ամին Պտղո-
մեայ մեռաւ Յովհաննէս Հիւրկանոս, և առ-
զտեղի նորա Արիստաբուլոս որդի Յովնաթայ
ամ մի ․ սա ՚ի վերայ պճղնաւորին թագ յա-
ւել ․ և երկոքին եղբարք սորա Աղեքսանդրոս
և Անտիգոնոս նենգութեամբ սպանին զմի-
մեանս ըստ մարգարէութեան հօրն իւրեանց
զի շնորհ մարգարէի գոյր ընդ նմա ։

Յետ Արիստաբուլեայ առ զպատիւն
Յովհաննէս եղբայր իւր, որ կոչեցաւն Յա-
նէ ամս քսան և եւթն, որ խստագոյնս դա-
տէր զազգն իւր ։ Յայսմ ժամանակի հալա-
ծեցաւ Պտղոմէ ՚ի Կղէոպատրայ մօրէն իւր-
մէ ։ Եւ թագաւորեաց յԵգիպտոս Պտղո-
մէոս Աղեքսանդրոս ամս տասն ։ Ի վեցեր-
րորդ ամին սորա բարձան թագաւորք Ասի-
ոյ և Ասորւոց, և եղեն ընդ Հռոմայեցւովք։

Եւ աստ կատարեցան հին գիրք ժողո-
վրդեանն ։ Եւ են յԱդամայ հինգ հազար և
եւթանասուն երկու ամք, և աստի մինչև
՚ի ծնունդն Քրիստոսի ամք հարիւր քսան և
չորս ։ Եւ ժամանակ թագաւորացն Ասիաց-
ւոց ամք երկերիւր վեշտասան ․ որ սկսա-
նին մահուամբն Աղեքսանդրու և ՚ի թուին
Ասորւոց՝ երկերիւր քսան և երկու ։ Դարձաւ
Պտղոմէոս հալածեալն յաթոռ իւր ամս ութ ։

Եւ յետ նորա Թագաւորեաց Պտղոմէոս Դիոնէսիոս, ամս երեսուն որ էր եղբայր Կղէոպատրայ։ Ի հինգերորդ (1) ամին Պտղոմեայ մեռաւ Յովհաննէս որ և Աղեքսանդրոս, և առ զիշխանութիւնն կին նորա Աղեքսանդրիայ որ կոչեցաւ Աղինա ամս ինն. օրինապահ և Աստուածապաշտ, որ ունէր ուստերս երիս, զՀիւրկիանոս, զԱրիստաբուլոս, զԱնտիգոնոս։ Եղև Հիւրկիանոս քահանայապետ, և Արիստաբուլոս առնուլ կամէր 'ի նմանէ. մինչև եկն Պոմպէոս զօրավարն Հռովմայեցւոց, և տարաւ զնա կապանօք, և հաստատեաց զՀիւրկիանոս ամս երեսուն և չորս։ Սա շինեաց զպարիսպսն Երուսաղեմի և զքակեալն 'ի Պոմպեայ և մտին Հրեայք ընդ Հռոմովք։

Իսկ Պոմպէոս կործանեաց բազում աշխարհս 'ի Հայոց և յԱսորւոց և յԱրաբացւոց և մեծացաւ յոյժ, մինչև կոչել նմա Եւտուկարտոր։ Եւ 'ի նոյն ժամանակի մեռաւ Պտղոմէոս, և Թագաւորեաց Կղէոպատրա ամս երկու։

Եւ սպանաւ Պոմպէոս 'ի Յուլիոսէ որ և Կայսր 'ի կարծիս ապստամբութեան։

Զայսու ժամանակաւ էր Հերովդէս, և այս է ազգն նորա։

(1) Երկք օրի չ յեօթն.

Այր մի էր յԱսկաղոնայ Անթիպատրոս անուն որդի Հերովդեի Իդումայեցւոյ Ասպաղոնի կռոց։ Սա գերեցաւ յԻդումայեցւոց և անդէն անուանեցաւ, առեալ ՚ի կնութիւն զՅուսիփրիդէ դուստր Արետայ արքային Արաբացւոց. և եղեւ սա բարեկամ Հիւրկիանոսի. զի օգնէր նմա ՚ի Պոմպէոսի կողմանէ. սակս քահանայութեանն. զի ծանօթացաւ Հռոմայեցւոց և շնորհ եգիտ յաչս նոցա. մինչ կացուցին զնա իշխան Հրէիցն կամօքն Հիւրկանոսի և ունէր նա չորս որդիս Յովսէփ և Փերովրի և Փեռաղոս և Հերովդէս և դուստր մի Սաղոմ անուն։ Իսկ Յովսէփ և Փեռաղոս եղեն ընդ հօրն գործակալք Հրէիցն։ և ոմն ՚ի Հրէից սպան զԱնթիպատրոս դեղմբութեամբ Յովսեփիոս որդւովն իւրով։ Եւ զՓեռաղոս Անտիգոնոս սպան դեղելով ըզխոցեալ գլուխ նորա։ Բանզի զօրավարն Հայոց Բարզափրան եկն յԵրուսաղէմ զայսու ժամանակաւ, և գերեաց զնա. և հանեալ զՀիւրկիանոս եդ ՚ի տեղի նորա զԱնտիգոնոս, և զՓերովրի. և զՀիւրկիանոս տարաւ կապանօք ՚ի Հայս։

Եւ Հերովդէս գնացեալ ՚ի Հռոմ եւ պատմեաց զվիշտս հօրն իւրոյ. և զեղբարցն

՚ի վերայ հաւատարմութեան իւրեանց , և վասն այսորիկ Թագ եդ նմա կայսրն Հռոմայ , և եկեալ յԵրուսաղէմ սպան զԱնտիգոնոս, և յետ ժամանակի զՀիւրկիանոս. և զերծեալ ՚ի գերութենէ Հայոց , Թագաւորեաց Հրէից անհոգապէս :

Նոյնպէս սպան և զորդին Հիւրկանեայ. և զԱնաթան : .

Եւ կատարեցան գիրք եթէ ՚ի պակասեալ իշխանութեանցն Հրէից երեւի բնածին արքայ . և եւթներորդքն Դանիէլի որ ասէ եւթներորդք եւթն . և եւթներորդ վաթսուն երկու . որ լինի վաթսուն և ինն եւթներորդք որք են ամք չորս հարիւր ութսուն երեք: Սկսեալ ՚ի վեցերորդ ամէն Դարեհի Մարեայ մինչեւ յաւետիս կուսին մօրն Էմմանուէլի . և գտաք ՚ի Թարգմանութեանն Աբգարու արքայի՝ եթէ Դանիէլ յետ իմանալոյն վասն Քրիստոսի , նեղէր ՚ի կարօտութենէն . և ՚ի վախճանէքն իւրում յեզր Տիգրիս գետոյ , անկաւ ՚ի վերայ երեսաց իւրոց , կոչեաց առ Տէր և ասէ. ցոյց Աստուած Իսրայելի զՔրիստոսն քո մինչչեւ մեռեալ իցեմ: Եւ եկն առ նա Գաբրիէլ և ասէ. հանգիր խաղաղութեամբ այր ցանկութեան . զի չեւ է ժամանակ , այլ

'ի կատարման տեսլեանն քո գայ. և խաչի, և մեռանի, և ինքնին իջեալ 'ի դժոխս հանէ զձեզ անտի. արդ՝ մխիթարեա՛ գքեզ յուսով գալստեան Նորա։

Ըստ որում և 'ի կատարման ժամանակին ծնաւ Յիսուս Քրիստոս օծեալն Աստուած 'ի Բեթղեհէմ Յուդայ 'ի քառասուն և չորս ամի թագաւորութեանն Օգոստեայ, և իջեալ հուր յերկնից այրեաց զյաճախութիւն կռոյն որ կայր յՈղիմպիոս լեառն, զոր աստուածաբնակն կոչեն։

Եւ էր ամն առաջին թագաւորութեանըն Աբգարու, և Հերովդի՝ երեսուն և երկու։ Եւ այսպէս մեր պատկաւորն Աբգարոս արքայակից է ըստ մարմնոյ արքայութեան Տեառն։ Եւ է յԱդամայ հինգ հազար հարիւր ութ՝ ըստ եւթանասնիցն։ Ըստ Եւսեբեայ՝ հինգ հազար երկու հարիւր ութսուն և չորս։ Ըստ Երանոսի՝ հինգ հազար իննսուն և մի. և ըստ այլոց՝ հինգ հազար հինգ հարիւր երեք։ Եւ ըստ Ասորոց՝ հինգ հազար քսան և վեց. և էր մուտն Նիսանայ և երկուշաբաթ. և տարին երկոտասան լուսնեայ (1) յորում ամի առաքեցաւ Կիւրինոս 'ի Սինկղիտոսէ յԱսորիս, և 'ի Պաղեստին

(1) Մի օրի. լուսնոց։

գրել զազգսն , և դնել հարկս ։ Քանզի լուան 'ի Հռովմ վասն Թեւդասայ և զՅուդայի ապստամբեաց , եթէ ասեն Հրէիցն մի տալ հարկս մահկանացու Թագաւորի , և բարկացան յոյժ . և 'ի պատճառս ապստամբողացն (1) եղեւ խռովս այս , որ բնաւ չէր լեալ։

Իսկ Օգոստոս երկրորդ ինքնակալ էր , և կայսր Հռովմայեցւոց յետ Յուլիոսի , զոր ասեն Փորահան , այն որ բարեբախտ եղեալ Թագաւորեաց յետ չորս հարիւր վաթսուն երկու ամի խափանելոյ Թագաւորացն Հռովմայեցւոց 'ի Տարկինոսէ մինչեւ ցնա ։

Եւ զառաջինն պատիւ Թագաւորացն նոցա Քոբիոս էր . և արդ կայսերք Աւտուկրատորք կոչին ։ Եւ 'ի շինելոյն Հռովմայ մինչեւ երկրորդ անգամ Թագաւորեցին եւթըն հարիւր երկու ամք . և մեծք եղեն յերկրորդումն քան յառաջնումն . զի Գայիոս առաջին Թագաւոր նոցա գնացեալ յԵգիպտոս՝ հնազանդեաց . այն որոյ անուն Թարգմանի Կայնան , որ է Անդրոնիկոս (2) կոչեցեալ յոմանց ։ Եւ այս (3) Յուլիոս , որ է հինգ ամ Թագաւորեալ սպանաւ նենգութեամբ ։ Երկրորդեաց Օգոստոս , որ մե-

(1) Մի օրի . ապստամբացն կամ ։

(2) Չորս օրի . Անդրանիկ.

(3) Ամենայն օրինակք ունին զայս ։

ծագումն ի փառաց արժանացաւ մեռ եղեալ 'ի ժամանակ Տեառն մերոյ ։

Եւ տիրեցին Ասիոյ և Ասորեստանեայցն։ Եւ կացուցին զայսու ժամանակօք զԱուգի-ոս Հռովմայեցի 'ի կողմանս Ասորւոց, զի գրեացէ 'ի Հռովմ զամենայն պատահեալսն յայսմ կողմանէ. ըստ որում և գրեաց ըզ-ժամանակ ծննդեան Տեառն մերոյ և զգալ Մոգուցն, և ասաց ։

Գիտասցէ իմաստասիրութիւնդ քո, զի Պարսիկք ոմանք արք փառաւորք եկին եւ մտին յիշխանութիւնս ձեր. և երկրպագե-ցին տղայի միոյ ծնելոյ 'ի Հրէաստանի, ա-ռաջնորդեալք յերկնաւոր փառաց ։ Բայց թէ ո՞վ է մանուկն, կամ ո՞յր որդի անդե-կանամք ։

Եւ գրեցաւ նմա պատասխանի եթէ ըզ-Հերովդէսդ արքայ կացուցեալ է մեր 'ի վե-րայ Պաղեստինեայ. 'ի նմանէ լուիցուք Մո-գուցն գալ։ Իսկ եթէ ո՞յք էին Մոգքն. Եւ-սեբի և Գրիգոր ասեն յորդւոցն Աբրահա-մու էին. և այլք՝ եթէ յորդւոյն Բաղամու Մոգք էին։ Եւ գտաք մեք Նիւսացւոյն բա-նիւ գրեալ զայս, և նմանէ. և Յակովբ ա-սէ, յազգէն Իլամայ էին Մեմացիք։ Եւ ո-մանք՝ եթէ 'ի Թագաւորացն Արաբայ. եւ-

Սարայ էին ըստ Գուլթայ վկայելոյն։ Սակայն էին երեք թագաւորք զի երեք ցեղ պատարագս մատուցին։ Եւ ոմանք ութն ասեն ըստ Մելքիայ, թէ ութ վարեց։ Եւ սուրբն Յակոբ երկոտասան իշխան ասէ. և ստուգիւ գրեալ է նորա գիրք մի. երեք հազար հեծեալ ասէ, և հինգ հազար հետեւակ։ Եւ եկեալ Աքիրամ ՚ի տեղին որ ասի Կալամիկոս որ է Սաղայ, լուան եթէ տվէ ՚ի Հրէաստան այլ եւս վասն կասկածի շփոթման, թողին զյոլովս և ինքեանք երկոտասանքն հազար հեծելով գնացին եւ դարձան առ զօրս իւրեանց։ Եւ անուանք իշխանացն են այս՝ Դահանդուր՝ որդի Երտազդայ։ Շահէփ, որդի Գուդբարայ. Երշակ որդի Մահգուդայ, Օրեւանդ (1) որդի Վարիդուդայ, Երհու որդի Խոսրովու, Երտաշէս որդի Աւլիաթայ, Եշթանքուզա որդի Շիշոնթայ (2), Մեհդուք (3) որդի Հումայ, Եքշերիշ որդի Սահապանայ, Սարտանա (4) որդի Բելդանայ, Բարուդոք որդի Բեղայ։ Իսկ թագաւորն որ առաքեաց զնոսա՝ Փիրշապուհ անուն. ոմանք երկու ամաւ յետ ծննդեան ասեն զգալն նոցա։ Բայց Ճշմար-

(1) Երկու օրի. Զրուանդ։
(2) Երկու օրի. Շիշոնայ։
(3) Երկու օրի. Մեհրդուդ։
(4) Երկու օրի. Սարտանա

տեն ոմանք երկու ամառ յառաջ գուշակեալ աստեղք և յուղի անկեալ։ Եկեալ ժամանեցին 'ի (տեղի) ծննդեանն, միով աւուրբ զկնի ծննդեանն, ըստ որում գտին պատեալ 'ի խանձարուրս և եդեալ 'ի մսուր։

Եւ քառասուն օր կացեալ անդէն 'ի Բեթղէեմ, և գնացեալ 'ի տաճարն՝ ընկալաւ զնա Սիմէոն որ հրամանաւ Հոգւոյն պահեցաւ կենդանի։

Ի Պտղոմեայ հետէ, որ մի էր 'ի Թարգմանչացն, որ 'ի գրել զԵսային և զտեղին Թէ՝ Կոյսն յղասցի, գրեաց և ապա զղջացաւ, և ասաց Թէ՝ Հեթանոսքս որ խնդրեցին զգրեանս, ծաղր առնեն, զիա՞րդ հաւատան։ Եւ դարձաւ ջնջեաց, և դարձեալ տրտմեցաւ. և ասէ. Ընկերքն իմ գրեն և այդն լինիմ ես, և զինի հակառակութիւն։ Գիտելով ընկերին որ ընդ նմա, և 'ի տրտմութենէն ննջեցին երկոքեանն. և յորժամ զարթեան, տեսին զի գրեալ էր զարմանալի գրով ոսկեղինաւ։

Իսկ Սիմէոն եկաց զօրն ողջոյն, և երանի տայր ժամանակին և տեսողացն զկուսածին Մանուկն։ Եւ ասէ ցնա Հոգին. Ոչ մեռցիս մինչեւ հասցես երանութեդ։ Եւ եհաս բաղձանացն յերեք հարիւր քառասուն և չորս ամի ժամանակաց խաւրոց. և 'ի տաճարէն

գնաց (1) 'ի Նազարէթ, և անտի յԵգիպտոս, զկնի վաթսուն երկու աւուր ծննդեան իւրոյ. այլք ասեն յետ երկու ամի գնաց յԵգիպտոս. և դու զայս ընկալ:

Եւ Հերովդէս խաբեալ 'ի մոգուցն և զայրացեալ՝ այրեաց զամենայն գրեանս Հրէից, և ջնջեաց զյիշատակ թագաւորացն Հրէից և զքահանայութեանն, զի իւր լիցի թագաւորութիւն սեպհականութեամբ. և կոտորեաց զմանկունսն թուով հազար չորս հարիւր վաթսուն և երկու, յութսուն և չորս գեղջէ:

Նոյն Հերովդէս խափանեաց զթագաւորութիւն և զքահանայութիւն Հրէից. զի ընդ ձեռամբ արար զվակասն, և տայր կաշառօք անարժանից: Սա քակեաց զպարիսպն Երուսաղեմի, և արար կոտորած սաստիկ մինչեւ ընկալան զնա ամենայն Իսրայէլ: Սա առաքեաց 'ի Բաբելոն և ետ բերել զԱնանէ, և արար զնա քահանայապետ ամ մի, որ չէր Ղեւտացի: Եւ ապա արար զԱրիստաբուլոս զորդին Հիւրկանեայ զեղբայր կնոջ իւրոյ, և սպան զնա և արար դարձեալ զԱնանէ:

Ի սմին ժամանակի յաղթեցին զօրքն

(1). Մէ օրի. յաւելու Յիսուս:

Հայոց որ կային 'ի վերայ Եփրատայ. և եղեւ Սամուսատ ընդ Հռոմովք:

Եւ 'ի ժամանակս Օգոստեայ, զօրավար նորա Անտոնինոս սիրեաց զԿղէոպատրայ. և ապստամբեալ թագաւորեաց և գնաց յԵգիպտոս և գնաց 'ի վերայ նորա Օգոստոս և կալաւ զնա, և եթող կենդանի զի աղաչեցին վասն նորա Սինկղիտոսքն: Եւ առ Օգոստոս գերի բազում յԵգիպտոսէ 'ի Հըռովմ. և չոգաւ ինքն, և վերստին ապստամբեաց Անտոնինոս, առեալ զԿղէոպատրայ. և ունէր օխս Կղէոպատրայ ընդ Հայս և ընդ Հրեայս և ընդ Արաբացիս. և 'ի ձեռն Անտոնինոսի թափէր փախանձ իւր:

Իսկ լուեալ Օգոստեայ գնաց 'ի վերայ նորա և պաշարեաց զնա յԵգիպտոս. և յորժամ գիտացին զպարտութիւնս իւրեանց Կղէոպատրայ և Անտոնինոս որք կռուէին ընդ Օգոստեայ 'ի միասին, անձնասպան եղեն: Եւ Օգոստոս եսպան զԱրեգակն և զԼուսին զորդիսն Կղէոպատրայ. և եբարձ զթագաւորութիւնն Պտղոմեանց, որ Յունաց կոչէր. տեւեալ ամս երկու հարիւր յիսուն և վեց: Եւ Սեբաստոս կոչեցաւ Օգոստոս որ է յաղթող:

Եւ են ոմանք որ աստի թուեն զժամա-

նակն Օգոստեայ ։ Եւ առաքեաց Օգոստոս զՏիբերիոս զօրականաւ իւր եւ արար ընդ նոսա խաղաղութիւն ։ Եւ անտի գնացեալ ՚ի Արեւմտեանական աշխարհն, արար զնոսա հնազանդս ։ Եւ շինեաց Հերովդէս զՍամարիա, եւ Սեբաստիա կոչեաց յանուն կայսեր. եւ շինեաց քաղաքս բազումս եւ մեծացոյց զարքունիսն յԵրուսաղէմ ։ Եւ շինեաց զաշտարակն Ստրատոնեայ, եւ կոչեաց յանուն կայսեր. եւ իբրեւ այս գործեցան յառաջ քան զծնունդն Տեառն մերոյ Թէպէտ դրեցաւ այսպէս ։

Բայց Հերովդէս յաճախեաց ՚ի չարիս իւր եւ սպան զՄարի զկին իւր, եւ զամենայն արուեստագէտս եւ զիմաստունս Հրէից. եւ Տէր եհար զնա չարաչար ցաւովք յոտից մինչեւ ցգլուխն. եւ որդնեցաւ ամենայն մարմին նորա, եւ բժիշկք ոչ կարացին օգնել նմա. եւ եդին զնա ՚ի ջերմ ձէթ, եւ խստացաւ ցաւն. եւ կալեալ զգլխաւորս Հրէից եւ պատուիրեաց փեսային իւր Աղեքսին եւ Սողոմեայ քեռ իւրում զի սպանցեն զնոսա յեւանել ոգւոյ նորա. զի ակամայ լացցեն Հրեայքն յաւուր մահուան նորա. զոր եւ արարին իսկ. զի նեղեալ ՚ի ցաւոց ըսպան զանձն իւր եւ եղեւ չարամահ յերե-

ծուն և եւթն ամի արքայութեան իւրոյ ։

Այս Հերովդի էին կանայք ինն, և որդիք ութ ։ Ի Դոսիթեայ կնոջէ ծնաւ Անթիպատրոս, սա եսպան զերկու եղբարս իւր, և սպան զնա հայրն իւր ։ Եւ Մարի. դուստրն Հիւրկանեայ ծնաւ զԱղեքսանդրոս և զԱրիստաբուլոս, զոր սպան Անթիպատրոս, և զՀերովդէս զոր ոմանք կոչէին Անթիպատրոս. սա էառ և զՀերովդիադայ և սպան զՅովհաննէս ։ Եւ Մեղքոս Սամարացին ծնաւ զԱրքեղայոս զոր Օգոստոս թագաւոր կացոյց 'ի տեղի հօրն ամս ինն ։ Կղէոպատրա ծնաւ միւս Հերովդէս, զՓիլիպպոս, զորոյ կինն առ Հերովդէս եղբայր նորա (1) և բռնանաւ 'ի պատճառս կնոջ իւրոյ ։ Եւ Բաղոյ ծնաւ զՓիլայոս ։

Եւ այս են որդիք որդւոց նորա, Արիստաբուլոս ծնաւ զՀերովդէս, որ թագաւորեաց 'ի Քաղկիդա ։ Եւ զԱգրիպպաս որ կոչեցաւ Հերովդէս, որ սպան զՅակովբոս

(1) Այս խառն և շփոթման անուանցս ըստ Ս. Գրոց կրկնեալ առաւել. որպէս Հերովդէս զոր ասացն 'ի վերոյ առեալ զՀերովդիադայ 'ի կնութիւն, և սպանեալ զՅովհաննէս, զՄկրտիչն անշուշտ, և աստ ասէ ծնեալ 'ի Կղէոպատրայ Հերովդէս եղբայր Փիլիպպոսի. որ նոյն իսկն է. և առ 'ի կին զՀերովդիադայ զկին եղբօր իւրոյ Փիլիպպոսի. որոյ 'ի պատճառս և. Յովհաննէս սպանաւ ։

զեղջայրն Յովհաննու ։ Սա մարտեաւ ընդ Հօրեղբօրն և առ զԹագաւորութիւնն 'ի նմանէ, և սմա եղեւ որդի Ագրիպպաս որ յետ նորա Թագաւորեաց ։ Եւ դստերքն սորա Բերինիակայ և Դրուսեղա որ եղեւ կին Փելիքս դատաւորի ։

Իսկ իբրեւ Թագաւորեաց Արքեղայոս կին ամուսնաւ յաքսորս 'ի Բեննան (1) քաղաք վասն չարեաց իւրոց ։ Եւ Թագաւորեաց Հերովդէս չորրորդապետ . և 'ի նմին ամի մեռաւ Օգոստոս ։ Եւ առ զԹագաւորութիւնն Տիբերիոս ամս քսան երեք ։

Իսկ ամենեցուն Տէրն դարձեալ յԵգիպտոսէ, մնայր 'ի Նազարէթ լռելեայն օրինաց մանկանց ։ Յերեք հարիւր երեսուն և եւթն թուին՝ 'ի չորեքտասան ամին Տիբերիայ, առաքեցաւ Պիղատոս դատաւոր Երուսաղեմի . և հնգետասան ամին Տիբերիայ գայ Տէրն մեր 'ի մկրտութիւն 'ի Յովհաննէ որդւոյ Զաքարիայ յամին հինգ հազար հինգ հարիւր երեսուն և եւթներրորդի ելիցն Ադամայ 'ի դրախտէն՝ 'ի վեցն Յունուարի լոյս Հռովմոց՝ 'ի քսան և մի 'ի Տեբէթ ամսոյ ըստ Եբրայեցւոցն ։ Յամս Տիբերիայ

(1) Մի օրի . Իբեննան քա- քաղաք ։
ղաք ։ Մի օրի . 'ի Վիեննէա

կայսեր շինեաց Հերովդէս զՏապարիա և զՆեբայիս (1)։ Իսկ Պիղատոս զպատկերն Զեւսայ եմուծ 'ի տաճարն, և զգանձանակ տաճարին Թափեաց 'ի ջրէջսն ։

## ԳԼՈՒԽ Զ·

Յաղագս կարգաւ առաքելոցն որք կատարեցան ։

Յերեսներորդ ամի տնօրէնութեան Տեառն մերոյ ընտրեցան Առաքեալքն և կոչեցան. առաջին Սիմոն Պետրոս՝ 'ի ցեղէն Նեփթաղեմի, որ եդ խորան առաջին յԱնտիոք, որ յամս Կղօդեայ եկ 'ի Հռովմ, և եղեւ անդ ամս քսան և եւթն. և 'ի Ներոնէ պսակեցաւ ։ Եւ Անդրէաս եղբայր նորա, որ քարոզեաց 'ի Նիկիա, և 'ի Նիկոմիդիա, և 'ի Սկիւթիա և Աքայիա. և նախ սմա գրեցաւ աթոռն Եփեսոսի, որ փոխեցաւ 'ի Կոստանդնուպօլիս ։ Յակովբոս որդի Զեբեդեայ՝ 'ի ցեղէն Զաբուղոնի, որ չոգաւ 'ի Սպանիա, և դարձաւ յԵրուսաղէմ, և սպանաւ 'ի Հերովդիայ յութ ամի Տեառն չարչարանացն. և կայ մարմին նորա 'ի Յուր Մարմարիկէ ։ Եւ Յովհաննէս եղբայր նորա յետ ննջման Աստուածածնին գնացեալ յԵփեսոս կատարեցաւ յեւթներորդ ամի Տրայիանու ։ Փիլիպպոս՝ յազգէ Ասերայ 'ի Բեթ-

(1). Երկու օրի. յանէլոս յանուն Տիբերեայ կայսեր.

սայիդայ, քարոզեաց յԱփրիկէ, և կատարե-ցաւ ՚ի Փիւիդա։ Բարդուղիմէոս՝ ՚ի ցեղէն Իսաքարայ, յԱդաւիր գեղջէ. քարոզեաց ՚ի Պարթևս և եկեալ ՚ի Հայս ներքին խա-չեցաւ ՚ի Սանատրկոյ արքայէ. եւ հանա-մորթ նորա։ Թովմաս՝ ՚ի ցեղէն Յուդայ. քա-րոզեաց Պարթևաց և Մարաց և Հնդկաց, և անդէն կատարեաց զկեանս իւր վկայու-թեամբ։ Մատթէոս՝ յազգէն Իսաքարայ ՚ի Նազարեթէ. քարոզեաց Հրէից և մեռաւ ՚ի Պարքաղ, և թաղեցաւ յԱնտիոք. և յետ ժամանակի տարան զնա յայնկոյս ծովուն։ Սիմոն կանանացի՝ ՚ի ցեղէն Եփրեմի, ննջեաց ՚ի Հռոմ, և գտաք ուրեք թէ ՚ի Կուրիա։ Յուդա՝ որ կոչեցաւն Թադէոս, որ սակս ի-մաստութեան նորա կոչէին Ղեբէոս՝ որ է սիրտ և հոգի. քարոզեաց յԱսորիս և ՚ի Հայս, և կատարեցաւ ՚ի ներքին Հայս ՚ի Ուրուղիս տեղւոջ՝ ՚ի Սանատրկոյ. և գտաք ուրեք, թէ բերաւ յՈւռհայ։ Յակոբոս Ալ-փեայ՝ յազգէն Մանասէի, կատարեցաւ ՚ի Սրուճ։ Յուդա մատնիչ՝ ՚ի ցեղէն Դանայ ՚ի Սկարիովտայ, որ գնաց ՚ի տեղի իւր։ Մա-տաթէ փոխանորդ նորա՝ յազգէ Ռուբենի, կատարեցաւ յերկիրն Մարդակերաց։

Եւ յետ սոցա երևեցոյց Տէր եւս եւ-թանասուն երկու, որոց անուանքն են այս։

Ադդէ որ կատարեցաւ յՈւռհայ, Ախէ՝ որ կատարեցաւ ՚ի Սիրինոսէ յԱբգարայ որդւոյն ։ Նանծիա՝ զոր Փուլ զօրավարն եսպան ՚ի բարիին սանէր որ զՊօղոս պաշտէր ՚ի Դամասկոս (1)։ Ղազար զոր յարոյց Տէր, ՚ի Կիպրոս կատարեցաւ ։ Անէլեա՝ որ ՚ի Տրոդոս ծովակուր եղեւ ։ Կեփաս կացեալ ՚ի Հեմս, և կատարեցաւ ՚ի Փիլիզոր խուրով մահուամբ ։ Բառնաբաս՝ որ ՚ի Սամոս մեռաւ ։ Սոսթենէս՝ որ ՚ի Պոնտոս ՚ի ծով ընկեցաւ ։ Կիւրակոս որ յԱղէքսանդրիա ՚ի բանտի(2) մեռաւ ։ Յովսէփ Փիլոոս՝ որ զՏէրն թաղեաց ՚ի տան իւրում մեռաւ ։ Նիկոդեմոս՝ որ յԵրուսաղէմ կատարեցաւ ։ Ճիղայ՝ որ ՚ի Փիլիպպուս կատարեցաւ ։ Յուդայ Յակովբեան որ ՚ի Գիլութ կատարեցաւ . և ըստ այլոց յԱրմի քաղաք Հայոց Յուդայ՝ Ճապիոս որդի ՚ի խղաթ քարոզեաց և անդ կատարեցաւ ։ Մարկոս որ կոչեցաւն Յովհաննէս յԱղեքզու կատարեցաւ ։ Ուրմինաս՝ ՚ի Սելեւկէ կատարեցաւ ։ Նիկէ ՚ի Պասունի կատարեցաւ ։ Յասոն՝ գազանակուր եղեւ ՚ի Պոլոմպուս ։ Մանաւել որ այրեցաւ յԱքքայ ։ Ռուփոս ՚ի

(1) Թուղթ ըստ · Անանիա՝ ՚ի Դամասկոս ։ զոր Փուլ զօրավարն սպան ՚ի Բարիին · սա էր որ զՊօղոս պաշտէր

(2) Մի օրի · յաւելու ...

Տուք սպանաւ ։ Աղեքսանդրոս ընկեցաւ ՚ի վիհ յԱդրիանուպօլիս (1) ։ Սիմոն Կիւրինեցի սրով կատարեցաւ ։ Զենոս, որ ՚ի մէջ ձիոյ կոխեցաւ ։ Կղէոպաս՝ խաչեցաւ յԵրուսաղէմ ։ Ավսէս և Յակոբոս եղբարք քարկոծեցան ՚ի Սպարտայ ։ Թէոդորոս հրով կատարեցաւ ՚ի Լաւոդիկէ ։ Դեստորիոս կատարեցաւ ՚ի Տրալու ։ Եւփղիոն և Սամոսոն մոլին ՚ի քօշացւոց երկիրն և անդ կատարեցան ։ Յոնիաս ՚ի Սամոս կատարեցաւ ։ Տիտոս ՚ի Պաշրիտէ կատարեցաւ ։ Պատրոբաս ՚ի Պաղկեդոն կատարեցաւ ։ Յասոն կրիտէ ՚ի Խուղիա կատարեցաւ ։ Երմէ հովիւն յԱնտիոք Պիսիդա կատարեցաւ ։ Սիւս Կիրակոս ՚ի Կեսարիա կատարեցաւ ։ Խրիսիմոս ՚ի Բգնունիս կատարեցաւ ։ Նարկէսոս ՚ի Լաոնիկն կատարեցաւ ։ Երոլոս ՚ի Կեսարիա կատարեցաւ ։ Սամաւ ՚ի Միկիլիա հրով կատարեցաւ ։ Տեմաժ յԵփեսոս մեռաւ ։ Մարկոս աւետարանիչ յԱղեքսանդրիա կատարեցաւ ։ Ղուկաս աւետարանիչ ՚ի Պաւոս քաղաք կատարեցաւ ։ Ղեւի, ՚ի Փւենիկ կատարեցաւ սրով ՚ի Խորոմանէ ։ Եփրեմիոս ՚ի Կաշաւ կատարեցաւ ։ Նիկիտոս ՚ի Տիբերիա սղոցեցաւ ։ Բուդոս, և Պլինոս յԱքայիա սպանան ։ Յովհան-

(1) Երկու օրի. յԵրապօլիս։

նէս եւ Դէուղոս 'ի Բալփաք գաղանաց արկան ։ Ստեփաննոս՝ Յերուսաղէմ չարկոծեցաւ ։ Նիկիէս՝ սղանաւ Յեկեղեցին 'ի խփսոնեայ իշխանէն ։ Մարտէլոս՝ 'ի Պաղնամօսոս կատարեցաւ ։ Եփասոն 'ի Պափիս կատարեցաւ ։ Զաքարիա այրւոյն որդի քարկոծեցաւ 'ի Հուրինա․ և միւս Զաքարիա ընդ նմա ։ Զաքէ և միւս Զաքէ կատարեցան յանապատն ։ Սիմոնն բորոտն յԱամթայ[1] կատարեցաւ ։ Աւլումպոս և Ստեփանէ և Ստուգի 'ի Տապարիա 'ի բանտի մեռան ։ Եպենդէ 'ի Պանկրա այրեցաւ 'ի դատաւորէն Դէոկղետեայ ։ Իպէլիս որ Եփրախայ կատարեցաւ ։ Ընանիա և Սիմոն 'ի Բիւզանդիա սրով կատարեցան յեպարքոսէն ։

Այսքիկ Թիւք պատուեալք և յորովայնէ ընտրեալք և յառաջ քան զլինելն աշխարհի նկատեալք[2] ։ Կազմեցան բազկօք բանին և եղան հիմունք Եկեղեցւոյ․ և սոքօք սկսաւ հաստատն որ է Կաթուղիկէ եկեղեցի, որ և բնակարան փառացն Տեառն խօսուն աստեղօք բոցավառեալ 'ի փառս երկնաւոր փեսային ։

Յամս Տիբերիայ կայսեր փայլէր իմաստութեամբ որանչելին Փիլոն Աղէքսանդ-

(1) Երկու օրի․ 'ի Յրամթոս ։ (2) Ոմանք՝ կատարեալք ։



րիա ։ Սա գրեաց զամենայն պատահմունս Հրէից. գրեաց և մեկնութիւնս արարածոցն. և վասն վաստակոց երկրի. և վասն մտացն արդարոյ ։ Զի յորժամ զարթնու աղօթէ և ոչ նզովէ. գրեաց և վասն աւերման լեզուաց. և վասն աշխատելոց ՚ի վարդապետութիւն. և վասն զանազան անուանց դրոց. և վասն երկու կտակարանաց. և հինգ ճառս վասն տեսլեան երազոց. և հինգ ճառս վասն ելանելոյ հոգւոյ ՚ի մարմնոյ. և չորս՝ վասն օրհնացն գրեաց և վասն արանցն որ յԵգիպտոս ըստ Քրիստոսի ճգնէին։ Գրեաց եպերանս Պաւղոսի որ զանձն իւր Աստուած արար. և այլ բազում ճառս խրատուց ։ Խօսեցաւ և վասն Քրիստոսի մարգարէաբար. և յետ խաչին, հաւատաց եկելութեան նորա յարանցն որ յԵգիպտոս զուսումն Տեառն ունէին. ո՛րք էին յաշակերտաց անտի առաքելոցն ։ Եւ յաւուրս Կղօդեայ կայսեր եդաւ գրեան նորա ՚ի դիւանին արքունի ։

Եւ ՚ի ժամանակս Տեառն մերոյ գտաւ ՚ի Հրէայսն եւթն հերձուած որպէս ասէ Յովսեպոս ։ Առաջին Դպրացն, որ կոչէին Օրինականք. երկրորդ Ղեւտականք որ ունէին զաւանդութիւն ծերոցն. երրորդ փա-

ընծեցուցին՝ որ մկրտին յանձանս և հաւատան աստեղաց և բախտից. բայց հաւատան յարութեան. և խոստովանին հոգի և հրեշտակ, և պահեն երկիցս 'ի շաբաթու, զերկուշաբաթ և զհինգշաբաթ։ Չորրորդ՝ Սադուկեցիքն որք ոչ խոստովանին հոգի և հրեշտակ և յարութիւն. և առին զանուն և զուսումն 'ի Սադովկայ (1) քահանայէ։ Հինգերրորդ՝ Անկրոտողքն, որք ասեն թէ ոչ կարէ մարդ ապրիլ եթէ ոչ ամենայն աւուր մկրտի։ Վեցերրորդ՝ որք շնչաւոր ինչ ոչ ուտեն և զՄովսէս և զմարգարէսն ոչ ընդունին։ Այլ՝ այլ գրեանս ունին փոխանակ նոցա։ Եւթներրորդ՝ Հրէութիւնն որ զօրութիւն գրոց ոչ իմանան, այլ 'ի գիրն հային. և մի Աստուած մի անձն դաւանին, և պահեն զօրէնսն։

---

## ԳԼՈՒԽ Է.

Յաղագս Աբգարու որ առաքեաց յԵրուսաղէմ նկարագել զամն պատկերին Քրիստոսի։

Յինն և տասն ամին Տիբերեայ կայսեր Աբգար արքայ Հայոց և Ասորոց լուաւ ըզհամբաւ Տեառն մերոյ, և երկրպագեաց նը-

(1) Երկու օրի. 'ի Դ[illegible]

մա. և հաւատաց ՚ի նա, և առաքեաց նմա թուղթ աղաչանաց ՚ի ձեռն Անանէ հաւատարմին իւրոյ. գալ առ նա և բժշկել զնա ՚ի ցաւոցն, որ դիպեալ էր նմա ՚ի Պարսս յառաջ քան զեւթն ամ. և թագաւորել ընդ նմա.

Իսկ Տէրն խոստացաւ յետ խաչին իւրոյ և յարութեանն առաքել նմա բժիշկ յաշակերտաց իւրոց. և արժանի արար զնա թըղթոյ. և երանեաց նմա։

Եւ արքայն բարեբախտ առ անձուկ կարօտութեան իւրոյ առաքեաց զՅովհաննէս նկարիչ բերել զպատկեր նորա, փոխանակ անձին նորա։ Եւ նորա եկեալ և տեսեալ զՅիսուս, ջանայր պեղել (1) զդէմ նորա ՚ի դաստառակին Աբգարու, և ոչ կարէր զի փոխէր նա փառաց ՚ի փառս, և ցնծայր ՚ի հաւատս հեթանոսաց։ Վասն որոյ խընդրեալ առ ինքն զկտաւն աղբիւրն գթութեան՝ դնէր երեսաց իւրոց, և նկարեալ լինէր տիպ նորա ՚ի հանդերձէղէնն (2) և տայր ցնկարիչն։

Եւ էր այս նախ քան զՔրիստոսի չարչարանան եւթն ամուրբք։ Եւ պատկերն բերաւ և տուաւ թագաւորին և բազում նշանք լինէին ՚ի նմանէ (3) մինչեւ եկն Թա-

(1) Երեք օրի. նկարել։
(2) Երեք օրի. ՚ի դաստառակին։
(3) Մի օրի. յաջէլու. եւ բժշկեաց զկէս գաղութեան թագաւորին։

դէոս Սաբեայն ։ Եւ ՚ի նոյն ամի կամաւոր մահն Տեառն խաչիւ, թաղումն, և յարութիւն, և հորձանումն դժոխոց, և ազատութիւնն արարածոց, և յետ քառասուն աւուր համբառնալն առ Հայր ։

Գրէ և զայս Յովսեպոս և ասէ այսպէս. յաւուրս մեր երեւեցաւ այր մի որում Յիսուս անէին, և ՚ի ձեռն բազում նշանացն զոր առնէր, յայտնի երեւէր թէ նա իցէ Քրիստոսն. և վասն նախանձու մատնեցին զնա անօրէնքն Պիղատոսի դատաւորին, և սպանին զնա խաչիւ. և յետ երից աւուրց տեսին զնա կենդանի. և ոչ մեկնեցան ՚ի սիրոյ նորա հաւատացեալքն ՚ի նա ։ Եւ մինչեւ ցայսօր աճէ հաւատքն նորա. և ստուգեցաւ թէ նա ինքն է Քրիստոսն որդի Աստուծոյ կենդանւոյ ։

Եւ ասէ Յովսեպոս թէ ՚ի նոյն ամի ՚ի տօնի Պենտակոստին Պիղատոս եմոյծ զպատկերն կայսեր ՚ի տաճարն. և յայնժամ ձայն լսելի լինէր թէ գնամք, ահա գնամք աստի, և ոչ եւս այլ դարձցուք ։ Յիշէ և զայս Փիլոն յերկրորդ գիրսն իւր ։

Իսկ յաղագս անկար պատմուճանին Տեառն. ասէ Սուրբն Եփրեմ. թէ արկին զինուորքն վիճակս վասն չպատառելոյ, և եկն վիճակն զինուորի մի՝ որ ընդ ձեռամբ Գուն-

կիւռնոսի. և առ զնա Գունդիփառոս հարիւ-րապետն, և եբեր զնա յաշխարհն Գալա-տացւոց 'ի քաղաքն իւր Մազդան (1). և պա-տուի անդ մինչև ցայսօր։ Այլ միւս հա-րիւրապետն ղոքեկեցի եբեր զիւր մասն հանդերձին 'ի քաղաքն իւր Փուդ 'ի մայ-րաքաղաքն Եդեսացւոց, և արկեալ 'ի պատուա-նարդ ապակեղէն կախեալ կայ յԵկեղեցին անհպելի յամենեցունց. հուպ եկեալ բերան ապակւոյն և առեալ յամենեցունց։ Այլ զայս պատմութեան անկար հիւսեալ քոյրն Աբգարու. և առաքեաց Տեառն մերոյ 'ի ձեռն Աննան սուրհանդակի։

Իսկ զկնի փրկական չարչարանաց Տեառն գնաց Ագրիպաս ամբաստանել զՀերովդէ հօրեղբօրէն իւրմէ. և առաքեաց կայսրն կալաւ զՀերովդէս կնաւն Հերովդիադաւ։ Եւ եդաւ 'ի բանտի 'ի Պառանիա քաղաքի. և յետ աւուրց սպանան երկոքին։

Իսկ Աբգար արքայ երկիցս գրեաց առ Տիբեր վասն Քրիստոսի աստուածութեանն և տրտունջ զՊիղատոսէ։ Եւ առաքեաց Տիբեր կոչեաց զՊիղատոս. և զամենայն ինչ ստուգեալ 'ի նմանէ, սպան զնա։ Գրեաց Աբգար. և 'ի Բաբելոնին առ Ներսեհ արք-

(1) Երկր. օրի. Մազդան։

քայ. Նոյնպէս և այս Պարսից թագաւորն հաստատեալ ՚ի Քրիստոսի աստուածութիւնն. Եւ այս ՚ի բարի կամացն Աստուծոյ եղեւ. զի մի կրեսցէ աւետարանն հակառակութիւն ՚ի նորութեանն խռովս, մինչեւ կատարելապէս հաստատեսցի. որպէս և եղեւ ՚ի ժամանակս այսր թագաւորաց ընդարձակութիւն և խաղաղութիւն քարոզողաց բանին. և յանկարծակի թուեաւ աւետարանն ընդ չորս կողմանս աշխարհի ՚ի ձեռն աստուածասէր և նախընծայ այսր թագաւորի, որ յառաջնեաց ձեռն ետ ՚ի Քրիստոս. ըստ Դաւթայ մարգարէի գնալով ընդ սորա երկրի որոց Առաքելոցն հրամանաւ Հոգւոյն որպէս և գրեցաք վերագոյն:

Իսկ Տիբերիոս կեցեալ ամս եւթանասուն և ութ, և թագաւորեալ ամս քսան երեք, մեռաւ: Եւ թագաւորեաց Գայիոս ամս երիս և ամիսս չորս. և եհան զԱգրիպպաս կապեալ ՚ի Հռովմ ՚ի Տիբերէ. և հանեալ զնա առաքեաց թագաւոր Հրէից: Եւ զՓիլիքս դատաւոր Եգիպտացւոցն, ետ նմա իշխանութիւն հոգալ և զՀրէայսն խընամով: Վասն որոյ նեղէր զնոսա խստագոյնըս. և զաւուրս տեղիս նոցա պղծէր զոհիւք պղծովք զամս եւթն. վասն որոյ առաքեցին

զդեսպանս առ Գայիոս արգաչել զնա, որոց մի էր և Փիլոն փիլիսոփայ, և ոչ լուաւ նոցա այլ և տրտմեցաւ յոյժ. և առաքեաց 'ի Պատրանիոս իշխանն Ասորոց դնել զպատկերն նորա յամենայն մեհեանս և 'ի տաճարն Հրէից պաշտել իբրեւ աստուած, բայց որում և արարն խոկ. և կատարեցաւ ասացեալն 'ի Դանիէլէ, պղծութիւն աւերածոյն:

Յայսմ ժամանակի Սիմոն և Մենանդրոս և Կերինթոս երեւեցան:

Իսկ Գայիոս սպանաւ 'ի ներքինեաց միջէ իւրեւ զմարդ մի չար և ժահկանացու. և թագաւորեաց Կղօդիոս ամս չորեքտասան:

Իսկ Ագրիպպաս կեցեալ չորրորդ ամսեան ամս երիս. և թագաւորեաց ամս ութ և յօժար կամօք ընկալեալ զպատուիրան Աստուածոյ յամբոխէն՝ եհար զնա հրեշտակ Տեառն և մեռաւ:

Յայնմ ժամանակի 'ի զատկի տօնին անկեալ խեղդ Հրէից 'ի տաճարին սպանին անձինս երեսուն հազար: Եւ կացոյց Կղօդիոս թագաւոր Հրէից զԱգրիպպաս (1) որդի Ագրիպպայ և զՓիլիպոս առաքեաց դատաւոր Պաղեստա-

(1) Երկու. օրի. զԱգրիպ- պաս.

ցւոց և Սամարացւոց։ Եւ Կղոդիոս վախճանեալ առ զԹագաւորութիւնն Ներոն որդի նորա ամս երեքտասան։ Եւ առաքեաց զՓեստոս դատաւոր և եհան զՓելիքս, որոյ առաջի եկաց Պօղոս. և դարձեալ հանդէպ Փեստոսի և եկաց 'ի ատենի նորա Ագրիպպաս. և զնա եւս եհան Ներոն և եդ զԱլբինոս։ Յորոյ աւուրս ապստամբեցին Հրեայք 'ի կայսերէն։ Ի սոյն ժամանակս հուր էջ յերկնից և այրեաց շինուածս բազումս և ամբոխս մարդկան ընդ նոսա։

Եւ յետ այսորիկ խռովութեան Ներոնի սպան զընտանիս իւր. և յերեքտասան ամի թագաւորութեանն իւրոյ սպան զառաքեալսն. և յարոյց հալածանս եկեղեցւոյ. և առաքեաց յՈւրոշաղէմ զՎեսպիանոս (1) և զՏիտոս որդի նորա վասն ապստամբութեանն Հրէից։

Իսկ Յովսեպոս զօրավար Հրէից և խնամատէր, ամրացեալ կայր 'ի Յուդբուղայ (2) Գաղղաք. և գնաց Վեսպիանոս և առ զքաղաքն, եւ սկսաւ կոտորել զնոսա. եւ չոգաւ Յովսեպոս ընդ առաջ նորա և ասէ. աւետիս քեզ Վեսպիանէ, զի 'ի մօտոյ թագա-

(1) Երկու օրի. Վեսպեսիանոս։ (2) Երկու օրի. 'ի Յուդ-բուղայ։

ւորեսցես. քանզի վճարեաց Ներոն զկեանս իւր. որպէս և եղեւն։ Քանզի Ներոն աւեցեալ յամենեցունց սպան զանձն իւր։

Եւ Թագաւորեաց Գաղբաս ամիս եւթըն և սպանաւ 'ի մէջ Հռովմայ. և Թագաւորեաց Սուրիտաղոս 'ի Գերմանիա։ Եւ Աւթեմոն 'ի Հռովմ. որ և յետ երից ամսոց սպանաւ։ Եւ Թագաւորեաց Բեղաղիմոս (1) ամիս ութ. և լեալ ամբոխ 'ի վերայ Նորա սպանին զնա։

Իսկ Վեսպիանոս առեալ զՅովսեպոս պատուալ ընդ ինքեան պահէր և Նստէր շուրջ զԵրուսաղեմաւ։

Եւ 'ի հասանել այսմ համբաւոյ առ զօրսն որ ընդ Վեսպիանոս, յանկարծ քարոզեցին զնա Թագաւոր և Ետուկրատոր։ Եւ նա զուարճացեալ յանձն եթող զորդին 'ի վերայ Երուսաղեմի, և ինքն չոգաւ յԵգիպտոս և առեալ զնա Հնազանդեաց։ Եւ զայնր կոչմամբ չոգաւ 'ի Հռովմ. և Թագաւորեաց 'ի վերայ Նորա ամս ինն. և ամիս տասն։ Իսկ Տիտոս առ զԵրուսաղէմ 'ի Զատկի տօնին. և կորոյս Հրեայս բիւրս հարիւր քսան եւվեց. և քակեցաւ պարիսպն և այրեցաւ հրով. քան զվերջին աւերն յահկի ամենեանն։

(1) Մի օրի. Գիլգաղիա.

Առումն Երուսաղեմի և աւերն լինի յԱդամայ ամք հինգ հազար հինգ հարիւր(1) երեսուն և ութն. և ՚ի յարութենէ Տեառն մերոյ ամք քառասուն. և յառաջին շինուածէ տաճարին մինչ յետին յաւերն ամք հազար հարիւր երեք:

Յերկրորդ ամի Վեսպիանոս առաւ Երուսաղէմ: Եւ ժողովեալքն անդր գաղութ երեք հարիւր բիւր էին: Եւ յայնմ զատկին անկին (2) ՚ի զէնումն քսան և հինգ հազար գառինս. և տասն այր ՚ի մի գառն էին սուրբք և անսուրբք. ոչ կարէին ուտել, և որք կերանն երկերիւր տասն բիւրք էին. վեց բիւր սրով մեռան. հարիւր տասն բիւր սովով. տասն բիւր գերի վարեցան. ՚ի տասն եւթն ամէն ՚ի վեր յԵգիպտոս տարան յաղիւսագործութիւն. և ՚ի տասն եւթանէն ՚ի վայր բաժանեցան զօրացն: Եւ այսպէս խնդրեցաւ արիւն որդւոյն Աստուծոյ:

Յետ քառասուն ամի տուաւ նոցա ժամանակ ապաշխարութեան ՚ի մարդասիրէն Աստուծոյ: Եւ տարաւ Տիտոս ՚ի Հռովմ զփիւնան զերկու վնչանաւորս և դուռն մի զտաճարին: Եւ սաստ բարձաւ թագաւո-

(1) Երկու օրի. չորս հարիւր:  (2) Մի օրի. ածան:

րութիւնն 'ի Հրէաստանէ և Անգղիաստանէ և յԱսիոյ և Գերմանիկոյ. և տիրեցին միայն Հռոմայեցիքն :

Յետ Վեսպասիանեայ թագաւորեաց Տիտոս որդի նորա. և յերկրորդ ամին Աստուած բարկացաւ և հալածեաց ամբոխն, և եհար զնա հրեշտակ տեառն և մեռաւ : Եւ թագաւորեաց Դոմետիանոս (1) եղբայր նորա ամս տասն և եւթն և ամիս հինգ. սա հալածեաց 'ի Հռոմէ զամենայն աստեղագէտս և զկախարդս և աւերել ետ զայգեստանն : Եւ յաւուր սորա աճեաց Քրիստոնէութիւն. վասն զի եհարց Պատրուքաս (2) իմաստասէր զվարդապետն իւր զԱսփինոս և ասէ. զի՞նչ է ուսումն այս Քրիստոնէութեանն որ հաւատան առն խաչելոյ այդքան բազմութիւն. այլ և զարմանամ զի և Թէոդորոս իմաստասպետն Աթենայ, և Ափրիկանոս Աղէքսանդրացի և Մարտինոս 'ի Բալթա հաւատացին 'ի նա թողեալ զվայելչութիւն աշխարհի և զուսումն իւրեանց : Եւ պատասխանի վարդապետն և ասէ մի զարմանար ընդ այդ, զի կարծեմ ես, թէ նմա և Աստուածք հնազանդին. և նա ասէ. զի՞արդ.

(1) Երկու օրի. Դեմետրիանոս :

(2) Երկու օրի. Պատրուքուլոս :

Երուսաղեմի Եպիսկոպոս՝ և Իգնատիոս Անտիոքու։ Բայց զՅովհաննէս յաջորդին Ներուա դարձոյց և կեցք զաս ասեն։ Եւ Յուստոս տիբերացի Հրէից պատմագիր աստ էր։ Իսկ Պլինոս (1) Սեկունդիոս հրամանաւ Թագաւորին զբազումս կոտորեաց 'ի Քրիստոնէից և ապա զղջացաւ և գրեաց առ Թագաւորն և ասէ. ամենայն ինչ բարի է Քրիստոնէից. բայց զի կուռս ոչ զոհեն և ընդ առաւօտս երկրպագեն Քրիստոսի։ Եւ նա գրեաց և ասէ, Խնդրեա զդոսա և մի խնդրեք։

Յաւուրս յայսմիկ ապստամբեցին Հրէայքն յԵգիպտոս և եդին իւրեանց Թագաւոր Լուկուաս (2) անուն, և եկին յԵրուսաղէմ։ Եւ առաքեաց Տրայիանոս եւ կոտորեաց զնոսա, և մնաց ինքն իշխան 'ի վերայ Հրէիցն։

Յայսմ ժամանակի Հրեայքն որ 'ի Կիպրոս կուտեցան 'ի վերայ Սաղամինայ քաղաքին. և կոտորեցին զՅոյնսն որ 'ի նմա։ Նոյնպէս և որք 'ի Լիբիայ և 'ի Կիւրենական աշխարհն էին ամբարձին զգլուխս իւրեանց և կորեան ինքեանք։

Յայսու ժամանակօք էր Սեկունդոս փի-

(1) Այլ օրին. Պլինիոս։ Այլ օրին. Պլինոս։

(2) Այլ օրին. Լուկուասոս։ Այլ օրին. Լուկասոս։

ռակացն ։ Եւ ՚ի Հռովմ ոսկեղէն սուն այրեցաւ հրով ։ Եւ ՚ի Գաղատիայ երեք քաղաք շարժմամբ կորեաւ (1) ։

Յետ Տրայիանոս Թագաւորեաց Ադրիանոս ամս քսան և մի ։ Ի չորրորդ ամի սորա Թագաւորքն որ յՈւռհայ՝ բարձան․ և մնաց ՚ի մեծն Հայք Թագաւոր ։

Ադրիանոս ինքնակալ և հայր աշխարհի անուանեցաւ զի զմուրհակս պարտուց այրել ետ ։ Ի չորեքտասան երրորդ ամին սորա ապստամբեցին Հրէայքն խաբեալ յառնէ միոջէ որոյ անուն Ասող ։ Եւ առաքեաց Ադրիանոս կոտորեաց զնոսա և հալածեաց զամենայն Հրէայսն որ յԵրուսաղէմ, և քանդել հրամայեաց զքաղաքն և առ ընթեր նորա հրամայեաց շինել քաղաք ․ և անուանեաց Եղու որ է արեւպակն ․ և բնակեցոյց ՚ի նմա Քրիստոնեայս և հեթանոս․ և զՀրէից ականջսն կտրել հրամայեաց ․ զի նշանաւոր լիցին ․ եւ Երուսաղէմ հայել մի իշխեսցեն աչօք ։

Ի քսաններրորդ առաջներրորդ ամի սորա եղեւ առաջին ժողովն Նիկիոյ քառասուն երեք Եպիսկոպոսաց, վասն Սաբելի Լիբացւոյ աղանդին ․ և նզովեցին զնա որ

(1) Երկու օրի․ կործանեցաւ ։

մի անձն առէր զԼուսաւորութիւնն և զԱյտղե-դիանոս որ առէր զմարմինն Քրիստոսի յերկ-նից բերեալ: Յաւուրս սորա էր Նկուղաս Թարգմանիչ և աստեղագէտ:

Զկնի Նդրիանոսի Թագաւորեաց Տիտոս Անտոնիոս, որ կոչեցաւ Սեբաստոս և ար-դար. և որդիք իւր ընդ նմա Թագաւորեցին ամս քսան երկու: Իսկ Նոտոն աշխարհի հայր Թարգմանի:

Ի սորա ժամանակս Յովհաննէս Նիկեա-պօլսեցի՝ գնաց 'ի Հռովմ և ետ Թուղթ ա-ղաչանաց Թագաւորին. և դադարեաց հա-լածումն Քրիստոնէից: Յաւուրս սորա ե-րեւեցան Կերոսն որ է Սարկոն. և Սարկոս եկեալ 'ի Հռովմէ ասացին ոչ գոլ զՅիսուս Քրիստոս որ 'ի մարգարէիցն քարոզեցաւ որ-դի Աստուծոյ, և ոչ գոլ յարութիւն, և 'ի վերայ մկրտելոցն առէին յանուն Հօր երե-ւելոյն, և յանուն մօրն Ճշմարտի, և յանուն որդւոյն որ էջ 'ի վերայ Աստուծոյ, և այլ անուանս թաչաղէին:

Իսկ 'ի Թուին Սորոց չորս հարիւր եւ-թանասուն և հինգ, Թագաւորեաց Մար-կոս Աւրելիոս ընդ որդւոյն Անտոնի և Լու-ցիոսի ամս տասն և ինն. յառաջին ամին սո-րա Վաղքէշ Թագաւորեալ Պարսից եկե-

եւթն ։ Սա դարձոյց զաքսորեալս 'ի հօրէ իւրմէ, և 'ի նորանէ էր Աղեքսանդրոս եպիսկոպոսն Երուսաղեմի ։ Եւ սպանաւ Անտոն 'ի մէջ Ուռհայու և Խառանու ։ Եւ թագաւորեաց Մակար ամ մի և սպանաւ ։ Եւ թագաւորեաց Անտոնինոս ամս չորս ։ Յաւուրս սորա շինեցաւ Նիկոպօլիս յերկրին Փղշտացւոց որ է Էմմաւուս ։

Եւ զկնի նորա թագաւորեաց Աղեքսանդրոս Մամեայ որդի կնոջ հաւատացելոյ և երկիւղածի, և եղեւ յոլով օգնուտ քրիստոնէից ։

Ի թուին Ասորոց հինգ հարիւր քառասուն երկու թագաւորեաց Պարսից Արտաշիր որդի Փափակայ (1) սկիզբն վերջին թագաւորութեանն Պարսից որ տեւեցին ամս չորս հարիւր տասն և ութ, որ և Սասանեանք կոչին թագաւորք քսան և եւթն, մինչեւ ցթագաւորութիւնն Արաբացւոց Մահմետին ։

Յետ Աղեքսանդրի թագաւորեաց Փիլիպպոս ամս եւթն և խաղաղացան Քրիստոնեայք ։ Յառաջին ամին սորա թագաւորեաց Պարսից Շապուհ որդի Արտաշրի ամս երեսուն և մի. և հազար ամ լցաւ Հռո-

(1) Մի օրի. Փափկենայ.

Նութեանն Հռովմայ։ Յետ այսորիկ Դեկտիոս սպան զՓիլիպպոս որդւովն, և թագաւորեաց ամ մի. և սպանաւ ՚ի Վուրիդոս. և թագաւորեցին Վուղոս և Վուղինոս և Գաղիոս և Վաղոն ամ մի։ Եւ զկնի նոցա թագաւորեցին Ուալերիանոս և Գաղերոս ամս տասն և ութն. և յարուցին հալածանս Եկեղեցւոյ։

Իսկ Շապուհ թագաւորն Պարսից ապականեաց զՍորիս և զԿիլիկիա և զԿապադովկիա գերութեամբ. և Գոդացիք անցեալ ընդ Դանուբ գետ. գերեցին և նոքա զաշխարհն Հռովմայ. և ապա դադարեաց Գաղերոս ՚ի հալածելոյ զՔրիստոնեայս. և աճեաց Եկեղեցի ՚ի նշանացն որ գործիւր ՚ի ձեռն սքանչելի արանցն։

Յետ սորա թագաւորեաց Կղաւդիոս ամ մի. և զկնի սորա Աւրելիոս ամս վեց. սա ած Հռովմայ շրջապատ պարիսպ մի այլ. և ապա մարտեաւ ընդ հաւատս մեր և եղեւ չանթակէզ ՚ի Տեառնէ։

Եւ թագաւորեաց Տակիտոս ամս վեց. և սպանաւ ՚ի Պոնտոս։ Եւ թագաւորեաց Պուղերինոս և յետ սակաւուց սպանաւ ՚ի Տարսոն։ Իսկ զկնի Շապուհի թագաւորեաց Պարսից Որմիզդ։ Ի թուին Ասորոց հինգ

հարիւր յիսուն երեք ծնաւ Կոստանդիանոս։

Եւ զկնի Գուղերինոսի Թագաւորեաց Պրոբաս ամս ութն. և 'ի նոյն ժամանակս Թագաւորեաց Պարսից Վահրարան ամս երիս։ Եւ յետ նորա Վահրայ որդի իւր ամս տասն և ութն։ Ի սորա աւուրս Մինկղիտոսն ամբարտացուցեալ զՄնտաք ապստամբեաց. և սպանին զնա զօրք Թագաւորին։

Իսկ յետ Պրոբայ Թագաւորեաց Կարոս, և որդիք իւր Կարին և Կարինոս և Նումերոս ամս երկու. Կարոս մեռաւ 'ի Միջագետս. և Կարինոս 'ի պատերազմի 'ի Գոմրացւոց սպանաւ, և Նումերոս սպանաւ յԱփրիկէ. և Թագաւորեաց Մինկղիտոսն. և աստի սկսանի Թուականն Դիոկղետիանոսի, որ է Ասորւոց հինգ հարիւր յիսուն և չորս. զի ետ Մինկղիտոսն զԹագաւորութիւնն Դիոկղետիանոսի. և 'ի սորա կամաց Թագաւորեցին Մաքսիմիանոս և Մաքսինդէս որդի իւր, որոց փեսայացաւ Դիոկղետիանոս։

Եւ 'ի սոյն ժամանակս Թագաւորեաց 'ի Գալլիա և 'ի Բրիտանիայ Կոստանդիանոս։ Եւ Մաքսինդէս ունէր զՀռոմ. և Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս ունէին զկողմանս արեւելից, և կային միաբանութեամբ. յորում ժամանակի ապստամբեաց Եգիպ-

տոս. և չոգաւ զօր 'ի հրամանէ սոցա, և հնազանդեցան ։ Դարձեալ 'ի մետասան ամին Դիոկղետիանոսի Թագաւորեաց Պարսից Ներսեհ ամս եւթն. և յետ նորա Որմիզդ որդի իւր ամս հինգ ։ Իսկ 'ի տասն և ինն ամին Դիոկղետիանոսի զօրացաւ հալածումն Քրիստոնէից և քակեցան Եկեղեցիք ։

---

## ԳԼՈՒԽ Ը.

Յաղագս թէ սով սաստիկ եղեւ 'ի Դիոկղետիանոսի ժամանակին ։

Եւ եղեւ սով սաստիկ մինչեւ եղեւ մոթ մի ցորեան երկու հազար հինգ հարիւր դահեկան արծաթի ։

Իսկ եհար Տէր խոցիւ զփորոն Դիոկղետիանոսի, և զղջացաւ և յանձնեաց զմասն իւր Մաքսիմիանոսի. և նա եւս չարագոյն եղեւ քան զնա յամբարշտութիւնս. և անկան երկոքեան Թագաւորքն յախտս դժնեայս, և դադարեցուցին զհալածումն. և խնդրեցին աղօթս 'ի Քրիստոնէից, և ոչ կացին մնացին 'ի զղջմանն, որպէս թէ Աստուածքն նոցա ոչ կամին. վասն որոյ և տան-

ջեցաւ աշխարհ տարաժամ մահուամբ. զի զտան այր դնէին 'ի մի գերեզման: Այլ և երաշտով պատուհասեալ լինէր և ազգի ազգի ցաւովք. և Թագաւորքն այնոքիկ վճարեցին զվարս (1) իւրեանց: Իսկ Կոստանդիանոս Թագաւորն Գալլիոնի ունէր երկու կանայս, զՀեղինէ և զԴէոդորէ (2) դուստր Մաքսիմիանոսի: Սա յութերրորդ ամի Թագաւորութեան իւրոյ էառ իւր հաղորդս և Թագաւորակից զԿոստանդիանոս որդին Հեղինեայ. և յետ երից ամաց վճարեցաւ. և տիրեաց որդին միահեծան:

Բայց Իգնատիոս մելտենացին ասէ թէ 'ի Թագաւորելն Կոստանդիանոսի չորս Թագաւորք ունէին զերկիր Սեւերոս, Մաքսիմոս, Մաքսինդէս և Մաքսիմիանոս միաբան 'ի հալածանս Եկեղեցւոյ: Եւ 'ի մեռանիլն Սեւերեայ իշխանք նորա ետուն զԹագաւորութիւնն Կոստանդիանու: Եւ զԼիկիանէս փեսայ նորա Կեսար կարգեցին: Եւ յետ եւթն ամի Թագաւորութեան իւրոյ Կոստանդիանոս կալաւ իւր հաղորդ զԼիկիանէս: Յայսմ ժամանակի Թագաւորէ Պարսից Շապուհ ամս եւթանասուն:

Իսկ Կոստանդիանոս գնաց պատերազմել

(1) Մի օրի. զկեանս: (2) Երկու. օրի. Դէոդորա

ընդ Ալեքսինդեայ 'ի Հռովմ. և մինչդեռ գնայր եղեւ ազդումն ինչ 'ի միտս նորա և ասաց ։ Ես գիտեմ զի կուռքդ չօգնեցին ինչ առաջին թագաւորացն. և ասաց եթէ օգնէ ինձ Աստուածն Քրիստոնէից, նմա երկրպագանեմ ես ։

Եւ 'ի հասարակ աւուրն տեսանէր առաջի իւր նկարեալ յօդն նշան խաչի (1) և գիր 'ի նմին ձեւացեալ այսու յաղթեա 'ի տեսիլ ամենայն զօրացն ։ և անկաւ ահ 'ի վերայ նոցա ։ Եւ յայնմ գիշերի երեւեալ նմա Քրիստոս ասէ. արա զօրինակ երեւելոյն քեզ (2) և յաղթեսցես. և զարթուցեալ առաւօտուն արար այնպէս, և հրամայեաց առաջի իւր տանել. և այն եղեւ 'ի կրօնս խաչ տանել առաջի զօրաց ըստ Քրիստոսի ։

Եւ 'ի խմբել պատերազմին եղ հողմ բռնութեան 'ի նշանէ խաչին, և ելից զամբարտաւանն 'ի Տիբերոս գետ. և տիրեաց Կոստանդիանոս Հռովմայ. և հաւատացին 'ի Տէր նաեւ կին իւր Դիկղեդա դուստր Դիոկղետիանոսի, և Լիկիանէս փեսայ իւր ։

Բայց Լիկիանէս ոչ պահեաց զհաւատսն և սպան զնա Կոստանդիանոս ։ Ոմանք ասեն

(1) Մի օրի. յաւելու աստեղօք ։

(2) Մի օրի. ընդ քեզ և ընդ ժողովրդեան զօրաց ։

Կոստանդիանոս խաբեալ 'ի կնոջէն ուրացաւ, և հալածէր զԵկեղեցի Աստուծոյ մինչև բորոտեցաւ 'ի Տեառնէ. և 'ի ձեռն Սեղբեստրոսի մկրտեալ՝ ողջացաւ: Նոյն Յովհաննէս ասիացին զԳիրքս զայս հօր նորա առէ Կոստանդեայ կրել. և հաւատացեալ 'ի Տէր և հարսն առեալ զԴիկղիդա, որ ոչ ետ գնալ որդւոյն 'ի ճանապարհ հօր իւրոյ. մինչև երեւմամբ երկնաւոր լուսոյ երկոքին հաւատացին 'ի Քրիստոս սրտի մտօք. վասն որոյ և սպանեցան ամենայն թշնամիք Եկեղեցւոյ. և եղեւ ինքնակալ Կոստանդիանոս:

Բայց յիշեսցուք աստանօր զբանս իմաստնոյն Թէոդորեայ որ ասէր՝ թէ Նկարիչք ըղձտախտակ և զորմ զարդարեն 'ի վայելս աչաց. իսկ վկայաբանք՝ զպատմութիւնս բանիւ զարդարեն նշանաւոր իրօք:

Արդ զայսու ժամանակօք երեւէր սրբազանն արեւելեան սքանչելին Գրիգորիոս Պարթեւն. որ և մեծամեծ հրաշիւք և նորագոյն նշանօք լուսաւորէր զբովանդակ Հայս, զվիճակն Թադէի և Բարդողիմեայ, նմանեալ նոցա ամենեւին. նա մկրտեաց զՏրդատէս Թագաւոր վաղգայինն իւր. և առեալ զնա գնայր 'ի խնդակցութիւն Կոս-

տանդիանոսի բազում սքանչելագործութեամբ ՚ի ճանապարհին ։

Եւ երանէր թագաւորն Կոստանդիանոս ընդ առաջ նոցա, և առնէր նաւակատիս գալստեան նոցա ամենայն արքայութեամբ իւրով ։

Եւ խորհեալ ՚ի միասին զկարգս Եկեղեցւոյ, և զօգուտ աշխարհի . և ուխտեալ միմեանց անլուծելի դաշամբք դառնային յաշխարհն իւրեանց երեւելի փառօք և պարգեւօք [1] ։

Իսկ Կոստանդիանոս խաղաց գնաց ՚ի Բիւզանդիոն և ընդարձակեաց զնա . և յաւել ՚ի նա չորս միլ, և զարդարեաց զնա զարդուք յերրորդ ամի թագաւորութեան իւրոյ, և յանուն իւր կոչեաց ։ Շինեաց ՚ի նմա մեծ եկեղեցի յանուն Իռինեայ . և միւս ևս յանուն Առաքելոցն . և անդ փոխեաց զարքունիս Հռովմայ . և եդ զամենայն հոգս իւր ընդ Աստուծով . և ետ հրաման ընդ ամենայն երկիր, քակել զմեհեանս և շինել Եկեղեցիս և հրամայեաց ոչ զինուորիլ և ելանել ՚ի զօրս, որ ոչ իցէ ծնունդ աւազանին ։

(1) Մի օրի . մեծաւ շքե. ղութեամբ ։

## ԳԼՈՒԽ Թ.

### Յաղագս Արիոսի հերձուածողին։

Յայնմ ժամանակի երեւեցաւ Արիոս երէց Աղեքսանդրացի 'ի մէջ եւթն բարեկամաց իւրոց. զորս եգիտ սատանայ զէն չարութեան իւրոյ. եւ ջանայր նոքօք կրկնել զերկրպագութիւն արարածոյս։ Քանզի ետ նոցա ասել զՈրդին Աստուծոյ արարածոց անդրանիկ։ Նա գրեաց թուղթ առ Եւսեբի Նիկոմիդացի. եւ եցոյց ընդ ինքեան զվեց բարեկամս իւր, եւ արար զնա ընդ իւր. եւ են համախոհք նորա այսոքիկ. Սեբէոս՝ Կեսարու. Թէուտոս՝ Լաւոդիկոյ. Փաւլինէ՝ Սրոյ եպիսկոպոսք. Աթանաս՝ Անաւարզայ. Գրիգոր՝ Տարութայ. Ադիոս Պէւդիոյ կամ Լըդիոյ։

Իսկ յորժամ յայտնեցաւ չարութիւն նորա նզովեաց զնա Պետրոս Աղեքսանդրու Եպիսկոպոսն։

Իսկ նա յետ վկայութեան հայրապետին արար իւր խորհրդակից արս երեւելիս ըզՄարիս Քաղկեդոնի Եպիսկոպոսն, զՍեբի Նիկոմիդայ. զՄելիտոս Եպիսկոպոս Եգիպտացի, որ հալածման ժամանակին զոհեալ

էր, և լուծեալ յաստիճանէն, և զԱյիթալէս և զայլս բազումս, և արար ընդ ինքեան։ Յորում ժամանակի եղեւ շարժ սաստիկ յԵգիպտոս. և բազում քաղաքս և աւանս ապականեաց զշարժումն աղանդին Արիոսի նշանակելով։

Եղեւ այլ ինչ պատասաումն (1) յԵկեղեցի վասն զատկի։ Քանզի կողմանքն արեւելից ընդ Հրէայսն առնէին 'ի չորեքտասան լուսնին. և արեւմտից կողմն միշտ 'ի կիւրակէի։

Իսկ սուրբն Աղեքսանդրոս փոխանորդ Պետրոսի արար ժողով յԵգիպտոս բազում եպիսկոպոսօք սակս Արիոսի և նզովեաց զնա, և զամենայն խորհրդակիցս իւր։

Գրեաց զնզովսն և ետ տանել ընդ ամենայն երկիր. բայց ոչ շիջանէր հուրն ապականիչ մինչեւ խմացոյց Թագաւորին զբանն և աղաչեաց հրաման տալ տիեզերական ժողովոյ։

Եւ իբրեւ լուաւ Թագաւորն տրտմեցաւ յոյժ. և նախ գրեաց Թուղթ առ Աղեքսանդրոս և առ Արիոս զի Թողուցեն ըզբանն, և հաշտութիւն արասցեն։ Եւ ջանացաւ Աղեքսանդրոս. և ոչ դադարէր հիւանդութիւնն, այլ տարածանէր ընդ ամե-

(1) Մի օրի ; պատահումն։

րել մարտիրոսաց և հաճոյացեալ ծառայից Աստուծոյ ։

Զի լուեալ էր Թագաւորին ՚ի Սեղբեստրոսէ և ՚ի Պարթեւէն Գրիգորէ յաղագս այսոցիկ, և արարին այնպէս և կանոնեցին, զայն սահման յաւիտենական հրամանաւ Հոգւոյն սրբոյ ։ Իսկ Թագաւորն կանոնս հաստատեաց ձեռօք իւրովք, զանարգողսն եկեղեցականաց չար և դառն տանջանօք պատժանել ։

Ի քսան ամի արքայութեանն Կոստանդիանոսի եղեւ ժողովս այս յամի հինգ հազար ութ հարիւր երեսուն երեք ելից Ադամայ ։ Եւ նզովեցին զկնի Արիոսի զԵւսեբի Նիկոմիդու եպիսկոպոս և զԹէոգնիս Նիկիու, և զՄարիս՝ Քաղկեդոնի, և զԹովմաս՝ Մարկակի, որք էին (արք) նշանաւորք ։

Իսկ մայր Թագաւորին տեսլեամբ Աստուծոյ եկ յԵրուսաղէմ Սեղբեստրոսիւ . և եգիտ ՚ի վերայ գերեզմանին Քրիստոսի պատկերս կանգնեալ Աստղկայ . և խաչանգամանօք եգիտ զխաչն Քրիստոսի որ Թաղեալ կայր ՚ի Գողգոթա, ՚ի ձեռն Յուդայի յայտնեալ առ Մակարիւ Հայրապետիւ Երուսաղեմի ։

Եւ արբեաց դշխոյն զԵրուսաղէմ և շինեաց եկեղեցիս ՚ի սքանչելական տեղիսն . և

յանձնեաց 'ի Մակարիս, որ է Մարկոս եպիսկոպոս Երուսաղէմի: Եւ շինեաց վանս բազում արանց և կանանց և կուսանաց. եւ խնամէր զնոսա ծախիւք արքունի:

Բայց Արիոս 'ի հնարս մտեալ խաբեաց զպարզամիտս Թագաւորին. որպէս զղջացեալ աղաչէր տեսանել զԹագաւորն, զի տացէ զխոստովանութիւն ուղիղ դաւանութեանն. և եմուտ առաջի արքային ունելով երկու կոնդակս 'ի ձեռին. մինն մեծ գրեալ պարզապէս. զկնի զդաւանութիւնն, զոր կալաւ առաջի Թագաւորին. և զմիւսն փոքր, զոր ծածկեաց 'ի Թեզանին որ էր իւր հայհոյութիւնն. և ասաց թէ Արիոս այլ ազգ փառաւորէ զԱստուած քան թէ որ այսր է, մի անեսցէ զփառս նորա: Եւ հաւատաց Թագաւորն մինչեւ ծածկատեան խայտառակեաց զնա պատուհասմամբ աղօթիւք սուրբ եպիսկոպոսին Աղեքսանդրի:

Եւ Թագաւորն առաւել հաստատէր 'ի հաւատսն Նիկիոյ և փառաւորէր զԱստուած. արար ազատ զԵկեղեցի ընդ ամենայն երկիր. և կարգեաց առատ հռոգս իւրաքանչիւր եկեղեցւոյ. զի որբք և այրիք խնամեսցին 'ի ծախս եկեղեցւոյն. և ամենայն եկեղեցի առէ կալցի անպական զհին և զնոր կտակա-

հակամեաց ինքեան խոստանալով երիցուն պահել զաղանդ նորա: Եւ ետ աւագ որդւոյն զԿ՟նտինոսի կտակն: Իսկ զկնի աւուրց գնաց երէց որդին պատերազմել ընդ կրտսերոյն վասն Հռովմայ. եւ Դաղմատիոս որ էր Կեսար եւ զօրագլուխ ի Հռովմ, ել ընդ առաջ նորա եւ սպան զնա. եւ ապստամբութիւն մտաբերեաց, եւ սպանաւ ի չարիս իւր: Կամեցաւ Կոստոս եւ զորդիսն սպանանել. եւ դարձեալ խնայեաց ի նոսա զի Գաղոս հիւանդագին էր, եւ Յուղիանոս մանուկ: Եւ այսու պատճառաւ զերծան ի մահուանէ:

Եւ յետ աւուրց գնացին առ միջին որդին Կոստանդիանոսի. եւ նա ետ զնա յուսումն մերձ ի Կեսարիա ի գիւղ մի Մակաղի անուն. եւ էին կայտառք յաստուածպաշտութիւն. եւ եղեն վկայասէրք. եւ սկսան շինել վկայարան յանուն սրբոյն Մամասայ ի Կեսարիա. եւ վաստակէին երկոքին անձամբ. եւ շինուածն Գաղոսի հաստատէր, եւ Յուղիանոսին փլանէր եւ ցրուէր գուշակելով զհանդերձեալն:

Եւ կոչեաց զԳաղլինոս առ ինքն Կոստանդիանոս, եւ Կեսար կարգեաց յԱնտիոք. եւ խորհեցաւ ապստամբութիւն եւ նա նման

Հօր խուրոյ. և սպան զնա Թագաւորն: Եւ զՅուլիանոս կալեալ եդ ՚ի բանտի զի ձեռն ետ եղբօրն. բայց զկնի աւուրց բարեխօսութեամբ Թագուհւոյն Եփսիայ եհան ՚ի բանտէն. և առաքեաց զնա ուսանել յԱթէնս. ուր կային և ամոլքն հաւատոյ Գրիգոր Նզիազու և Բասիլիոս, որք մարգարէացան նմա զհանդերձեալն:

Յայնմ ժամանակի շինեաց Թագաւորն Կոստանդին քաղաք մի ՚ի յերկրին Սելեւկացւոց, և անուանեաց Կոստանդնուպօլիս:

Ի վեցերրորդ ամին Կոստոսի Հռովմայ Թագաւորին բռնացաւ Մագնիտիս, և եհան ՚ի նմանէ զԻտալիա և զԱփրիկէ. եւ Թագաւորեաց ՚ի Սիրմի: Եւ յոյժ առեալ չարեաց ոմանց սպանին զԿոստոս. և զեղբօրորդին նորա Կոստանդիանոս՝ որ Թագաւորեալն էր ընդ նմա զամս երիս:

Եւ լուեալ զայս Կոստանդին և զայրացեալ գնաց ՚ի վերայ Մագնիտի, և սպան զնա, և Զուփիլէս (1) որ ընդ նմա էր Թագաւորեալ:

Եւ երեւեցաւ յաւուր յայնմիկ նշան լուսեղէն խաչի յարեւելից կուսէ:

Եւ չոգաւ Թագաւորն ՚ի Հռոմ. եւ-

(1) Մի օրի. զԲուժժիլոս:

կլին և զգեցաւ հանդերձ փիլիսոփայի սեւ-ներկեալ զոր Սքեմն կոչեն . և ծաղր արար զծիրանիսն :

Բայց ոմանք այսպէս ստուգեն վասն Յուլիանոսի . եթէ Անկղէպոս և Մելիանէս եղբարք երկոքին փեսայք Կոստանդիանոսի Թագաւորին՝ երկու քեռ :

Յուլիանոս որդի էր Անկղեպոսի . և Գալոս եղբայր իւր որ սպանաւ 'ի պատճառս ապստամբութեան . և Յուլիանոս անկաւ 'ի սեղանն սուրբ և ապրեցաւ , Աթանաս հայրապետին աղաչանօք : Եւ Մելիանէս ունէր դուստր մի Եղութրա անուն . որ զկնի հօրն սպանման ժառանգեաց զինչս նորա և կեայր կուսութեամբ և քրիստոնէութեամբ . և կամեցաւ գնալ Երուսաղէմ , և աղօթել անդ , և վստահացաւ զստացուածս իւր 'ի Յուլիանոս որպէս յանագահ և 'ի փիլիսոփայ . զի մաշկեայս զգենոյր . երեքտասան թագ ոսկի ականակուռս , հարիւր քսան և հինգ կենդինարս զարդ կանանց ոսկի և ինսուն եւ եւթն կենդինարս անգին ոսկի , և հանդերձեղէնս անգինս և անթիւս :

Իսկ Յուլիանոս խորհեցաւ ընդ վարդապետն իւր հեթանոս Մելենոս չտալ զինչսն Եղութրա , և թաքոյց 'ի տան նորա . և 'ի

դառնալ կնոջն ուրացաւ և երդուաւ յաւետարանն. և երթայր Ելութրա թաղձեալ 'ի տուն իւր. և էր ժամացոյց որ 'ի ճանապարհին, և 'ի նմա պատկեր կռոց, և խօսեցաւ ընդ նմա դեւն և ասէ. երկրպագեա ինձ և լեր իմ սիրելի որպէս՝ և հայրն քո, և առ քեզ դարձուցից զինչսն քո. և ոչ արար փոյթ բանիցն խօսեցելոյ Ելութրայ։

Եւ եղեւ զի անցանէր ընդ այն Յուլիանոս, ասէ ցնա նոյն դեւն արարից զքեզ նշաւակ ընդ ամենայն երկիր, զի առեր զինչսն Ելութրայ զոր ես ետու հօր նորա սիրելւոյն իմոյ, և երդուար սուտ. և զահի հարաւ Յուլիանոս և պատմեաց Մելենոսի. և նա ասէ ցնա. երկրպագեա նմա զի մի արասցէ զպատահեալսն և առ տարաւ զնա, և նուիրեաց դիւաց, և էր դուստր մի Մելենա յղի, զնա զոհեցին և հանին զմանուկն և ողջակիզեցին՝ և եմոյծ զՅուլիանոս յայրս ինչ խորագոյնս ընակութիւն դիւաց, և խոստացաւ նմա ժամանակս հարիւր ամսոյ և թագաւորութիւն նմա զամենայն երկրի։ Եւ Յուլիանոս կրճատեաց զանձն. և հաւատաց դիւաց զանձն իւր. և յորժամ եզեւ Կեսար և յաջողեցաւ նմա թագաւորութիւնն, եւս առաւել հաստատեցաւ և

սկսաւ կախարդել և հմայել և զոհել դիւաց և յարենէ զոհիցն ցանել յաղբերականունս և յամենայն կերակուրս . զի ըմպողքն և կերողքն իբրեւ ընդ սիրտ սատասցին ։ Սա լուաւ թէ պատկերն Քրիստոսի որ ՚ի Կեսարիա պղնձի՝ որ ՚ի տան կնոջն արեանտեսի բազում բժշկութիւնս կատարէ, առաջեաց քակել ետ, և ՚ի տեղւոջն կուռս կանգնել։ Եւ իջեալ հուր ՚ի Տեառնէ այրեաց զկուռսն։

Եւ եկն Յուլիանոս Անտիոք, և յորժամ մտանէր ՚ի քաղաքն, պատմեցաւ նմա իրքս և զայրացաւ յոյժ . և ՚ի նմին ժամն ետես զմի ոք ՚ի վարդապետաց Քրիստոնէից, և ասէ ընդ Լիւբիանոս իմաստասէրն, հարց ընդ վարդապետդ և ասա, ո՞ւր է հիւսանըն որդին ։ Պատասխանի ետ և ասէ, զարուեստ հօրն կատարէ . դագաղս և թաւուղս կազմէ սպանման Թագաւորիդ, որ դիպելոց է դմա ՚ի Պարսս . և խոցոտեալ նոցա ՚ի սիրտս ոչինչ ետուն պատասխանի առժամն . և մտեալ ՚ի քաղաքն առաստայոյց հըրամանաւ զռոճիկն և ողեաց զդահեկանսն ՚ի պատճառս զօրացն, զոր ժողովեալ տանէր ՚ի Պարսս ։

Եւ Անտիոքացիք քաղաքին ասացին նմա բանըս նախատանաց, զխոր և զերկայն մօրուսդ

տանէն պարապ ընդէ՞ր ունիս, բե՛ր, ճողեմք զգա, և արա չուան, և դիր յեղջիւրս ցլ-լոյ. և տար զոհեա դիցն քո պառաւեալդ 'ի սէքս նոցա: Եւ կատաղեալ Թագաւորն հրամանն ետ զօրաց սրով մաշել զնոսա. և ո-ղջեաց զնա ճարտասանն, ոչ պարտին քեզ մահ արքայ, այլ նախատինս:

Եւ ժողովեալ զնոսա 'ի միասին ձաղեաց զնոսա և եԹող:

Եւ կայր 'ի լեառն Նախիջու վանք մի Ապուլա անուն յորում կայր չիրիմն Բաբե-լայ հայրապետին. հրամայեաց հանել զնա և տանել 'ի քաղաքն. և զուարճացեալ քր-իստոնէից հանին զնա և տարան սաղմո-սիւք և օրհնուԹեամբք, քանզի կանգնեաց անդ պատկեր Ապողոնի և եհարց վիճակա-ւան երԹալոյ նորա 'ի Պարս. և դևն ոչ ետ նմա պատասխանի: Եւ գիտաց եԹէ վա-սն Բաբելայ է., և յետ տանելոյն զնա խօ-սեցաւ ընդ նմա դևն բանս բարիս, եւ ցնծացեալ Թագաւորն եդ առաջի պատկե-րին սեղան երկու. զմինն ելից հրով, և ըզ-միւսն ոսկւով, և ասաց որ ոք արասցէ անձին խուրդ բարիս, ահա առ ձեռն է. և եդ սե-ղան մի այլ, և ելից զնա խնկով և հրամա-յեաց ափով մի խունկ առնուլ, և արկա-

նել ՚ի վերայ հրոյն. և առնուլ նովին ձե-ռամբն յուսկւոյն, և բազումք պարզմտութեամբ պատրեցան (1) ոչ իմացեալք զմնասն։

Նոյա գնացեալք ՚ի ճաշ և նստեալք ՚ի սեղան նկարէին զխաչն ըստ սովորութեանն ՚ի վերայ բաժակին և հացին։ Իսկ ոմն ՚ի գիտողացն ասէ զի՞նչ է այդ. զոր գործէք զկնի ուրացութեանն։

Իսկ նոցա զարհուրեալ ասեն և ե՞րբ ուրացաք, և նա ասէ. ՚ի խունկն զոր նուիրեցէք ՚ի հուր և առիք ոսկին։

Եւ նոցա լուեալ արտաքս ելանէին իբրև զմոլեկանս. և տարեալ զոսկին ընկեցին յերեսս թագաւորին՝ քրիստոնեայ զինքեանս կարդալով և պատրաստ ՚ի մեռանել վասն սիրոյն Քրիստոսի։

Եւ ներեաց նոցա թագաւորն զի մի արասցէն զնոսա մարտիրոս. զնոյն նախատինս կրեաց և ՚ի Կեսարիա. և կոչեաց զանուն քաղաքին Դագկէն և զԿոստանդնուպօլիս Բիւզաս կոչեաց հանեալ զանունն Կոստանդիանոսի, և հրամայէր տալ զդըրոշս ՚ի հեթանոսս. և չինել տայր հիւրանոցս և կուսանոց յանուն դիւացն, և ուսանել և գրել զառասպելս հեթանոսաց։

(1) Մի օրի. խաբեցան. ամենք պարտեցան։

Եւ Առաքէր ապա յՈւռհայ քաղաք պատրաստել անդ նմա արքունիս, և ոչ ընկալան զնա. և զբարկութիւն իւր 'ի վերայ Ուռհայի ապա ընկենոյր 'ի դառնալն Պարսից խաղաղութեամբ ։ Եւ եկին 'ի Խառան. և ընկալան զնա պատուով և զոհեաց անդ զոհըս բախտից. և մեծարեաց զՀրեայսն որ անդ էին, և գովեաց զհրէութիւնն և հրաման ետ երթալ յԵրուսաղէմ, և շինել զտաճարն և զոհել ըստ օրինացն ։

Եւ նոցա թեթեւամտութեամբ ձայն տուեալ միմեանց և ժողովեալ 'ի միասին, բարձին կիրմոքս երեք հազար, և գնացին յԵրուսաղէմ. և սկսան շինել զտաճարն. և եկեալ հուր 'ի Տեառնէ այրեաց զհիմունսն զոր արկին, և զգործիսն որովք գործէին զշինուածս ։

Իսկ Յուլիանոս յամեալ 'ի քաղաքն Խառռան, կանգնեաց անդ կուռս և սկսաւ զոհել. և յանկարծ անկաւ թագն 'ի գլխոյն, և ձին զոր պնդէին առ ընթեր կոխեաց զնա. և ձգեալ զոտն պատառեաց զհանդերձ թագաւորին ։ Եւ ասացին Հռոմայքն եթէ յանդիմանութիւն է քեզ այդ, փոխանակ զի ունիս ընդ քեզ զայդ զօրսդ Քրիստոնեայս թշնամիս Աստուածոցն ։ Եւ հաւա

տաց նոցա, և դարձոյց 'ի նոցանէ քառան երկու հազար։ Բայց զնշան խաչին զոր տանէին առաջի ըստ առաջնոյ սովորութեանն՝ ոչ դարձոյց. զի ասաց, ո՞ գիտէ եթէ յաղթեն մեզ Պարսք, պարտութիւն խաչելոյն իցէ և նշանի նորա։

Եւ թիւ զօրացն զորս ընդ իւր տարաւ երեք հարիւր յիսուն և եւթն հազար էին պատեալք յերկաթս, բաց 'ի սպասաւորացն և յարուեստաւորացն և 'ի վաճառողացն. և ուր երթայր կուռս կանգնէր և զոհէր նոցա և հարցանէր զնոսա. և նոքա ասէին համագունդք գամք ընդ քեզ։ Քաջալերեաց զի Արէս աստղն կայ 'ի գլուխ զօրացդ քոց. և բախտ Աղեքսանդրու և գիր ճակատու նորա քեզ շնորհեալ է։

Եւ գնաց 'ի Տիզբոն և աւերեաց զնա. և Շապուհ արքայ Պարսից ել 'ի Տիզբոնէ, և գնաց փախստական 'ի նմանէ. և առաքեաց առ նա և խնդրեաց խաղաղութիւն, զի տայցէ նմա հարկս, դարձցի 'ի նմանէ, և ոչ անսաց նմա ըստ հպարտութեան սրտի իւրոյ։

Իսկ Շապուհ ժողովեալ առ ինքն զզօրս Պարսից եկն 'ի վերայ նորա առ Տիգրիս գետով. և նստան բացագոյն. և տակաւին գընայէին և գայէին պատգամաւորքն, և ոչ լսէր

նոցա Յուլիանոս, և յանկարծ եկն նետ մի և եհար զնա յաղիսն. և վայթեցաւ արիւն բազում առաջի նորա. և առեալ յարենէն ցանեաց ընդ երկինս ասելով. յաղթեցեր յաղթեցեր, Գալիլեացի արդ առ 'ի վերայ Աստուածութեանդ և զթագաւորութիւնս իմ։

Այլք զնետն ասեն որ էառ ոչ 'ի մարդկանէ այլ 'ի ցասմանէ Աստուծոյ։ Եւ թէպէտ հպարտութեամբ ո՛չ ագանէր զբանս, այլ բարկութեան Տեառն ո՞ ընդդիմանայ։

Եւ եղեւ բան առնն Աստուծոյ որ յԱնտիոք։ Կազմեալ թաւութ եղաւ մարմին նորա 'ի ներքս լի ամենայն գարշութեամբ. նա արար ճառս փիլիսոփայականս հազար[1]։ Իսկ զօրայն տարակուսեալ 'ի սովյն եդին իւրեանց թագաւոր զՅուբիանոս զօրագլուխ՝ որոյ զառաջինն ընդդիմացեալ ասէր, ես ոչ կամիմ՝ թագաւորել դիւանուէր զօրաց. և նոցա միաբանեալ ասացին ծառայք Քրիստոսի Աստուծոյ եմք. և երկրպագեալ նշանի խաչին, և հաւանեցաւ և եդ զթագն 'ի գլուխն, և արար սէր ընդ Պարսս. և ետուն 'ի նոսա զՄծբին հանեալ 'ի նմանէ զՔրիստոնեայսն։ Եւ դարձեալ բերելով զմարմին

(1) Մի օրի. քառատուն. Մի օրի. Թ։

անօրէնքն ՚ի Կիւլիկիա, Թաղեցին ՚ի սահմա-նըս Տարօնի։

Իսկ զի անէրն բարեբար սաստիկ մեծ ցաւոցն արար զօրաւոր զըժշկութիւն զՅոբիանոս այր բարի և աստուածասէր։ Բայց զի ոչ էաք արժանաւոր սակաւ ինչ վայելեցաք․ եւթն ամիս միայն Թագաւորեալ կալաւ ըզնա ցաւ երիկամացն, և մեռաւ ՚ի մէջ Գաղատոյ և Բիւթանիոյ․ և ոչ եհաս ՚ի Կոստանդնուպօլիս։

Եւ եկեալ զօրացն ՚ի Նիկիայ Թագաւորեցուցին զՎաղենտիանոս ՚ի Կաբելեոն քաղաքէ ՚ի Փանոնոյ երկրէ այր իմաստուն և քաջ, և կամեցան դնել նմա ընկեր․ այդ ոչ ՚ի կամս ձեր է ասէ․ այլ յիմս զի դուք զիս ընտրեցէք և ես զընկերն իմ․ և հաւանեցան նմա։

Եւ առ նա հաղորդ Թագաւորութեանն իւրոյ զՎաղէս, և ետ նմա զկողմ արեւելից։ Եւ զի առեալ էր մկրտութիւն յԵւդոքսիա Եպիսկոպոսէ Կոստանդնուպօլսի, մեծարեաց զչարափառութիւն նորա՝ որ էր Արիոսին․ և էր սա եղբայր Վաղենտիանոսի որ կալաւ զՀռոմ և զկողմ արեւմտից, և պահեաց զհաւատն Նիկիոյ․ և զորդի իւր Գրատիանոս Օգոստոս քարոզեաց։

Իսկ Վաղէս գնաց յԵգիպտոս և եմուտ

՚ի քաղաքն Մարկիանուպօլիս. և ընդ մտանել նորա եղեւ շարժ ահագին և եզարկ ըզնաւսն ընդ ցամաքն, և խորտակեաց։ Եւ դիմեցին. բազմութիւն արանց զի առցեն ինչ ՚ի նաւացն զի գնաց ծովն ՚ի ներքս քան զսահմանս իւր. և դարձաւ անդրէն և տարածեցաւ ընդ երկիրն. և բազում քաղաքս և գաւառս ապականեաց, և հազիւ զերծաւ Վաղէս։ Եւ եղեւ հրաշքս այս գուշակումն աւերման Եկեղեցւոյ ՚ի Վաղեսէ. որպէս արարն իսկ մեծ պատերազմ ընդ ուղղափառսն։ Եւ եղբայր նորա յանդիմանէր զնա և ոչ լսէր. և եղեւ պատերազմ Վաղեսի ընդ Գոթացիսն և նեղացաւ և խնդրեաց օգնութիւն յեղբօրէն. և նա ասէ. ոչ օգնեմ առն՝ որ ընդ Աստուծոյ պատերազմի։

Եւ ինքն Վաղենտինիանոս չոգաւ ՚ի Սարմատիս պատերազմել ընդ նոսա։ Եւ զահի հարան յերեսաց նորա և առաքեցին առ նա խնդրել զխաղաղութիւն. և զարմացաւ արքայն ընդ գարշ տեսիլն նոցա և ընդ տըգիտութիւնն. և տեղեկացաւ ՚ի նոցանէ, զի առ նա եկեալքն ընտրելագոյնք էին քան զամենեսեան. և ասէ բարձր ձայնիւ եղուկ են Հռովմայեցեցիք, եթէ ընդ սոսա խաղաղութիւն արասցեն. և զկարդ թողին ըզ-

առաս մինչեւ ցայսօր կենդանիս։ Եւ խաւա-գոյնս կոչելոյն պատառեցան երակք փողոցն, և մեռաւ. ութսուն և չորից ամաց. Թագաւորեալ ամս մետասան։

Սա արտաքոյ օրինաց ունէր երկու կանայս զՍիւերաս և զՈւստինէ դուստր Յուստիանոսի իշխանի՝ զոր սպան յաղագս երազոյն զոր ետես՝ և պատմեաց ծիրանիս եղեալ յինքենէ. զի մի ամէ ծնցի Թագաւոր՝ և առեալ զդուստր նորա ծնաւ որդի մի համանուն իւր, և երիս դստերս. անուն միումն Պաւլինէ, որ եղեւ կին Թէոդոսի Թագաւորի՝ որ ծնաւ զԱրկադէ և զՈնորէ։

Իսկ 'ի յառաջնոյն ունէր զԳրատիանոս երէց որդին՝ որ ոչ էր մերձ մահուան հօրն.

Իսկ զորքն Թագ. եդին Վաղենտի որ էր տղայ ամաց չորից։

Իսկ Վաղէս արար զզօրս իւր Գրատիանոսիւ և առաքեաց 'ի վերայ Գոթացւոցն, որ և կորագլուխ դարձաւ 'ի նոցանէ. եւ այպանեաց զնա։

Ասէ ցնա Գրատիանոս յաղթահարութիւնս այս ոչ է իմ այլ չարափառութեան քում. զի կռուիս ընդ բազուկն հօր։

Յայնմ ժամանակի բազում վիշտս հասուցանէր Մաւրէ դշխոյն Տաճկաց աշխար-

հին Հռովմայեցւոց՝ որ էր ազգաւ հռով-
մայեցի և օրինօք Քրիստոնեայ, գերեալ 'ի
Տաճկաց կին եղեւ. Թագաւորի նոցա։ Իսկ
զկնի մահուան առնն, կինն ունէր զիշխա-
նութիւնն, և 'ի պատճառս նորա բազում
եղեն քրիստոնեայք։

Սա խնդրէր Եպիսկոպոս երկրին իւրում
զՄովսէս կրօնաւոր. զոր թէ տայցէ Մաղէս
լուծցէ զպատերազմն որ ընդ նմա. և առա-
քեաց Մաղէս կոչեաց զնա և աղաչեաց եր-
թալ։ Իսկ նա հազիւ հաւանեալ զգնալն՝ բայց
ոչ ընկալաւ ձեռնադրութիւն յարխանոսացն-
այլ յաքսորելոցն սակս ուղղափառութեան՝
որ և 'ի գնալն նորա 'ի Տաճկաստան՝ բազ-
մացաւ քրիստոնէութիւն։

Իսկ Մաղէս ետ շինել Հռոմոց դիմիսոն՝
որ է բանդ ուղղափառաց։

Եւ 'ի նոյն ժամանակս երեւեցան անբա-
նութիւն զօրաց՝ որք դնային ընդ երկնա-
մարմնաւոր տեսլեամբ։

Եւ ծնաւ տղայ մի Հռոմոց միականի՝ ո-
րոյ չորս ձեռք էին, և չորս ոտք, և մօրուք
թաւ։ Եւ զկնի սակաւու եկին Գոթացիքն
և գերեցին գաւառս բազումս, զՍկիւթիա
զԹրակիա, զԱսիա, զՄակեդոնիա, զԱքա-
յիա, և զամենայն Ելլադա։

Իսկ Վաղէս փախեաւ 'ի Կոստանդնուպօլիս. և ռամիկն այպանէր զնա ասելով. չարահաւատ, եւ պատերազմեա ընդ Թըշնամիսն. կամ տուր զէնս զի գնասցուք մեք։ Եւ բարկացեալ Վաղէս գնաց զայրացեալ. և սպառնայր եթէ դարձցի խաղաղութեամբ, այրեսցէ զքաղաքն նոցա հրով։ Եւ երթեալ Վաղէս 'ի կռուել ընդ Գոթացիսն. և պարտեցաւ 'ի նոցանէ, և փախեաւ 'ի գեօղ մի. և բարբարոսքն պատեցին զգեօղն. և թաքեաւ 'ի տան յարդի. և իբրեւ ոչ գըտին զնա, այրեցին զգեօղն և այրեցաւ ընդ յարդն չարն չարեաւ *կորուսեալ։ Եւ կայ մնայ 'ի հանդերձեալ գեհեննին։

Եւ բարբարոսացն ապստամբեալ մինչև ցդուռն Կոստանդնուպօլսի առին աւար բազում։

Եւ Թէոդոս զօրագլուխ ընդդէմ նոցա ել և կոտորեաց զնոսա։

Իսկ Գրատիանոս առեալ զթագաւորութիւնն՝ զկնի կորստեանն Վաղեսի՝ որ թագաւորեաց ամս հնգետասան (1), արար ըզԹէոդոս հաղորդս թագաւորութեան իւրոյ, տալով նմա զբաժինն արեւելեան, այր Ասպանիացի իմաստուն և արի և աստուա-

(1) Մի օրի. եւթն և տասն։

ծապաշտ՝ որ և սպանեաց զբարբարոս զօրսն, և գնաց յաշխարհն նոցա և արար զնոսա ընդ հարկաւ։ Եւ դարձաւ անուանի և երևելի փառօք. և գնաց ՚ի Կոստանդնուպօլիս հրամանաւ Գրատիանոսի. այն՝ որ զառաջինն Թէոդոս քարոզեաց զնա ինքնակալ Թագաւոր. և նա փոխարինեաց նմա։

Եւ աստ եղեւ խաղաղութիւն մեծ Եկեղեցւոյ զկնի քառասուն ամի արիանոսացն չարութեան (1)։

Եւ ՚ի նմին ժամանակս Թագաւորեաց Պարսից Շապուհ, զկնի մահուանն Արտաշրի։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Յաղագս Մելիտոսի որ կանոնեաց չառնել խոստովանութիւն անիմաստ քահանայի։

Եւ յերրորդ ամին Թէոդոսի սպանաւ Գրատիանոս ՚ի Մաքսիմոսէ բռնաւորէ, և եկին ընդդէմ նորա Թէոդոս և փոքրն Վաղենտիանոս և սպանին զբռնաւորն՝ և ինքեանք մտին ՚ի Հռովմ երևելի փառօք։ Եւ Թագաւորեաց ՚ի Հռովմ Վաղեն

(1) Այլ օրի. չարափառութեան։

տիանոս. և Թէոդոս դարձաւ 'ի Կոստանդնուպօլիս. և առաքեաց զՄորատիկոս զօրավար յարեւելս, որ և եկեալ յԱնտիոք եգիտ հակառակութիւն յեկեղեցին, և արար խաղաղութիւն, և ետ զաթոռն 'ի Մելիտոս:

Ի չորրորդ ամի արքայութեան իւրոյ Թէոդոս կամեցաւ սրբել զեկեղեցի յարիանոսաց 'ի ձեռն խրատու Գրիգորի աստուածաբանի. որ եկեալն էր յօգնութիւն հաւատոյ յառաջ քան զութն ամ թագաւորելոյն Թէոդոսի:

Նա ետ թագաւորն հրաման ժողովել ընդ ամենայն եկեղեցիս, և ժողովեցան հարք հարիւր յիսուն որոց գլխաւորքն են այս: Տիմոթէոս՝ Աղեքսանդրու. Կիւրեղ՝ Երուսաղեմի. Մելիտոս՝ Անտիոքու. Սուրբն Ներսէս՝ Հայոց մեծաց, դարձեալ յարտասահմանութենէն Վաղեսի. Գրիգոր Նազիանզու՝ Կոստանդնուպօլսի. և Գրիգոր Նիւսիայ, որ և նախ որոշեցին զաղանդն Արիոսի. ապա զՄակեդոնին՝ որ իշխեաց հայհոյել զՀոգին սուրբ: Նա յաւելին 'ի հաւատն Նիկիայ ընդ յիշատակ Հոգւոյն սրբոյ:

Իսկ Գրիգոր աստուածաբանն ել կամաւ իւրով 'ի Կոստանդնուպօլսէ. և ետուն զաթոռն Նեքտարեայ:

Եւ մեռաւ Մելիտոս ՚ի ժողովն․ և եկաց Թագաւորն ՚ի վերայ նորա և ասաց․ զսա տեսանէի ես ՚ի տեսլեան, զի օծանէր զիս Թագաւոր մինչ ոչ էի առեալ զսա արդեամբք։ Եւ պատուեաց զնա Գրիգոր Նիւսեայ ներբողական ճառիւ․ և բերաւ մարմին նորա յԱնտիոք և անդ եդաւ։

Նա Մելիտոս կանոնեաց․ մի առնել(1) խոստովանութիւն Քահանայից որոց ոչ իցէ փորձեալ հին և նոր կտակարանօք․ զի Քահանայ մի յԱնտիոք հրապարակեաց զխոստովանութիւն Սարկաւագի միոյ՝ որ անկեալ էր ընդ կնոջ գլխաւորի քաղաքին․ ուստի եղեւ բազում խռովութիւնս և սպանմունս։

Եւ ասաց Մելիտոս լաւ է դնել ձեռն ՚ի վերայ դժնկի կամ Թիւնաւորի ինչ, քան ՚ի վերայ տգիտաց և անարժանից։

Յաւուրս յայսոսիկ խօլթացաւ Թէոդոս ՚ի Թեսաղոնիկէ և մկրտեցաւ յԱկիւղեայ եպիսկոպոսէ և առողջացաւ․ և եկեալ ՚ի Կոստանդնուպօլիս շինեաց զմեծ եկեղեցին զԱնաստասիայ և ասա եղեւ նմա որդի Ոնորիոս ՚ի Գալիոսէ կնոջէ։ Եւ զկնի նորա Արկադէոս և յետ այնորիկ մեռաւ կինն։

(1) Ոմանք՝ առնուլ։

Եւ կայր նմա պատկեր յԱնտիոք. և ամ-միկք քաղաքին լուեալ զմահ նորա քարշեցին զպատկերն և ձգեցին նախատանօք: Եւ լը-ւեալ Թագաւորն բարկացաւ և դատաւորք քաղաքին արարին յոլով սպանութիւնս: Եւ էառ Թագաւորն զպատիւ քաղաքին զկոչելն մայր քաղաքաց, և ետ Լատիկ քաղաքին:

Եւ լուեալ զայն միայնականն Ապողոն. և եկեալ յանդիմանեաց զիշխանս քաղաքին. և գրեաց առ Թագաւորն Թուղթ և ասաց, Թագաւո՛ր, ապաքէն գիտես զի որ ըստ օ-րէ անարգեմք զպատկեր Աստուծոյ զոգիս մեր, ընդէ՞ր ոչ բարկանաս և ցաւիս. իսկ վասն անարգանաց պատկերի կնոջ քո պը-ղնձեղէն՝ ցասնուս. այլ և զպատկերս Աստու-ծոյ զմարդիկ սպանանես. միթէ անգիտանա՞ս եթէ պատկերս պղնձիս շատ կարես ստեղ-ծանել բայց ոչ զպատկերս Աստուծոյ: Եւ լուեալ Թագաւորն պատկառեաց և ցա-ծեաւ ՚ի բարկութենէն և հաշտեցաւ ընդ քաղաքին:

Յայնմ ժամանակի Թեսաղոնիկէ գլուխ Իտալիոյ ապստամբեաց ՚ի Թագաւորէն, և քարկոծեցին զիշխան քաղաքին. և զայրա-ցեալ Թագաւորին առաքեաց զօրս ՚ի վե-րայ քաղաքին, և հրամայեաց կոտորել զնո-

տա. և մեռան հինգ հազար անձինք ար- դարք և մեղաւորք։

Իսկ Ամբրոսիոս եպիսկոպոսն եկն առ Թա- գաւորն 'ի Մանդուլիէ. և դիպեցաւ Թագա- ւորին առ դրան եկեղեցւոյն զի կամէր մը- տանել, արգել զնա և ասէ ցնա. ոչ ամա- չես արեամբ շաղախեալդ, մտանել 'ի տուն Աստուծոյ. այլ դարձիր յետս. և առ կա- պանս զոր առաքեաց քեզ Աստուած 'ի ձե- ռըն իմ. Եւ դարձաւ Թագաւորն արտա- սուօք. և եղեւ յետ ութն ամսի տօնի ծնըն- դեանն Նստեալ Թագաւորն լայր 'ի սենեկի իւրում դառնապէս։

Եւ համարձակեցաւ առ նա Ռուփինոս մագիստրոսն և կացեալ մօտ ասէ. ընդէ՞ր լաս արքայ, Ետ պատասխանի և ասէ ցնա. զի- ա՞րդ ոչ լացայց, զի ծառայք իմ և մուրականք երկրի ազատք են և արձակք. և Թագաւորս անուանեալ կապեալ յերկինս և յերկրի, զի նոքա մտանեն 'ի տուն Աստուծոյ. և վայե- լեն յերկնաւոր պարգեւս տօնիս և ես զըր- կեալ եմ։

Ասէ ցնա Ռուփինոս. Ե՛կ երթամք աղա- չեմք զեպիսկոպոսն. ո՞չ ապաքէն ութն ամիս է ապաշխարութեանդ։ Եւ ասէ Արքայ ես ո՛չ հաւատամ եթէ լսէ նա, և ակն առնու

երեւաց. և արհամարհէ զօրէնս Աստուծոյ իւրոյ, եթէ ոչ իցէ լցեալ ժամանակն: Դուգնաց Սոփինոս և Թագաւորն զկնի:

Իսկ յորժամ ետես եպիսկոպոսն զՍոփինոս իմացաւ զիրն սաստեաց նմա և ասէ. անօրէնութեան խրատու. և յորդորիչ չարի. ո՞ւր երթաս. և անկաւ յոտս նորա Սոփինոս և ասէ. ահա Թագաւորն գայ զկնի իմ ՚ի խոնարհութիւն. բարեխօս առնել ըզտօնիս խորհուրդս. ասէ ցնա եպիսկոպոսն, եթէ ՚ի սպանանել գայ զիս ընդունիմ ՚ի ձեռաց նորա իբրեւ զայլն, այլ յեկեղեցի Աստուծոյ իմոյ ոչ թողից զարիւնարբուն զայն, և գնացեալ պատմեցին Թագաւորին:

Ասէ Թագաւորն թող երթամ առնում զնախատինս յանցանաց իմոց, որում արժան իսկ եմ:

Իսկ եպիսկոպոսն կայր յեկեղեցին և Թագաւորն չոգաւ եկաց առ դրանն, և լայր բարձր ձայնիւ. ասէ ցնա եպիսկոպոսն ամբարտաւանիս, յանդգնիս. ասէ ցնա Թագաւորն ո՛չ հայր սուրբ առանց քոյոյ կամաց ոչ ինչ առնեմ. միայն տեսից զդուռն եկեղեցւոյն, և լուայց զձայն քո:

Ասէ եպիսկոպոսն զի՞ր ապաշխարութիւն կրեցեր, զի զայդ տաց քեզ:

Վա՜է ցնա Թագաւորն զպահօն և զողոր- մութիւն զոր պատուիրեցեր հայր սուրբ․ և զոր ինչ այլ հրամայեցեցես դեղ վերաց ի- մոց կամ առաջի քո։

Վա՜է ցնա եպիսկոպոսն, քարկասիրտ ես, խիստ ես առ յանցաւորս և գիտակործան ՚ի բանս զրպարտչաց միաատախօսաց քոոց։ Գրեա՛ ձեռամբ քո օրէնս քննել զերիս ա- ւուրս զմատնութիւնս զոր լսես․․ և զմահա- պարտոն յայտնիս պահել զաւուրս քառա- սուն և հարցափորձք լիցի․ և սիրոք քո հան- դարտեցի (1) և հանգիցէ ՚ի զայրացմանէ։ Եւ զայդ արասցեն ամենայն դատաւորք, և իշխանք երկրի որ ընդ ձեռամբ քո են։

Եւ առ ժամայն գրեաց և առաքեաց առ ամենայն դատաւորս երկրի․ և առ իշխանս։

Եւ այս հրամայեաց եպիսկոպոսն Թա- գաւորին մտանել յեկեղեցին․ և նորա մի- տեալ ահիւ և դողութեամբ․ և լայր ամե- նայն բազմութիւնն զկական բարձեալ։

Իսկ Թագաւորն ընկեցեալ զինքն յերկիր ասէր, մերձեցաւ անձն իմ ՚ի հող Տէր ապ- րեցո զիս ողորմութեամբ․ և շատ արտաս- ւեալ արքայի կանգնեցաւ․ և գնաց մերձ առ խորանն և կամեցաւ դնալ ՚ի տեղին իւր։

(1) Ոմանք՝ պարապեսցի։

Ասէ ցնա եպիսկոպոսն. լաւ է քեզ խոնարհութիւնն կալ ընդ ժողովրդեանդ Տեառն, և յետոյ քան զամենեսեան մինչեւ կարասցես կատարելապէս սրբիլ:

Եւ գնաց արքայն խնդութեամբ կալաւ զյետին տեղին և կանգնեցաւ ընդ ապաշխարողսն: Այսպիսի էր հաւատ և երկիւղ Թագաւորին:

Յայսմ ժամանակի գտան նշխարք սրբոյն Ստեփաննոսի և որոց ընդ նմա. առ Յովհաննու Հայրապետիւ Երուսաղեմի. առն յոյժ առաքինւոյ և ուղղափառ քարոզի:

Յերեքտասան ամին իւր Թէոդոս՝ զորդին իւր զԱրկադէոս Թագաւոր քարոզեաց կողմանն արեւելից:

Ի նմին ժամանակս Օգանոս և Արբոգաստես իշխանք 'ի Հռոմ սպանին զՎաղենտիանոս:

Եւ լուեալ Թէոդոս տրտմեցաւ ել ակաւ զօրու ընդդէմ բռնակալացն. և յորժամ եհաս առ նոսա, և լուաւ եթէ կարի բազումք են. ասացին որ ընդ նմա էին, թոյլ տուր արքայ մինչեւ հասանէ զօրն:

Իսկ Թագաւորն 'ի ժամ երեկոյին առանձնացեալ եմուտ 'ի քարայր մի և գոչեաց առ տէր զմեծ մասն գիշերոյն:

Եւ երեւեցաւ նմա Յովհաննէս աւետարանիչն և Փիլիպպոս առաքեալքն Քրիստոսի . և ասեն ցնա ահաւասիկ առաքեաց զմեզ տէր օգնել քեզ . արդ մի զարհուրիր և օգնականի մի մնար , և վաղիւն է օրն յաղթութեան ։

Եւ սրտապնդեալ արքային 'ի վաղիւ անդըր կատարեաց զյաղթութիւնն կորստեամբ բռնակալացն և թագաւորեցոյց 'ի Հռովմ զՄորիկոս որդին իւր ըստ ոմանց ասելոյն կրտսեր քան զԱրկադէոս ։

Եւ դարձաւ թագաւորն 'ի Միտիլու . և հիւանդացեալ անդ կատարեցաւ 'ի Քրիստոս . կեցեալ ամս 'վաթսուն , թագաւորեալ ամս վեշտասան և ամիս ութ ։

Իսկ 'ի Պարսս թագաւորեաց Ուրհառաւն Գերմաշահ որդի Շապհոյ եղբայր Արտաշրի ամս մետասան ։

Իսկ Թէոդոս բազում ունէր դրուատիս և մանաւանդ հնազանդութիւն Եկեղեցւոյ և զխաղաղութիւն . քանզի զառաջինն ոչ կամէր հալածել զարիանոսն մինչ Ամղիքոս եպիսկոպոսն յաւուր միում եմուտ առաջի արքայի և ետ ողջոյն նմա . և զթագաւորեալ որդին որ ընդ նմա նստէր , ոչ ողջունեաց և ոչ հայեցաւ 'ի նա . և ասէ արքայ

օրհնեա հայր զորդի իւր զԹագաւորեալ։

Ասէ ցնա եպիսկոպոսն. դու բաւական ես մեզ Թագաւոր. զդա ոչ պատուեմք, բայց եթէ՝ ընդ ծառայից։ Եւ բարկացաւ յոյժ Թագաւորն։

Պատասխանի ետ Ամփիլոքոս և ասէ ցնա, դու մահկանացուդ զանպատուութիւն որդւոյ քո ոչ տանիս. իսկ անմահն Աստուած զմիածնին իւրոյ զարարած ասելն տանիցի՞։ Եւ զի՞նչ կամիս առնել առաջի նորա։

Եւ զարհուրեալ Թագաւորն ետ (հրաման) հալածել զարիանոսն և ընկենուլ յամենայն համարձակութենէ։ Եւ զնոյն պատուիրելով որդւոցն և իշխանացն հանգեաւ ՚ի Քրիստոս։

Եւ զկնի մահուանն Թագաւորին ծնաւ յԱմաւուս տղայ մի՝ որոյ ՚ի լանջացն վեր երկու գլուխ էր և չորս ձեռք և ՚ի վայրն միաւոր, և ապրեցաւ երկու ամ. ՚ի յուտել միոյն ոչ ուտէր միւսն. և ՚ի ննջել միոյն արթուն կայր միւսն։ Եւ էր զի խաղային ընդ միմեանս և ծիծաղէին, և էր զի լային. և մինն քան զմիւսն չորս աւուրբք յետոյ մեռաւ։

Իսկ Թագաւորն Արկադէոս գնաց ՚ի ճանապարհս աստուածպաշտութեան հօր իւ-

րոյ, զի էր ողջախոհ և պարկեշտ. և ազանէր 'ի ներքոյ ծիրանեացն այծեայս և էր առաքինասէր և բարեսէր յոյժ. ըստ որում եւ ածել զՅովհան 'ի յԱնտիոքայ Ասորոց փափագեալ համբաւոյն որ զնմանէ գոյր: Եւ յորժամ եանես զնա, գտաւ, (եգիտ) տառանապատիկ բանիւք, և նշանօք, և սրբութեամբ ըստ որում եգին զնա եպիսկոպոս Կոստանդնուպօլսի. բայց յոմանց անգոսնեալ լինէր վասն ոչ յստակագոյնս խօսելոյն զառաջինն 'ի բարբառն Յունաց. զի Ասորի էր 'ի հօրէ կողմանէ և այնու էր վարժեալ լեզուաւ: Սա եկաց եպիսկոպոս եւթն ամ և տուաւ յաքսորս ամս երիս և հանգեաւ 'ի կողմանս Հայոց ամաց յիսաւն: Սա յորմէ հետէ մկրտեցաւ ոչ էարբ գինի և ոչ ծիծաղեցաւ և ոչ երդուաւ, և ոչ երդմնեցոյց. և ոչ զոք նզովեաց. և ոչ 'ի տեղի սպասուոյ ուրեք ընթացաւ յորժամ մեծարէին:

Եւ յորժամ երթայր յաքսորս եդ զձեռն 'ի վերայ եկեղեցւոյն և ասաց ողջ մնա սուրբ Եկեղեցի բնակարան փառացն Աստուծոյ. և մի մոռանար զաշխատութիւնս իմ, քանզի 'ի պարգեւացն զոր առի յԱստուծոյ՝ յաւելի 'ի գանձս քո գիրք ութ հարիւր, ճառս երկոտասան հազար:

Յայնմ ժամանակի թագաւորեաց Պարսից Եզտաճառ ։ Եւ արքայ Արկադ հիւանդացաւ . և ետ քարոզել զորդի իւր զԹէոդոս թագաւոր ութն ամաց ։ Եւ զի Ոնորիոս որդի ոչ ունէր և նա միայն էր ժառանգ թագաւորութեանն երկեաւ 'ի տղայութենէն Թէոդոսի , գրեաց կտակ և յանձնեաց զմանուկն յԵզտաճառ . և կատարեցաւ 'ի Տէր թագաւորեալ ամս երեքտասան ։

Եւ լուեալ արքային Պարսից առաքեաց դաստիարակս մանկանն այր իմաստուն եւ սպառնալիս . եթէ ոչ միամտութեամբ ծառայեսցեն մանկանն Թէոդոսի ։ Եւ էր խաղաղութիւն ընդ Պարսս և ընդ Հռոմայեցիս . և աճեաց Քրիստոնէութիւնն 'ի Պարսըս 'ի ձեռն Մարութայի Եպիսկոպոսի երթեւեկութեամբն անդ ։

Մեռաւ և Ոնորիոս 'ի Հռոմ . և ոչ եթող որդի . և թագաւորեաց Կոստանդին ազգական նորա ։ Եւ յետ սակաւու նա մեռաւ 'ի բռնակալէ ումեմնէ նենգութեամբ ։

Եւ Թէոդոս կացոյց 'ի Հռոմ Կեսար ըզՎաղենտիանոս հօրաքեռ որդին իւր . ընդ նմա առաքեաց և զմայր նորա . և յետ այնորիկ առաքեաց նմա թագ , որ թագաւորեաց ամս երեսուն երկու ։

Իսկ Թէոդոս էր այր պարկեշտ և չորակեր, որ և զամենայն աւուրս պահոց անձէթ և անգինի էր սեղան նորա։ Սա զԲերրոնի եպիսկոպոսին զաղտեղեալ մազեղէնն առ ինքն խնդրեաց յետ վախճանի նորա. և զգենոյր զնա զամենայն գիշեր։ Որ և անոխակալ այնչափ որ յասելն յոմանց եթէ վասն էր Թողուս զմահապարտսն կենդանի. ասէ այդ Աստուծոյ է գործ և կարողութիւն ըսպանանել և կեցուցանել, և մեզ երանի թէ կարէաք աղաչել զՏէր այսրէն դարձուցանել զվախճանեալսն Թող թէ զկենդանիս յաւելուլ 'ի մեռեալսն։

Յայնմ ժամանակի մեռաւ Ազդաձիատ, և թագաւորեաց Պարսից Ահրհարան որդի նորա ամս քսան երկու։ Եւ եբարձ զդաշն հօրն իւրոյ, և արար պատերազմ ընդ Թէոդոս. և աղօթիւք նորա յաղթահարեալ լինէին Պարսիկք և սատակեալք և գերեալք։

Յորում ժամանակի առաքինացաւ Ակակ Ամթայ եպիսկոպոսն գնելով զգերեալսն 'ի Պարսից և անդրէն առաքելով. այլ և զսպաս եկեղեցւոյն ծախեաց 'ի պէտս գերեացն. վասն որոյ գովեցաւ հաւատ նորա 'ի Պարսս. և խնդրեաց զտես նորա թագաւորն Պարսից. և յոյժ մեծարեաց զնա 'ի փառս Քրիստոսի։

Յայնմ ժամանակի անուանիք էին Սիմէոն սիւնակեաց յԱնտիոք. և Մօր պարսամաւ (1) 'ի սահմանս փոքր Հայոց:

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Յաղագս Նեստորի հերձուածին:

Յորում ժամանակի ածաւ յԱնտիոքայ 'ի Կոստանդնուպօլիս Նեստոր եպիսկոպոս. և էր երէց նորա ոմն Անաստաս անուն: Սա յաւուր միում խօսեցաւ յամպիոնն նոր հերձուած, ասելով զՄարիամ մարդածին. և ոչ Աստուածածին. և պակեաւ ժողովուրդն և ակն ունէին պատասխանի նմա 'ի Նեստորէ:

Իսկ անմիտն Նեստոր օգնեալ 'ի դիւաց հաճեցաւ յասացեալն և տարածեաց զնա ընդ երկիր: Վասն որոյ եղեւ մեծ Սինհոդոս յԵփեսոս 'ի քսան և մի ամին Թէոդոսի. և յեւթն հարիւր քառասուն երկու թուին Ասորոց. և 'ի Քրիստոսէ չորս հարիւր քսան երեք:

Եւ ժողովեցան անդ հարիւր յիսուն երեք եպիսկոպոսք և քահանայք և կրօնա-

(1) Մի օրի: Մաւրպաւքաւմ:

ւորք յոյժ բազումք և գլխաւորք էին այսո-քիկ. ՚ի Հռովմայ Արկադէ և Պրոկղոս ե-պիսկոպոսք փոխանորդք Կեղեստինու Հռո-ովմայ Պապուն։ Կիւրեղ՝ Աղեքսանդրիոյ, Մեմնոս (1) Եփեսոսի, Յովհաննէս՝ Անտիո-քու, Ակակ՝ Մելտենոյ, Յոբնաղիս՝ Երու-սաղեմի։ Իսկ Սահակ հայրապետն Հայոց (2) անպարապ լեալ գրեաց Թուղթ հաւանու-թեան զոր ինչ և սահմանեսցեն։

Եւ արարին ամենեքին նզովս Նեստորի բայց Յովհան Անտիոքայ, և քան և վեց (3) եպիսկոպոսք ընդ նմա ոչ հաւանեցան. և առին նզովս և նոքա ընդ Նեստորի։

Եւ Թագաւորին հրամանաւ տուաւ յաք-սորս ՚ի Խուժաստան Պարսից։ Եւ ապա զղջացեալ Յովհաննեանքն եղեն ընդ Կիւր-ղի խոստովանել զանգիտութիւնս իւրեանց եթէ իցէ այնպէս Նեստորիոս։ Եւ միաբա-նեալք ՚ի միասին ասացին կատարեալ է ուղ-ղափառութիւնս (4)։

(1) Երկու օրի. Մեմնոն։

(2) Մի օրի. Սահակ հայ-րապետն Հայոց և Մեսրովպ վարդապետ. անպարապ ե-ղեալ գրեցին Թուղթ։

(3) Միօրի. քսանուննեւվեց։

(4) Մի. օրի. յանչըս և այս-պէս. և փառաւորեցին ՚ի մի բերան զսուրբ կոյսն Մարի-ամ Աստուածածին. և դաւանեցին զսուրբ Երրոր-դութիւնն մի Աստուածու-թիւն Հայր. Որդի և Հոգի սուրբ. և նզովեցին զբռնավո-րակ Նեստորականքն. և ՚ի-զատ բաժանեցին։

Արդ որ ոք յայսմ հետէ այլ նոր հաւատս և դաւանութիւնս դնէ թագաւոր կամ եպիսկոպոս, կամ ժողով, եղիցի նզովեալ : Այլ՝ (1) Նիկիայն կացցէ մինչեւ ցկատարած աշխարհի :

Իսկ որք նզովեցան զկնի Նեստորի էին այսոքիկ . Թէոդորիտոս՝ Կիւրիս քաղաքի եպիսկոպոս. Անդրէ՝ Սամոսատիայ . Աղեքսանդրոս՝ Մբեճայ, Արիանէ՝ Սրոյ, Յովհաննէս՝ Կիւլիկիոյ, Իւթուխոս՝ Տարունայ (2). և այլք ընդ նոսա :

Իսկ 'ի տեղի Նեստորի եդին եպիսկոպոս զՄաքսիմոս :

Իսկ 'ի քսան և ինն ամի արքայութեան իւրոյ Թէոդոս լուաւ. զաղմուկն Փլաբիանոսի եպիսկոպոսի Կոստանդնուպօլսի . և զԵւտիքի վանապետի . և ետ հրաման երկրորդ անգամ ժողով լինել յԵփեսոս, զկնի ութ ամի առաջնոյն :

(1) Մի օրի . յաւէլուա այսպէս Ա. ԺԱ երեք սուրբ ժողովք կացցէ. Եփեսոսի և Կոստանդնուպօլսի, և Նիկիոյն. զի առաջին Սուրբ ժողովն Նիկիայ՝ Թագաւոր Կոստանդիանոս, և Կոստանդնուպօլսոյ ժողովոյն մեծն Թէոդոս Թագաւոր. և յայս ժողովս Եփեսոսի փոքր Թէոդոս Թագաւոր. և այլ թէ եղիցի ուրիշ. եղիցի նզովեալ յԵրրորդութենէն : Ա. ԺԱ հիմն այս է, և չլինեսցեն 'ի վերայ այսր հիմանս : Իսկ որ նզովեցան զկնի Նեստորի . . . :

(2) Երկու օրի . Տարօնայ :

Եւ Թագաւորն գրէ թուղթ առ Դէոսկորոս փոխանորդն Կիւրղի զայս օրինակ։

Եւտոկրատոր կայսր Թէոդոս և Վաղենտիանոս յաղթող թագաւորք հօրդ սրբոյ Դէոսկորեայ եպիսկոպոսի խնդալ։

Դիտելի լիցի սրբութեանդ քո զի արմատն դառնութեան Նեստորի շառաւիղեաց առ Փլաբիանոս. և Մ՚անեայ կարծիքն առ Եւտիքէս վանական, որպէս և լուաք ՚ի մերոց գիտնոց. և գործդ այդ հոգևոր մշակութեան ձեր է սրբել զեկեղեցի անարատ հարսն Քրիստոսի. յաղագս որոյ փութա՛ ՚ի թիկունս հասանել տրտմութեան մօր քո երկնաւոր առագաստին. և բերցես ընդ քեզ տասն մետրապոլիտս և տասն եպիսկոպոս բանաւորս որ կարող են զջահն հաւատոյ ուղղափառութեան վառել և դնել ՚ի վերայ աշտանակի, յուրախութիւն երկնաւորաց և երկրաւորաց. և ՚ի գալն քո ՚ի Պաղեստինէ ածցես անտի տասն եպիսկոպոս ՚ի Փղշտացւոցն և զՅոբնաղիս եպիսկոպոսապետն Երուսաղեմի։ Եւ մի(1) բերցես զհիւանդացեալսն ՚ի հաւատս առ Կիւրղիւ. ընդ Թէոդորիտէս և զայլսն որք ընդ նմա. եւ Յուլիոս Հռովմայեցի առ մեզ է։ Սա ընու

(1) Ոմանք՝ [illegible] գրէ։

զտեղի Լեւոնի որոյ տումարն զոր գրէ առ ումանս՝ ասեն ոչ է հաճելի. այն զոր ես բերել 'ի ժողովս, որ առ Կիւրղիւ, զոր ոչ ընկալաւ: Եւ ած ընդ քեղ զմեծ ճգնաւորն զհայր անապատի Մաւրպարտամու փոխանակ վանօրէիցն արուեստից. զի եւ մեք առաքեցաք աղաչել զնա, զի հոգի Աստուծոյ գոյ 'ի նմա եւ յոյժ ատեաց սա զՆեստորիոս եւ զտումարըն Լեւոնէ: Եւ զայս արարեալ ողջ եկեացես աջողեալ ճանապարհաւն ճշմարտութեան:

Եւ առեալ Դէոսկորոս զԹուղթն ցաւեացն նմա վասն իւրացն. եւ փութացաւ յոյժ եւ կատարեցան իրքն, եւ եկն յԵփեսոս. եւ եկին առ նա հրաւիրեալքն. եւ եղեւ թիւն հարիւր քսան (1) եպիսկոպոսաց: Եւ գլխաւորք էին այս, Դիոսկորոս՝ Աղեքսանդրի (2). Յոբնաղ՝ Երուսաղեմի. Դոմնոս Անտիոքու. Եւստաթէոս՝ Բիւրթեայ. Թէոդորոս՝ Կեսարու Հայոց. Եւսեբիոս Սելեւկիոյ (3). եւ Մաւրպարտամա գլուխ վանականաց. եւ արարին քննութիւն. եւ գտին զՓլաբիանոս համաքան Նեստորի:

(1) Երկու օրի. հարիւր քսան եւ ութ: Միօրի. հարիւր տասն:

(2) Մի օրի. Աղեքսանդրացի:

(3) Մի օրի. Կիւլիկիոյ:

Իսկ Նեստորէս նզովեաց զհերձուածն իւր բայց ոչ եկաց 'ի բաց յաղանդոյն. զի առ աչօք ունէր զանուանութիւն Տեառն մերոյ. և նզովեցաւ 'ի ժողովոյն։

Եւ Փլաբիանոս արարեալ էր գրով ըզխոստովանութիւնն իւր. և գտաւ 'ի նմա ձեռագիր Բասլի Սելեւկիոյ եպիսկոպոսին, և Յուլիանոսի Հռովմայեցւոյ. և զԵւստակոսի Կիպրացւոյն, և Սելեւկիոսի Եմեսացււոյ. վասն որոյ յընթեռնուլն զգրեանսն միաձայնեալ բազմութեանն ասէն. այրեցէք, այրեցէք զանաստուած տումարդ. և եղեցի նզովեալ Փլաբիանոս, և հաւանեալքն նմա։ Եւ ընկեցին զնոսա յաթոռոյ։

Օծին ապա զԴոմնոս Անտիոքացի, և եւթն եպիսկոպոս 'ի հնազանդելոց նորա. զԿիրինոս՝ (1) Սրոյ եպիսկոպոս. և զՆկիմոս զԵպաւլայ՝ և զԹէոդորիտոս Կիւրխոյ(2), և զԻբաս Ուռհայոյ, և զՍեբերիոս Թմռզոյ, և զԴանիէլ՝ Խառանու. և նզովեցին ընդ նոսա և զտոմարն Լեւոնի զարհամարհեալն յառաջին ժողովոյն. և արժանի ոչ համարեցան ընթեռնուլ։

Եւ դայր Թուղթ աղաչանաց 'ի Թագա-

(1) Մի օրի. զԵրինիոս. զԵրինոյ։
Մի օրի. զԵրինոս. Մի օրի. (2) Մի օրի. Կիւրիոյ։

ւորացն ոչ յաւելուլ և ոչ պակասեցուցանել յերից ժողովոյն սահմանաց. այլ ըզնոյն հաստատել զերրորդն պատուել 'ի փառըս սրբոյ Երրորդութեանն. զոր և արարին իսկ. և գրեցին խոստովանութիւն տնտեսութեանն Քրիստոսի: Մի դէմ, մի բնութիւն, մի Քրիստոս, որոյ մի կամք, և մի գործք. նոյն Աստուած և մարդ կատարեալ այսինքն հոգի, մարմին, միտք ճշմարտապէս և ոչ կարծեօք. և յայսմանէ հրաժարեալքն եղիցին նզովեալք:

Իսկ յետ արձակման գնացին առաքեալքն 'ի Լեւոնէ և պատմեցին զեղեալն. և խոցեցաւ խորագոյնս. և առաքեաց կոչեաց ըզՓլաքիանոս և լուաւ զխոստովանութիւն նորա, և յոյժ հաճեցաւ:

Եւ ասաց Փլաքիանոս ցԼեւոն եթէ Նեստորական ասաց զքեզ Դէոսկորոս և ընդնմին նզովեաց զքեզ. և զամենայն հաւանեալսն քեզ:

Իսկ Լեւոն անկաւ 'ի տարակոյս. խորհէր հնարս ընկենուլ զԴիոսկորոս:

Յայնմ ժամանակի 'ի պատճառս աղօթից գնացին 'ի Հռովմ կին Թագաւորին եւ Պօղքէր (1) քոյր նորա. և ըստ իրաւանց պա-

(1) Ոմանք՝ Պօղքէր:

տուեցան 'ի Վաղենտինիանոսէ Թագաւորէն, որ էր հօրաքեռ որդի փոքր Թէոդոսի, և յամենայն բնակչացն Հռովմայ. և առեալ տանէին զնոսա 'ի տաճար սուրբ առաքելոցն. և ելին ընդ առաջ նոցա ուխտ եկեղեցւոյն, և Լեւոն ոչ էր ընդ նոսա. այլ ընկէց զինքն 'ի ներքոյ վարագուրին յերեսաց կուսէ, և սկսաւ լալ. և վերացուցեալ զվարագոյրն հարցին զորքանօք և պատկառանօք զպատճառն, և բռնան հարեալ նորատուցին զնա, և ասէ ցնոսա. պատառեաց Դիոսկորոս զհաւատս ուղղափառս, և նախատեաց զաթոռ սուրբ առաքելոցն:

Եւ նոքա մխիթարեցին զնա և ասեն. լինի ըստ կամաց քոց հայր զոր ինչ և հրամայես:

Եւ կալաւ զնոսա բարեխօս առ Թագաւորն դարձեալ հրաման տալ տիեզերական ժողովոյ: Եւ գրեաց ընդ նոսա Թուղթ աղաչանաց, զայն առնել, զի լուիցեն ասէ ամենայն տիեզերք զձեռագիրն իմ և քննեսցեն, և մի դնեսցեն զիս ընդ նզովիւք Նեստորի չարափառի:

Իսկ իբրև լուաւ Թագաւորն՝ հրաժարեաց 'ի խնդրելոյն և ասէ, ես հաւատացեալ և հաւանեալ եմ ընտրութեանն Կիւր-

զի և Դիոսկորոսի. որք դատեցան զԵւտիք զուգաբան Նեստորի, և այն կացցէ սահման հաւատոյ զոր նոքայն եդին ։

Եւ միացեալ Թագաւորն երկիւղած յառաքելական հիման հանդերձ ՚ի Քրիստոս, յիսուն ամաց, Թագաւորեալ ամս քառասուն երկու ։

Եւ էառ զԹագաւորութիւնն Մարկիանոս քեռորդին Թէոդոսի, այր ծեր, ողջէա և առանց դպրութեան, ամս վեց, ընտրութեամբ Պողքերիայ քեռ Թագաւորին որ և պոռնկութեամբ անկեալ էր ընդ նմա, ՚ի հաւատաւորաց կարգի գոլով. և յառաջին ամին Թագաւորութեան նորա գայ նոյն Թուղթ աղաչանաց ՚ի Լեւոնէ ժողով առնել որքան և է հնար յոլովաթիւ (1) քան ընդ Դիոսկորոսին ՚ի պարծանս խնքեանց. և յիշեցուցանէր Պողքերիայ զխոստումն իւր և ասէր. աւադիկ առաքեցի առ ձեզ զտոմարդ իմ պատուելի. զի նախ քան զգումարումն ժողովոյն առաքիցէք ՚ի կողմանս Ասիոյ առ ամենայն եպիսկոպոսունսն. և պահանջիցէք ձեռնարկս, զի մեզ ոյժս ստասցուք ։

Եւ նոքա յորժամ լուան հաւանեցան սակս երկու պատճառի, մի՝ վասն երդման

(1) Մի օրի. յոլովս. ռ. մանք՝ յոլովութիւն ։

և խոստմանն Պողքերայ․ և երկրորդ՝ վասն երկիւղին Վաղենտինիանոսի և Հռովմայ․ և նորին Լեւոնի․ զի ոչ էր օրէն առանց նոցա թագաւոր օծանել ՚ի Կոստանդնուպօլիս․ յորմէ յոյժ էին զարհուրեալք, զի վարային այն ոչ ներեաց քննել ըստ օրինացն։

Իսկ այսու կամեցան հաճել զկամս նոցա ընդ ինքեանց․ վասն որոյ գրեցին թուղթս արքունի հրամանաւ ապաչանօք, այլ և սաստիւ և սպառնալեօք եթէ ոչ հաւանեսցին ձեռնագրել ՚ի տոմարին Լեւոնի։ Եւ առաքեցին ընդ աշխարհն պատուաւոր արամբք արքունի․ և ՚ի Հռովմայ եկեալ եպիսկոպոսք որոք եւսուն ձեռնագրել հաւանեցոյց․ և դարձուցին առ թագաւորն և առ Պողքեր զտոմարն յորում կայր չորս հարիւր քառասուն և վեց եպիսկոպոսի ձեռնագիր․ և խնդացին յոյժ։ Ձեռնագրեցին այսպէս և ինքեանք։

Եւ այսպէս առաքեցին հրաւիրակս ընդ ամենայն երկիր բաց ՚ի Հայոց, որ ոչ էր ընդ իշխանութեամբ նոցա․ և յայնմ ժամանակի հայրապետն (1) ասեն վախճանեալ էր․ և

(1) Ըստ ամենայն օրինակաց չյիշէին զանուն Հայրապետին, միայն մի օրինակ դնէ զՍահակ հայրապետն։ Իսկ պատմութիւնք հաստատեն յայտնապէս [illegible] և ըզ-

այլ ոչ էր եղեալ, ոչ առաքեցին առ նոսա, և եղեւ ոչ առանց խնամոցն Աստուծոյ. զի նախնեացն յիշատակն պահեսցի առ նոսա։

Սակայն ժողովեցան եպիսկոպոսք ութն հարիւր, որոց գլխաւորք Տոմոսիկոս, Լեւլոքաս, Լունկինիոս, Ասկողայոն փոխանորդ Լեւոնի Հռովմայեցիք, Յոբնաղ՝ Երուսաղեմի, Դիոսկորոս՝ Աղեքսանդրի, Դոմնոս Անտիոքայ, Վասիլոս՝ Սելեւկիոյ, Պետրոս՝ Վիրիայցին՝ եպիսկոպոս Գաղատացւոցն՝ և գըլխաւոր Փղշտացւոցն՝ և Թէոդորիտոս զոր եդին գլուխ ժողովոյն զնզովեալն երկիցս անգամ, յոր ասաց սուրբն Դիոսկորոս ինչ է այդ անօրէնութիւնդ զոր առնէք. ո՞չ յեշէք զբանն Պօղոսի, եթէ զոր քակեցին միւսանգամ չինիցեմ, յանցաւոր անձամբ գտանիցիմ, և զիա՞րդ զքակեալդ անիծիւք դնէք չինիչս՝ զմեռեալդ Աստուծոյ։ Եւ կցորդեաց նմա Յոբնաղ և շարժեցան ամենեքեան. և եղեն ընդ Դիոսկորի, և ասեն, նզովեաց մեծըն Կիւրեղ եթէ դիցէ ոք ինչ նոր օրէնս. և զնոյն ասեմք և մեք եղիցի նզովեալ նորագիրն հաւատ զոր ոչ եդին առաքեալքն.

Յովսէփ կաթուղիկոսն իսկ վախճանեալ զ յաջորդն Սահակայ Պարթեւի։ Եւ յայսոսիկ աւուրս յաջորդէ ըզգահն կաթողիկոսութեան Մելիտէ կաթուղիկոս։

եղեցին նզովեալք, նզովեալքն 'ի Սիւրղէ։

Եւ տրտմեցաւ Թագաւորն և Պողքեր. և սկսան փաղաքշել սպասաւորելով անձամբք և տարով կաշառս. և ետ Յոհաննայ 'ի Փը-ղտացւոց յաշխարհէն երիս (1) քաղաքս. և ած զնա 'ի հաւան. գնացին ընդ նմա և չորս հարիւր քառասուն և վեցքն, որ ձեռագր-եալ էին 'ի տոմարն։ Եւ մնացին ընդ Դիո-սկորի երկու հարիւր յիսուն և չորս, որք կապեցան չարչարեցան աքսորեցան և մե-ռան և ոչ մեկնեցան 'ի սիրոյն Քրիստոսի։ Եւ այլքն որք ընդ նմա՝ յորոգայթս գնացին խաբէութեամբ, զկոյսն Աստուածածին ա-սացին. և երկու բնութիւնս Քրիստոսի յատկացեալս, զի թէ յատկանան բնութիւն-քն ըստ նոցա չարեացն, զխառն իցէ կոյսն Աստուածածին. յաղագս որոյ լցան տիեզերք խռովութեամբ. և երկու ամ և կէս յամեաց ժողովն։

Եկին ոմանք բանիբունք փիլիսոփայք 'ի Հայոց (2). և մեղադրեցին և յաղթահարե-ցին զԼէոնեանն (3) Աստուածաշունչ գրովք

(1) Երկու օրի. երկաս քաղաքս. ոմանք՝ երկիցս քաղաքս։

(2) Մի օրի. Նշանակեալ ունի 'ի լուսանցն Մովսէս և Դաւիթ։

(3) Մի օրի։ զԼեւոնեանս

և փիլիսոփայական ոճով․ և գնացին աներ-կիւղ համարձակութեամբ ։

Իսկ Նզովեալքն ՚ի Կիւրղէ և ՚ի Դիոսկո-րոսէ և պատուով և ճոխութեամբ գնացին յաթոռս իւրեանց․ զօրականօք և պարգևօք․

Իսկ զՅոբնաղ ոչ ընկալաւ Երուսաղէմ․ այլ եղին իւրեանց Պատրիարք զԹէոդոսոս և հաւանեցան նմա ։

Բայց Յոբնաղ գրեաց զիրսն առ Մար-կիանոս, և նա առաքեաց զօրս․ և եհան ըզ-Թէոդոսոս․ և հաստատեաց զՅոբնաղիս․ որ և շրջէր ընդ Պաղեստինէ հրէիւք և հա-ւանեցուցանէր աղանդին․ և զոչ հաւա-նեալսն չարչարէր, կողոպտէր, սպանանէր ՚ի ձեռն Հրէից ։

Բայց միայն պատկառէին ՚ի Պետրոսէ Գաղացւոցն եպիսկոպոսէ վասն առաւել ա-ռաքինութեան նորա զոր առեն զնա որդի լեալ արքային Վրաց, լեալ պանդուխտ(1) ՚ի Կոստանդնուպօլիս որ և ուսաւ զաստուա-ծապաշտ գիրս․ յօժարեցաւ ՚ի խիստ կրօնս և եղեւ հռչակաւոր, և հարկեալ զնա արարին քահանայ, և արքեպիսկոպոս Պաղեստինոյ որ նստէր ՚ի Գազայ և ոչ ոք իշխէր ընդդի-մանալ նմա ։

(1) Երկու օրի․ Պատանդ ։

Սա գրեաց թուղթ ՚ի Հայս և երանեաց նոցա վասն ոչ լինելոյ նոցա ՚ի ժողովն. և ասաց որպէս երբեմն աշխարհդ այդ տապանաւն ետ զսերմ մարդկութեանս ամենայն երկրի, նոյնպէս տալոց է և սերմ ուղղափառութեան ամենայն աշխարհի, արդ՝ պինդ կացէք յանսասան վէմն Քրիստոս որդեակք իմ սիրելիք, և ողջ լերուք յաւիտեան:

Այս Պետրոսի սրբոյ աշակերտ ամն Յովհան անուն միայնակեաց և տեսող գրեաց քան եւթանասուն երկու (1) զոր գիտէրն, և զոր լուան նախատեսութիւնս ինչ, որ և նախ քան զժողովն. և յետ ժողովոյն ցուցանէ. և ասէ թէ ամբարտաւան ժողովն Քաղկեդոնի և անօրէն ՚ի բարկութենէն Աստուծոյ եղեւ և ՚ի թողլոյն ՚ի ձեռաց. և ոչ ՚ի յազդմանէ Հոգւոյն սրբոյ որպէս Նիկիոյն, Կոստանդնուպոլսին և Եփեսոսին. զոր մեք կամիմք աստէն ՚ի տեղւոջս կարգել յօգնութիւն ուղղադաւան հաւատացելոց:

Եւ թէպէտ յետոյ և առաջոյ եղեւ իրքն, մեք մի հատցուք զբանս սուրբ առն Աստուծոյ Յովհաննու որ է այսպէս:

(1) Ամենայն օրի. միաբան և. եւթանասուն դնեն ՚ի բա-ռեն եւթանասուն երկու, նա՛ ՚ի կարգի:

Ա. Պատմեաց մեզ հայրն մեր և հայրապետն սուրբ Պետրոս. թէ սկիզբն աղանդոյն Քաղկեդոնի՝ Նեստորիոս եղեւ. քանզի էր նա ան 'ի Կոստանդնուպօլիս 'ի տանէ սրբոց քառասնիցն. և էառ յաւագ եկեղեցին. հայեցաւ Նեստոր 'ի պատկեր Տիրամօրն. և ասաց. ով Մարիամ՝ մի պարծիր թէ զԱստուած ծնար, զի դու մարդ ես և մարդ ծնար որպէս ասաց քահանայն իմ. և առ ժամայն հարաւ 'ի դիմէ և զարկաւ զգետնի: Եւ բարձեալ զնա տակաւագացն տարան յարկս իւր. և այս եղեւ սկիզբն պղտորման Եկեղեցւոյ: Թէ և սակաւ մի լռեաց Նեստոր յետ պատուհասին, այլ ոչ եթող զանօրէնութիւնն:

Բ. Պատմեաց ինձ և նոյն սուրբ հայրն իմ վասն Պըլակիանիոսի (1) Ուռհայեցւոյ. որ էր սուրբ ճգնաւոր. և ունէր հոգի մարգարէութեան, եթէ լուաւ նա զհերձուածն Հիւբասայ, և յանդիմանեաց զնա. և ոչ լուաւ նմա. և զայրացաւ սուրբն և ելն 'ի Փղիշտս. և կայր անդ լռութեամբ: Եւ գայր առ իս 'ի Գազայ օր ըստ օրէ վասն հոգեւոր իրաց ինչ: Եւ յաւուր միում եղեւ 'ի զարմացման (2) ժամս ինչ. և իմացաք եթէ երեւումն ինչ եղեւ նմա. և հարցեալ մեր զպատճառն, յետ այնորիկ ասաց. յառնէ թագաւոր յետ եւթն ամի Մարկի (3) անուն. և առնէ ժողով և հաստատէ զՆեստորին, և կրեմք ես և դու զվիշտս, և 'ի նոյն կատարիմք:

Գ. Դարձեալ նոյն սուրբ Պալակիոս յաւուր միում եղեւ 'ի տեսլեան և ասաց. վայ Պողքեր. վայ Պողքեր. և ժողովեցան բազումք 'ի հարցանել. և ասէ Պողքեր որ նախիրեաց զանձն Աստուծոյ պոռնկեալ անկանի յԱստուծոյ և լինի կործանիչ ուղղափառութեան (4):

Դ. Պատմեաց նոյն այրն Պալակիոս եթէ գնացի ես երբեմն յԵրուսաղէմ և գտի անդ զսուրբն Աստուծոյ զԵւ-

(1) Մի օրի. Պըլքիանոսի:
(2) Մի օրի. 'ի զայրացման:
(3) Երկու օրի. Մարկիանէ անուն:
(4) Մի օրի. հաւատոյ:

իկոս(1) եպիսկոպոս ճգնաւոր և առաքինի. և սուրբ Պամփի-
սարկաւագն աղօթէր 'ի սուրբն Գողգոթայ. և եղև 'ի զար-
մացման. և յետ աղօթիցն ասաց, եղբարք, այս Եւսեբիոս
պատուական է յամենեցուն, լինի ժողով 'ի Քաղկեդոն. և
ընկենուն զնա յաքսորս վասն ուղղափառ հաւատոյ և յայտ-
նիկ մեռանի:

Ե. Դարձեալ նոյն ուրանիչքն Պաղակիոս յաւուր մի-
ում առաջ ընդ հայրն Պետրոս և ցՅովսէփ ներքինին. այ-
ժմ ընթերցարուք զգրեանդ, զի զգուշացուսջիք զհօտն (2)
Քրիստոսի զոր յանձնեաց ձեզ: Զի զան աւուրք յորս ոչ
պարապեսջիք 'ի հալածանաց: Եւ ասէ ցսուրբն Պետրոս, մեծ
տրամութիւն է կրելոց սուրբ Եկեղեցի յետ աւուրց. եւ
յորժամ լինիցի յիշէք ապաքէն. և ինքն սկսաւ աղօթել:
Տէր իմ Աստուած Յիսուս Քրիստոս, մի տանիր զիս 'ի
ժամանակին յայն. ոչ փախչիմ 'ի հալածանաց. այլ ոչ կամիմ
տեսանել զանարգանս Եկեղեցւոյ քո: Արդ որպէս և կամիս
առ զոգի իմ յինէն. և ուր և կամիս ժողովեա զիս: Եւ
եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ գնալ նմա 'ի տեղի իւր.
և կալաւ զնա ցաւ, և պատահեաց նմա այր մի սուրբ, և
Աստուծոյ կամեցեալ լինել զաղօթսն Պղակիոսի, անկաւ ա-
ռաջի նորա և ասէ. հայր, յիշեա զիս յաղօթս, և վճարե-
ցաւ. և ազդ արար այրն մերձակայ գեղջն. և եկեալ տա-
րան զնա և պատուով թաղեցին:

Զ. Պատմեաց մեզ Յովհաննէս քահանայն Աղեք-
սանդրացի, եթէ մինչ մանուկն էի ես կամեցայ գնալ 'ի մեծ
քաղաքն Ալատիոս յուսումն իմաստասիրութեան. և մտի
յայրն ուր էր մարգարէն մեռեալ. և սկսայ աղօթել,
և խնդրել զկամս Աստուծոյ բարեխօսութեամբ առն Աս-
տուծոյ. և եղեւ առ իս ձայն, որդեակ չկայ խաղաղութիւն
չկայ ժամանակ բարւոյ, զի յառնէ թագաւոր Մարկիանէ
անուն, և առնէ ժողով որ ուրանան զմահն Աստուծոյ խա-

(1) Մի օրի. ՂԵՒԼԻոս: փոփոխութեամբ հատած՝ ըղհատար
(2) Ոմանք՝ ըղհատարն. Ներքէս ընդօրինակեալ:

չիւ, և ամէն մարդ խաչեցաւ. և յառնէ պատրիարք Դիոսկորոս անուն որ կայ ընդդէմ աղանդոյն՝ և 'ի նոյն մեռանի վկայութեամբ. և չփոխ ժողովյն ոչ դադարէ մինչև ցմեռանելն:

Է. Հայրն Զենոն 'ի Վերապըրու (1) գեղջէ Փղշտացւոց ասաց ցայլն Ստեփաննոս, եթէ կամիս յաջողութիւն գտանել, արի գնա. և եթէ կամիս ինչ բարի առնել, արդ արա. զի ժողով լինելոց է խառնիչ Եկեղեցւոյ. և ինքն խնդրեաց 'ի Տեառնէ մահ, և վճարեցաւ ըստ սրտի իւրոյ:

Ը. Պատմեաց հայրն Անակտիոս Պամփիւլացի գլուխ եղբարց, եթէ այր մի սուրբ բնակէր յառանձնական խըրճիթ: Եւ եկն առ նա սատանայ և ասէ ցնա. հնազանդեա ինձ, և նա ասէ մի՛ բարի քեզ, և ասէ սատանայ չհնազանդեցիս, ահա առնեմ ժողով զի ամենեքեան հաւանեսցին ինձ. և զայս ասաց, զի լցին պկամքն սատանայի, ասելով թէ մարդ խաչեցաւ փոխան աշխարհի. զի նա հաւանեցոյց:

Թ. Ի նմին ամի յորում լինելոց էր ժողովն, խաւարեցաւ արեգակն, և տեղեաց օդն քարինս և հողս ընդ յերկիր, և էին քարինքն որպէս ձեռագործս մարդկան, և որք առին զքարինս 'ի ձեռս իւրեանց կուրացան յԵրուսաղէմ և 'ի Փղիշտ: Իսկ Եւսեբի առաքեաց 'ի Կոստանդնուպօլիս առ Եղգքսիպս զի անդ ոչ եղեւ, և գուշակեաց եթէ պատճառ խռովման եկեղեցւոյ լինելոց է:

Իսկ Պետրոս և Անդրէաս աշակերտքն իւր վկայեցին եթէ 'ի լինել ժողովյն կուրացեալքն օծանէին զաչս իւրեանց արեամբ սպանելոցն վասն ուղղափառութեան. և լուսաւորէին 'ի փառս խաչելոյն Աստուծոյ:

Ժ. Ի նմին ժամու յորում զթագն եդին 'ի գլուխ Մարկիանեայ (2) խաւարեցաւ արեգակն և ասաց Մարկիանէ թէ այս նշանակս այս է որ մինչև 'ի յիմ թագաւորութիւնս խաւար էր, և արդ լինելոց է բարութիւն և լոյս, մի ինչ տրտմիք ընդ պատահմունս:

(1) Երէ+ օրէ. 'Ի Վերապըրու: Մարկիանէ:
(2) Ամենայն օրինակք ունին

ԺԱ․ Ի գմբէթ եկեղեցւոյն որ կայ 'ի տեղւոջ համբարձման տեառն. կայր խաչ ոսկի․ և 'ի լինել ժողովոյն յանկարծ այրեցաւ, և եղեւ փոշի․ և գրեցին 'ի Կոստանդնուպօլիս և առաքեցին խաչ պղնձի դնել 'ի տեղւոջն ։

ԺԲ․ Եւ յորժամ՝ եղեւ ժողովքն վէճքին 'ի Կեսարիա թէ մարդն խաչեցաւ և եղեւ պատարագ նոցա միա և աւրեն մարդոյ, և ոչ կարացին ճանաչել․ և պահեցաւ առքաղաւմս ։

ԺԳ․ Պատմեաց հայրն Եսայի եթէ ասաց հայրն Պօղոս Եթովպացի որ հարիւր տասն ամաց էր 'ի Տէր․ եթէ զինի քսան ամաց մեծ շփոթ լինի Եգիպտացւոց 'ի ձեռն Մարկիանեայ, որ թագաւորէ վեց ամ․ և յետ այնորիկ լինի սակաւ մի խաղաղութիւն, և դառնան վերստին 'ի նոյն շփոթն մինչեւ 'ի սուտ Քրիստոսն ։

ԺԴ․ Ասաց հայրն որ աստ երէց մեռեալեան որ յԱնդրէացն Աղէքսանդրի (1) էր․ թէ գնացի ես առ հայրն Եսայի և նա ունէր 'ի ձեռս իւր Միրա (2) և միւսք իւր վերացեալ էր և յամեցի առ նմա․ և պատկառեալ իմ դարձայ․ և կոչեաց զիս․ և ասէ․ Նիստ և գրեա՛ թէ սուրբն, Տիմոթէոս որ այսօր յաքսորս է․ յետ սակաւուց դառնայ և կանգնէ զուղղափառութիւն զերկուս ամս, և ննջէ ։ Եւ յետ նորա լինի սարկաւագապետն իւր եպիսկոպոս և յաւուրսն յայնոսիկ լինի պատուհասութիւն մեծ որ ոչ ողորմեսցի մինչեւ յերեւումն սուտ Քրիստոսին ։

ԺԵ․ Պատմեաց հայրն Պօղոս անապատաւորն և ասէ թէ 'ի հարանցն տեսող մարգարէ, տեսանէր ժողովեալ զամենայն եպիսկոպոսս երկրի․ և վառէին թոնիր, և կալեալ լուսապատկեր երիտասարդ մի, և ընկեցին զնա 'ի թոնիրն և ծեփեցին․ և յետ երից աւուրց տեսանէր կենդանի ելեալ զերիտասարդն․ և ասէ ցնա տէր․ ո՞վ էին որ ընկեցին զքեզ 'ի հուրն․ և ո՞վ եհան զքեզ անտի․ և նա ասէ Հրեայքն

(1) Մի օրի․ յԱնդրէայն Ա- ղէքսանդրի ։
ղէքսանդրի էր․ այլ՝ յանդիման Ա- (2) Երկու․ օրի․ սկրա ։

Նեստորականքն. Քաղկեդոնեայքն և եւտիքականքն այնք որ ասեն մարդ խաչեցաւ վասն աշխարհի. և այրեցին զեկեղեցի իմ. և ծեր մի որ ոչ միաբանեաց ընդ նոսա փրկեաց յամենեւին յայրմանէ զմարմին իմ։ Եւ ասեմ՝ ո՞ էր նա Տէր, և ասէ. Դիոսկորոս, զի որպէս Կիւրենացին էր Սիմոն որ եբարձ զխաչն իմ, և Կիւրենեայ աշխահ է Լիբիոյ որ բառնան զխաչն իմ պարծանաց, 'ի ձեռն Դիոսկորեայ և պահեն զուղղափառութիւն։

ԺԶ. Սուրբն Տիմոթէոս 'ի ժամ՝ նննջման իւրոյ պատմեաց եթէ մինչ մանուկն էի և երթայի յաւուր միում 'ի դպրոցն պատահեաց ինձ այր մի լուսազարդ ծեր, համբուրեաց զգլուխ իմ և ասէ ցիս երիցս, ողջոյն ընդ քեզ Տիմոթէոս հայրապետ կատարելութեան, դու լինիս պատճառ ողջութեան անդամոց Քրիստոսի։

ԺԷ. Պատմեաց նոյն Տէմոթէոս, եթէ գնայի ես 'ի տեսլեան 'ի Սեղովամ. և տեսի անդ վանս մի աւեր և ամենայն պարզապետք նորա դարձեալ էին 'ի փուշ և այգիքն ընկատեալ ք ուռ ք և որթք. և ասեմ զի՞նչ է այս. և ասեն ցիս, այս վանքն է Յոբնաղոյ ուստի կոչեցաւ նա յեպիսկոպոսութիւն և եղեւ հակառակ Դիոսկորի 'ի ժողովն Քաղկեդոնի, և կատարեցաւ առ նա բանն թէ եղիցի բնակութիւն նորա աւերակ և 'ի յարկս նորա մի ոք լիցէ որ բնակիցէ։

ԺԸ. Յաւուրս աղուհացիցն շրջէր Յոբնաղ ըստ առաջին սովորութեանն խրատել զնոսա և գնաց 'ի դուռն տեառն մենաւորի և փակեաց ընդդէմ նորա. և նա երթեալ բախէր. և ասէ ցնա միայնակյանն զնա՛ սուտ քրիստոնեայ(1). զնա՛ Յուդա մատնիչ, և նորա հեգնեալ ասէ պահքն տարեալ է զխելսն, թող տուք դմա և գնացին ամօթով։

ԺԹ. Անդոս մի յԵրուսաղէմ 'ի Պրոպատիկէն տեսանէր զՏէրն զի մտանէր 'ի տաճարն հրեշտակօք, որք ունէին լապտերս շիջեալս, և ասէ Տէրն մտացան զերախտիսն

(1) Ոնա՞ սուտ Քրիստոս.

նի. այլ որպէս դու դարձուցեր զերեսդ յԱստուծոյ, դարձոյց և Աստուած զերեսս իւր 'ի քէն։

ԻԵ. Դարձեալ նոյն Ստեփաննոս խնդրեաց 'ի Տեառնէ ցուցանել նմա թէ զի՞նչ կոչի ժողովն Քաղկեդոնի. և տեսանէր զմի առաքելոյն Քրիստոսի. որ տանէր զնա յարքունիս իւր, ուր կային եպիսկոպոսք ժողովոյն. և ասէ ցնա առաքեալն Քրիստոսի, այս են թշնամիքն Քրիստոսի. այս են ուրացողք նորա. և ետ 'ի ձեռս նորա խարազան և ասէ, հան զամենեսեան արտաքս զի թշնամիք ճշմարտութեան։

ԻԶ. Այր մի էր հոգեւոր Ռոմանոս անուն 'ի գեղջէն Աբելմէուլայ 'ի Պաղեստին, առաջնորդ եղբարց վեց հարիւրից. որք ասէին ցնա ընդէ՞ր լռեալ կաս և ոչ նախանձիս զնախանձ Տեառն. և ասէին խնդրեա՛ 'ի Տեառնէ թէ զի՞նչ է աղմուկ ժողովոյն Քաղկեդոնի որով խռովեալ է աշխարհ. և ասէ ցնոսա. ներեցէք ինձ պահուցս տասն և գնաց ընդ յանապատն խնդրուածովք արտասուաց. և եղեւ առ նա ձայն և ասէ ցնա. գնա՛ պահեա՛ զհաւատն Նիկիոյ. և եկեալ պատմեաց նոցա. և ասեն եղբարքն. իսկ Յոյնք ասեն եթէ զՆիկիոյ հաւատն մեք ունիմք. և գնաց հայրն և կրկնեաց զպահսն. և ասա՛ ցնա երկրորդ անգամ ձայնն, գնա՛ պահեա՛ զխոստովանութիւնն Պետրոսի և Բարսղի և Գրիգորեանց, և եկեալ ասաց եղբարցն։ Եւ նոքա ասեն վասն Տեառն որովհետեւ գտեր շնորհս յԱստուծոյ, պարզեա զխնդիրս մեր. նոքա ասեն եթէ մեք անսխալ ունիմք զդաւանութիւն յիշեալ սրբոցդ. և դարձաւ սուրբն անդրէն երրորդեաց զաղօթսն վասն խնդրոյն. և տեսանէր կոնդակս իբր գրեալ և պարզեալ յերկնից մինչեւ առ ինքն. և գիրն էր այս, ուրացան զիս ժողովն Քաղկեդոնի և անցին զսահմանօք ուղղափառացն։ Վայ է նոցա և նզովեալ է բաժին նոցա. և իբրեւ ընթերցաւ զայս և յուսաւ. ոչ չոգաւ առ եղբարսն, այլ յԵրուսաղէմ երթեալ պատմեաց. և շարժեցաւ քաղաքն Երուսաղէմ և հանին զչարափառսն. և հանին

զՅոբնաղ, և եդին զԹէոդորոս. և լուաւ Մարկիանէ և առաքեաց հաստատեաց զՅոբնաղ տանջելով զընդդիմացեալսն, և լռեցին. և եղբարքն հաստատեցան:

ԻԷ. Պատմեաց քահանայն Աւփիլիոս (1) Կեսարացին եթէ մինչ էր Տիմոթէոս յաքսորս 'ի Խրոսանոս կղզին, գնացի ես առ նա և տեսի վէր սաստիկ յոտս նորա՝ որ էր նասուր ցաւ անբժշկելի. և մերձակայք նորա ոչ դարմանէին զնա. և ես աղաչեցի զի լուացից զԹարախն. և ասէ ցիս ո՞չ անճանես սպի յաչս իմ: և ասեմ այո. և ասէ ցիս մինչ կայի ես 'ի ժողովին Քաղկեդոնի առանձնացեալ յաղօթս. երեւեցաւ ինձ եթէովպացի մի ահաւոր. և ունէր 'ի ձեռին ամանար ինչ՝ յորում կայր ձեռագիր բազում եպիսկոպոսաց, և ասէ ցիս դիր զձեռագիր քո 'ի սմա, եթէ ոչ՝ առից զոգիդ քո. և իբրեւ ոչ լուայ նմա եհար ձեռամբն զաչս իմ. և փլոյց զպտուղ իմ յաչաց իմոց, և հեղաւ արիւն բազում. և անուամբն Քրիստոսի եդի զձեռն իմ աչաց իմոց և բժշկեցաւ և տեսի. և մնաց սպին այս յիշատակ իրացն: Նոյնպէս և այս վէրքս 'ի սատանայէ է, որ կաղացոյց զիս, և ես հաճեցայ եմ ընդ սա. և արդ թող տուր, կարող է Տէր բըժշկել զսա յորժամ և կամի.

ԻԸ. Այր մի էր զօրագլուխ Մարկիանեայ Պետրոս անուն. պատմեաց զօրավարին Զենոնի և ասէ. 'ի սրտէ հաւատացեալ էի ես ժողովոյն Քաղկեդոնի, և էի ջերմ հալածիչ ուղղափառաց. մինչ տեսի 'ի տեսլեան զոմն փառաւոր որ ասէր ցիս 'ի բաց կաց 'ի չարէդ. և եկ տես զոր ցուցանեմ քեզ. և տարեալ եցոյց ինձ տեղի անճառելի հանգըստեան և լուսով լցեալ, և կային անդ Թէոդոս և Կոստանդիանոս. և տեսի այլ տեղի ուստի հուր բորբոքէր անդր, յորում կայր Մարկիանոս և ամենայն դաւանողքն Լեւոնի տոմարին. և տեսեալ զայն եղէ ընդ Դիոսկորեայ և ընդ Տիմոթէի:

ԻԹ. Կրօնաւորք երկու կիպրացիք՝ Պիւրակոս և Յու-

(1) Մի օրի. Աւփէլիոս Մի օրի. Ասկղեպիոս.

կեր, թէ զկնի քսան և չորից ամաց լինի ժողով 'ի Քաղկեդոն և ուրանան զՔրիստոս. և դուք գնացէք 'ի մեծն Հայք և յԱղեքսանդրիա. քանզի առ նոսա մնայ ուղղափառութիւն, 'ի նոցանէ ածէ և փառաւորի Քրիստոս:

ԼԳ. Դարձեալ պատմեաց հայրն Պետրոս, թէ 'ի մեռանելն Թէոդոսի ոմն անապատաւոր հոգւովն խնդաց, և գոչեաց մեծաձայն և ասաց. մեռաւ այսօր ուղղափառութիւն, ահա փլաւ երկինք և ոչ ոք է որ ցաւէ նմա և ողբայ զաղէտս:

ԼԴ. Մինչ կայր Նեստոր յաքսորս 'ի Թեբայս Եգիպտոսի, գնաց ոմն 'ի Թագաւորէն Կոմիտոս տալ հաց զօրացն. և երթեալ առ Նեստոր ասաց. թէ կամին ժողով առնել և կոչել զքեզ. և խնդաց յոյժ. և եկն կոչնական վաղվաղակի Մագիստրոս մի, և նա ոչ կարաց տանել ըղխնդութիւնն. այլ ասաց մի թէ կարացից փոխել զբանն իմ, կամ սուտ երբէք խօսեցայ. եթէ չէ Մարիամ Աստուածածին. և առ ժամայն թափեցաւ լեզուն. և սկսաւ ծամել զլեզուն և ուտել զմարմինն մինչ սատակել եղեւ: Եւ գերեզման ոչ ընկալաւ զնա. զայս ասաց Տիմոթէոս 'ի գիրսն իւրում:

ԼԵ. Պոտիմոն Մենաւոր Խոկիւթացի եկն յԵգիպտոս առ սուրբն Պետրոս և ասաց. հայր, մի՛ տրտմիր վասն չար ժողովոյն, և վասն Պռոտերի, զոր առաքեցին սուտ պատրիարք. զի երկրաւորն Երուսաղէմ աղաչեաց զՏէր վասն սուրբ Եկեղեցւոյ. և վաղագոյն կորնչի նա. որ և զկնի երից աւուրց սպանաւ նա:

ԼԶ. Սարկաւագ ոմն Վասիլ անուն աշակերտ Պետրոսի Թեբայեցւոյ որ էր առանձնական երեսուն և եւթն ամ: Եղեւ առ նա ձայն երկնաւոր. թէ ել արտ և քարոզեա՛ և օգնեա՛ ուղղափառութեան. և եկն 'ի Լիկիայ գաւառ և եղեւ անդ երկոտասան ամ. և գնաց անէծ զՆեստոր առ ընթեր Թէոդոսի. և ոչ եհան 'ի բաց զՆեստոր յաթոռոյն Թագաւորն. և յանկարծակի անկաւ կղմինդր մի 'ի գլուխն Թէոդոսի, և ցաւեցոյց զնա շատ. և Մագիստրոս ոմն տանջէր զսուրբն:

Եւ լուաւ 'ի տեսլեան Թէոդոս թէ վասն արքայն ե-դեւ , և կոչեաց զնա և ետ աղօթել 'ի վերայ գլխոյն և ող-ջացաւ . և նա խրատեաց զԹագաւորն առնել ժողով յԵ-փեսոս . և ասաց թէ որ զկնի քո Թագաւորէ , նորոգէ զե-ղծութին զաղանդն Նեստորի։

ԼԷ. Այնէէ կին մի երկիւղած յԱստուծոյ խրատե-ցաւ 'ի տեսլեան, թէ Նեստոր անունն զայ պատրիարք 'ի Կոստանդնուպօլիս , մի հաղորդիր 'ի նմանէ . և ժողով լինի 'ի Քաղկեդոն նովին ախտիւն, և դու զգուշացի՛ր զորդիսն քո։

ԼԸ. Պատմեաց հայրն Պետրոս Փիւնիկեցին թէ մինչ մանուկն էի առ վարդապետին իմում 'ի Կոստանդնուպօլիս, անկաւ յիս տարակոյս թէ զի՞րդ սուրբ Երրորդութիւնն իցէ հաւասար և երեք և մի . և եկն 'ի վերայ իմ հոգի . և երեւեցաւ ինձ սուրբ առաքեալն Պետրոս, և եհան զիս 'ի բլուր մի , և եցոյց ինձ լոյս անպարագիր մեծութեամբ և անհաս . ասէ ցիս , ահա Հայր . և եցոյց ինձ այլ լոյս ան-պարագիր և ասէ ահա Որդին . և ասեմ նման է Հօր յոյժ. և եցոյց ինձ այլ լոյս անպարագիր , և ասէ ցիս . ահա Հո-գին սուրբ . և ասեմ. նման է Հօր և Որդւոյ. բայց պատ-կեր Որդւոյն մարդատեսակ փայլէր անճառ և անհասական կալով 'ի մէջն յաջմէ Հօր, և Հոգին սուրբ յաջմէ Որդւոյ։

ԼԹ. Անինոս ոմն Աղեքսանդրացի որ մկրտեալ էր 'ի հօրէն մերմէ , և կին նորա ոչ հաղորդէր ընդ առնն . զի խոտորեալ էր ընդ աղանդն Քաղկեդոնի . սա հիւանդացաւ մերձ 'ի մահ և եկն 'ի տեսիլ տեղւոյն անպատմելի դրախտի. և ասէին այս է տեղի առնն քո . և տեսանէր տեղի հրա-խառն խաւարի . և գայր անտի ձայն լալոյ . և ասեն այդ է տեղի այդմ աղանդոյ ուր կայոք , և առողջացեալ դարձաւ յուղղափառութիւնն։

Խ. Մօվտինէ (1) որ ասի խոստովանող , ինամատար եկեղեցւոյ , և յոյժ ողորմած . սա հիւանդացեալ եկն 'ի տե-սիլ , նման ասացելոյ կնոջդ , և ետ տանել զինքն 'ի վանքն

(1) Մի օրի . փոքինէ .

բերանոյն եղեւ ձայն առ Պետրոս մեծնաւոր եւ ասէ. գնա՛, մխիթա-րեա՛ զհաւատացեալսն Պետրոսի. եւ ոչ նմա առաջնորդ սրբոյ լուսոյ. եւ շոգաւ 'ի տաճարն յորում կայր Պետրոս. եւ տեսեալ տանու-տէրն շնորհս երկնաւոր 'ի վերայ նորա, եւ աղաչեաց զնա մկրտել զորդին նորա. եւ դարձաւ յուղղափառութիւն. եւ տուրքն Պետրոսի 'ի ձեռն Ակակեայ Կոստանդնուպոլսի հա-ւանեցուցց զԶենոն. եւ դարձաւ ամենայն երկիրն յուղղափա-ռութիւն ։

ԽԶ. Հայրն Պետրոսի եւտես տեսիլ, զի բազում աբեղայից առեալ խաչ մի ձգձգէին առ միմեանս. եւ ասաց թէ հեր-ձուած լինելոց է, որ ոչ բժշկի մինչեւ ցկատարած ։

ԽԷ. Այր մի էր բարեպաշտօն յԵրուսաղէմ Ռուբ-ինեայ անուն, զնոյն յաղօթել 'ի տաճար Համբարձման Տեառն. եւ եաես զտիրամայրն նստեալ անդ փառօք, եւ անկաւ 'ի վե-րայ երեսաց իւրոց. եւ կանգնեաց զնա տիրուհին եւ ասէ. մի՛ վախեր՝ այլ կա՛ց յուղղափառութեան. զի չարչարանք որդւոյ իմոյ այլայլեցաւ 'ի բերանս աղանդոց ոմանց. եւ եղեւ Եկեղեցի իբրեւ զկատարեալ անտառ զերամակ. եւ ոչ խաղա-ղէ մինչեւ ցկատարած ։

ԽԸ. Զենոն անապատաւոր մարգարէացաւ վասն Լե-ւոնտեայ ապստամբութեանն՝ թէ լինի եւս խափանումն. որ եղեւ խաղ-քան զի յաջորդել Նեստորի ասաց էր զԹէոդոսն զնորայն հա-ւատալ, եւ առաւել յորժամ եղեւ ժողովն քաղկեդոնի բաժա-նութիւնն. եւ 'ի գաւառին 'ի քաղաքն իւր կամեցան զնա քար-կոծ առնել. եւ փախեաւ 'ի Կիպրոս. եւ ցուցանէր Տեառն մեռաւ անդ. եւ գնացին ընտանիքն բերել զմարմին նորա նա-ւով. եւ ամենայն աշխարհ հալածեցաւ 'ի նաւն, եւ 'ի լինել ստա-տիկ հողմոյ ձգեցին զԼեւոնտիոս 'ի ծով. կործանեալ զաշխար-հականն՝ եւ կատարեցաւ մարգարէութիւնն ։

ԽԹ. Այր մի ապաշխարեցի Ռովէլ անուն. սաստիկ պարտէր զՔաղկեդոնիտսն, եւ երեւեալ նմա սատանայի 'ի ձեւ հրեշտակի ասէ ցնա. ընդէ՞ր հալածես զսուրբ ժողովն. եւ փոխեալ զորմն 'ի վերայ նորա. եւ ոչինչ եղեւ նմա չար. այլ

յարուցեալ խաչակնքեաց զինքն և չիք եղեւ չարն (1)։

Ծ. Երկու եղբարք 'ի Կիւլիկիայ, պատմեցին մեզ թէ գնացաք 'ի Մամուեստիայ և յանդիմանեցաք զԹէոդորոս որ անկեալ 'ի խելաց պարտեալ էր մեկնութիւն գործոցն, և աւետարանին Յովհաննու. և ասացաք նմա անէծք. և մահացաւ. սա էր աշակերտ Նեստորի։

ԾԱ. Ի Պամփիւլիայ բազմութիւն արանց փարատ կոտորէին. և էին երկու դասք ուղղափառաց և չարափառաց, և վիճեցան վասն հաւատոյ և վառեցին հուր. և բերին զտումարն Լեւոնի և զսահմանն ուղիղ. և այրեցաւ Լեւոնին և անվնաս մնաց ուղղափառացն. և բոլորն դարձան յուղղափառութիւն։

ԾԲ. Երեք ամօք յառաջ քան զժողովն Քաղկեդոնի յեւթն ժամու աւուրն յԵրուսաղէմ քաղաք երեք արեգակն տեսին յարեւելս և յարեւմուտս և 'ի միջոցս երկնի. և սուրբ ոմն մեկնեաց թէ երեք ժողով լուսաւորեցին զաշխարհ 'ի հաւատս, այլն որ լինի ոչ է ընդունելի։

ԾԳ. Ի դառնալն Յոբնաղայ 'ի ժողովն ('ի ժողովոյն)։ ելին ընդդէմ նորա եկեղեցականքն յանդիմանել զնա։ Իսկ հայրն Պետրոս նստաւ 'ի լռութեան. և երեւեցաւ նմա տէր ասէ, ես զրկեցայ, և հաւատն Եկեղեցւոյ իմոյ աղաղեցաւ. և դու հանգիստ լռեցես. և Նորա երկուցեալ յոտն յարեաւ և առեալ զԹէոդորոս գնաց. և բռնեալ եհար զուրարէն Յոբնաղայ և պատառեաց և ասաց. զայլ գործն քո թող. ասէր զի՞նչ գործեցեր յայսմ գիշերի. և կոչեմ հուր երկնաւոր մաշել զքեզ. դու հաւատ փոխես. և անկաւ Յոբնաղ յոտս սրբոյն. և ասաց խնայեա հայր սուրբ։ Եւ առեալ զԹէոդորոս դարձաւ. այն զոր եպիսկոպոս ձեռնադրեցին զկնի։

ԾԴ. Թէոդոսիոս այր սուրբ և իմաստուն տարակուսէր վասն երկուց բնութեանց, և արտասուօք խնդրէր յԱստուծոյ յայտնել նմա. և երեւեցաւ նմա Յովհաննէս ա-

(1) Մի օրն հալածեցաւ 'ի նմանէ չարն։

ւետարանիչն ասէ , որ էրն 'ի սկզբանն բանն , զնա շօշա-փեցաք զկեանքն . և ոչ է երկու բնութիւն. և լուեալ զայս հաստատեցաւ 'ի միութիւնն ։

ԾԵ. Ոմն 'ի տեսողացն որբոց տեսանէր ժողով եպիսկոպոսաց և Պօղոս առաքելոյն 'ի մէջ նոցա. որ ասէր. ով եղբարք. այդ է իմ պատուէրն , զայդ ուսուցի ձեզ , արդ առէք 'ի սափորոյս և լուացէք զերեսս ձեր , և իբրև լուացան , սեւացան . և ասէր այդպէս անհնազանդս սեաւք եղէք . վայ ձեզ ։

ԾԶ. Մարկիանէ անուն ոմն , աշխարհական յանդիմանէր զՊամփիլիոս եպիսկոպոս վասն երկու բնութեանց. և մատնեցին զնա Տուկի քաղաքին . և տանջեաց զնա սաստիկ . մինչ իջանէր արիւն յոլով 'ի նմանէ , և արար բժշկութիւն բազում ցաւոց , և հրեշտակաց Աստուծոյ առ ընթեր կացեալ դիւրէր նմա և միսիթարէր . և զվէրան բժշկէր ։

ԾԷ. Սուրբն Տիմոթէոս պատմեաց հօրն Յովհաննու յորժամ յաքսորս էր , եթէ յորժամ եկին հրաւ. իրեցին զիս 'ի ժողովն չար . յայնմ գիշերի տեսի զիս 'ի պատարագի ւնչխարին հնացեալ և սեւացեալ և զինին քացախեալ , և ոչ կարացի ճաշակել , և իմացայ զինչ լինէրն ։

ԾԸ. Անաստաս աբեղայ Ուռհայեցի հաղորդեցաւ 'ի հօրէն մերմէ Պետրոսէ . և յայնմ գիշերի նոր մկրտեալ լինէր և նոր զգեցեալ . և մեկնեցին նմա թէ զառնալն յուղղափառութիւն նոր մկրտութիւն է և նորանալ ։

ԾԹ. Թամասին երէց պատմեաց մեզ թէ յորժամ գայր 'ի ժողովոյն հերետիկոսացեալ եպիսկոպոսն մեր , մկրտէի ես տղայ մի . և տեսի ես և ժողովուրդն զՀոգին սուրբ . զի աղաւնակերպեալ երթայր ելեալ յաւազանէն . և լուաք զի ասէր ես այսուհետև յայդ աւազանդ այլ ոչ լինիմ (1) ։

Կ. Պատմեաց մեզ հայրն Պետրոս , թէ կայր իմ եկեղեցական խոտորեալ աղանդոյն Քաղկեդոնի . և հանդի-

(1) Մէ տէ . այլ ոչ մտից ։

զի ասէին ցնա. զիա՞րդ համարիս կատարել ուղղափառու-
թեամբ զկեանս քո. զի ունէր՝ զանարժանիցն պատարագն.
և աղօթեցէր ընդ նոսա: Իսկ կինն բարեպաշտօն խնդրեաց
յԱստուծոյ ժամանակ ապաշխարութեան տալ նմա: Եւ
ետուաւ նմա. և յարուցեալ 'ի հիւանդութենէն, և արտա-
ւօք հայցէր յեկեղեցւոյն յայտնել նմա զարժանաւոր խոս-
տովանութիւնն. և եղև բան լսելի 'ի սեղանոյ ձայն որ ասէր.
որդին Աստուծոյ նոյնն է որ ծնաւ 'ի կուսէն նոյն խաչե-
ցաւ, և թաղեցաւ, և յարեաւ. մի բնութիւն փառաւո-
րեալ, անշփոթ միաւորեալ ընդ նմա կատարեալ մարդ:

ԿԳ. Ցիտալիա վանք մի էր կուսանաց ուղղափա-
ռաց անուան աւագին Ջոյի, որ յափշտակեցաւ 'ի դրախտն
մարմնովն թուելով. և ետես անդ զծառն կենաց. և զի պտուղ
մեղուաց չանոյշին հայիլ 'ի ծառն. և սարկաւագ մի լու-
տապալակեր հալածեր զնոսա, և ասէր ցԶոյի. Քրիստոս է
ծառն. և մեղուքդ հաւատացեալքն Քաղկեդոնի, որք ոչ են
արժանի մերձենալ 'ի Տէր. և իբրև եկն Կղոդոնիոս յԻ-
տալիա. մեղադրեաց նմա Ջոյի. թէ ընդէր ձեռնադրեցէր
զառաջին Լևոնի. և նա ասէ ձեռօք գրեցի, բայց մտօք
ոչ միաբանեցի: Եւ ասէ ցնա. ձեռքն մեռեալ զիարդ գրէ
ռաւանց կենդանի մտաց. և հրաժարեաց 'ի նմանէ:

ԿԵ. Լևոնտիոս անապատական ասաւնէր զեկեղեցի
մերկ, և զխորհուրդն հեղեալ, այս է Եկեղեցին և պատա-
րագն որ չորրորդութիւն խոստովանեցին 'ի Քաղկեդոն:

ԿԶ. Ցորժամ եկ համբաւն Քաղկեդոնի, ամն 'ի սրբո-
ցն ասաւնէր զեկեղեցին Կոստանդնուպոլսի զոմ լսեալ
գորշ և զազիր. անտարբեր կենդանեօք.

ԿԷ. Եպիփանիոս հայր վանացն Պանփիլեայ ասաւնէր
զԱմիկոս զՍևեդրիոս քաղաքի. որ կոչէրն ողորմած. և
զԵպիփան պերկայի (1) թաղեալ յաղբ մինչև ցպարանոցն.
և ասէ Ամիկոս. բարեգործդ զիա՞րդ եղեր այդպէս. և նա
ասէ բարին Աստուծոյ էր. և չարս 'ի մէնջ եկեալ, զի հա-

(1) [illegible]

ւանեցաք ժողովոյն Քաղկեդոնի. և ասեն թէ նորոգեաց նա զտոմարն Լևոնի.

ԿԸ. Կին մի զգաստ և սուրբ Ակիթասաղեայ անուն զկնի ժողովոյն Քաղկեդոնի յերկուս բաժանեալ մտօք հայցէր յԱստուծոյ ցուցանել նմա թէ յորոց հաղորդեսցի. և տեսանէր եկեղեցի մի երկխորանի մինն մեծ և մերկ. և Քաղկեդոնիկք 'ի վերայ նորա. և մինն փոքր և զարդարեալ լուսով. և մանուկ մի հրեղէն 'ի վերայ նորա. որ էր ինքն Քրիստոս և ասէր. 'ի բաց կաց յուրացողէդ. առ իս եկ. և հաղորդեաց կենաց:

ԿԹ. Երկու եղբարք էին 'ի վանսն Ռոմանոսի, Տիմոթէոս և Յովհաննէս: Տիմոթէոս մեռաւ, և տարան 'ի թաղել, և յանկարծ նստաւ 'ի դագաղին և ասէ. գիտացէք եղբարք, զի առ իս չկայր ինչ պատճառ փրկութեան: Բայց միայն իրաւ կարծէի զերկու բնութիւնն, և ահա տանին զիս 'ի տանջանս. և խնայեաց Տէր 'ի ձեզ և ետ ինձ ասել ձեզ զայս 'ի զգուշութիւն, և խնդրեցէք ինձ ողորմութիւն և դարձեալ ննջեաց:

Հ. ՅԱնտիոք Ասորոց բնակեալ էր մերձ յարքունիսն այր մի սքանչելի որ սակաւ բանջարով լնոյր զպէտս իւր, և չառնոյր ինչ յումեքէ. և էր յանդիմանիչ յոյժ Քաղկեդոնացւոցն. և ասէր եթէ հոտ անօրէնութեանն և մահու գայ ինձ 'ի ձէնջ, և ոչ կարեմ տանել լռութեամբ. և սպանին զնա. և բազում նշանք եղեն 'ի նմանէ:

Իսկ Մարկիանէ վեց ամ բռնակալեալ. սատակեցաւ լցեալ անիծիւք: Եւ Վաղենտիանոս սպանաւ 'ի նոյն ամի 'ի թուին Ասորոց եւթն հարիւր վաթսուն և ինն. և պատառեցաւ թագաւորութիւնն Հռովմայ 'ի Կոստանդնուպօլսէ. նոյնպէս և բարձաւ Եւ-

կեղեցւոյ խաղաղութիւն ։ Եւ անձամբ Թագաւորեաց Լեւոն 'ի Հռովմ Թրակացի յիշխանացն Մարկիանեայ ։

Եւ 'ի նոյն ամի Թագաւորեաց Պարսից Պերոզ. և սաստ հալածումն Քրիստոնէից և պատերազմ ընդ Հռոմայեցիս ։ Իսկ Լեւոն ետ զդուստր իւր Զենոնի իշխանի. և կացոյց զնա Թագաւոր արեւելից կողմանն. և զՎասիլիսկոս արար սպարապետ 'ի Թրակիա, և զՄուրինոս կեսար 'ի Հռովմ, որ յետ սակաւուց սպանաւ Յրամիկոսայ (1) և քարոզեցան Նեթիմոս և Լուքարոս կեսարք ։

Յայնմ ժամանակի շինեցաւ Կաղանիկոս որ Միաղա, հրամանաւ Լեւոնի Թագաւորի, և կոչեցաւ Լեւոնտիպոլիս (2) ։ Եւ 'ի սոյն ժամանակս եղեւ հրայրեաց 'ի Կոստանդնուպոլիս, որպիսի բնաւ չէր եղեալ. և այրեցաւ ծովէ 'ի ծով. և ել Թագաւորն արտաքոյ քաղաքին. և ոչ կարաց մտանել 'ի նա ամիս վեց ։ Եւ Լեւոն կանոնել ետ Թէ յօր կիւրակէի բնաւ մեծ և փոքր յեկեղեցիս կայցեն յաղօթս և յուսումն ։

(1) Մի օրի. Յրակմիուայ Մի օրի. յՐակմիոսայ ։

(2) Երկու օրի. Լեւոնտիպօլիք ։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

*Յաղագս նշանաց որ եղեն՝ ամիս մի օդոյ փոշի տեղաց եւ թիզ մի կուտեցաւ ։*

ՅԱՅՍ ղենի այսմանն ամիս մի օդոյ փոշի տեղաց, եւ թիզ մի կուտեցաւ, եւ առաւել 'ի Կոստանդնուպօլիս, եւ զահի հարաւ աշխարհ. զի շարժէր աշխարհ եւ հուր ելանէր 'ի պատառմանէ երկրի, եւ այրէր զբազում տեղիս. եւ ակն ունէին կորնչելոյ երկրի ։ Եւ Կիզիկոն քաղաք 'ի շարժմանէն եւ 'ի կայծականց անյայտ եղեւ շրջելով. եւ յոլով մասն Թրակիոյ ապականեցաւ ։

Իսկ զԹագաւորն կալաւ աղէցաւութիւն սաստիկ, եւ մեռաւ Թագաւորեալ ամս տասն եւ ութ, ոչ պարապեալ 'ի խռովութենէ. եւ գիտաց ամենայն այր իմաստուն, եթէ ժողովն Քաղկեդոնի զայրացոյց զՀոգին սուրբ Աստուծոյ անաստուած դաւանութեամբն ։

Եւ Թագաւորեաց Լեւոն փոքր թոռն Լեւոնի հրամանաւ նորա՝ տղայ վեցամեայ ։

Եւ յետ ամի միոյ եկն Զենոն հայր տղայոյն հնազանդել որդւոյն. եւ մայրն խաբեաց զտղայն որպէս մանուկ՝ եւ տայ. յոր-

ժամ առեւցես զհայր քո, դիր զԹագդ 'ի գը-լուխ Նորա, և երկրպագեա Նմա (1). և արար այնպէս, և Թագաւորեաց հայրն միահեծան. զի զկնի սակաւու մեռաւ տղայն:

Իսկ Սերինայ Թագուհին մեծ Լեւոնի աղաչէր զԶենոն վասն աղանդոյ Քաղկեդո-նի ընդունել զնա: Եւ իբրեւ ոչ լուաւ Նմա՝ Նենգեաց Նմա. և խորհրդակցօք իւրովք զեղբայր իւր զՎասիլիսկոս Թագաւոր եւս կարգալ. և զորդի Նորա զՄարկոս՝ կեսար: Եւ իմացեալ Զենոնի փախեաւ յԻսաւրիս յազ-գըն իւր, և մտեալ 'ի բերդն Սալամէ դա-դարեաց անդ. և կին Նորա Արկանիայ չո-գաւ առ Նա:

Իսկ Վասիլիսկոս Թագաւորեաց որդւովն ամս երկու: Եւ էր պիղծ և չարադև. և հա-լածիչ ուղղափառաց, և եդ յաշտանակի ըզ-Քաղկեդոնին (2) և եղեւ ատելի բազմաց. և գային առ Զենոն, և եղեն բազումք:

Եւ առաքեաց Սաւրին զԱրտեմիս զօրա-պետն իւր պատերազմել ընդ Նմա, և խօսե-ցաւ Զենոն ըստ սրտի Նորա, և խոստացաւ կեսար առնել զնա, և առին զօրքն զԶե-

(1) Մի օրի. յաւելու եւ յարժամ եկն հայրն, Զենոն զնա և արար այնպէս.

(2) Երկու օրի. բարձրա-ցոյց զՔաղկեդոնիան.

նոն և գնացին 'ի Կոստանդնուպօլիս . և ըմ-
կալան քաղաքն խնդութեամբ ։

Եւ փախեաւ Բասիլիսկոս որդւովն յե-
կեղեցին . և առաքեաց Զենոն մերկացոյց
զնոսա 'ի ծիրանեացն, և ետ տանել 'ի Լա-
մփսակաստրա (1) Կապպադովկացւոց . և ածին
'ի բուրգն (2) մի և փակեցին յամենայն կող-
մանց . և մեռան անդէն դառնապէս ։

Իսկ Զենոն արար զԱրմատեմս (3) զօրա-
պետ, և զորդին նորա Կեսար . և զկնի սակա-
ւուց սպանաւ Արմատեմիս . և որդի նորա եղև
ընթերցող եկեղեցւոյ ։

Յայնմ ժամանակի Զենոն 'ի ձեռն Ա-
կակայ պատրիարքի Կոստանդնուպօլսի հաս-
տատեաց զմիաբանութիւն ։ Եւ առա-
քեաց առ պատրիարքն Աղեքսանդրի, և առ
Պետրոս պատրիարքն Անտիոքու, որ կային
անդ 'ի բանտի 'ի Կոստանդնուպօլիս՝ հաշ-
տանել 'ի նոցանէ զհաւատոյ խոստովանու-
թիւնն . և նոքա ետուն զԱփրիկայն և զԿոս-
տանդնուպօլսին և զԿիւրղին և զԴիոսկորա-
սին . և թագաւորն առաքեաց զմիաբանու-
թիւնն ընդ ամենայն երկիր և ձեռնադրե-

(1) Մի օրի. 'ի Լամփսակաս-
րա ։ Մի օրի. 'ի Լամփս 'ի
Կաստրա ։

(2) Երկու օրի. 'ի աշտարակ մի

(3) Մի օրի. զԱրմատեմն ։

ցին զայն եւթն հարիւր եպիսկոպոսք. և գրեցին ՚ի ձեռնարկն թէ նզովեմք զտումարն Լեւոնի (1), և նզովեմք զՆեստոր. նզովեալք եղիցին ոչ նզովողք նոցա:

Եւ լուեալ Թագաւորն զուարճացաւ. և առաքեաց զՊետրոս մեծ պատուով յԱնտիոք յաթոռն իւր՝ զոր Թափիչն կոչեն: Եւ զՏիմոթէոս յԱղեքսանդրիա, զայն՝ զոր ուղղափառքն ձեռնադրեցին զկնի Պռոտերայ (2): Եւ աքսորեաց Մարկիանէ:

Յայնմ ժամանակի ապստամբեցին Սամարացիքն. և եդին իւրեանց Թագաւոր զոմն Յուստոս անուն. որ զբազումս կոտորեաց ՚ի Քրիստոնէից. և մտեալ յեկեղեցին ՚ի Կեսարիա արար արիւն. և քակեաց զեկեղեցին և շինեցին անդ տաճար իւրեանց. և լուան զայն զօրքն Զենոնի. և գնացեալ ՚ի վերայ նոցա կոտորեցին. և զգլուխ անուանեալ Թագաւորին կտրեցին. և առաքեցին առ Թագաւորն Զենոն, և զշինեալ տաճարն եկեղեցի օրհնեցին յանուն սրբոյն Մարիամայ. և զՀրեայսն որ յԱնտիոք կոտորեցին: Ի նոյն աւուրս կործանեցաւ Նիկոմիդիայ ՚ի շարժմանէ, և էր նորա վեցերրորդ

(1) Երկու օրի. յաւելուած և վէմք զԱկակ:
զժողովն Քաղկեդոնի, նզո. (2) Երկու օրի. Պռոտերայ

տապալումն (1) ։ Յետ այսորիկ մեռաւ Զենոն թագաւորն վաթսուն ամաց՝ թագաւորեալ ամս վեշտասան ։

Իսկ թագաւորն Պարսից չարամահ եղեալ. թագաւորեաց Պալուշ ամս չորս. և արար խաղաղութիւն Եկեղեցւոյ ։

Իսկ զՀռովմայեցւոց թագաւորութիւնն էառ Անաստաս այր բարի և սրբասէր. որ զի գտաւ անօրէնութիւն ՚ի դպրոցն Կոստանդնուպօլսի, զայրացեալ կոտորեաց զամենայն դպրոցսն. և տրտմութիւն կալաւ զքաղաքն։ Սա շինեաց զՏարազ աւերեալն առ սահմանն Դարեհի. և կոչեաց Անաստասուպօլիս։

Իսկ Պարսից թագաւորեաց Կաւատ՝ զոր հալածեաց Համասպ եղբայր իւր ամս երկու, և դարձեալ զօրացաւ Կաւատ և սպան զեղբայրն, և թագաւորեաց ամս երեսուն ։

Զայսու ժամանակօք եկին Հոնք. և աւերեցին ՚ի Պարսից աշխարհէն. և կարծեցին Պարսիկք թէ բանիւ (2) Անաստասայ եղեւ. և եկին յերկիրն Միջագետաց, և բազում աւերս արարին և գնացին։ Յորում ժամանակի եղեւ Պատրիարք ՚ի Կոստանդնու-

(1) Երեք օրի. էր նորա ՚ի տապալումն ։

(2) Չորք օրի. ող [illegible] զբանիւք ։

պօլիս քսաներրորդ. Տիմոթէոս՝ այր առաքինի և իմաստուն ։

Սա իմաստնացոյց զՆեստոս և գրեաց կանոնս և առաքեաց ընդ ամենայն երկիր զսուրբ Աստուածն խաչեցար ասել, և 'ի մի բնութիւն օրհնել զՔրիստոս Աստուած (1) ։

Իսկ Նեստորականքն որ 'ի Կոստանդնուպօլիս խռովութիւնս ոչ սակաւս արարին. եթէ զԵրրորդութիւնն խաչեալ ասեն. և 'ի ժխորմանէ անտի մեռաւ երէց մի Տիմոթէի. ընդ որ զայրացեալ Տիմոթեայ գնաց յանապատ ։

Յայնմ ժամանակի երեւեցաւ այրն բանաւոր Փիլիքսինոս (2) եպիսկոպոսն Յարապօլսոյ. որ արար բազում վարդապետութիւնս և գրեանս վասն ուղղափառութեանն։

Զայս կոչեաց մեծարանօք Թագաւորըն 'ի Կոստանդնուպօլիս, կոչնականս առաքեալ նմա զՍեւերոս վարդապետն և երկերիւր (3) քահանայս ընդ նմա. և ժողովեալ 'ի Կոստանդնուպօլիս բազմութիւն յոյժ յերկուց կողմանց Նիկիականաց և Քաղկեդո-

(1) Խաչեցար ասելով, և նոյն . մի բնութիւն խոստովանել զՔրիստոս Աստուած ։

(2) Մի օրի. Փելիքսոսի ա.

(3) Երկու օրի. քահանայս մի ընդ նմա ։

նացուոց , արժանի քննութիւն յայժ ։ Եւ յաղթող երեւեցան ուղղափառքն . և առաքեաց Թագաւորն և ետ հանել 'ի գերեզմանէն Եւփեմեայ զտոմարն Լեւոնի , և ըն-կանոն ժողովոյն Քաղկեդոնի զսահմանեալսն , և այրեաց առաջի իւր . և կամէր Փլաւիոս պատրիարքն Անտիոքայ մեղադրել Թագաւորին վասն իրացն . և ասէ ցնա արքայն երեւեցար Նեստորիոս . և անարգեաց զնա . և առաքեաց յաքսորս նզովիւք ժողովոյն . Եւ ձեռնադրեաց Փիլիքսիանոս զՍեւերոս պատրիարք 'ի Կոստանդնուպօլիս լի հոգւով սրբով և փարթամ գրովք . որ և յաւուր ձեռնադրութեան իւրոյ խօսեցաւ զճառն՝ որոյ սկիզբնն է որք բաժանեն զմիաւորութիւն բանին Աստուծոյ . յորում կայր արատ (1) ամենայն աղանդաւորաց . զոր ունին Յոյնք . և միշտ ընթեռնուն վասն կորովութեան և մաստիցն 'ի յանդիմանութիւնս իւրեանց ։

Զայս Սեւերիոս առաքեաց Թագաւորն երեւելի փառօք յԱնտիոք քաղաք ։ Սա էր աշակերտեալ Յակոբայ սրբոյ Սրճոյ եպիսկոպոսին . այն որ ոչն էր իմաստնացեալ 'ի մարդկանէ այլ 'ի Հոգւոյն սրբոյ . քանզի

(1) Ոմանք՝ յորում կայ անարատ ամենայն աղանդաւորաց, որ [illegible] յորում [illegible] արատ ամենայն աղանդաւորաց ։

Հինգ (1) ամաց եղեալ Հոգին սուրբ խօսէր 'ի բերանոյ նորա : Զոր լուեալ պատրիարքն Աթանաս, եկն 'ի փորձել զնա 'ի տան հօր իւրոյ. և նստեալ 'ի ծաշ առեալ 'ի սեղանոյն ձու մի ասաց. Յակոբ որդեակ, հաւն է աւագ թէ այս ձուն, ետ պատասխանի մանուկն և ասէ. մի խաբեր զիս, ոչ է հայրն աւագ քան զձաւն իւր միածին. Եւ հիացեալ պատրիարքն յայլում աւուր մտեալ յեկեղեցին եհան զողջոյն յամպիոնն. և ասաց. որդեակ, տուր մեզ բան 'ի խորհրդածութիւն զոր ետես Եզեկիէլ. և սկսաւ ասել. որ 'ի բարձրդ ես յաթոռ Ըանդ բարձրեալ. և 'ի միջոցի ծառին ասաց առաւ Ամիթ 'ի Պարսից, և ընկղմեցաւ արքունիքն 'ի Հալապ (2), և էր այնպէս յորժամ իմացան:

Եւ լուեալ 'ի սմանէ պատրիարքին զմեծամեծսն Աստուծոյ ասաց ստուգապէս Հոգին սուրբ խօսի 'ի բերանոյ սորա. և համբուրեաց զնա:

Սա խօսեցաւ ծառս ութ հարիւր. 'ի սորա հոգւոյն առեալ Սեւերեայ լուսաւորեաց զքաղաքս, 'ի սոյն ժամանակս երեւեցաւ Սիմէոն բրուտն՝ որ արար ծառս վասն

(1) Երկու օրի. եւթն:   մի օրի. 'ի ծարց:
(2) Երեք օրի. 'ի ծալէղ.

աստուածապաշտութեան, եւ շարականաւ ուղղափառ մտօք լցեալ։

---

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Յաղագս աւերման Ամթայ. եւ Գօզոս անուն հրէայ եղեւ պատրիարք Անտիոքայ, եւ ժողովեաց զամենայն եպիսկոպոսունս. զկնի Գօղի Անկղիպել. եւ չար գազան. եւ հեղեղն որ ջրասոյզ արար զՈւռհայ։

ԶԱՅՍՄԻՒ աւուրբքս խաղաց Թագաւորն Պարսից Կաւատն ընդ Միջագետս, եւ գնացեալ առ զքաղաքն Թէոդուպօլիս. եւ ոչ կոտորեաց զքաղաքն զի ոչ անարգեցին զնա բանիւք ՚ի պաշարմանն. եւ դարձաւ եկն յԱմիթ. եւ պաշարեաց զնա եւ շինեաց բերդս փայտեղէնս. եւ մերձեցոյց ՚ի պարիսպն. եւ նեղէր զնոսա խստագոյնս. եւ իմաստունք քաղաքին Թրջեալ համեմ հացի, եւ զջուրն արկին ՚ի վերայ փայտեայ բերդին. եւ ընդ նմին հուր, եւ այրեցին զնա. եւ եկն անձրեւ սաստիկ, եւ Պարսիկք երկայն հանդերձիւքն իւրեանց նեղացան. եւ խնդրեցին ոսկի զի գնասցեն. եւ ոչ լուան նոցա վասն աղօթմանն իւրեանց։

Սակայն հասեալ էր 'ի վերայ նոցա օր վրէժխնդրութեան. զի սակաւ մի յառաջ աւուրբք եկեալ էր առ նոսա մանական վարդապետն սուրբ Յովհաննէս, և գուշակեաց նոցա զաւեր քաղաքին, եթէ ոչ պահովք և աղօթիւք (և լալով), և հսկմամբ և ողորմութեամբ հաշտեցուսցեն զԱստուած: Եւ նոքա ոչ լուան նմա: Վասն որոյ առին զքաղաքն Պարսիկքն և կոտորեցին անձինս ութսուն հազար. և բազումս գերեցին:

Իսկ աւագ եկեղեցին լցաւ արամբք և խնայեցաւ 'ի խնդրոյ զօրագլխին Հայոց՝ և ոչ մեռան, և ոչ գերեցան. և մտեալ թագաւորն յեկեղեցին և ետես նկարեալ ըզպատկեր Փրկչին. և ասաց ով է նա. և ասեն պատկեր Աստուծոյն իւրեանց է. և ասէ սա երեւեցաւ ինձ և ասաց մի յառներ 'ի քաղաքէդ, ես մատնեմ զքաղաքդ 'ի ձեռս քո. և արդ ես ոչ առի զքաղաքս, այլ Աստուածն իւրեանց. զի մեղան նմա: Եւ ել գնաց թագաւորն Պարսից 'ի յՈւռհայ, և ոչ կարաց առնուլ զնա. և գնաց յերկիրն իւր թողեալ 'ի յԱմիթ սակաւ բնակիչս և հեծեալս երեք հազար. պահապանս նոցա 'ի գլխաւորս երկու վստահացեալ զնոսա:

Եւ լուեալ զօրացն Հռովմայեցւոց եկին պատերազմել ընդ Պարսիկսն որ յԱմիթ. և նոքա մտեալ ՚ի քաղաքն ամրացան։ Եւ եկն այր մի ՚ի Կարթայոյ պերզէն Կոզթ անուն. խօսեցաւ ընդ Հռովմայեցիսն զոր ինչ առնելոց էր, և գնաց խաբէութեամբ եհան ՚ի քաղաքէն զմի ՚ի գլխաւորացն որոյ անուն էր Եկզան չորեք հարիւր արամբք. որպէս թէ երթան բերեն զերամակն Հռովմայեցւոցն։ Եւ տարեալ զնոսա մատնեաց ՚ի կորուստ։ Զոր իմացեալ Պարսիցն տասն հազար այր ՚ի Քրիստոնէիցն արգելին ՚ի տան միում. և արարին զնոսա սովամահս. և ինքեանք ՚ի գիշերի միում գնացին յաշխարհըն իւրեանց։

Ի քսան երկու ամին իւրոյ Անաստաս առաքեաց դեսպան ՚ի Հայս և այլաչանօք դարձոյց զնոսա ՚ի Պարսից և արար ընդ ինքեանս. և յաղթահարեալ Պարսիկք դադարեցին ամըս եւթն։ Իսկ Անաստաս լեալ քսան եւեւթն(1) ամաց՝ կատարեցաւ ՚ի Տէր ՚ի քսան և ինն Թամուզ ամսոյ։

Ի սորա չորեքտասաներ ամին լրաւ վեց հազար ամն յելիցն Ադամայ յութ հարիւր երեսուն երկու թուին Ասորոց։

(1) Երկու օրի. քսան եւ հինգ։

Եւ Թագաւորեաց Յուստիանոս Թրակացի. զսա ասեն զսկիզբն Թագաւորացն Յունաց, որ էր 'ի գեղջէն Բեդրինայ՝ զոր քաղաք ընդարձակեաց յանուն իւր կոչելով. զորոյ զջուրն ասեն, եթէ շատ եփեն՝ արիւն լինի ։

Եւ Յուստիանոս (1) էր անվարժ գրոց և անմիտ. և միացեալ էին 'ի Թրակիա քաղաքն 'ի ծածուկ աղանդոյն Քաղկեդոնի. որք պատրեցին զնա և ասեն, թէ լուր և հաւանիս պատուական ժողովոյն՝ հնազանդեն քեզ ամենայն տիեզերք (2), և խնդաց յոյժ. և եհան քարոզ զօրօք և զօրագլխօք ընդ ամենայն երկիր ընդունել զչորրորդ ժողովն։ և որք ոչ հաւանէին ասէ, զրկեցին յաթոռոյ և 'ի պատուոյ և յամենայն համարձակութենէ. և տարարին այնպէս խմորեալ և կաշառեալ զօրքն և զօրապետքն. և լցան տիեզերք պատերազմաւ ։

Իսկ Սեւերոս պատրիարքն Անտիոքու բարկացաւ յոյժ, և անէծ զԹագաւորն. և որոշեաց նզովեաց (3) զամենայն հաւանեալ-

(1) Երկու օրի. Ուստինոս ։

(2) Ոմանք՝ յաւելուն այն է կատարումն երրորդ ժողովոյն և հաւատ ուղիղ. ամէն նոր և հաւատոց ուղիղ և խընդաց յոյժ ։

(3) Ոմանք՝ որոշեաց նզովեաց ։

սըն (1) չար կամաց Թագաւորին զեկեղեցականս և զաշխարհականսն . և ինքն գնաց յԵգիպտոս : Անդ երանելն Ոսկոյն 'ի քաղաքէն իջեալ հուր այրեաց զարքունիսն. և զմեծ ամիս ոչ շիջաւ հուրն, մինչեւ ճարակեաց զամենայն քաղաքն Անտիոք :

Իսկ զկնի ամի միոյ Պօղոս անուն ազգաւ Հրեայ անօԹ բարկուԹեան եղեւ պատրիարգ Անտիոքու . և առ ինքն ժողովեալ զամենայն Ասորոց եպիսկոպոսունսն հրամանաւ Թագաւորին և ողոքեաց և սպառնացաւ . զի ընկալցին և քարոզեսցեն զչորրորդ ժողովն ընդ ուղղափառան . և զհաւանեալսն բանից իւրոց , առաքէր յաԹոռս իւրեանց , և զոչ հնազանդեալսն յաքսորս առաքէր :

Եւ արդ Թող զկորուսելոցն բազմուԹիւն որք մնացին յուղղափառուԹեան , և հալածեցան այսոքիկ են ըստ Յովհաննու Ասիացւոյն :

Անտիբերոս՝ (2) եպիսկոպոս Նաւարզայ, Յուլիոս՝ Հագոնի . (3) Յովհաննէս՝ Մետրապօլիտ Մամեստիայ (4) . Պօղէ՝ Աբերիոյ , Յովհաննէս՝ Յարապօլսի . Պօղոս փոքր՝ Ա-

(1) Երեք օրի . հաւատացեալսն :

(2) Մի օրի . Անտիբերոս . անայ :

(3) Երկու օրի . Հագոնիոյ

(4) Երկու օրի . Մամեստ-

դեքսանդրի, որ է Սկընդրունն (1). Նիկողաս՝ Տարսոնի: Իսկ 'ի Կապպադովկիայ երկրէն Գրակղ՝ Կողոնիոյ. Սաբինոս՝ Ամասայ. Նե-կտար՝ Սեբաստիոյ Հայոց: Իսկ յՕնորիադայ Նարոց Կոստանդինայ՝ Լուրկինոս եպիսկոպոս, որ վասն առաւել սրբութեան իւրոյ նստէր աթոռով առ ընթեր պատրիարքացն, և անուամբ յիշատակէին զնա յամենայն պատարագս. զկնի անուանց պատրիարքին: Նոտիկինոս (2) Հալպայ. Փիլաքսինոս արհիեպիսկոպոս Մնբեճայ. զոր յետ յոլով տանջանաց և խոշտանգանաց այրեցին 'ի կղափուռն ընկեցեալ 'ի Գանգրա: Պետրոս՝ Ապամիոյ. Թէոդոս և Անէսիմոս՝ Օզմոյ և Արեմին: Նոյնոս Սելեւկիոյ. Իսիդորոս՝ Կնշրի. Մարի՝ Ամթայ. Թովմաս՝ Դամասկոսի, այր սուրբ և ճգնաւոր որ զ.քսան և ութ ամ հաց ոչ եկեր, բայց միայն ունդ և բանջար: Աղեքսանդրոս՝ Աբէլ քաղաքի. Թովմաս՝ Նարգաբայ. Յովան՝ Թէաւրոյ: Յովհան՝ միւս Ահուրանի. Սարգիս՝ Կուրիայ. Թովմաս՝ Մարաշայ, որ 'ի Գերմանիկէ. Պօղոս՝ Ուռհայոյ, որ զկնի ուրացաւ և դարձաւ յաթոռն: Յովհաննէս՝ Իսառա-

(1) Աղեքսանդրիա Ասոր. (2) Երկու օրի. Անտոնինոսւոց, որ է Իռչէնոփէքրան:

նոյ. (1) Յովհաննէս՝ Եփեսու: Եւստաթէ՝ Փիւրնին. Պետրոս՝ Ուսալին. Նոնոս՝ Սելեւ-սոնի. Պօղ՝ Կալանիկոսի. Մարկոն՝ Հռով-մայ քարն կոչեցելոյ, որ է Հռոմ Կլայն. Յովհաննէս Թուլային (2). Թովմաս՝ Տարսոյ. Ահարոն՝ Աշմուշայ: Իսկ յԱսիոյ 'ի Կարիոյ եպիսկոպոսապետն Ուփիմիոս (3). յԱնտիո-քու Պիսիդեայ՝ Մնիբրանոս: յԱնկիւրայ քաղաքէ Օդսիս. յԱլլուանայ՝ Պետրոս. Յուլիայ Միկառնցին՝ որ յետոյ հերձուած խոտեցաւ: Թումբերդիոս՝ Եփեսոսի, որ ա-րար սքանչելիս 'ի Կոստանդնուպոլիս մեծա-մեծս. և զերիս աւուրս լռելեայն աղօթեաց կալով կանգուն ամենեւին: Եւ հրեշտակ տեառն աւանդեաց զոգին. և վառեցաւ մարմինն երկնաւոր լուսով զտիւ և զգիշեր. և զահի հարաւ քաղաքն. և առին զնա դո-ղութեամբ զի դիցեն զնա ընդ առաւել մարտիրոսս: Եւ ձայն եղեւ 'ի մարմնոյն զի տարցին զնա յաթոռն իւր. և տարան զնա յաթոռն իւր. և տարան զնա 'ի Երինէ 'Նեոկեսարու: Եղափեոս՝ (4) Կաստուբանայ. Թէոդորոս՝ Սելեւկիոյ. Դուկաս՝ Իմիրոյ.

(1) Մի օրի. միայն ունի զայս:

(2) Մի օրի. Թալացին

(3) Մի օրի. Նուփիոս:

(4) Մի օրի. Եղափեո:

Լուսեքիա՝ Յեդրանոսի. Մեթոդոր՝ Մոնեփ-փաղէկ՝ Սանտարի. Բուստինոս՝ Մրանեից. Աղեքսանդրոս՝ Բանքարայ. Թող զաննշան տեղեաց եպիսկոպոսն՝ զորս ոչ գրեցաք.

Իսկ երիցանց և սարկաւագաց թիւ ոչ գոյր. որք ընդ ասացեալ եպիսկոպոսունսն գնացին յաքսորս, և տուան 'ի քանս և 'ի կապանս 'ի Կոստանդնուպօլիս և յԱղեքսանդրի, և բազումք 'ի մուխս (1) խեղդեցան.

Իսկ որք 'ի տեղիս իւրեանց յաշխարհէն Ասորոց սպանմամբ կատարեցան քաջ 'ի համբերողացն են այսոքիկ. Ափրեմոս՝ 'ի պատառէն Անտիոքայ, Աբրահամ՝ Սատուփատնի 'ի պօրպալքէն մեռան. և Յովհաննէս իմաստունն խոյս ետ և գնաց 'ի Բլրայ վանս 'ի Սելեւկիայ. որք երկեալ սպանին և զեղբարս ընդ նմա. Կորիս՝ գլուխ վանացն Նաթիքու սպանաւ ամենայն բնակչօք վանիցն. և բնակիչքն Թլպահու վանից յայժ տանջանօք կատարեցան. և վանք սրբոյն Աւամանոսի, և վանք սրբոյն Սիմէոնի և Շիլայի առաքելոյն վանքն 'ի Բեսան. և Եղնասոս գլուխ և մայր վանորայից սրով կատարեցան յետ բազում աղմկի. Նոյնպէս և կրօնաւորքն Մանանի, և Յովհաննէս վանապետն

(1) Երկու. օրի. 'ի մխոց խեղդեցան.

Պոմրայի պլայլին, և վանորայքն որ շուրջ զՍուռհոյ քաղաքաւ բազումք, ամենեքեան կործեցան 'ի տեղիս իւրեանց. և վանքն որքոյն Յովհաննիսի յարեւելից կողմանէ Խառանու, և վանքն Մականոսի, և վանք որքոյն Սարգսի, և աւագ վանք լերինն հիմ Նարկեալն Թումայի Առաքելոյն որպէս ասեն խապառ կործեցան։ Եւ վանք որքոյն Սահակայ՝ և վանք մի մեծ Մեփոսայ և Վ Կ-ղալայ, և Նեգուպեղ և Վանեար եւ ԹՆ առաքելադիր՝ յԱմթայ երկիրն իւրեանց եպիսկոպոսունն և միաբանօքն 'ի միասին կործեցան։ Եւ վանք սուրբ Գնանիանց և վանք որքոյն Աբրահամու, և վանք որքոյն Դանիէլի. և վանք որքոյն Սամուէլի նմանապէս նահատակեցան։ Եւ վանք որքոյն Աբրամու. և վանքն Թորոյի աւընթեր Սաղին կործեցան բազում ճգնութեամբ. և զի՞նչ ասացուք մանրամասնելով. քանզի յՍաղայէ (1) մինչեւ 'ի Բաղդատ. և յԵփրատ անապատ արարին զքաղաք և զգիւղ ուղղափառաց։

Իսկ որք փախչէին առ ժամանակն խուզէին զնոսա խստադոյնս, և սպանանէին։

Իսկ վարդապետք՝ որք քաջալերէին ըզ-հօտն և վիճէին ընդ Թշնամիսն՝ Եղեայ՝

(1) Մի օրի. յՍաղէին Թե. րեւս Երամիս

Իոկաւնայ և Սամէ, Կոզմաս, Յովհաննէս և Մարոն յարեւելից. և Կաթուխայ (1) և սուրբն Սարգիս պաշտելագործն. և Նոնն. և միւս Եղիա, և Սիմէոն, և Կաջը, և միւս Սարգիս, և Յովհաննէս միւս, և Սիմէոն միւս. և սուրբն Անանիա (2) այր Աստուծոյ և նշանագործ. որքա յետ զգուշացուցանելոյն և քաջալերելոյն զերկիրն ասացեալ, գընայքն 'ի միասին առ Թագաւորն յանդիմանել զնա ամենայն համարձակութեամբ։

Իսկ անօրէնն՝ բնակարանն սատանայի եհան հրաւիրակ (3) իւրոյն զի պատերազմեսցին բանիւք ընդ սրբոյն. որք յաղթահարեցան 'ի սուրբ Հոգւոյն որ բնակեալ էր 'ի նոսա. և գաղտապէս հեղձուցին զնոսա, և ծածկեցին։ Եւ զվանեարն որ կայր շուրջ Ուռհայ, զսուրբ Զակքէ, և զսուրբն Աբէ և զսուրբ Սադէ, եպիսկոպոսաւն և ամենայն կրօնաւորօքն կոտորեցին։ Եւ էր անդ-ձիւնակեաց մի Սիմէոն անուն որ զամենայն աւուրս իւր հաց ցանկութեան ոչ էր կերեալ. բայց միայն արմատս 'ի ձմերայնի, և բանջարս յամարայնի. որ յար և հանապազորդ 'ի զարմացման լինէր աստուածայնոցն։

(1) Մի օրի. Կաթփեայ. եպիսկոպոսն Անանիա
(2) Մի օրի. յանկըս սուրբ
(3) Մի օրի. հրաման.

Նա միւս սինակեացն Թովմաս առաքելին նշանագործն՝ յորմէ հրեշտակք պատկառէին, վարդապետն սքանչելի. զատա զկնի առխատ ատենլոյն բանիւք, որով կատարեցին։

Իսկ անօրէն ուրացողն Պօղոս ուռհայեցին լցեալն դիւօք՝ ելից արեամբ զՄիջագետս եւ փախստական արար զբազումս 'ի Պարսս. եւ ոմանք իբրեւ զգազան շրջէին 'ի լերինս մերկ եւ բոկ եւ սովեալ. եւ ոչ ոք է կարող զպղծութիւն նորա պատմել գրով։

Սա բազում (անգամ) աղաչանօք կոչէր առ ինքն զսուրբն Յակոբ սրճեցին։

Իսկ նա աղօթիւք խնդրեաց զկամս Աստուծոյ, եւ էլ գնաց մինչեւ ցվանքն՝ որ Պարսիցն կոչի. եւ անդ երեւեցաւ նմա հրեշտակ տեառն, եւ ասաց ցնա. դարձիր 'ի տուն քո եւ պատուիրեա հօտի քո զզուշութիւն վասն ուղղափառութեան. զի յետ երկուց աւուրց կատարիս։ Նա դարձաւ եւ խօսեցաւ ընդ աշակերտսն իւր բանս օրհնութեան եւ աղօթեաց. եւ ետ զխոստովանութիւն հաւատոյ, եւ կատարեցաւ ըստ բանի հրեշտակին։

Յայնմ ժամանակի խնդրեաց Կոստանդին թագաւորն Պարսից հինգ հազար հինգ հարիւր կենդանիս որսոյ 'ի Յուստինիանէ. զի առ-

ցէ զօրավարին՝ որ պահէր զդուռն Հոնաց. և ոչ կամեցաւ տալ։ Եւ նա սրտառեալ(1) եկն 'ի Միջագետս մինչեւ յԱնտիոք. և գերեաց և կոտորեաց. և գտաւ (եգիտ) 'ի գերիսն չորս հարիւր կուսանս. զոր զոհեաց Կուզիայ կռոց իւրոց. և դարձաւ։ Եւ այսպէս կորոյս Յուստինոս հոգւով և մարմնով զերկիր։

Ի սոյն աւուրս ջուրն Սիլովմայ անյայտ եղեւ, և ոչ երեւեցաւ զամս հնգետասան. և անկաւ հուր յերկնից, և այրեաց զԲաղբաք(2) քաղաք. զոր շինեաց Սողոմոն 'ի լեառն Լիբանանու։ Բայց զերեք վէմս զոր եդեալ էր իմաստունն 'ի խորհուրդ Երրորդութեանն, որ քարոզելոց էր յիւրում ժամանակի ոչ վնասեաց հուրն։

Յաւուրս յայսոսիկ երեւեցաւ 'ի Կիւլիկիայ կին մի որ երկայն էր քան զամենայն մարդ գիրկ մի. և լեզու ինչ ոչ խօսէր. և կերակուր մարդոյ ուտէր, և 'ի խանութէն փող մի առնոյր և այսպէս կեցեալ զբազում ժամանակս անյայտ լինէր. և ասէին ոմանք թէ 'ի յաւերժահարսանցն էր։

(1) Մի օրի. Սրտմտեալ։

(2) Պատրիկէ. [illegible] հին աւե-րեալ [illegible] 'ի Դամասկոս [illegible] [illegible]. որոյ աւերակին մեծա-[illegible] հոյակապ և ճարտարա-[illegible]. որոց ճարտա-րութիւնք հաստատեն Եգիպտական [illegible]։

Յետ չարասիրին Պօղէ, Ասկղեպ եղեւ եպիսկոպոս Ուռհայոյ չարագազան և կատաղի այր. որ ժողովեաց յուղղափառացն քան այր կրօնաւորս և պարկեշտս. և տուրանալ հարկաւորէր. և ապա արկ զնոսա 'ի բանտ և կեղեքէր զկեանս նոցա: Ի գիշերի միում ելին հեղեղ 'ի վերուստ կողմանէ քաղաքին, և եհար զպարիսպն և փլոյց զնա և անցաւ 'ի վերայ քաղաքին. և էառ մարդ և անասուն բազում և տարաւ ելից յԵփրատ. և անօրէնն Ասկղեպ զերծաւ 'ի Սլայն ընդ այլս ոմանս. և կամեցան քարկոծ առնել զնա. զի գիտացին թէ վասն նորա չարեացն եղեւ. և փախեաւ յԱնտիոք: Եւ տեսեալ զնա Եփրեմ աղանդակիցն իւր որ պատրիարգն էր Անտիոքայ, ասէր. տեսէք եղբարք զերկրորդ Նոյ, որ զերծաւ 'ի ջրհեղեղէն, որ եղեւ վասն ոչ ընդունողայն զսուրբ ժողովն:

Իսկ Յուստինոս առաքեաց ոսկի բազում շինել զՈւռհայ. և 'ի պեղելն գտաւ գիր 'ի վէմն քաղդէացի գրով, թէ երեք անգամ ջրհեղեղ կրէ Ուռհայ. և գտին մեռեալ 'ի հեղեղէն (1) երեսուն հազար անձինս. և 'ի թուելն զբնակիչս քաղաքին իմացան

(1) Մէ օրի. ամէն այսպէս. և գտին մեռեալ 'ի հազարն:

Թէ երկու հարիւր հազար այր տարեալ էր ջուրն զորս ոչ գտին ։

---

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Յաղագս Անկղիայ և Եփրեմի, որ անիծանէին զուղղափառսն. և եկն պատուհաս 'ի վերայ նոցա.

Եւ մինչ Անկղիա և Եփրեմ խրախանայէին 'ի միասին և անիծանէին զուղղափառսն, շարժեցաւ քաղաքն Անտիոք հինգերորդ շարժումն. և տապալեցան ամենայն ձեռագործք. և եղեւ հրաշ նորանշան, զի օդդ բերէր զպատիժն Աստուծոյ. և եռայր գետինն. և գայր յանդնդոց սեաւ ջուր, և բերէր խեցեմորթս և կրայս. և ոսկերք գազանաց և հուր և ջուր 'ի ներքուստ 'ի վեր գայր. և ոչ դադարեաց ամ մի ողջոյն պատուհասն, և հոտ պարշութեան գայր անտանելի. և մեռանէին մարդ և անասուն և փախչել ոչ կարէին. և ամենայն աշխարհ քուեալ լային զնոսա և չիշխէին մերձենալ առ նոսա ։ Եւ մեծ եկեղեցին զոր շինեալ էր Կոստանդիանոս՝ դողաց զեւթն օր, և պատառեցաւ տեղին և ել հուր և այրեաց զեկեղեցին. և երեւեցաւ խաչ լուսեղէն

յօղն. և մնացեալքն 'ի պատուհասէն սկը-սան ասել. տէր ողորմեա: Եւ էին ապրեալ-քըն 'ի բազմութենէ քաղաքին հազար եր-կու հարիւր և յիսուն այր. ընկղմելոցն ձայն հեծեծման լսելի լինէր յելանել ոգւոց նո-ցա: Բայց ոչ գտանէին զԱսկղիպ և զԵփրեմ զի աղօթս խնդրեսցեն. և ոմանք ասէին թէ Աստուած յերկինս էառ զնոսա 'ի բարկու-թենէս. և 'ի շրջելն գտին զնոսա զի դողա-լով գետնոյն ընկեցեալ զնոսա 'ի սան մի կըրա-րեփեաց, և էին երկուցն մարմինքն եփեալ և մաշեալ և ոսկերքն միայն կային. բայց գը-լուխք նոցա մնացեալ էին 'ի դուրս, վասն զի ճանաչիցին 'ի տեսողացն: Եւ քսան միլ շուրջ զքաղաքաւն ապականեցաւ:

Եւ Սելեւկիա Ասորոց և Դափնէ կործան 'ի շարժմանէն. և Անաւարզայ գլուխ Կիլի-կիոյ և Կորնթոս մայր Եղլադայ. կործան քա-ղաքն՝ շինուածք և յոլովութիւնք արանց 'ի չար թագաւորութեանն Յուստինեանոսի:

Լուարուք և զայս սիրելիք, Հոմերաց-ւոց երկիրն կայ յարեւելից Եգիպտոսի: Իսկ Հնդկացն 'ի հիւսիսոյ. Հրեայ ոմն թագա-ւորեաց անդ յայսմ ժամանակի. և լուաւ թէ Հռոմայեցիքն նեղեն զՀրեայսն և կա-տարեն որ կան ընդ իշխանութեամբ նոցա.

էր զայրացաւ, և սպան զմխծառակնեան որք երթային 'ի Հնդիկս Մ՚սրոյ կողմանց, և հատոյ ճանապարհ յերթևեկաց :

Իսկ թագաւորն Քուշանաց Հնդաքն առաքեաց առ Հրեայն, և սպառնացաւ նմա զի կոտորեաց զանմեղսն. և լուաւ ընդդէմ պատասխանի:

Եւ Հնդաքն ժողովեաց զօրս և ուխտեաց Տեառն մերոյ Յիսուսի. որ թէ տացէ նմա յաղթութիւն, լիցի նա քրիստոնեայ. և գնաց 'ի վերայ Հրէին և յաղթեաց նմա երիցս. և հալածեաց զՀրեայն 'ի տեղւոջէն:

Եւ առաքեաց երկու յիշխանաց իւրոց առ Յուստինիանոս. և ծանոյց զիրսն. և խնդրեաց Եպիսկոպոս, զի արասցէ զնոսա Քրիստոնեայս. և նա առաքեաց զՅովհաննէս իւրով աղանդովն, և մկրտեաց զնոսա այսինքն զՀապաշիքն. և խրախուսեալ 'ի Քրիստոս Հնդաքն, արար զերկիրն Քամերայ ընդ իւրով հրամանաւ. և եդ նոցա թագաւոր Աբրահամ:

Այլին և 'ի Քամիրայ յորում քրիստոնեայք. վասն որոյ առաքեաց Աբրահամ Մ՚ղեք-սանդրիայ առ Տիմոթէոս; և խնդրեաց 'ի նմանէ հովիւս այնր հօտի. և նա առաքեաց

ուղղափառ հաւատով եպիսկոպոս և քահանայս։ Որոց գնացեալ արք նշանաւորքն համբաւեցան և 'ի Քուշանան. և խնդրեցին զնոսա առ ինքեանս. որք երթեալ խաւսեցին զաւանդն Յովհաննու յաղթելով նոքա բանիւք և գործովք. և դարձուցին զամենայն Քուշանան և զՌամկոյս յուղղափառութիւն։

Եւ գիտասջիք, եւթն թագաւորութիւնք է անդ. երեք թագաւորութիւն Հնդկաց. չորս թագաւորութիւն Հապէշեացն, որք են Քուշացիք. որք ունին զաւելի մասն երկրին զհարաւոյ և զարեւելից. քանզի քսան և չորս գերատ է աշխարհս, և զվեշտասանն Քուշանքն ունին և (1) Հնդիկք. և ողորմութեամբն Աստուծոյ կան յուղղափառութեան. և մի բնութիւն ասեն զՔրիստոս զծնունդն Հօր։

Եւ առաքեաց Յուստինոս առ թագաւորն Հրեայ, և բաշխակերեաց զնա և առաց. "բարձ զպատանդ զայդ, զի դոքա ոչ ընդ մեզ

(1) Ամենայն օրինակք այսպէս ունին. բայց աստ թողական խօսք. ղի ասէլ էր եւ զմնացեալն Հնդիկքն։ Մեկայն մի օրինակ հնագոյն որ այսպէս Բարգմանել է. բնակ չինէր Բարգմանողին. այլ. քսան և չորս գերատ է աշխարհս. և զչորեքտասանն Քուշացիքն ունին, որ են Հապաշիք. և ողորմութեամբն.

են և ոչ ընդ ձեզ. և մանաւանդ մեր ասելս վասն Քրիստոսի և ձերդ՝ 'ի մի խօս հասի. զի դուք ասէք՝ որ հարքն ձեր մարդ խաչեցին. զնոյնն ասեմք և մեք. զի զմարդն սպանին. և դոքա ասեն զԱստուած սպանին հարքն ձեր»:

Նա դու մի զարմանացիս ընդ այս քանզի զկնի ժողովոյն Քաղկեդոնի, Հրեայքն որ 'ի Փղիշտ՝ գրեցին առ Մարկիանոս զնոյն բանս. և մեք իսկ գտաք զթուղթն, որ ունէր օրինակ զայս:

«Ինքնակալդ Աստուածաւոր Մարկիանէ, և Թագաւոր երկրի և ծովու, Ազգս Հրէից որդիք Աբրահամու կամիմք խնդալ միշտ ձեզ յաղթութեամբ: Շնորհս պարտիմք ձեզ զի քոյին կորովի խոհեմութեամբդ ազատեցեր զմեզ 'ի նախատանաց անուղղայ Քրիստոնէից. որք հայհոյեն զմեզ ասելով որդիս աստուածասպանից: Այլ այժմ լուաք եթէ ի ձեռատուն արարեք և համաձայնեալ ծերակուտօք սահմանեցեր մի ուրեք իշխել ասել ըզհարսն մեր տիրասպան, այլ մարդասպան. և այժմ աղաչեմք զինքնակալութիւնդ քո, զի դիցես առն միոյ տիւն 'ի վերայ մեր՝ զոր սպանին հարքն մեր. զի տացուք զայն, և ազատեսցուք զհարսն մեր և զմեզ 'ի բամբասանաց. ողջ լեր»:

Զայս մեք գտաք գրեալ ընդ հանձոյս զոր երկրորդեաց Յուստինոս. մանաւանդ ըն-դրուագեաց զՀրէից ասելն առ Մարկիանոս : Յորմէ քաջալերեալ Հրեայն չոգաւ 'ի վե-րայ Նենգրանայ (2) և կոտորեաց զՔրիստո-նեայս. զոր ցուցանէ պատմութիւնն՝ որ յաղագս նոցա :

Իւ. Թուղթն առ Յուստիանէ. և դեսպանքն նորա որ գնացին առ Մնդուրն Թա-գաւորն Տաճկաց օրոյ աղագաւ. և մինչ-դեռ անդէն կային, գրեցին առ Յուստի-անէ զրոյց զայս օրինակ :

«Գիտասցէ ինքնակալութիւնդ ձեր, զի աջողելովն Տեառն եկաք 'ի Հերեթաս քա-ղաք արքայանիստ Տաճկաց. և ոչ էր անդ Թագաւորն. և առեալ անտի առաջնորդ, գնացաք ընդ անապատ և ընդ աւազուտ եր-կիր աւուրս տասն, և տեսաք զԹագաւորն Մնդուր նստեալ երեւելի փառօք. և տու-աք զընծայսն :

Իսկ նա յառաջինն արար զմեզ այսպէս. և ասաց. Ո՞ւր է Քրիստոսն ձեր, որ ասա-ցէք Աստուած երկնի և երկրի. և արդ՝ ո-պէս լուաքս, առեալ 'ի Նմանէ ոչ միայն զԱս-տուածութիւն, այլ և զՀռովմայեցւոց Թա-

(1) Քաղաք :

գաւորութիւնն. և ասացին զնա մարդ մի մեռեալ և կենդանացեալ։

Եւ մինչ զայս ասէր, եկին դեսպանք 'ի Ջհուտ թագաւորէն, և տուին թուղթ գրեալ զայս ձեւ։

«Զօրացաք մեք Աստուծոյն Իսրայելի և հալածեցաք զԳալիլեացին, և զհաւատա-ցեալն 'ի նա կորուսաք։ Նոքա և զՆենգրան երդմամբ, և կոտորեցաք զնա գիտելով զի ոչ մեղադրէ մեզ Աստուած վասն երդմանն 'ի կորուսանել զԹշնամիս նորա։ Այլ ոչ կա-րեմ գրել առ քեզ զսէրն զոր ունին (1) 'ի Քրիստոսն իւրեանց. զի մանուկ մի ոչ կա-րացի պատրել 'ի բաց դառնալ 'ի նմանէ։

Եւ էր անդ կին մի թագուհի չորիւք դստերօք, զամենայն հնարս փորձեցի և ոչ լուաւ ինձ. ապա ասացի ցնա քաւ լիցի ինձ ապականել զայդպիսի գեղեցկութիւնդ. միայն ասա՝ զոր դաւանէ թագաւորն Հռ-ովմայ, թէ մարդ էր Քրիստոս, և մարդ խաչեցաւ և թողում զքեզ։ Եւ զայրացեալ եթուք յերեսս իմ անզգամն այն և մահա-ւէրն. և սպանի զնա ընդ դստերս իւր չա-րամահ։

Եւ Յուստինիանէ յորդորեաց զիս յայս.

(1) Մի օրի. զոր ունի 'ի Քրիստոսն իւրեանց.

բայց մի արասցես ընդ նմա խաղաղութիւն· այլ գնասցուք 'ի միասին և բարձցուք զթագաւորութիւն նորա ։»

Եւ զայս գրեցաք առ քեզ 'ի ձեռն Աբրահամու· երիցու որ ընդ մեզ, զի նախագոյն ծանիցես, և թէ զինչ առաքէ մեզ պատասխանի ոչ գիտեմք · ողջ լեր ։»

Յետ այսորիկ Պարսք և Տաճիկք միաբանեալք եկին մինչև յԱնտոք և յԱփեմիա, և գերեցին ։ Ի սոյն աւուրս եղև շփոթ 'ի Կոստանդնուպօլիս և սպանին զդատաւորն · և 'ի նոյն օրն այրեցաւ մեծ կաթուղիկէն · և այս ամենայն պատուհասք էին չարեայն Յուստինանեայ · այլ մեք սակաւ գրեցաք 'ի բազմացն · չարածերն այն և 'անիմաստն՝ որ այնչափ եթող իւր արձանագրութիւնս նզովից ։

Սա մերձ 'ի վախճանելն իւրում արար զՏիբեր որդին իւր զհոմանունն Կեսար, և առաքեաց ընդդէմ Պարսից · որ եկեալ 'ի Մըմբէճ, լուաւ վասն կուսի միոյ դստեր երիցու, և խնդրեաց 'ի կնութիւն · և երէցն պահանջեաց 'ի նմանէ ուղղափառութիւն ։ Եւ նա երդուաւ նմա պահել զդաւանս նորա ուղղափառ եպիսկոպոսիւ և քահանայիւք · և թէ լցէ հնար

դարձուսցէ զամենայն երկիրն 'ի նոյնն։ Զի այդ հաճոյ է ինձ առնել. և դու աղօթեա՛ վասն իրայդ։ Եւ ետ նմա զաղջիկն որում անուն էր Թէոդորայ. վասն որոյ բազում դիւրութիւն եղեւ եկեղեցւոյ, և տարաւ զնա 'ի Կոստանդնուպօլիս ուղղադաւան եկեղեցականօք. և յետ երից ամաց մեռաւ ծերն Յուստինոս, թագաւորեալ ամս ինն։

Եւ թագաւորեաց տղայ Յուստինոս ամս երեսուն և ութ՝ և ամիս եւթն։

Իսկ Պարսից թագաւորն Կաւատ ետ զորդին իւր 'ի Մանիքեցիսն 'ի դպրոց. և ուսաւ զաղանդ նոցա. և ուխտեաց, թէ թագաւորէ նա՝ պաշտէ զուսումն նոցա։ Եւ իմացեալ Կաւատն՝ ժողովեաց զամենայն Մանիքեցիսն, և այրեաց զնոսա զի մի առէ լուցեն թագաւորք մոգուցն, և սպառեսցեն զիս. և զեկեղեցիս Մանիքեցւոցն ետ 'ի Քրիստոնեայսն։

Լուր եղեւ բանս այս և 'ի Կոստանդնուպօլիս. և հաւաքեցին զանդ գտեալ Մանիքեցիսն, և ջանացին զի արասցեն զնոսա քրիստոնեայս, և ոչ հաւանեցան. և այրեցին զնոսա նոյնպէս։

Ի սոյն աւուրս առաքեցաւ Վաղխարիո զօրագլուխ մեծ զօրու 'ի Պարսս, և եհաս անդ 'ի մեծի Պասեքին։

Եւ ասաց Կաւատն պատուեսցուք զսոսա. Քրիստոսի վասն ձեր և վասն քրիստոնէիցս որ ընդ մեզ են. և մի պատերազմեսցուք մինչև անցցէ օրս երեւելի. և ոչ լուաւ յանդուգնն. վասն որոյ յաղթահարեալ մատնեցան ի ձեռս Պարսից և կոտորեցան. և ամենք գետասոյզ եղեն, և դարձան սակաւք։

Մեռաւ Կաւատն յետ յաղթութեանն. և թագաւորեաց որդի նորա Խոսրով։ Եւ մայր նորա չարչարէր ի դիւաց, և ոչ կարէին օգնել նմա մոգքն և կախարդքն։ Եւ հաւատաց ի Քրիստոս, և մկրտեցաւ ի Սիմէոնէ միայնակեցէ և բժշկեցաւ։

Զայսու ժամանակաւ ապստամբեցին Հրեայքն որ ի Սամարիա, և կոտորեցին զՆիկոպօլիս (1). և երթեալ զօրն Հռովմայեցւոց ջնջեցին զնոսա։

Իսկ Թագուհին Թէոդորայ աղաչէր ըզ-Թագաւորն վասն ուղղափառութեանն. և գրեաց Թագաւորն թուղթ յանապատն Եգիպտոս առ միանձունսն. զի եկեալ իւրեանց առ Նատուած համարձակութեամբքն խնդրեսցեն յԱստուծոյ զկրաւացին։ Գրեաց և առ Սեւերոս Աղեքսանդրիա, զի աշխատ լիցի, և եկեսցէ ի գործ եկե-

(1) Մի օրի. Նիկիոպօլիս

զեցւոյ , և եկին յոլովութիւն անապատաւորաց և սուրբն Սեւերոս ։

Նոյնպէս և հրամանաւ Թագաւորին եկին և յամենայն կողմանց բազմութիւն եկեղեցականաց , և արարին քննութիւն զաւրս մի . և շահ այս եղեւ . զի Անթիմոս եպիսկոպոսն Կոստանդնուպոլսի դարձաւ յուղղափառութիւն , յաղթեալ 'ի ճշմարտութենէն . և դադարեաց հալածումն Եկեղեցւոյ ուղղափառաց . և գրեթէ բազմութիւն քաղաքին հաւանեցան ուղիղ խոստովանութեանն 'ի տեսանելն բազում նշանս 'ի սրբոցն , բաց յեկեղեցականացն՝ որք լըքէին վասն հպարտութեանն ։

Եւ մինչ յայսմիկ էին , եհաս համբաւ տագնապալի բարբարոսաց յաշխարհն Թրակացւոց . և ելին զօրքն գնալ 'ի վերայ հինին քան հազար արանց ասպատակինաց . և գնային խնդութեամբ բազմաւ , յուսալով թէ լինի ուղղափառութիւն ։ Եւ Թագաւորն յուղարկէր զնոսա ելեալ 'ի քաղաքէն և դարձաւ յեկեղեցին յաղօթս . և շարժեցաւ քաղաքն ամենայն և լցան փողոցք և վերնատունք և տանիք բազմութեամբ արանց և կանանց . որք աղաղակէին միաբերան և ասէին . բարեպաշտ արքայ ; ողջացն զաւա-

տառումն եկեղեցւոյ . և արա՛ միադաւանս զամենեսեան . փութա՛ Թագաւոր , և 'ի կեանըս քո արա՛ խաղաղութիւն և միաւորութիւն եղբարց բաժանելոց . որ լինի միաբանութեամբ , և միաւորութեամբ բանին Աստուծոյ ։ Եւ ելաց արքայ լալիւն մեծ . լայր և ամենայն քաղաքն . զի ասէին եթէ միակեացք որք երկնային վարուք են և աստուածախօսք և սքանչելագործք զոր ինչ դաւանեն , այն է ճշմարիտն ։

Նախորժէր յոյժ Թագաւորն քարոզել ընդ ամենայն երկիր զուղղափառութիւն ։ Բայց զի մտանէին առ նա Քաղկեդոնիկքն և արկանէին նմա երկիւղուկս հոգեւոր և մարմնաւոր , ասելով վեց հարիւր երեսուն և վեց եպիսկոպոսք միաբան են կապեալ նզովիւք . զիա՞րդ լուծանես զայն . այլ և ոչ ներեն քեզ կեալ ըստ մարմնոյ յայտնի կամ 'ի ծածուկ այսմ դաւանութեան հետեւողքն ։ Մի՛ խաբիր արքայ 'ի կնոջէ ։ Եւ երկեաւ Թագաւորն 'ի նզովից և 'ի մահուանէ , և լռեաց ։

Իսկ Սեւերոս ասաց 'ի նզովից նոցա մի զանգիտեր . զի Պետրոսի տուաւ իշխանութիւն կապել և արձակել , որ մի դաւանեաց զՔրիստոս որդի Աստուծոյ միաւոր բանիւն զերկուեալն՝ զոր տեսանէր . և բաժանողքն

կապեալք են և նզովեալք, ոչ զոք կարեն կապել կամ արձակել. այլ՝ մահն մարմնոյ կարծելի է ՚ի դոյանէ։

Բայց լսել արժան է Քրիստոսի, և ոչ երկնչել ՚ի սպանողացն մարմնոյ։ Իսկ միադաւանիքն և կրօնաւորքն յորժամ ասեսցեն Թէ յերկարեաց բանն, և ոչ լինի խաղաղութիւն և բարի ինչ, ասեն. ով Թագաւոր, Հաւատս մեր ոչ է մանկագոյն և նոր, Թէ հասանի. և ոչ ծերացեալ՝ Թէ նորոգի. և ոչ Թերի՝ որ լնու. և ոչ առաւելեալ՝ որ պակասի. այլ զոր սերմանեցին մարգարէքն՝ առաքեալքն Հոգին սուրբ էր սերմանողն, նոյն ինքն ժողովեաց առաքելովքն. և Տէր Քրիստոս Աստուած ճշմարիտ հաստատեաց և կնքեաց արեամբն անճառելի. յաւիտենական է մեզ ոչ Թիւրիմք. ոչ պարգեւօք. և ոչ փաղաքշանօք. ոչ մահուամբ, և ոչ կապանօք, այլ յայնժամ եմք և կացցուք մնասցուք առաջի մարդկան. որպէս եմք առաջի Աստուծոյ. ընդ-ձերն դուք գիտէք։

Եւ զայս ասացեալ գնացին մենաւորքն (1) առեալ ընդ ինքեանս և Սեւերոս և զՆեմԹիոս։

Եւ լուեալ զայս Մօրգօրու (2) որ ՚ի սահ-

(1) Այլք միաբանողքն. (2) Մի օրի. Մաւրգաւրաւ;

մանս Ակմթայ քաղաքի, և գնաց առաւ աշխա-
կերտսոքն 'ի Կոստանդնուպօլիս. և անուանեաց
զԹագաւորն ասէ. մինչև յերբ է անիծեալ
ժողովոյն չարէքն. վասն էր ոչ լուար հա-
րանցն Եգիպտոսի որքոյն։ Եւ ցասնեա-
Թագաւորն և եհար ձեռամբ զերեսս սորա,
և ասէ. զի՞ նզովեցեր զսուրբ ժողովն, և կամ
զի՞նչ նշանս առնես վասն այսչափ համար-
ձակելոյդ քո առաջի իմ։ Եւ ասէ առաքեալն
նզովեցայք և եղիցի նզովեալ ինքն չար ժո-
ղովն և ամենայն հաւանեալքն նմա. և զի
նշանս խնդրեցեր, յուսամ 'ի Տէր զի զքեզ
արասցէ նշան. և ել քարկոծեալն 'ի Թա-
գաւորէն։

Եւ Թագաւորն առաքեալ պատմեաց գը-
րեաց Թուղթ և առաքեաց ընդ ամենայն
երկիր. եթէ որք անիծեսցեն ասէ զժողովն
Քաղկեդոնի, սպանցի։ Եւ առաքեալ փու-
թացուցին զհրամանն քաղաքացեալքն 'ի
յայտնեդն։

Զկնի սորա միոյ ժամանակեաց հրեշ-
տակ մի Սատանայ առաջի Թագաւորին և
եհար զգլուխ նորա. և անկաւ Թագաւորն
և անշնչացաւ. և ասացեալ Թագաւորէին չա-
գաւ և անկաւ առ սոսս որքոյն. և աշխա-
նօք էած զնա 'ի հաւանն, զի ելեալ ապօթեա-

ցէ 'ի վերայ նորա. և յարեաւ առողջացեալ. և խրատեաց զնա և ած 'ի հաւատս։

Եւ խնդրեաց Թագաւորն ժողով, զի արասցեն վերստին քննութիւն։ Եւ լուեալ զհրամանն, եկին Սեւերոս և Անթիմոս և Թէոդորոս պատրիարքն Աղեքսանդրի. և ընդ կնիք նոցա եկն Ագադոն պապն Հռովմայ։ Իսկ Թագաւորն և քաղաքն ելին ընդ առաջ նորա և մեծարեցին զմուտ նորա։

Բայց երեք պատրիարգունքն ոչ ելին ընդ առաջ նորա. և մեղադիր եղեւ Թագաւորին Ագադոն և ասէ. ո՞վ է խաբեբայն այն Սորզորա (1). զի վասն նորա մաղես (2) դարձեալ զհաւատս սուրբ ժողովոյն. արա՛ զնա 'ի հրամանս իմ, և խրատեցից զնա. և ասէ Թագաւորն, որպէս և կամիս հայր, արա՛։

Իսկ այրն սքանչելի առանձնացեալ էր և կայր 'ի լռութեան և 'ի զգուշութեան. զի էր առաջին շաբաթն աղուհացիցն. և առաքեաց կոչնականս նմա երկիցս (3) և ոչ ետ պատասխանի. յղեաց այլս առ նա և ասէ. կամ եկ առ մեզ. և թէ ոչ՝ գամք առ քեզ ես և Թագաւորս։

(1) Այս անձնոյն՝ [illegible] ու- նին Զօրու. [illegible] օրինակ պատմէս 'ի [illegible] Սորզորա։

(2) Երեք օրի. մաշես։

(3) Մի օրի. երկիցս ան- դամ.

Նա պատասխանի և ասէ. ես մինչև 'ի մեծ հինգշաբաթն ոչ գնամ առ ոք. և ոչ ընդունիմ զոք առ իս։

Իսկ Նգատոն բորբոքեցեալ արար ատեան և նզովեաց զսուրբն Սեւերոս և զՏիթիմոս, և զԹէոդորոս, և զՍօրգորիոս. և դատանեաց երկու բնութիւն. և առ ժամայն եհաս բարկութիւն Տեառն 'ի վերայ նորա և թանձրացաւ լեզու նորա և ոչ տանէր բերանն և եհան արտաքս. և երեք անգամ կտրեցին բժիշկքն զթանձրութիւն նորա և ոչ դադարէր կեղն. և դառնագոյն տանջեաց զնա զաւուրս սուրբ պահոցն. և 'ի մեծի հինգշաբաթուն սատակեցաւ չարապէս։

Իսկ Թոյլ Թագաւորն այլ ինչ ոչ արար. բայց միայն զի եբարձ զհրաման սպանմանն անիծողացն զՔաղկեդոնի ժողովն. և գնացին սուրբքն յիւրաքանչիւր տեղիս։

Նա յայտնեցաւ նշխարք սրբոյն Սարկնեայ 'ի գաւառին Անտիոքու 'ի Ճանդարիս(1) գիւղն, և էր անխուտ. և ամենայն մարմինն վէրք, և մածեալ ընդ տախտակն, և բերաւ յԱնտիոք։ Եւ բազում բժշկութիւն եղեւ 'ի փառս Քրիստոսի։

(1) Մի օրի. 'ի Ճարգարիս

Զայսու աւուրբք[1] ելին Պարսիկք 'ի Միջագետս, և գերեցին մինչև 'ի Հալապ և յԱնտիոք կամակարութեամբ. մինչև տարան զկնի սիւնս կոծս:

Եւ գնացին Հռովմայեցիք և առին զվրէժն գերելով զաշխարհն Պարսից:

Եւ զհետ նոցա ել Խոսրով արքայն Պարսից անձամբ, և քակեաց զԱնտիոք. և գերեաց զՍրուճ. և ոչ կարաց առնուլ զՈւռհայ, և գնաց:

Յաւուրս յայսոսիկ առաքեցան 'ի Կոստանդնուպօլիս եպիսկոպոսք երկու քաղկեդոնիկք, գաւազանք յարուածախտութեան, Եսայի և Աղեքսանդրոս. և եհատ զերանս նոցա Թագաւորն, և հանեալ 'ի ձող եցոյց քաղաքին և աղաղակէր մունետիկն, թէ այս է դատաստանն այնպիսի գործողացն: Եւ կատարեցաւ բան առաքելոյն թէ որովհետեւ ոչ ընտրեցին զԱստուած ունել 'ի գիտութիւն, մատնեաց զնոսա յանարժան գործս:

Ի հնգետասան ամին Յուստինիանեայ ելին Պարսք և գերեցին զԴիմիտոն[2]. և զԱա-

(1) Մի օրի. ոմն 'ի լուսանց. ոն զայսու ժամանակօք Պարսիկք գերեցին զՀալապ, և Հռովմայեցիք զՊարսիկքն:

(2) Մի օրի. զՄիտոն:

լանիկոն (1). և զՊեղեայ քանդեցին. և հանէին անտի զսուրբ նշխարն Բաքոսի, և զխաչն որ 'ի տաճարն սրբոյն Սարգսի. զդուռն քանդե֊ ցին առին, և տարան յաշխարհն իւրեանց։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Յաղագս որ յութ հարիւր քառասուն թուին Հայոց եղեւ հրաշք անհաւատալի. և զկնի եղեւ մահտարաժամ որ բնաւ չէր լեալ։ Եւ եղեւ սով և շարժ քառասուն օր

Ի յութ հարիւր քառասուն և ութ. թուին Հայոց եղեւ հրաշք 'ի վեր քան զհաւատալ. թէ ոչ էի գտեալ բազում գրոց գրեալ, և ոչ ես կարէի գրել. խաւարե֊ ցաւ արեգակն տասն և ութ ամիս, զերեկք ժամ մին յաւուրն լոյս տայր, և զայլն որպէս ոչ տիւ և ոչ գիշեր. և ոչ հասան պտուղք տարւոյն. այնորիկ. և ամենայն երկիր եղեւ իբրեւ զբազմօրեայ հիւանդ։

Եւ զկնի այնորիկ եղեւ մահտարաժամ որ բնաւ չէր լեալ։ Եւ նախ սկսաւ 'ի Կոստանդնուպօլիս. և մեռան առաջին օրն հինգ հազար. և միւս օրն տասն հազար. և յեր֊

(1) Մի օր. Կալանիկոս։

դորդ աւուրն հնգետասան հազար. և չոր-
րորդումն աւուր տասն և ութ հազար. զի
եդ նա (եդ) Թագաւորն համարողս առ դրան
քաղաքին, և Թուեցին մինչև երեք հա-
րիւր հազար յաւուրն մեռանել:

Նախ սկսաւ յաղքատսն, ապա 'ի մեծա-
տունս և յիշխանսն և 'ի տուն Թագաւորին.
Նախ 'ի մէջ ձեռացն բուշտ երևէր. և
այն էր նշանն և այլ ոչ կարէր փոխել զոտն.
և ուռնոյր ցաւքն և պատառէր, և երթայր
չարաւն. և քառասուն գահեկան տանէր
մարդ որ հանէր մեռեալ մի 'ի քաղաքէն. որ
և 'ի տանիքն բարձր. անգամ անկանէր եւ
մեռանէր: Եւ էր զի մտանէր ոք 'ի տուն
հատեալ 'ի մարդկանէ և դատարկացեալ, և
լի գանձիւք. և բառնայր 'ի գանձուցն բառ
կարի. և յելանելն ընդ դուռն՝ անկանէր և
մեռանէր. և սկսան ընկենուլ 'ի ծովն ըզ-
դիակունսն. և դարձեալ ձգէր (արտաքս) 'ի
քաղաքն. և հոտեցաւ քաղաքն և ձգեցաւ
մահ ընդ երկիր ամենայն:

Եւ յերկիրն Եգիպտոսի Ըղձեցաւ քաղաք
մի և մնացին միայն եւթն այր և տղայ մի.
որ և 'ի գնալն նոցա ընդ քաղաքամէջն երե-
ւեցաւ նոցա հրեշտակ տեսանել որ կոտորէրն.
և մեռան դարձեալ նոքին այրքն եւթանեքին,

և լոյր տղայն. և հրեշտակ տեառն բուռն եհար զմանկանէն և եհան 'ի քաղաքէն և ասէ. մի լար, զի բարկութիւնս Տեառն յաղագըս չարութեան հերձուածոյ է և մեղաց. և երևեցաւ հրեշտակն (Տեառն) տղայոյն 'ի կերպարանս ծերոյ:

Իսկ յերկիրն Փղշտացւոց 'ի քաղաք մի երևեցան դևք և ասեն. Թէ կամիք ապրել ('ի մահուանէ), գտանէք յանգս ձեր պատկեր մի պղնձի, երկրպագեցէք նմա. և երթեալ շրջեցան և գտին զպատկերն, և բերեալ 'ի քաղաքն պատուեցին. և մեռան առհասարակ, և ոչ մնաց մի 'ի նոցանէ:

Այսպ. քաղաքն Հեմս խնայեցաւ. զի առաւ.ջինեցաւ 'ի բարեխօսութիւն Սրբոյն Յովհաննու. զի անդ կայ գլուխ նորա:

Ի տասն և հինգերրորդ ամին Յուստինիանեայ թագաւորն առին զՀռոմ և աւերեցին: Նա 'ի սոյն ժամանակ կատարեցաւ սուրբն Սևերիանոս Աղեքսանդրիոյ:

Իսկ յԱնտիոք էր պատրիարք ուղղափառաց սուրբ ճգնաւորն Սարգիս. յորում ժամանակի այրեցաւ վանք սրբոյն Սիմէոնի յԱնտիոք. և Թագաւոր եղեւ 'ի բնակչաց:

Ի քսան երեքերրորդ ամին Յուստինիանեայ գետն Տարսոնի ապականեաց զքաղա-

քըն ։ և 'ի շարժմանէ կործանեցաւ Լատիկն. և մեռան ութն հազար այր ։ Եւ կէս քաղաքին Պոնտոսուպօլսի ընկղմեցաւ . և կենդանւոյն իջին 'ի խորս բնակիչքն ։ Եւ յետ աւուրց ինչ լինէր հեծութիւն և մռնչութիւն ։ Ընկղմեցան և 'ի Փիւնիկէ Տրապօլիս և Պիլաս (1) և Տրավլաս ։ Նոյնպէս կործանեցաւ քաղաքն Գալիլեացւոց և գնաց ծովն 'ի ներքս միղս երկու . և մնացին նաւք 'ի ցամաքի ։

Ի սոյն ժամանակս առին Պարսիկք ըզՍգարրաս, և ամրացուցին . և գնացեալ զօրըն Հռոմայեցւոց պաշարեաց զնա զեւթն ամ, և առին դարձեալ ։

Զայսու ժամանակօք եղեւ սով սաստիկ. մինչ զի ուտէր մարդ հինգ հինգ լիտր հաց և ուռնոյր, և ոչ յագենայր . և եղեւ անասնոց մահ զերկուս ամս ընդ ամենայն երկիր . և պակասեաց վաստակ եզին ։ Եւ եղեւ շարժ 'ի Կոստանդնուպօլիս զքառասուն օր . և բազմութիւնք տանց եղեւ գերեզման բնակչացն. և տապալեցան եկեղեցիք ։

Եւ յերեսներորդ ամի Յուստինեայ երկու պարիսպքն Կոստանդնուպօլսի՛ անկան շինեալքն 'ի Կոստանդիանոսէ եւ 'ի Թէոդոսէ ։ Եւ ընկան քաղաք տասն օր շար-

(1) Երկու օրի . Պիլաս ։

մեցաւ իբրեւ զանբրեւ. և յետոյ չոքեցաւ։

Յայսմ ժամանակի էր սուրբն Յակոբ Բուրդնիկարն կոչեցեալ։ Սա՝ առաքեաց Թագաւորն Արաբկաց քրիստոնէից Հերեթն առ Յուստինիանոս մեղադրանս անելով. ընդէ՞ր ապականեցիք զաշխարհս Քաղկեդոնի ժողովոյն. և արարէք զՆեստորդութիւնն չորրորդութիւն։

Իսկ Յուստինիանոս յղեաց առ նա արս տեղեակս գրոց հասկացուցանել նմա զորպէսն. որ և ՚ի տեսանելն զնոսա Հերեթն ասէ. եթէ և դուք յաշակերտաց Նեստորի ժողովոյն էք, ես ոչ ընդունեմ զձեզ. և նոքա ասեն ընդէ՞ր հրամայեցեր թագաւորութիւնդ այդպիսի բանս, և նզովեցեր վեց հարիւր երեսուն և վեց սուրբս՝ որ թէ աշխարհականք էին ծանր էր, թող թէ առաջնորդք եկեղեցւոյ. և ասէ Թագաւորն ես անդէտ եմ գրոց և բարբարոս. բայց ասացէք ինձ թէ ՚ի հազարաց կերակուրս անկանիցի մուկն մի, պղծի թէ ոչ. ասեն պղծի այո. և պատասխանեաց Թագաւորն. և զի՞արդ ոչ պղծէր զվեց հարիւր երեսուն և վեց արանց տոմարն Լեւոնի, որ ՚ի հրէութիւն դարձոյց զքրիստոնէութիւնս. և ամաչեցին յոյժ։

Եւ յետ աւուրց ասեն ցԹագաւորն հրամայեցէք պատարագ տեսանել զմերն և հաղորդիլ 'ի մէնջ. և ասէ արքայն մեք ոչ հաղորդիմք 'ի ձէնջ և ոչ հաղորդեմք զձեզ. և 'ի ժամ ճաշուն հրամայեաց տալ նոցա միս անսուրբ իշու և ուղտու. և ասեն մեք ոչ պղծիմք սոքօք. և արքայն ասաց մեք զկարդ ոչ պղծիմք ուտելով զմիս մարդոյ, զի այդ և է պատարագն ձեր(1). և արձակեաց զնոսա ի ամօթով.

Յայնժամ մեռաւ Թէոդորայ Թագուհին ուղղափառ հաւատով, և Թաղեցին զնա Անթիմոս և Թէոդորոս պատրիարքունք.

Եւ 'ի ժամանակս Յուստինեայ յայտնեցան հերձուածք այսոքիկ.

Ա. Հատեալք 'ի Մանիքեցւոց որք եկին 'ի Պարսից կերպիւ աբեղայից. և արեամբ սպիտակ հաւու. և սպանեալ տղայոյ հաղորդին 'ի տարւոջն միանգամ, և առնեն զճրագործութիւն Մանիքեցւոցն.

Բ. Յովհաննէս Ափեմիոյ, որ նիւթ ասէր զԱստուած որպէս տարր ինչ.

Գ. Ստեփաննոս Աւահայեցի, որ զտան

(1) Մի օրի. զի այս է և զկարգ և է պատրիարքն ձեր պատարագն ձեր. Մի օրի.

ջանք մեղուցելոցն նոյնչափ աւուրբք ասէր և ապա հաւասարիլ արդարոյն ։

Դ. Յուլիանէ Աղիկառնացին, որ ասէր Քրիստոսի առեալ զանմեղ մարմինն Ադամայ որ յառաջ քան զյանցանսն. զոր յանդիմանեաց սուրբն Սեւերոս, ասելով թէ Ադամ կրկին է. նախ անխառնուածն և զկնի խառնեալն յապականացութեան ։ Որդ ուերըն զխառնեալն էառ, և՛ աստուածացոյց անապական գործելով. բայց նա ոչ զղջացաւ ։

Ե. Յովհաննէս տրիթացին, որ երեք բնութիւն ասէր զաստուածութիւնն. և աշակերտ էր սա Սամուելի ասալացւոյն. զսա կոչեաց Յուստինոս առ ինքն. և լուեալ զհերձուած նորա հալածեաց ։ Սա արար գրեանս՝ վկայութիւն որսալով յԱստուաչունչ գրոց՝ իւրում աղանդին ։

Զ. Փոտինոս (1) անտիոքացին՝ սա երեք բնութիւն ասէր զաստուածութիւնն. արար և սա գրեանս ։

Է. Թէոդորոս Կապպադովկացին որ ըզնոյն ասէր թէ Քրիստոսի Աստուածութիւնըն ոչ է· Հօր ։

(1) Մի օրի. Տուփինոս ։ մի օրի. Ռուփէինոս ։

Ը. Աթանասիոս որդի դստերն Թէոդորայ Թագուհւոյ. սա զՅովհաննիսի աղանդն հաստատէր: Եւկանոն Տարոնի եպիսկոպոս, և Սուգէն Սելեւկիոյ զնոյն աճեցուցին երեք բնութիւն ասելով Քրիստոսի Աստուծոյ:

Թ. Ամբիկոս Կոստանդնուպօլսի, զնոյնն ասաց. Թէ որ երեք անձանցն յատուկ բնութիւն ոչ ասէ երեք, նա հրեայ է և հակառակ ուղղափառութեան:

Յայնմ ժամանակի եկն Հերեթն Թագաւոր առ Յուստիանոս, և ունէր գիր ուղիղ հաւատոյ ղարեւելեան եպիսկոպոսաց, զՀայոց մեծաց և զՅակոբեայ Կուրդնկարին և զԱղեքսանդրու պատրիարգին. և եցոյց յարքունիսն և ասաց. որ ոչ ձեռնագրէ ասա, ոչ է Քրիստոնեայ. և հրաժարեցին յոլովք:

Եւ բարկացաւ Հերեթն Յուստիանեայ, և ասէ ցնա. ապշեալ և յիմարեալ ոչ գիտես թէ այս ամենայն ապականութիւնք երկրի վասն չար ժողովոյն է. և ընդէ՞ր ոչ բառնաս զնա, զի լիցի խաղաղութիւն (երկրի) 'ի Տեառնէ:

Եւ ասէ ցնա Յուստիանոս. վասն քո երեսաց կալցին ախորժողքն (1) զուղղափա-,

(1) Երկու օրի. ուղղափառքն:

ռութիւն յայտնապէս, և համարձակեալք լեցին. և այլ ինչ մի նեղէր զմեզ:

Ապա կոչեաց Հերեթն եպիսկոպոս ուղղափառս. և եւս ձեռնադրել պատրիարքունս ուղղափառացն, որք իցեն 'ի Կոստանդնուպօլիս և յԱնտիոք և յԱղեքսանդր և յԵրուսաղէմ. և առաքեաց զնոսա անդ սպառնալեաց թղթովք, թէ որ նեղեսցէ ըզնոսա (կամ նզովեսցէ): Եւ գնաց ինքն յաթոռ իւր:

Բայց զի համարձակեցան 'ի բանի առ ուղղափառքն և ասէին ընդ Քաղկեդոնիկսն, թէ դուք զՆեստորին ունիք. և զԹէոդորիտն և զԹէոդորն. լուաւ Յուստինիանոս և արար ժողով պատասխանի առնել իւրեացն. և պատրիարգունքն էին այսոքիկ. Դոմնոս՝ Անտիոքու. Ապողինար՝ Աղեքսանդրի. Եւտիքէս՝ Կոստանդնուպօլսի. Բաքիլոս՝ Հռովմայ. որ կայր 'ի Կոստանդնուպօլիս 'ի Դրաղութ, որ և ամբաստանեալ ոչ գայր 'ի ժողովն. և հարկիւ բերին զնա. և արարեալ քննութիւն դրոց, նզովից արժանի դատեցան որք Նեստորի հաւանին կամ Սամոսատացւոյն կամ Տարանացւոյն. և եթէ նոքին իսկ նզովեալք են:

Իսկ Բաքիլոս առէ զինի հարիւր երե-

կերպարանօք 'է, և ոչ ճշմարտութեամբ ։

Գնաց ապա 'ի նոյանէ յԱղեքսանդրիա. և խառնեցան 'ի նմա այլ ևս աղանդք Պօնտացիք և Լաւփինացիք (1), և ձեռնադրեցին աղանդին պատրիարք. և նա արար բազում եպիսկոպոս. և ցրուեաց ընդ ամենայն երկիր։

Արդ ապա 'ի նոցանէ չոգաւ զհիւսիսիւ և յարեւելս. և եկն յԱղուանս (2) և եւ 'ի Հայս. և ոչ ընկալան զնա. այլ առաքեցին թուղթ առ Թէոդորոս պատրիարքն Անտիոքու. եթէ դուք զինչ ասէք այսմ աղանդոյ, տա՞յք ողջոյն՝ թէ ոչ. և նա կատարեալ էր զկեանս իւր։ Բայց յաշակերտաց նորա լուան զճշմարիտն և հալածեցին զնոսա։ Բայց 'ի Կապադովկիայ բազումք խաբեցան 'ի նոցանէ։

Նոյն ասեն թէ և 'ի մասնէ 'ի Հայոց սակաւք հաւանեցան առ ժամանակ ինչ մինչեւ 'ի կատարելոյն իւրեանց սատանեալք եղեն, և 'ի բաց կացին։

Յուստինոս թագաւոր կամեցաւ նորոգել զեկեղեցին Առաքելոյն և զտապանատուն թագաւորացն. և գտան երիս տապանս Արծաթափակս (3), և գիր 'ի վերայ նոցա.

(1) Մի օրէ. Լաւփինացիք։ Մի օրէ Լանփինացիք։

(2) Երկու օրէ. յԱրզուն։

(3) Մի օրէ 'ի լուսանցս ունի գտին զնշխարս առաքելոյն։

զժողովն Քաղկեդոնի, բայց զթուղթն Իբ-բասայ ուռհայեցւոյն ոչ ընդունէր. և ոչ հաւատայր ասացելոցն թէ ընկալան ժողովն Քաղկեդոնի։ Իսկ յորժամ ստուգեաց ՚ի Բաջի-լէ Հռովմայ պապուն որ ասաց այո՛ ընկալան, և ընդունելի է, յայնժամ յարեաւ զայրացմամբ (1) և ասաց երիցս. հեռի եղէց և հեռի եմ յայդմ դաւանութենէ. և եղիցի նզովեալ. Եւ զայս ասացեալ հրաժարեաց ՚ի նմանէ։

Բայց խոտորեցաւ ՚ի հակառակն, և ընկալաւ զՅուլիանեայ հերձուածն, և գրեաց առ Աթանաս պատրիարքն Անտիոքայ ժողով առնել և տեսանել զիրն. և ժողովեցան յԱնտիոք հարիւր յիսուն և հինգ եպիսկոպոսք և նզովեցին զՅուստիանէ. և գրեցին առ թագաւորն զոր արարին, և յերկուց աղանդից որոշեցաւ թագաւորն. և մեռաւ ուղղափառութեամբ թագաւորեալ ամս երեսուն և ութ և ամիս ութն։

Եւ ոմն իմաստուն և սքանչելի այր պատմեաց եթէ տեսանէր տեսիլ. զաշտ մի ընդարձակ, և ՚ի մէջ նորա հնոց բորբոքեալ անլոյս հրով. և գոլայր յոյժ. և ասէին ցիս այս՝ տեղի տանջանաց Յուստինիանոսի էր, բայց

(1) Այլ օրի. զայրանցմամբ։

ողորմութիւնն իւր և եկեղեցապաշտու բարքըն ոչ եթող զնա հերձուածող մեռանել և դալ յայս տեղի տանջանաց, և անդ յիշեցի յեկեղեցիս ուղղափառաց ։

Յետ նորա թագաւորեաց քեռորդին իւր Յուստինիանոս Թրակացի . և էր այր պատերազմող և ահարկու . և խոյս ետուն ամենայն չարագործքն յերեսաց նորա . բայց ցաւէին սուրբ նորա ։ Առ սա եկին արք արուեստաւորք 'ի Զամբանէ և 'ի Մանգանէ, որ օծանէին զանձինս և վառէին հրով փայտըս և եղանէին 'ի վերայ և ոչ այրէին ։ Յառաջին ամին սորա երեւեցաւ հուր բորբոքեալ (1) յօդս 'ի կողմ հիւսիսի այնպէս ահագին, մինչ զի բազումք 'ի տեսլենէն մեռան . և բերէր օդն քարտէզ այրեցած (2), և ժողովեցին յոլովք 'ի զամբիւղս, և զահի հարաւ երկիր ։

Իսկ յինն ժամ աւուրն ել ամպ միգախառըն, և 'ի նմա խաչ մի կարմրեալ 'ի լուսոյ ։ Իսկ տեսեալ բազմութեանն որ 'ի Կոստանդնուպօլիս, ասէին . Տէր ողորմեա՝ ըստ մեծի ողորմութեան քո ։

(1) Մի օրին. ասէ 'Ի [illegible] հուր յերկնից և այլ նշ[illegible] 'ի Կոստանդնուպօլիս ։

(2) Մի օրին. [illegible] և փայտ այրեցած ։

Եւ ասէ պատրիարքն ցԹագաւորն մի երկնչիր. պատուեաց զքեզ տէր երեւմամբ խաչի որպէս զՄեծն Կոստանդիանոս. և արդ ընդէ՞ր ոչ կարօտիս և առաքես յԱփրեմիես քաղաքն Ասորոց և բերեն անդի զխաչն տէրունական. և առաքեաց Թագաւորն զօրս և զօրագլուխս, և առին զնա հանգիստ անտի և բերին յԱնտիոք. և նոքա եւս ընդդիմանային, զի մի տացեն զխաչն պարծանք և պահապան աշխարհին տանել յերկիրն անտի. Եւ դնէին յոյժ հակառակութեան հատին զնա. սղոցաւ ընդ մէջն, և թողին անդէն զհաւասարորդն. և զկէս նորա առին և տարան:

Եւ ել ընդ առաջ նորա Թագաւորն և ամենայն քաղաքն, և տարան զնա և եդին ՚ի մեծ եկեղեցւոյն մեծաւ պատուով:

Յայնմ ժամանակի խնդրեցին Հայք յօգնութիւն ՚ի Յունաստանեայ, զի մի տացեն հարկս Պարսից. և ետ նոցա զօրս և ընդդիմացան Պարսից, և կոտորեցին զօրս նոցա:

Եւ առաքեաց խոսրով Թագաւորն Պարսից առ Յուստինոս. և ասէ. տուր. ըզհարկն Հայոց դու Թէ ցաւես վասն նոցա. և Թէ ոչ՝ Թող զնոսա կալ ՚ի հնազանդութեան իւրեանց. և լուաւ ընդդէմ պատասխանի:

Զ՚ինչ կայ առէ քո և քրիստոնէից. և անգիտանամ եթէ 'ի ձեռն Հայոց այսրէ առնում զՄծբին և զոր ինչ ունիս 'ի Միջագետս. և երկեաւ Խոսրով և լռեաց։

Զայսու աւուրբք եառ հրաման 'ի Թագաւորէն Յովհաննէս Կատրիկն խօսել ընդ Հայս և ընդ Նորիս յաղագս հաւատոյ և եկին 'ի Կղզանիկէ, և խօսեցան ընդ Յովկովք Կուրդնկարն. և եղեւ ժողով մեծ Ու կամէր Կատրիկն տալ ընդունել զանսուրբ ժողովն Քաղկեդոնի, և քամահեցին զբանիւք (1) Նորա և ոչ լուան Նմա։

Իսկ Յովհաննէս եպիսկոպոս Սամոսատոյ մարդ սուրբ և առաքինի եգիր 'ի կամբս Թագաւորին կռուել ընդ ուղղափառսըն. և առնու զաթոռ նոցա և զեկեղեցիս և զհամարձակութիւն. և մատնել կապանաց և տանջանաց և մահու. եթէ ոչ դաւանեսն զնոցայն. որ եղեւ իսկ յետ քառասուն ամի ապստամբաց (2) և հալածանացն մեր. և ՝շրջէին եպիսկոպոսք հանդերձ զօրականօք առաւելութոք, և զհաւատացեալն կրկին մկրտէին և եկեղեցականսն ձեռնադրէին. և զոչ հաւատացեալն այէս այէս տանջանօք բռ-

(1) Ոմանք՝ բանիւք։ (2) ապստամբանացն։
(2) Երկու օրի, դադարեալ.

կայսր պատրիարքին և ասէ ցնա. Հայր սուրբ շատ է լուր այդ, և լի՛ր առաջնորդ խաղաղութեան։ Նա ասէ ցնա. որդեակ սատանայի զբանդ ոչ ամաչեք. Քրիստոս Աստուած մի խնայեսցէ ՛ի ձեզ. զի եթէ ճշմարիտք էիք. ամաչել արժան էր զինի այսքան դառնութեան զոր արարիք եկեղեցւոյ. Թող թէ հերետիկոսք և չարափառք և անօրէնք Նեստորոյ. և նա գնաց և պատմեաց զամենայն ասացեալսն Թագաւորին և պատրիարքին։

Իսկ երիտասարդն համբուրեաց զձեռն և ասաց, ողջ մնա՛ Հայր զի երանեսս աստի և լուսաւորես զքաղումս. որ էր լինելն Քրիստոս մխիթարիչն պատանի և զայս ասացեալ ծածկեցաւ ՛ի նմանէ։

Եւ նոյն ժամայն եկին զինուորք և հանին զՅովհաննէս հրամանաւ Թագաւորին և պատրիարքին. և տարան ընկեցին զնա ՛ի կղզի մի բարբարոս մնացեալ ՛ի կռապաշտութեան. զոր զամենեսեան լուսաւորեաց նշանօք և արուեստիւք և բանիւք վարդապետութեամբ բազում բիւրս (1) արանց մկրտեալ ՛ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

Յետ այսորիկ խնդրեաց դարձեալ Թա-

(1) Մի օրին. ունի. Ը,Ճ բիւրս. Մի օրին. ԻԸ,Ճ բիւրս.

դաւորն զդաւանութիւնն Քաղկեդոնի գը-րով. և ետ ցնա պատրիարքն ։

Եւ հաստատեաց Թագաւորն և ասէ՝ առ ամ-ղուր սպանելոյն, Նեստորին է այս աղանդ ։ և ընկէց յաթոռոյ զպատրիարքն ։ և հալա-ծեաց զնա նախատանօք. և ասէ՝ ցՆաւա-տաս զօրապետն, դարձո վաղվաղակի զուղ-ղափառսն յաթոռ և 'ի հայրենիս իւրեանց, և Քաղկեդոնիքդ բարձցեն զարիւնն սպա-նանելոյն. և մի երեւեսցին երեսաց իմոց մինչեւ հանգերայց սակաւ մի ։

Զայսու ժամանակօք ժողովեցան մոգք և մոգպետք առ Թագաւորն (1) Պարսից. և ասեն ընդէ՞ր ոչ առնես դու նման Թագա-ւորին Յունաց. զի զամենեսեան որք ոչ հաւանէին օրինաց նորա, չարաչար տանջա-նօք սպանանէ զնոսա. և քանզի են ընդ քո Թագաւորութեամբդ, որք արհամարհեն զարեգակն և զհուր, և ներես նոցա ։

Եւ յայնժամ շարժեալ Թագաւորին ան-թիւս կոտորեաց 'ի քրիստոնէից, և արար վկայս ճշմարտութեանն ։

Եւ առաքեաց 'ի Հայս դնել անդ առն

(1) Մի օրի. ամի Դ. յամառ. թագաւոր էր. և չարչարէր քր. Պարսից Թագաւորն Յզ. զքրիստոնեայսն ։

կրակի , և հարկ տանել նոցա 'ի հրապաշտութիւն :

Իսկ նոքա խրախուսեալք Աստուած դիմեցին 'ի վերայ նոցա և կոտորեցին զմոգսն և զզօրսն Պարսից :

Այլ մեծ կաթուղիկոսն Հայոց չոգաւ 'ի Կոստանդնուպօլիս ածել անտի զօրս յօգնականութիւն իւրեանց : Այլ եւ քաղաքն ամենայն ընդ առաջ նորա 'ի պատիւ . և տարան զնա 'ի պատրիարքարանն , և յամեաց անդ զի ոչ էր յատակ զօրն Յունաց :

Իսկ ժողովուրդք երկրին Հայոց երկեան , մի գուցէ խաբիցի կաթուղիկոսն յաղադաւորացն 'ի պատճառս կարեացն (զօրաց) նոցա : Այլ առաքեցին առ նա թուղթ ըզգուշութեան և վարդապետս իմաստունս և ասեն . Աստուած ապաւինեցուք և մի տացուք զյաւիտենական կեանքն և զհաւատս կենդանիս և աստուածընկալս անցաւոր և անաստուած կենաց . դարձիր 'ի տուն քո :

Իսկ սուրբ հայրապետն նախ քան զգնալ դեսպանացն կատարեալ էր ուղղափառ հաւատով . և պատուով եդեալ 'ի շիրմի ուղղափառացն որ անդ հրամանաւ արքային . և ընդ յուսոյն իւրեանց զրկեցան Հայք

տատուծով զօրացեալ 'ի Պարսից և 'ի Քաղկեդոնացւոցն . և եղեւ մեծ ամրութիւն հաւատոյ ուղղափառութեանն :

Իսկ Սոփիայ Թագուհին մնեալ ուղղափառութեամբ հաղորդէր Անդրիասայ յերիցուէն իւրմէ, և ածեն զնա երբեմն 'ի հաւան զի գնասցէ յեկեղեցի Քաղկեդոնացւոցն : Եւ (իբրեւ) գնայ անդ ամ մի, երեւեցաւ Աստուածածինն և ասաց, դուստր ընդէ՞ր թողեր զիս և գնացեր ընդ հերետիկոսան . և (նա) ասէ ցնա . մա՛յր տեառըն, ուսո՛, ուսո՛ (1) ինձ դաւանութիւն ճշմարիտ : Եւ ասէ սուրբ կոյսն քաւական է քեզ ասելն . Հայր և Որդի և Հոգի սուրբ ողորմեա՛ ինձ . և ոչ երթալ առ Հերետիկոսան :

Եւ յութերորդ ամին իւր Յուստիանոս արար զմօրաքեռ որդին իւր զՄարկիանէ Կեսար . և առաքեաց զզօրսն 'ի վերայ Մծբնայ . և գնացեալ նորա 'ի Տարայ, առաքեաց զզօրսն 'ի Պարսս, որք դարձան բազում աւարաւ . և երկեան Պարսիկք յերեսաց Մարկիանեայ : Եւ Մարզպանն որ կայր 'ի Մծբին . հնազանդութեամբ և ընծայիւք յամեցոյց զՄարկիանէ 'ի Տարայ . մինչև ե-

(1) Մի օրի . ասա՛ ինձ դաւանութիւն ճշմարիտ :

լից զքաղաքն ռոճկօք. և եհան զքրիստոնեայսն անտի ։

Իսկ 'ի զատկի տօնին չոգաւ Մարկիանէ և պատեաց (1) զՄծբին և նեղեցին յոյժ. և մերձ էին յառնուլ. և յանկարծ եկն Ակակիոս ոմն փոխանակ Մարկիանեայ և եհան զնա 'ի պատուոյն հրամանաւ Թագաւորին. և ասէր Մարկիանէ. Թոյլ տուր ինձ աւուրս երկուս և առից զքաղաքս, և ոչ կամեցաւ. և կարծեաց զօրն եթէ մեռեալ իցէ Թագաւորն, և թողեալ զքաղաքն ցրուեցան ։ Եւ պատճառ իրայն եղեւ այսպիսի ։

Երկիրն Տաճկաց կայէին ընդ երկու իշխանութեամբ ընդ Պարսից և ընդ քրիստոնէից. Քրիստոնեայքն Թագաւոր ունէին իւրեանց զՄնդուր զորդին Հերիթայ, և էին բարեկամք և օգնականք Հռովմայեցւոցն հայրենեօք վասն Քրիստոնէութեանն ։

Իսկ Մնդուրն գնաց 'ի վերայ Պարսից և գերեաց զերկիրն և դարձաւ. և եկն նստաւ 'ի Տաճկաստան 'ի բաժնէն Պարսից. և նոքա կարծեցին թէ Թագաւորն Պարսից է. և ոչ պատրաստեցան. և բազումք ելին առ նա պատարագօք և այլան ընծայս. Եւ աւրածեցաւ ընդ երկիրն և կոտորեաց և գե-

(1) Այլ օրի. պաշարեաց.

րեաց գնաց. և ժողովեցան զօրն Պարսից գնալ յերկիրն Մնդուրին:

Եւ խնայեալ Մնդուրն առաքեաց առ Յուստինիանոս. և խնդրեաց ոսկի բազում զօրս վարձելոյ ընդդէմ Պարսից:

Եւ հաճեաւ Յուստինիանոս և գրեաց և ասաց. եկեսցես առ Մարկիանէ, և տացես նմա օգնութիւն վասն Մծբնայ. և առ զնա ընդ քեզ և պահեա զերկիր քո. և պատուիրեցի նմա տալ քեզ ոսկի (բազում) որչափ և կամիս: Եւ գրեաց առ Մարկիանէ թէ Ջանա փութով որսալ զՄնդուրն ՚ի կորուստ. և առ զգլուխ նորա և առաքեա ինձ առ ե-տխս:

Եւ ՚ի խնամոցն Աստուծոյ փոխեցան թուղթքն և տարան զՄարկիանեայ թուղթն առ Մնդուրն, և զՄնդուրին առ Մարկիանէ. և կարծեաց Յուստինիանոս յորժամ լուաւ. թէ Մարկիանէ առաքեաց զթուղթն առ Մնդուրն. և առաքեալ ընկէց զնա ՚ի պատուոյն:

Իսկ Մնդուրն օրհնեաց զնախախնամութիւն Աստուծոյ, զի օգնեաց նմա և կեցոյց. և գրեաց առ Յուստինիանոս զչարութիւն նորա:

Իսկ Պարսիկքն իբրև գիտացին զիրսն,

եթէ Անդուքն ոչ օգնէ Հռովմայեցւոց. չոգան ՚ի վերայ զօրացն Հռովմայեցւոց, եւ կոտորեցին զնոսա. եւ գնացին մինչեւ յԱնտիոք եւ գերեցին զամենայն Անջակեսս որ ընդ Հռովմայեցւովք, եւ երթեալ նստան ՚ի վերայ Տարայոյ. զի բազումք զերծեալք ՚ի զօրացն յանդ էին անկեալ յանուրս որք եկեալ (եկեալ) արտաքս ցուցին մեծ քաջութիւնս :

Եւ Պարսիկքն խաբէութեամբ անցին ետուն որպէս թէ կամիցին գնալ, եւ աշխատեալ զօրացն Յունաց թողին զպարիսպն. եւ գնացեալ հանգչէին եւ ուտէին հաց. եւ դարձան Պարսիկքն եւ բախեցին զպարիսպն եւ յամենայն կողմանց սանդուխս եդեալ մտին ՚ի ներքս եւ կոտորեցին առ հասարակ. եւ գնացին բազում ուրախութեամբ յաշխարհն իւրեանց :

Իսկ Թագաւորն Պարսից Խոսրով ընտրեաց ՚ի գերեացն աղջկունս հինգ հազար կուսանս եւ գանձս բազումս. եւ առաքեաց յերկիրն Թետալեացւոց ՚ի Թուրքաստան պատարագս նոցա, եւ գիր աղաչանաց զի եկեսցեն նմա յօգնականութիւն պատերազմելոյ ընդ Հռովմս եւ ընդ Հայս եւ ընդ Տաճկաստան :

Իսկ ՚ի գնալն իւրեանց որբուհի կուսանս

քըն Թանային արտասուօք զճանապարհն . զի անդամքն Քրիստոսի երթային դէպ գազանաց . և խորհեցան կուսանքն ընդ միմեանըս զոր ինչ առնելոց էին . և իբրեւ հասին 'ի գետն մեծ ասեն ցզօրսն , արարէք ընդ մեզ զողորմութիւն , 'ի բաց գնայէք յաչաց մերոց զի լուացուք 'ի գետս վասն տօթոյս . և հաճոյ թուեցաւ բանն առաջի նոցա և գնացին հեռագոյնս :

Իսկ իմաստուն կուսանքն հեղին արտօսր բազում և եդին ծունր ասելով , Աստուած հարցն մերոց սպանելոց . Քրիստոս որդի Աստուծոյ , պսակ և փրկութիւն Քրիստոնէից և անախտ փեսայ սրբութեան կուսանաց , եկ առ մեզ և տես զհանդէս մեր . և ընկալ ըզմեզ առ քեզ . և մի տար զգառինս քո կերակուր գազանաց աղաչանօք մօր քո անարատի և բարեխօսութեամբ ամենայն սրբոց քոց . և մեր ծնողացն արեանցն հեղմամբ առ զքոյս 'ի քեզ ապաւէն մեր Յիսուս . և քեզ փառք յաւիտեանս ամէն : Եւ զայս ասացեալ ելին ամենեքեան 'ի կամուրջն և վայթեցան 'ի գետն մեծ և անհուն տարասջնկան յոլովից գետոյ :

Իսկ իմացեալ զօրացն 'ի ճղփմանէ փախեան ընդ առաջ նոցա . և զմի ոք ոչ գտին

կենդանի և լացին բազում ժամս, և տրտմու-
թեամբ դարձան և պատմեցին Թագաւորին,
և հրամայաց լռել. և ոչ եղեւ նոցա մեղադիր։

Յետ այսորիկ Յուստինոս հաշտեցաւ
ընդ պատրիարքին Յովհաննիսի. և լուաւ
բազում դարովանս 'ի Քաղկեդոնականացն յա-
ղագս դադարեցուցանելոյ զհալածանս ուղ-
ղափառացն. զի ահա ամենայն աշխարհ հա-
ւանեալ էին։ Վասն որոյ դարձաւ 'ի չարու-
թենէն իւր յոյժ առաւելութեամբ 'ի հա-
լածումն և 'ի մահ ուղղափառացն. զոր գիր
ոչ բաւենայ 'ի պատմել, և լսելիք ոչ տանին
զծանրութիւն աղետիցն՝ զոր արար նա սուրբ
Եկեղեցւոյ։ Վասն որոյ առաքեաց Աստուած
դեւս չարագոյնս 'ի Թագաւորն և 'ի պատ-
րիարքն և մոլեգնէին. և իբրեւ զշուն հաջէ-
ին. և իբրեւ զկատու մլաւէին, և տասն ժա-
տամբ ձեռացն զհերս և զմօրուս ծամէին.
ուտէին և այլ ցաւս՝ որ 'ի մահ փութացու-
ցանէր։

Իսկ 'ի սակաւ մի դիւրեալ հարցանէին
զԹագաւորն. ո՞վ նստցի յաթոռ քո. և նա
բազում անգամ անուանէր զնոտար ումն Տի-
բերիոս անուն Թրակացի, ազգաւ Յոյն.
զոր եդին Թագաւոր, և 'ի նմանէ և այսր է
Յունաց Թագաւորութիւն. զի 'ի Կայիոս

Յունիոսէ մինչեւ 'ի սա՝ յիսուն Թագաւորք Փռանկ էին ազգաւ:

Բայց 'ի ժամանակս Մակեդոնացւոցն եւ-րեսուն եւ ութ Թագաւորքն Յունաց կոչէին 'ի Կոստանդէ Մակեդոնացւոյ մինչեւ 'ի Բրաւ-սոս (1): Իսկ արդ երկրորդ անգամ՝ սկսաւ 'ի Թուխս Նորայ ութ հարիւր ութսուն եւ վեց, եւ Հայոց 'ի հնգետասան: Բայց սա-կաւքն Հռովմայեցիք կոչին վասն Կոստան-դնուպօլսի, զի նոր Հռովմ՝ կոչեաց զնա Կոս-տանդիանոս, եւ զօրքն խառնեն ընդ միմեա-նս վասն հոմ՝ իշխանութեանն:

Յայնժամ՝ ժամանակի Թագաւորն (2) Պարոնից հպարտացեալ վասն յաղթութեան որ եղե-նմա 'ի Մելիտինէ, չոգաւ 'ի վերայ Հայոց որք ցուցին մեծ քաջութիւնս. եւ երկրորդ անգամ՝ կորագլուխ դարձուցին սակաւ ինչ սատարելով նոցա Յունաց:

Իսկ երրորդ անգամ՝ ժողովեալ դայ զկող-մամբն հիւսիսոյ պատելով զերամբ (3) եկն 'ի Կապադովկիա. եւ ընդդիմացան նմա (նոցա) զօրքն Յունաց սակաւ ինչ, եւ դարձան ընդ

(1) Մի օրի. Բրաւսոս:

(2) Երկու օրի. Յայնժ ժամանակի Թագաւորեաց Պարոնից Ռոմիոզ հպարտա-ցեալ:

(3) Ընդ՝ պատուելով զերբեան; Մի օրի. պատ-ճառ զերբեան: Մի՝ պատասխանելով

կղուննկն. և իջեալ Պարսիկն 'ի վերայ Սե-
բաստիոյ, առ զնա և այրեաց հրով:

Իսկ վերստին զօրացեալ Յունաց եկին և առին զբանակեալսն Պարսից և զառուն կրակին զոր շրջեցուցանէին ընդ ինքեանս, և քակեցին զնա. և թէ ոչ էին աղմկեալ ինչ զօրքն Յունաց՝ սպառեալ էին զՊարսիկս:

Բայց գտեալ 'ի նոսա պատճառս քաջացան Պարսիկքն. և չոգան 'ի Մելտենի Հայոց. առին և այրեցին զնա: Իսկ յղեցին առ նա զօրքն Յունաց և ասեն. այդ ոչ է օրէն թագաւորաց այրեցողութիւն. ո՞չ գիտես, եթէ մեք ո՛չ արարաք երկրին քում այդպիսի ինչ. թէպէտ ոչ ունէաք ընդ մեզ Թագաւոր:

Արդ զգուշեղիր առ, և պատերազմեսցուք դարձեալ. և իբրև լուաւ զբանս Յունաց Պարսիկն, ամաչեաց յոյժ. և դադարեաց յարեւելից կուսէ քաղաքին. և հասեալ առ նոսա զօրացն Յունաց զամենայն գիշերն, և կացին հանդէպ նոցա յառաւօտէ մինչև ցինն ժամ աւուրն, և ոչ խառնեցան:

Ապա Պարսիկքն սկսան անցանել ընդ Եփրատ և գնալ. և իմացեալ Յունացն դիմեցին 'ի վերայ նոցա, և փախեան Պարսիկքն և'ի տագնապէ փութոյն առաւել մեռան նոցա

գետամոյն եղեւ . եւ գնացին Պարսիկք ոչ յաջողեալք . և եդ օրէնս Թագաւորն Պարսից, մի ելանել Թագաւոր 'ի յաւար 'ի պատերազմ զօրու . բայց եթէ ընդդէմ Թագաւորի նմանոյ իւրոյ ։

Իսկ զօրքն Յունաց գնացին առ հիւսիսով . 'ի մասն ինչ Հայոց յաւուր, վասն պատճառի ուղղափառութեան նոցա ։

Իսկ Նոքա խաչիւ և աւետարանաւ ելին ընդ առաջ նոցա որպէս քրիստոնէից, արկանելով երկիւղ և դութ փրկական զինուքըն Քրիստոսի ։

Իսկ ատեցողքն լուսոյ, և ատելիքն Քրիստոսի Սատանայ (1) միաբանեալք արկանէին 'ի խոնարհ զխաչն և զաւետարանն . և կողոպտէին զեկեղեցին և եկեղեցականսն . և զաշխարհականսն անողորմ սպանանէին . և զհաւատաւոր կուսանսն խայտառակէին, և զգինս կանանցն ականջօքն կտրէին . և զապարանջանսն մորթովք բազկացն խլէին . և բազում և այլ անօրէնութիւնս գործէին . և առեալ աւար բազում դարձան որպէս 'ի մեծ յաղթութենէ, և նստան յերկիրն իւրեանց անհոգութեամբ 'ի խրախանալ .

(1) Երկու օրի . ատեցողք Ճշմարտութեան ։ բըն լուսոյն եւ Թշնամիքն

Թողով զերեվարս, և մերկանալով զզէնս ։

Իսկ եհաս բարկութիւն տեառն 'ի վերայ նոցա. և դարձոյց զմեղս նոցա 'ի գլուխս իւրեանց. քանզի մասն ինչ 'ի զօրացն Պարսից իբրեւ իմացան զչարիս նոցա, ծածկեցին զանձինս և ոչ գնացին ընդ Թագաւորին Պարսից. այլ այնմ սպասեցին, և եկին գտին զնոսա այնպէս անպատրաստս և Թուլացեալս 'ի ձեռաց Աստուծոյ. և առին զամենայն երիվարսն և զզէնսն, և հարին զնոսա, և գնացին բազում ուրախութեամբ ։

Յայնմ ժամանակի ժողովեցան եպիսկոպոսք և միաբանք և վանաց երիցունք Միջագետաց և Հայոց որք ընդ Հռոմովք էին. և չոգան առ Տիբեր, և ասեն տուր մեզ խաղաղութիւն վասն հաւատոյս մերոյ. և մի խռովեր զմեզ և ծառայեսցուք մեք միամտութեամբ. և կամ սրով քո սպան զմեզ ։ Իսկ սատակէին նոցա Քաղկեդոնիկքն. և լռեցոյց զնոսա Թագաւորն. և ասէ. լուարուք ինձ ասացից զոր գիտեմ. Թագաւոր Յուստինիանոս կայր 'ի չարաչար ցաւսն և բուպատաւորէի նմա ես, և տեսանէի զհրեշտակ Աստուծոյ, զի ժամու ժամու սատակէր զիւրին որ ներզէր զնա. և յիշատակէր նմա զչարիսն զոր արար նա ընդ յուղղափառսն.

և դարձեալ թոյլ տայր դեւին ըլկել զնա. և առնէր ցնա մի գնար ընդ շաւիղս դորա, որ ջանայ առնուլ զթագաւորութիւնն այնմ, որ արար զգա թագաւոր. վասն որոյ կրէ զարժանն իւր։ Եւ ՚ի յելս հոգւոյն ասաց ինձ Յուստիանոս. երկու բանս զկամ արա որդեակ, դարձո զհալածեալսն յինէն և գնա օրինօք նոցա. և կաց հնազանդ Սոփեայ որ էր քո թագաւոր. և արդ եղեւ քեզ մայր. և խնդրեսջիք ինձ ողորմութիւն։ Եւ այժմ երթայք խաղաղութեամբ հանգերուք ՚ի տեղիս ձեր, և արարէք աղօթս կենդանեաց և մեռելոց. և որ ոք աւելի ինչ առէ յաւելիս է անձին իմոյ. և գնացին ուղղափառքն գոհութեամբ Աստուծոյ ՚ի տեղիս իւրեանց։

Յետ այսորիկ պատրիարքն Կոստանդնուպօլսի խրատէր զթագաւորն թողուլ ըզկինն, և առնուլ զթագուհին իւր. քանզի ոչ կամի առէ Սոփիայ մտանել կնոջ քո ՚ի քաղաքս։ Եւ առէ ցնա թագաւորն. ճըշմարտութեամբ հաստատեալ եմ ՚ի վերայ եթէ Հոգի Աստուծոյ և երկիւղ նորա ոչ է յառաջադ ձեր. արդ ասես ինձ թողուլ զկին իմ օրինաւոր որ եղեւ ինձ աղքատութեան իմոյ կցորդ, և ծնաւ ինձ երիս որդիս, և ինչ ոչ մեղաւ ինձ, և առնուլ զթագուհին.

որ տուաւ (ետ) ինձ մայր իմ. և (1) եհան զնա ամօթով յաչաց իւրոց: Եւ լուաւ Սա- փիրոյ, և առ երեւելի փառօք զկին նորա 'ի քաղաքն. և սիրեաց զնա և կոչեաց զանուն նորա Հեղինէ:

Իսկ Տիբերիոս էր աղքատասէր և ողոր- մած. և եդ սահման անձին իւրում 'ի կեա- նս իւր աւուրն եւթանասուն երկու կեն- դինարս բաշխել աղքատաց:

Յաւուրսն յայնոսիկ լուաւ Մնդուրն զմահն Յուստինեայ և զթագաւորելն Տի- բերեայ. և եկն առ նա, և եղեւ մեծ ու- րախութիւն: Եւ ասէ Տիբեր ընդէ՞ր թոյլ ետուր Պարսիցն համարձակել 'ի վերայ մեր: Իսկ նա հանեալ զթուղթն եւ ցնա զոր գը- րեալ էր Յուստինոս առ Մարկիանէ վասն սպանման նորա. և ամաչեաց Տիբեր և ա- մենայն զօրն Յունաց: Եւ ասէ Մնդուրն. ես վասն զի լուայ թէ արարիք խաղաղու- թիւն ուղղափառացն, հաշտեցայ. սիրտ իմ ընդ ձեզ և հանգեաւ: Եւ արդ՝ 'ի պա- տիւ երեւաց իմոց քարոզեցի ուղղափա- ռութիւն յայտնապէս: Եւ հրամայեաց Տիբերիոս և գրեցին: Եւ գնաց Մնդուրն

(1) Ըստ այլոյն օրինակի ասէ. առնուլ զթագուհին իմ, որ տուաւ ինձ մայր. և եհան զնա ամօթով յաչաց իւրոց:

յԱնտիոք. և բերեւ խօսէր սակս ուղղափառութեան ընդ Գրիգորի պատրիարքին. եւ հաս առ նա թուղթ, եթէ լուան Պարսիկք փառն Քրիստոսի և ահա գան 'ի վերայ մեր յերկիրս Տաճկաց. և գնաց Անդուրն յաշխարհն իւր։

Եւ դադարեցին Պարսիկքն։

Ի չորրորդ ամին Տիբերիոսի ելին Սկլաւքըն (1) անզէն և անձի և մերկք. և եկին 'ի Թրակ և 'ի Թեսաղոնիկէ, և առին զերամակն արքունի, և զտուներ զձիուց և զհինադործաց և եղեն զօրք և գնացին պաշարեցին զՍեռմի. և առաքեցին առ Թագաւորն կամ՝ կռուել ընդ նոսա կամ տալ զքաղաքն Սեռմի, զի բնակեսցեն 'ի նմա խաղաղութեամբ։

Իսկ Տիբեր յամեցոյց զնոսա ակն ունելով գալոյ Լակվարտացն (2) և ապա ետ նոցա զքաղաքն. բայց 'ի մարդոյն։

Իսկ բարբարոսքն մտեալ 'ի քաղաքն տեսեալ զբնակիչսն ներքսեւեալ 'ի սովոյն, և արարին ոչ սակաւ մարդասիրութիւն տալով նոցա հաց և գինի. զի պակասեալ էր 'ի սովարն մինչեւ ցշուն և ցկատու զոր կերեալ էին. բայց 'ի յուտելն զհացն անյագու-

(1) Ոմանք՝ Սկլօքն։ ցըն։ Մի օրի. Լանկվար-
(2) Մի օրի. Լանկվարտա- տացն։ Մի՝ Լակվարտացն։

թեամբք մեռանէին : Եւ նոցա զայն եւս գի-
տացեալ տային նոցա կանխագոյն կերակուր
և տակաւ տակաւ մինչեւ հաստատեցան . և
տային հանեին զնոսա 'ի քաղաքէն . և ինքեանք
բնակեցան անդ մի , և այրեցաւ քաղաքն յան-
կարծակի . և նոքա ելեալ գնացին յաշխարհն
իւրեանց կարծելով թէ Աստուած երկրին
հալածէր զնոսա :

Յայնմ ժամանակի Տիբեր առաքր զՄօրիկ
հեծելոյ . և առաքեաց 'ի Պարսս . և նորա եր-
թեալ եգիտ զկամուրջ մեծի գետոյն քա-
կեալ 'ի Պարսից . և կարծեցաւ թէ Մնդու-
րըն իցէ քակեալ . և դարձաւ չարախօսեաց,
և անկաւ 'ի հնարս կորստեան :

Եւ ոճն յիշխանայն Մանկանս անուն
խոստացաւ ըմբռնել զնա . և առեալ զզօրսն
գնաց որպէս թէ 'ի Պարսս . և առաքեաց առ
Մնդուրն աղաչանս զի առկաւ առանձինք ե-
կեսցէ առ նա 'ի դաշտ . զի խորհեսցին ինչ
վասն Պարսից :

Իսկ նա առանց կասկածանաց գնաց առ
նոսա . և կալան զնա 'ի գիշերի յարբեցու-
թեան և յանհօգութեան ժամու , և առա-
քեցին առ Տիբեր . և եդին զնա 'ի բանտի :

Եւ լուեալ զբանն զայն անկարծելի որդին
Մնդուրայ՝ ել զօրօք յերկիրն Յունաց յա-

ւար. եւ առնոյր զանձս և զանասունս. եւ մարդկան ինչ ոչ վնասէր: Եւ զայս արարեալ միանգամ դարձաւ. և իբրեւ գիտաց եթէ ոչ արձակէին զհայրն նորա քաղջարատեալ յանձրն իւր եկն առ Տիբեր դեսպանօք գնել ուխտ յաւիտենական երդմամբ չափ, և առնուլ զհայր իւր վասն որոյ և արարին իսկ և երդուան յանլուծանելի երդումն: Բայց 'ի վախճանի բանին ասաց անօրէնն Թօրիկ. այդ եղիցի նշանակ մնալոյ երդմանդ, եթէ հաղորդիք 'ի ձեռաց առաջնորդացս մերոց և ոչ դարձջիք 'ի մէնջ: Եւ ասաց Անդուրն ես զայդ ո՛չ կարեմ առնել. զի բազում է ազգ՛ն իմ. և քարկոծեն զիս: Եւ զճշմարի- տըն ասացից վասն մահու երկիւղի, ասելի Տ՛սուածոյ ոչ կարեմ լինել իբրեւ զձեզ: Եւ կատաղեցան 'ի բանի աստ 'ի վերայ նոցա. և առաքեցին զնոսա յանկոյծ տեղիս:

Եւ իբրեւ զբօթս զայս լուան յերկիրն նոցա խռովեցան խոցոտեցան սրտիւք և քակտեցան 'ի միմեանց. և եղեն հնգետասան բաժինս, եդեալ իւրեանց առաջնորդս: Ամանք 'ի նոցանէ եղեն ընդ Պարսիւք կաշառեալք 'ի նոցանէ. և կէսք ձեռն ետուն յերկիրն Բամիրոյ. և ոմանք 'ի նոցանէ մտին ընդ ծառայութեամբ Յունաց (1): Եւ

(1) Յոյնք՝ 'ի ծառայու- թիւն:

'ի պատճառս չար աղանդին Բաղկեդոնի բարձաւ վայելուչ Թագաւորութիւնն այն 'ի միջոյ ։

Իսկ Տիբերիոս երկեաւ 'ի Տեառնէ և ըզ չորրորդ մասն ստացուածոց իւրոց ետ կարօտելոց . և եբարձ զմաքսն յամենայն իշխանութենէ իւրմէ ։

Զամանէ ոմանք ասեն ամ մի թագաւորեալ . բայց մի հաւանիր դու . զի մեք բազում վկայս կալաք մատենիս մերում զի չորս ամէ թագաւորութիւն նորա ։

Սա ետ զդուստրն (իւր) Օգոստիայ Մօրկայ կնութիւն . որ և առ զթագաւորութիւնն զկնի մահուանն Տիբերի . և էր Մօրիկ կապադովկացի յԱրիսուս (1) գեղջէ ։

Բայց Հռովմ ապստամբեաց 'ի Մօրկայ և եդ իւր Թագաւոր զՊրամկոս ոմն . որ և գնաց 'ի վերայ Պարսից . և աջողեցաւ նմա . և դարձաւ յաղթութեամբ . և զի կասկածէր 'ի Մօրկայ , առաքեաց նմա մասն յաւարէն երեք հազար գերի . և խնդաց Մօրիկ և յանձն առ զթագաւորել նմա Հռովմայ ընդ ձեռամբ նորա ։

Բայց Մօրիկ զԱրիսուս շինեաց քաղաք մեծ , որ զկնի չորից ամաց փլաւ շարժմամբ . և վերստին շինեաց մեծ հոգաբարձութեամբ

(1) Մի օրի . յԱրփսաս գեղջէ ։

և դարձեալ տապալեցաւ ՚ի շարժմանէ. Եւ զի յերկրորդ Հայս էր գիւղ նորա. ասեն թէ Հայ էր ազգաւ։

Սա զՓիլիկոսն քեռայր իւր առաքեաց ՚ի կողմ արեւելից կալ ընդդէմ Պարսից։ Քանզի Որմիզդ թագաւորեալ Պարսից զկնի Խոսրովու առաքեաց զօրս և գանձս և առ զՄուփարկինն ՚ի Յունաց. և չոգաւ Փիլիկոսն և առ զքաղաքն դարձեալ. և զՊարսիկքն որ անդ էին կոտորեաց։

Ի յութերորդ ամին Մօրկայ յարեան Պարսիկք ՚ի վերայ Որմզդի. և հանին զաչս նորա. և թագաւորեցուցին զԽոսրով որդի նորա։ Իսկ Մօրիկ արար զԹէոդորոս (1) զորդին իւր Կեսար. և արար նմա հարսանիս մեծարգի. և պատրիարգն կապեաց զթագ նորա։

Եւ ՚ի նոյն ամի Վահրամ իշխանն Պարսից հալածեաց զԽոսրով թագաւորն. և եկն յՈւրհայ. և առաքեաց առ Մօրիկ աղաչանս, զի լիցի նմա հայր. և տացէ նմա օգնականս առնուլ զաթոռ իւր. և ետ նմա զզօրսն Հայոց և զզօրսն Թիրակայ, և չոգաւ առ զթագաւորութիւն իւր. և թողին զՏարայն և զՄասալայ ՚ի Յոյնս։ Եւ ետ Մօրիկ զՄարիայ դուստր իւր Խոսրովու ՚ի կնու-

(1) Մի օրի. Թէոդոս։

*թիւն առաքելով ընդ նմա եպիսկոպոսս քա-հանայս ։*

*Եւ Խոսրով շինեաց ՚ի պատիւ դստեր նորա երեք եկեղեցիս, և զպատրիարգն Ան-տիոքու չոգաւ օրհնեաց զնոսա. զմինն յա-նուն Աստուածածնին. և զմինն կոչեաց սուրբ առաքեալք, և միւսն սուրբ Սարգիս. և եղեւ մեծ խաղաղութիւն. վասն որոյ հը-պարտացեալ Մօրիկն՝ անփոյթ առնէր զզօրա-ցըն. և եհատ զկարգեալ պարգեւսն և ըռ-համ նոցա ։*

*Եւ եղեւ զի ապստամբեցին (1) Բուլղարք ՚ի Թիրակ, և զօրն Յունաց գնացին հալա-ծեցին զնոսա, և դարձան ՚ի Կոստանդնու-պօլիս. և յղեցին առ Մօրիկ և ասեն. արար Տէր խաղաղութիւն յաւուրս քո, բայց ըն-դայն ոչ ապրի խաղաղութեամբն միայն. արդ եթէ ոչ դառնայ ՚ի մեզ պատիւն և ռոճիկն մեր օրինաւոր, ՚ի խաղաղութեան առա կալ զմեզ թշնամիս քո ։ Եւ լուան պա-տասխանի խիստ. որպէս Իսրայէլ յՌոբո-վամայ. և առին զօրքն զՊետրոս եղբայր Մօր-կայ. թող տուր մեզ սպանանել զնա. և թագաւորեա դու ՚ի վերայ մեր. և նա ոչ առ յանձն. այլ ազդ արար եղբօրն, եւ*

(1) Երկու օրի. ապստամբ եղեն.

փախեաւ Մօրիկն 'ի Քաղկեդոն . և ել զօրն զհետ նորա և սպանին զնա անդ . և թա-գաւորեցուցին զզօրավարն Փոկաս զկնի քսան ամի թագաւորութեանն Մօրկայ ։

Եւ իբրեւ լուաւ թագաւորն Պարսից թէ սպանին զՄօրիկ և զորդիսն իւր , տրտ-մեցաւ մեծապէս . և զգեցաւ սեաւ , և ե-լաց զնա զաւուրս բազումս ամենայն տամ-քըն Պարսից ։

Յետ այնորիկ ասէ ցմեծամեծ աւագա-նին իւր . ո՞վ առնու զվրէժ արեանն Մօ-րկայ 'ի ձեռացն Յունաց 'ի գիւրութիւն սըր-տի իմոյ , և դարձուցանէ նմա զերախտիսն զոր արար նա Պարսից և կանգնեաց զխախ-տեալ թագաւորութիւնս զայս ։

Եւ յառաջ եկն ոմն Խոռիզօն անուն , և ասէ . Ես երթայց եթէ հրամայեսցես . և լցից արեամբ զտունն Յունաց ։

Եւ ուրախ եղեւ (թագաւորն) Խոսրով և ասէ ցնա վստահ եմ 'ի քեզ , զի այր քաջ ես դու և կարասցես և յաղթեսցես ։

Եւ այդ ոչ եղիցի անուն քո Խոռիզօն , այլ Շահրպարզ եղիցի անուն քո , և ետ նմա զամենայն կարողութիւնն (1) Պարսից ։

Եւ եկն 'ի Միջագետս և առ զՏարոյ և

(1) Մի օր . զօրս Պարսից

և զԱւալայն . և զԱնտոքին, և ձմերեաց անդ ։ Եւ առ զԽառան և զԴարայ և զԱ՛ն-տաք . և տային ցնա յօժար կամօք զքաղաք-ոլն, ոչ ումեք մեղանչէր բաց 'ի Յունացն և 'ի Հռովմայեցւոյն ։

Եւ յութերորդ ամին Փոկասյ եղեւ ա-մենայն Միջագետք Պարսից. և ապա անցին 'ի Կապադովկիա, և յԻնկիւրիայ և յԱսի-ա. և հասին մինչեւ ցՔաղկեդոն, և հե-ղին արիւն բազում. և ասէին Թագաւո-րութիւնս այս Խոսրովու է իրաւամբք. զի որդեգիր է Մօրկայ. և ժառանգ Թագա-ւորութեան նորա ։

Իսկ Թագաւորն Փոկաս թոյլ էր և կը-նատ. և վասն կասկածանաց եսպան զբա-զումս 'ի զօրագլխացն, և եղեւ ատելի ա-մենեցուն ։

Եւ էին երկու Պատրիկք (1) յԱփրիկէ ե-րեւելիք և քաջամարտիկք . անուն միոյն Գրիգոր, և միւսոյն Հերակլ ։ Խորհեցան երկոքեան զմահն Փոկասայ. և զօրս ժողո-վեալ ետուն 'ի ձեռս որդւոց իւրեանց, և առաքեցին զնոսա վիճակաւ ընդ ծով և ընդ ցամաք. և գրեցին թուղթս յարքունիսն և 'ի քաղաքն, զի սպանցեն զՓոկաս. և որ

(1) Չորք օրի. պատրիկացք ։

վաղ երթայ յերկուցն, նա առնէ զԹագն. և որ յետոյ գնայ յերկուց որդւոցն իւրեանց լիցի առաջնոյն Կեսար ։ Եւ էր որդին Հերակլեայ անուամբ Հօրն որ եհաս վիճակ նմա ընդ ծովն. և աջողակ հողմով գնաց կանխագոյն. և առեալ զԹուղթն՝ նոյն ժամայն սպանին զՓովկաս, և Թագաւորեաց Հերակղ այր քաջ և իմաստուն. և ուրախ եղեւ զօրն և քաղաքն և հանդարտեցին ։

Իսկ Թագաւորն Պարսից յորժամ տիրեաց Անջագետաց, առաքեաց առ նոսա եպիսկոպոսս նեստորականս և քաղկեդոնիկս. և անուն էր գլխաւորին Մախշիմա. բայց ոչ ընկալան զնոսա ուղղափառքն, այլ գրեցին առ Թագաւորն աղաչանս զի մի խախտեսցէ ըզհայրենի կրօնս նոցա ։ և ունկնդիր եղեւ նոցա Թագաւորն Խոսրով և անդէն կոչեաց զնոսա. և նոքա խնդրեցին 'ի Թագաւորէն կոչել զգլխաւորսն 'ի նոցանէ և հարցանել զպատճառս չընդունելութեան նոցա. և Թագաւորն ախորժէր եւս 'ի վաղուց գիտել: Թէ զի՞նչ է հակառակութիւն 'ի Քրիստոնեայս վասն որոյ առաքեաց 'ի Հայս և յԱսորիս. և առ ինքն կոչեաց զարս աստիճանաւորս զիմաստունս, և գնաց մեծ կաթողիկոսն Հայոց Ներսէս. և պատրիարքն Ասորոց ու-

ղափառաց Աթանաս. և Սեւերիանոս եղբայր իւր։ Եւ տեսեալ զմիմեանս ժողովեալքն ՚ի Հայոց և յԱսորոց խնդացին (և ուրախացան) և գոհացան զԱստուծոյ։ Եւ արարեալ բազում քննութիւնս հարցման և պատասխանոյ՝ պարտեցան ՚ի ճշմարտութենէն Նեստորականքն և Քաղկեդոնիկքն. և զգացուցին Թագաւորին. և կոչեաց զժողովն առաջի իւր և ասէ. որպէս կարող իցեմ ես հասկանալ՝ ասացէք ինձ զհակառակութիւնդ ձեր. ասեն Նեստորականքն և Քաղկեդոնիկքն։

Ամենայն քրիստոնեայք խոստովանիմք ըզՔրիստոս Աստուած յաւիտենից. և յետ ժամանակաց վասն մեղաց մարդկային բնութեանս մարդ եղեալ. բայց առանձինն մեք զայս ասեմք, եթէ երկու բնութիւն է. զի մարդն մեղաւ, մարդն մեռաւ. Աստուածն. զի ոչ մեղաւ. և ոչ մեռաւ։ Իսկ դոքա ասեն մի բնութիւն Աստուծոյ և մարդոյն. և զայն մեռեալ խաչիւ և յարուցեալ և համբարձեալ։ Եւ ուղղափառքն ասեն այդ զատ բան է և յերկար ժամանակօք. և ժողովովք և Թագաւորօք քննած և հաստատած, այն զոր մեք ունիմք, և դոքա յետոյ աւերեցին։

Եւ ասէ Թագաւորն ո՞վ էին Թագաւորքն որովք արմատացաւ հաւատդ ձեր։

Իւր տանն Կոստանդին մեծն. և Թէոդոս մեծն. և Թէոդոսիոս միւսն որդի Արկադեայ։

Իւր տանն Վաղենտինիանոսին իսկ Մարկիանոս ոչ էր թագաւոր. և նորա ժողովն տակաւ էր։

Իւր տանն ուղղափառքն. այն էր արքայ առ երից առաջնոցն, զոր ոչ ընդունիմք։

Նաև թագաւորին լուայ զի պատուեցարուք 'ի գրոցն ձերոց դուք որ զՄարկիանոսն մեծարէք. այլ ես ոչ հաւատամ զՄարկիանոսին թագաւորացն. և ճշմարիտ թուի ինձ տեղին, թէ մահ մարդոյ փրկութիւն ոչ կարէ առնել. և այն որ համայն եղեւ նման խառնիլ ընդ մարմնոյ, կարծեմ թէ և ոչ համբենա ընդ բաժանելն. և ես յորժամ եկի 'ի Միջագետս, լուայ զայդպիսի զկծմունս յերկուց կողմանցդ. և եղեւ պօղականացն իմոց հիւանդացելոց բժշկութիւն 'ի հայածականացն Մօրկայ. վասն մահ տանելոյն Նատուծոյ։ Նայլ և պատմեցին ինձ զօրքն իմ հրաշս ինչ, (դասք) մասք տանն յեկեղեցի մի լցեալ ժողովրդօք, և երէցն կատարէր զաղօթս պատարագին խորհրդոյ և կատարեցաք զխաղաղութիւնն յեկեղեցւոջն. և երէցն ոչ տեսեալ և ոչ հայեցաւ 'ի մեզ. և զարմացաք և տեսաք հացս բրդեալ բաւա-

կամ երեք արանց 'ի գինի. զի կամէր տալ 'ի նմանէ հինգ հարիւր արանցն զոր սպանաք. և բռնադատեցաք զնա ասել մեզ զի՞նչ է այդ. և ասաց այս մարմին և արիւն Աստուածոյ իմոյ է, որ մեռաւ վասն իմ. և ապա նեղեցաք զնա և կերաք զամենայն. և յետ այնորիկ սպանաք զնա և բացեալ զփոր նորա ոչ ինչ գտաք. և եղեւ այս յերկիրն Նդու-րին որ այդպէս խոստովանեսին. և ես յոյժ եմ հիացեալ. քանզի հարցաք ամեն ցքահա-նայն թէ հոգեւո՞ր է կերակուրդ. թէ մարմ-նաւոր. և նա ասաց հոգեւոր. և ճշմարիտ ասաց։

Արդ ես այնմ վկայեմ հրաւացի գոլ, և այսպիսի բանք ոչ 'ի նմանէ, այլ յԱստու-ածոյ ազդմանէն, որպէս Փարաւոնին, և Նաբուգոդոնոսորայն և Բաղդասարու. Վասն որոյ պատուեաց մեծարեաց զմեծ կաթու-ղիկոսն Հայոց և զպատրիարքն և զսուրբն Սեւերոս. և լուաք թէ մկրտել ետ զորդին իւր, և ետ սան հայրապետին Հայոց. և զաշխարհն Պարսից յանձն արար նմա խնա-մել զՔրիստոնեայսն որ անդ, ձեռնադրել անդ եպիսկոպոսս և քահանայս։

Եւ այսպէս Աստուած պատուաւորէր իւր ժառաւորէ։

Ասացից և վասն Աթանասայ պատրիարքի և Սեւերոսի եղբօր նորա, թէ որպէս եղեւ ընտրութիւն նոցա, և կամ ուստի էին։

Այր մի էր ՚ի Սամոսատայ երկիւղած ՚ի Տեառնէ, որ մեռաւ և եթող զաստացեալսն Աթանաս և Սեւերոս փոքր մանկունս ընդ մօրն, որոյ Անհիա էր անունն. որ սպասաւորէր զամենայն ինչս իւր աղքատաց. և եա զմանկունսն Աստուծոյ նուէրս, և մնացանէր զնոսա աղօթիւք և հաւատովք և յասով մեծաւ. զի յորժամ արտաքոյ տեսանէր եպիսկոպոս և միակեացս և քահանայս. առաջի անկեալ հայցէր աղօթս և ասէր. կընքեա զիս խաչիւ, և ինքն տարածէր զթեւսըն, և որպէս զգոյաւոր ինչ ծրարէր և տարեալ թափէր ՚ի գլուխս տղայոցն, կոչելով զնոսա առ ինքն. և հարցանէին տղայքն զինչ է այդ մայր. և նա ասէր օրհնութիւն է այս որդեակք, զոր առի ձեզ ՚ի սրբոց (Աստուծոյ) առէք պահեցէք երկիւղիւ Տեառն

Եւ եա զնոսա ՚ի դպրոց. և յետ սակաւու ՚ի վանս սրբոյն Յովհաննիսի. և ՚ի կատարման հասակի նոցա եառն Աթանասայ ուղտս բերել նոքօք զպէտս վանացն։

Յաւուրսն յայնոսիկ կատարեցաւ պատրիարքն ուղղափառաց. և ժողովեցան ՚ի

վասն հաչակաւոր բազմութիւն եղբարց յԱրուծածից վանք կոչեցեալն. զի ընտրութեամբ ըստ Աստուածոյ կամացն դիցեն պատրիարք. և ընտրեցին արս երիս, և գրեցին զանուանս նոցա յերեք թուղթ. և 'ի թուղթ մի զՔրիստոս անուանն. և եդին զնոսա 'ի մէջըս գնդեալ մոմոց և ծածկեցին. և արարեալ հսկումն՝ եդին 'ի սեղանն, և մատեաւ և 'ի վերայ պատարագ. և յետ պատարագին առին զմի 'ի մոմոցն և բացին. և ահա Քրիստոսի անուն էր. և ընտրեցին երեք այր այլ և նոյնպէս արարին. եւ դարձեալ եկն Քրիստոսին. և փոխեցին երեք այլ և արարեալ զարժանն, եկն նոյնպէս Քրիստոսի անուանն. և գիտացին թէ ոչ ընտրեաց 'ի նոցանէ Տէր. եւ զՔրիստոսին վասն այնորիկ գրեն. որ թէ յերեք անուանէն միայն անուանն գայ, մի այլ անուան 'ի մոմոցն, թէ Քրիստոսի անուանն գայ՝ ապա է ընդունելի. զի Քրիստոս վկայեաց նմա։ Իսկ թէ այլ մարդոյ անուն գայ յերկուցն որ կան 'ի տեղն՝ չէ ընդունելի, զի Քրիստոս ոչ վկայեաց. և թէ միայն Քրիստոսին գայ զառաջինն, երեւի թէ Քրիստոս միայն է Քահանայապետն. յընտրելոցն չէ ոք արժանի։

Իսկ ապա երեք այլ զկնի միմեանց հրա-

կեցին և լացին առաջի Աստուծոյ. և երեւեցաւ Քրիստոս 'ի վերայ սեղանոյն և ասէ. վաղիւն ընդ բանալ դրանն առաքեմ առ ձեզ այր մի Աթանաս անուն, նա է արժանի. և գնայ նա ուղտիւք, և այդ նշանակ ձեզ. որպէս և եղեւն իսկ:

Եւ խնդաց բազմութիւնն. և սպասեցին իրայն նոյնպէս աղօթիւք, և 'ի ժամ առաւօտուն կայր առ դրանն. և հարցեալ զանունն, զուարձացան և բազում աղաչանօք և երկիւղիւն Աստուծոյ ածին 'ի հաւան և ձեռնադրեցին. և յետ ձեռնադրութեանն ելաց առաջի նոցա և ասէ:

Սիրոյն Քրիստոսի աղաչեմ զձեզ ծանուցէք զբանդ, և թողլ տուք ինձ հանդերձիւս երթալ 'ի վանս իմ և լինել զաւարտն իմ. զի մօտ է ժամանակս, և ապաքէն այնպէս:

Եւ ոչ ծածկեցաւ յետ այնորիկ. և խնդրեցին զնա և գտին. և հռչակեցաւ անուն նորա մեծամեծ նշանօք, և եղբայր նորա եղեւ այր սուրբ և սքանչելի. յաղագս որոյ յոյժ սիրեցեալ եղեւ. յաշխարհէն Հայոց 'ի մեծամեծաց և 'ի փոքունց:

Եւ Հերակլեայ 'ի քսան և մի ամին Խոսրովու Պարսից արքայի թագաւորեալ առաքեաց առ նա և ասէ. արա ընդ մեզ խա

ղաղութիւն. և այդրէն դարձո առ քեզ ըզզօրանս քո. զի մեռաւ Փոկաս սպանողն Մօրկայ. և մեք ոչ ինչ մեղաք քեզ: Եւ ոչ անսաց Խոսրով։

Այլ ել նա ՚ի բանի անդ. և եկն ՚ի Կեսարիա Հայոց ՚ի յամրութիւն զօրաց իւրոց. և կոտորեաց զհազարս հազարաց, և բիւրս բիւրուց և դարձաւ։

Իսկ Շահրպարզն ՚ի չորրորդ ամին Հերակլեայ հնազանդեաց զԴամասկոս Պարսից. և ՚ի գալ տարւոյն զԳալիլիա. և ՚ի վեցերորդ ամին Հերակլեայ առ զԵրուսաղէմ, և սպան ՚ի նմա երեսուն հազար անձինս և գերեաց զայլսն Հրէիցն ոչ մեղանչելով զառաջինն. վասն որոյ սակաւ գնոյ առեալ ՚ի քրիստոնէիցն սպանանէին բայց զկնի ջնջեաց զՀրէայսն յԵրուսաղեմէ և յամենայն սահմանաց նորա. և առեալ Շահրպարզն զխաչն Քրիստոսի զմասն բաժնի Անտիոքու, զոր տարեալ էին յԵրուսաղէմ. և առաքեաց զնա ՚ի Պարս առաքելով ընդ նմա զԶաքարիա պատրիարքն Երուսաղեմի ՚ի պատիւ խաչին սպասաւոր նմա։

Եւ զկնի ամի միոյ չոգաւ յԵգիպտոս և առ զնա. և հնազանդեաց զամենայն Լիբիա Պարսից մինչև ցՔուշանս։

Եւ 'ի նոյն ամի առաքեաց Խոսրով զՇահէն զօրագլուխ իւր, որ եկն 'ի Կիւլիկիայ և առ զնա. և ծանր աւարաւ դարձաւ 'ի Պարս, մինչև տանել նմա սիւնս կճեայս (1) և անօթս պղնձիս:

Իսկ Հերակլ զԿոստանդին որդին իւր անուանեաց Օգոստոս, և առաքեաց ընդդէմ զօրացն Պարսից. և ոչ վստահացաւ պատահել նոցա, և դարձաւ անդրէն:

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Յաղագս որ յայսմ ժամանակի երևեցաւ Մահմետ որդի Աբդլլահի 'ի Թուին Հայոց վաթսուն և եւթն. զայսու ժամանակօք խաւարեցաւ կէս արեգականն յարեգ աշնանամտին մինչև 'ի քաղոց ամիս:*

Յայսմ ժամանակի երևեցաւ Մահմետ որդի Աբդլլայի Աթրա Արաբիա (2). և է Արաբիա Ափրատ գետոյ մինչև 'ի ծովն Հարաւոյ. և յարևմտից 'ի կարմիր ծովէն մինչև յարևելս 'ի Պարսից ծովն: Եւ բնակիչքն կոչին Իսմայելացիք՝ վասն Իսմայելի, և Սարակինոսք (3)՝ վասն Սառայի. զի

(1) Մի օրի. կճճք:
(2) Երկու օրի. 'ի Աեփրա Արաբացի:
(3) Սարբինոսք:

յանուն Սառայի ծնաւ Իսմայէլ որդեգրու-թեամբ. և կոչին Ագարացիք՝ վասն Ագարայ. և Մադիանացիք՝ վասն Մադանայ որդւոյ Կենդուրայ:

Այս Մահմէտ երանէր յԱթրապ քաղա-քէ և գնայր վաճառականութեամբ յԵգիպ-տոս և ՚ի Պաղեստինէ. և երբեւ ծանօթու-թիւն նմա լինի Հրէից. և ուսուցին նմա զօրէնսն, և հաստատեց յԱստուած. և ետուն նմա կին, և երթեալ քարոզեաց ազգին իւ-րում. և ոմանք հաւատացին և այլք փա-խուցին զնա իբրեւ զմոլեգնեալ. և ել տա-կաւուք յանապատ և յարեցան ՚ի նա այլք: Եւ երթայր նոքօք գերէր կողոպտէր զանհա-ւատսն՝ և զհաւանեալսն յանկուցանէր յինքն:

Եւ սիրեցին զնա Հրեայքն և տարան առ ինքեանս. և նովաւ հալածեցին զզօրսն Պարսից. և ել համբաւ զնմանէ, և գային կուտէին առ նա. և տիրեցին բազում գա-ւառաց. և հռչակեցաւ անուն նորա յինն հարիւր երեսուն և վեց թուին Յունաց. և ՚ի վաթսուն եւթն թուին Հայոց, և յեր-կոտասաներորդ ամի թագաւորութեան Հերակլեայ:

Զայսու ժամանակաւ խաւարեցաւ կէս արեգականն յարեգ յաշնանամտին մինչեւ ՚ի

և գրեաց այսպէս. «Շահրպարզ և Պարատօզան հաւատարիմք իմ։ Ընդ գալ Թղթոյդ առ ձեզ. երեք հարիւր իշխանք որոց անուանք այդ և այդ գլխատեցէք. և գրեաց զանուանսն. և տարաւ եցոյց մեծամեծացն և Պարատօզանայ. և դառնացան և անարգեցին զԽոսրով. և արարին սէր ընդ Հերակլ. և դարձան 'ի Պարս. և առաքեաց Թագաւորն Հերակլ առ Թագաւորն հիւսիսոյ Խաքան. զի տացէ նմա զդուստր իւր Եւդոկիա 'ի կնութիւն. և խնդրեաց 'ի նմանէ քառասուն հազար հեծեալս 'ի վերայ Պարսից. և յանձին կալաւ Խաքանն. և խոստացաւ առաքել զոր խնդրեացն ընդ դուռն Կասպից, զի իմ բան ինչ է առ Փայտակարան քաղաք աւերել զնա։ Եւ լուեալ Հերակլեայ ել 'ի Հայս ընդ առաջ հիւսիսականաց, զի նոքօք երթիցէ 'ի վերայ Պարսից. և լուեալ Խոսրով որ ինչ եղեւ, և ժողովեաց զօրս. և կացոյց նոցա գլուխ զՍողիբահան, և առաքեաց ընդդէմ Հերակլեայ. և Հերակլ զհիւսիսականսն առեալ, չոգաւ ընդ առաջ Սողիբահանայ, և եհար զնա իսպառ. և իմացեալ Խոսրովու փախեաւ 'ի Սադան (1) յամրոց իւր։

(1) Երկու օրի. Սադար դա ամրոց իւր.

Իսկ Շիրի որդի Խոսրովու կայր 'ի բանտի, ել անտի հրամանաւ Պարսից. եւ սպան զհայր իւր, եւ թագաւորեաց. եւ Հերակլ դարձաւ 'ի Նինուէ ձմերել անդ։

Նա առաքեաց Շիրի առ Հերակլ խնդրել զխաղաղութիւն. եւ հաւանեցաւ Հերակլ, եւ առաքեաց զԹէոդորիկէ զեղբայր 'ի Միջագետս եւ չոգաւ յՈւռհայ։ եւ Հրեայքն որ անդ բռնացան ընդդէմ նորա եւ առեալ զքաղաքն կոտորեաց զբազումս 'ի նոցանէ, եւ Հերակլ դարձաւ 'ի Թէոդոսուպօլիս. եւ տկարացոյց զՀայս վասն ազխոտութեանն Եզրի նոցա առաջնորդի։ Բայց ոչ կարաց զամենեսեան որպէս կարծէրն, հայելով Աստուծոյ 'ի քրտունս նահատակին Գրիգորի. եւ յետ այնորիկ եկն յՈւռհայ, եւ ելին ընդ առաջ նորա բազմութիւն եկեղեցականաց. քանզի վանորայք լերինն առհասարակ եկին եւ խառնեցան 'ի բնակիչս քաղաքին, որոց թիւն էր ինն հազար. եւ պատկառեաց թագաւորն. եւ խոնարհեալ երկիր եպագ սրբութեանցն եւ ասէ. ոչ է արժան սնմիան առնել զմեզ յաղօթից սոցա թէպէտ մի բնութեանն են սիրողք. եւ 'ի տօնի ծննդեանն էր մուտ նորա 'ի քաղաքն. չոգաւ 'ի սուրբն Սոփի, եւ մատոյց ընծայս

եկեղեցւոյն և քահանայից. և 'ի ժամ պատարագին խնդրեաց հաղորդիլ, և ասէ ցնա արքեպիսկոպոսն Եսայի. նախ նզովեա՝ ըզտումարն Լեւոնի և զժողովն Քաղկեդոնի. և բարկացաւ Թագաւորն. և առ զեկեղեցւոյն բանալին և ել. և յետ պատարագին արտաքս եհան զնոսա յեկեղեցւոյն, (զքանայսն) եւ ցՔաղկեդոնիկսն:

Եւ սուրբն Աթանաս պատրիարքն եկեալ յԱնտաքայ եկն 'ի Մելիտէն 'ի պատահումն Թագաւորին, և երկոտասան եպիսկոպոսք ընդ նմա, որք էին այսոքիկ՝ Թովմաս Թրմուրին, Կոստի Հեմսայ, Սարգիս Արիսոյ, Յովհաննէս Կիւրիսոյ, Թոմայ Տարապօլսոյ, Դանիէլ Խառանու, Սեւերէ Կնշրոյ, Աթանասիոս Յարապիոյ, Կոզմա Եպիփանոյ, որ 'ի Կիւլիկիա. միւս Սեւերէ Սամոստիոյ, Եսայի յՈւռհայոյ, որ և գնաց առ նա պատմել որ ինչ եղեւն. և 'ի գալ Թագաւորին 'ի Մնբէճ, տեսին զնա անդ և ասեն (ցնա). մի առներ արքայ սիրելի մեզ զփառս Պարսից քան զքրիստոնէից. և մի վանել փութացիր զճշմարտութիւնն:

Իսկ Թագաւորն հասկացաւ զբանն՝ և նստաւ 'ի քննութիւն զաւուրս երկոտասան 'իւրովք իմաստնովք խորհրդականովք ընդ-

դէմ ուղղափառացն. և յաղթեաց ճշմարտութիւնն. և ասէ Թագաւորն՝ բիծ ինչ ոչ գոյ 'ի ձեզ, այլ զմերս պահեսցուք մեք. և գնաց յԱնտաք. և խորհեցան (ընդ միմեանս) իշխանքն և եկեղեցականք քաղաքին, և որք 'ի դրան արքունի էին, և ասեն ցԹագաւորն. եթէ ոչ պատերազմիս երեւելապէս ընդ ուսմանդ ընդ այդ՝ զոր առեն Հռովմայեցիք և Յոյնք, ոչ յերկարէ Թագաւորութիւնդ քո. այլ և ոչ հաճի Աստուած 'ի քեզ, տապալել զայնքան արանց աշխատութիւն. և ոչ յաւելուլ 'ի նոսա:

Եւ լուաւ նոցա Թագաւորն և ետ հրաման նախատելոյ և չարչարելոյ զմիադաւանսն. և մի կալցին առ իս ասէ համարձակութիւն և մի կալցին կաթուղիկէ եկեղեցիս, քանզի դարձուցի ասէ առ իս զմեծն Հայք. և ո՞ք են որք ոչ հնազանդին ինձ. և զայն ոչ գիտաց անմիտն զի թէ կաշառեաց զանմտութիւն Եզրի, և պատրեաց[1] զանիմաստութիւն նորա: Այլ պարկեշտ վանորայքն արեւելից և բազում մասն աշխարհին արհամարհեցին զնա, և զխաբեալսն 'ի նմանէ անուանեցին կաթուղիկոս. մինչեւ ամենեւին բարձաւ հետք չարութեանն 'ի նոցանէ:

(1) Երկու օրի. պատրեաց.

Իսկ նա սիրեաց զփառս մարդկան, և ոչ զփառս Աստուծոյ. և պատուհէ արժանեաց իւրոց:

Իսկ թագաւորն Պարսից Հերի ըզնի ինքն ամաց մեռաւ, և թագաւորեաց Արտաշիր որդի նորա ամս երկու. և զսա եսպան Շահրպարազն, և ինքն թագաւորեաց կամակցութեամբ Հերակլեայ: Եւ զեր Պարազն (1) ժողովս կուտեաց ի վերայ նորա. առաքեցաւ նմա զօր յօգնականութիւն. և սպան զնա: Եւ ամ մի կալեալ զթագաւորութիւնն Շահրպարազ որ նա ինքն է Խոռեամ, և սպանաւ. և առ զթագաւորութիւնն Բորան դուստր Խոսրովու սակաւ աւուրս և մեռաւ: Եւ թագաւորեաց Զարմանդուխտ քոյր նորա:

Եւ զկնի նորա առին, Շահրօրի և Դաքուրան, Խոսրով, Պերոզ, Զարմանդուխտ, Որմիզդ. ընդ ամենեսեան ամս երկու:

Իսկ Հերակլ յաւել ի չարիս իւր, և առ կին զՄարտինէ դուստր եղբօր իւրոյ ի ծերութեան իւրում. և ծնաւ ի նմանէ զՀերակլէ որդի անօրէնութեան:

Եւ Մահմէտն բռնացեալ ի վերայ բազում գաւառաց և քարոզեալ կրօնս ըստ կա-

(1) Ընթեռ՝ Շահրպարազն.

մաց իւրոց եղեալ օրէնս կալեալ զիշխանութիւնն ամս եւթն, մեռաւ և փոխեաց Ռուբաքր զնա ամս երկու. և ամիս եւթն:

Եւ զկնի նորա Ոմար էառ զիշխանութիւննոր էառ զՍարա յասորի իշխանէ. և առաքեաց զօր մեծ 'ի Պարսս. և գտին ըզնոսա ամբոխեալս, զի սպանեալ էր զԱրմիզդ. և կամէր թագաւորել Շղտաձասս. և առին բազում գերի և աւար 'ի Պարսից. և դարձան և հարին զզօրն Յունաց և զզօրավար նոցա զՍարգիս. և զօրացան 'ի վերայ Պարսից և Յունաց, և եղեն իշխանութիւն մեծ:

Իսկ Հերակլ ժողովեաց զօրս ընդդէմ նոցա և առաքեաց 'ի վերայ նոցա, զԹէոդորիկէ զեղբայր իւր, եղեալ գլուխ զօրացն. որք եկին իջին (1) յԱնտաք 'ի գիւղն որ կոչի Կուսիդ: Եւ կայր անդ սիւնակեաց մի Արմէոն անուն. և գնաց առ նա Թէոդորիկէ և մեծամեծք իւր ընդ նմա խնդրել աղօթս, և հարցանել (2) նովաւ զՏէր. և նա ասաց ցնոսա ուխտեցէք ինձ զի 'ի յաջողիլ նձեզ 'ի Տեառնէ անհետ առնիցէք զհակառակորդըս սուրբ ժողովյն Քաղկեդոնի. և ասեն երդնումք քեզ զի արասցուք զայդ. և ըզդոյն պատուէր ունիմք 'ի թագաւորէն. և

(1) Ոմանք՝ իջան: (2) Երկու օրի. հայցել:

ասէ ցնոսա , երթայք աղօթիւք սուրբ ժողովոյն . և իբրև գնային սրտմտութիւն Տեառն եղև 'ի վերայ նոցա . և փախեան առաջի թշնամեայն , և մաշեցան 'ի սուր սուսերի . և առան ամենայն պատրաստութիւնք նոցա , և մաղապուր զերծաւ Թէոդորիկէ սեաւ երեսօք յԱստուծոյ և 'ի մարդկանէ ։

Իսկ Հերակլ դարձեալ քաջալերեցաւ յանձն իւր , և հաւաքեաց զօրս և ետ 'ի ձեռն որդւոյն Շահրպարզայ , որ կայր առ նմա պատանդս 'ի հօրէն տուեալ՝ անուանի հօրն կոչեցեալ . և չոգաւ եւթանասուն հազարաւ , և կռուեցաւ ընդ Տաճկին առ պետովն Դամասկոսի . և պարտեցաւ դարձեալ առաջի նոցա . և փախեաւ զօրն Յունաց , և անկան 'ի նոցանէ քառասուն հազարք ։ Եւ Շահրպարզն անկաւ 'ի Հեմս , և յղեաց առ նա Ումար , զի ուխտեսցէ նմա գալ առ նա , և առնուլ զօրս և երթալ 'ի Պարսս , և դարձուցանել առ նա զթագաւորութիւնն Պարսից . և կոչեաց զնա առ ինքն ուխտիւ ։ Եւ քանզի կային առ Ումար դստերք Խոսրովու 'ի գերութեան , ասացին ցնա . որդի ապստամբի է և երթայ կորուսանէ զզօրդ , և թագաւորէ 'ի Պարսս հակառակ քեզ . և

յերկվարէն, և եխուռք (խբեաց) զաչս իւր․ և ապանի զնա սրով իւրով։ Քանզի իմացաք երկրպագուանն եթէ բարկութիւն Տեառն հանեալ է ՚ի վերայ նոցա ։

Յաւուրսն յայնոսիկ ժողովեցան բազմութիւն քրիստոնէից ՚ի վանս սրբոյն Սիմէոնի կատարելոյ տօն վկայիցն․ և իմացան Տաճիկքն և երթեալ կոտորեցին զնոսա և պաթակղեցան բազումք․ զի ոչ փրկեաց զնոսա Տէր․ և զայս ոչ իմացան զի սահման առաջնոց տօնողացն բարձաւ․ որք պահօք և արտասուօք և հաւատովք կատարէին․ և այժմս լուծութեամբ ուտելով և արբեցութեամբ տօնս առնուանեն, որ չէ հաճոյ Աստուծոյ․ այլ ՚ի մեղս և ՚ի դատապարտութիւն անձանց։

Յետ այսորիկ դարձեալ եկն Սղամանոս թագաւորն Պարսից ՚ի վերայ Տաճկաց առ Տիգրիս գետով։ Եւ յորժամ տեսին զբազմութիւն նոցա, քակեցին զկամուրջ գետոյն ։

Եւ ասեն Տաճիկքն եկայք անցցուք ընդ գետս և գնասցուք առ նոսա, զի այն որ օգնեաց մեզ ՚ի ցամաքի, նոյն կարող է և ՚ի ջուրս․ և զայս ասացեալ թափեցան ՚ի գետըն և անցին․ և մի ՚ի նոցանէ ոչ վնասեցաւ․ և հարին զՊարսիկքն և հալածեցին․

և չորիցս անգամ կռուեալ Մղտածատ ընդ Տաճիկան, հարաւ (1) ՚ի նոցանէ։ Եւ այս գիտացեալ եթէ եկեալ է կատարած նոցա փախեաւ ՚ի Միկխատան յերկիրն Մարագանի ՚ի սահմանս Թուրքաց. և եկաց անդ ամս հինգ, սպանեալ ՚ի Թուրքաց։ Եւ այսու աւրինակաւ բարձաւ գոռ թագաւորութիւնն Պարսից, որ կոչի Սասանեան, տևեալ ամս չորեք հարիւր տասն և մին. և առին Տաճիկքն զթագաւորութիւնն Պարսից։

Եւ գնաց Ումար յԵգիպտոս. և եկն ընդ առաջ նորա եպիսկոպոսն Կիրայ (2) և խոստացաւ տալ նմա յամի երկու հազար դահեկան, զի մի մտցէ նա յԵգիպտոս. և հաւանեցաւ Ումար, և դարձաւ։ Եւ լուաւ Հերակլ զԿիրայէն. և առաքեաց ոստիկան Եգիպտոսի զՄանուէլ հայկազնի և արտաքսեաց զԿիրոս. և յորժամ եկին հարկաւորքն, ասէ Մանուէլ. ոչ ունիմ ես փիլոն եթէ տայց քեզ ոսկի. այլ թուրս՝ զոր տամ քեզ։ Եւ լուեալ Ումարայ չոգաւ յԵգիպտոս և առ զնա. և դարձաւ եկն յԵրուսաղէմ։ Եւ իբրև ետես Սոփրոնիոս եպիսկոպոսն Երուսաղեմի զՈւմար խամ և հին հանդերձիւ և հին մաշկով ՚ի մորթոց մաքեայ, եբեր առաջի

(1) Մի օրի. հալածեցաւ։ (2) Մի օրի. Կիւրիոս։

նորա պատուական հանդերձս, զի զգեցայց. և աղաչէր ես. և ասէ (Ամարն) ցնա. ես ետ ինձ Աստուած զգանձս Պարսից 'ի Տիրոն զՅունաց, զԴամասկեայն, և զԿիպրոսին, և այլս բազումս. և ես ոչ փոխեցի զհանդերձըս աղքատութեան իմոյ. զի մի գուցէ մոռանամ զիս թէ ով իցեմ. և ոչ զայդ առից և ծածկեցից զաղքատութիւն իմ. և պատուեաց զեպիսկոպոսն, և ետ զաշխարհն 'ի ձեռըս նորա. և հրամայեաց նմա 'ի տեղի տաճարին շինել մզկիթ: Եւ գնաց Ամար յԱսորիս (1): Իսկ զօրավարութիւն Յովհաննէս, որ կայր յՈւռհայ, եկն առ Ամար 'ի Կնշրին, և ետ նմա հարիւր հազար դահեկան հարկս տարւոյ միոյ. զի մի մտցէ նա 'ի Միջագետս յարեւելից կողմանէ. զոր լուեալ Հերակլեայ ցասեաւ և կալաւ զՅովհաննէս. և ետ 'ի կապանս. քանզի Աստուած որ կամէր եղծանել զնա, ետ նմա հպարտ և դառն միտըս: Վասն որոյ 'ի գալ տարւոյն եկին առին զՄիջագետս և տիրեցին:

Իսկ Ուռհայ քաղաք իմաստութեամբ իւրով եհան զօրսն Յունաց որ անդ կային. և գնացին խաղաղութեամբ. և ետ Ամար զգլխահարկս քրիստոնէից որ էին ընդ իշխա-

(1) Մի օրի. յԱսորիս:

նութեամբ նորա ։ Իսկ զԹմուզն (1) և զՏաճ-րայ կտորեաց Ամիր, զի բռնացան ընդդէմ նորա. յորում ամի մեռաւ Հերակլ Թագաւորեալ ամս վեց ։

Սա եթող երիս որդիս զԿոստանդիանոս՝ որ Թագաւորեաց ամս չորս. զոր եսպան դեղով Մարտինէ կինն Հերակլեայ, և Թագաւորեցոյց զիւր որդին զՀրակլեակ. զոր իշխանքն սպանին ։ Եւ երկրորդն Հերակլիս զոր ոչ եդին զսա Թագաւոր իբր զծնունդ չար խառնակութեան. այլ զԿոստաս զորդին Կոստանդիանոսի զԹոռն Հերակլի ։

Իսկ Ամիր աղաչեցեալ ՚ի ծառայէ միոջէ առնել նմա դաստառան, և նա յերկարէր զգերըն. և ոխացեալ ծառայն սպան զնա դանակաւ խոցեալ զնա ՚ի կուշտն, յորժամ առանձնացեալ կայր յաղօթս. որ իշխեաց ամս տասն և երկու ։

Եւ եառն զպատիւ նորա Աւթմանայ. որ էր այր ագահ և խակ, և անցանէր զսահմանաւ (2) առաջնոցն. և սպառնացան նմա՝ եթէ ոչ կացցէ ՚ի չափու ։ Եւ եդին գլուխ զօրացն զԱւլին՝ որոյ առեալ զզօրսն չոգաւ ՚ի Կեսարիա և պաշար ընդ հարկաւ ։ Եւ անտի յարուցեալ գնաց յԱմմոնիա. և առեալ

(1) Յմանս՝ զԹըմուզն  (2) Յմանս ընդ սահմանաւ ։

աւար բազում, դարձաւ 'ի Կիւլիկիայ. և հնազանդեաց զնա ։

Եւ Թագաւորն Կոստաս բաժանեաց ըզզօրսն յերկուս. զբաժինն առաջին ետ 'ի ձեռս Վաղինեայ՝ որ չոգաւ 'ի Կիւլիկիա ։ և հալածեցաւ 'ի Տաճկաց. և զբաժինն երկրորդ ետ 'ի ձեռն Պաւլթի հայկազնոյ, որ չոգաւ զվերին կողմամբն, և հալածեաց ըզՀագարացիսն 'ի Կապպադովկիայ ։ Բայց զօրն Յունաց առնէին պղծագործութիւնս ընդ կանայս քրիստոնէիցն յերեսս արանց իւրեանց, և յափշտակէին զկարասիս նոցա. զոր իբրև լուաւ Պաւլթ՝ սաստեաց նոցա և ասէ. այդ մատնեաց զՔրիստոնեայս, զի ոչինչ է խտիր ընդ անհաւատսն և ընդ հաւատացեալս 'ի գործս աղտեղութեան. և առեալ զզօրսն դարձաւ 'ի Կոստանդնուպօլիս. և այլ ոչ կամէր առաջնորդել այնպիսեացն ։

Իսկ Մուաւի ետ ածել յԵգիպտոսէ նաւս հազար եւթն հարիւր. և ել նոքօք 'ի Կիպրոս կղզի, և խնդրեաց հնազանդութիւն և հարկ. զի խնայեսցէ 'ի նոսա ։

Իսկ նոքա ամրացան 'ի քաղաքս, և արարին ընդդէմ պատասխանի. և սուրն Հագարու զարթեաւ 'ի վերայ նոցա. և եղեն

քաղաքք նոցա ամուրք գերեզմանք նոցա. առին և զքաղաքն Կոստանդեայ ուր ամենայն զանձ կղզւոյն կայր. և արանցն ոչ գոյ թիւ զոր կոտորեցին զնոսա, և կորուսին իսպառ. և արարին պղծութիւն 'ի սուրբ կաթուղիկէն մեծ 'ի շինեալն Եպիփանու սրբոյ. զի ոչ գտին զեդեալ կանոնքն Եպիփանու 'ի նմա վասն հաւատոյ և գործոց. և լուաւ Մաւր աւարաւ անչափիւք և դարձաւ։ Եւ տուեալ մասն եպիսկոպոսացն յուղարկեաց զնոսա 'ի տեղիս իւրեանց։

Զայսու ժամանակօք գրեաց պատրիարքն Ասորւոց ուղղափառաց սուրբն Աթանաս առ պատուական Կաթուղիկոսն Հայոց զայս օրինակ։

«Հօր իմոյ և Տեառն Քրիստափորի 'ի Տէր խնդալ։

«Լուայ եթէ անմտութիւնն Եզրի ոչ եղեւ հաճոյ սրբութեանդ քո, և փառաւորեցի զՔրիստոս Աստուած, և զշնորհս նորա առ քեզ։ Յիշեցուցից քեզ հայրապետ պարկեշտ բան ինչ զոր գտի գրեալ սրբոյն Մարութայի ազգականին ձերոյ. եթէ Բարսումայ ապականիչն յաշակերտաց անտի Նեստորի էր, և յորժամ եղեւ սուրբ ժողովն Եփեսոսու նա կայր 'ի [illegible]ռահայ. և 'ի

Պարսս կաթուղիկոս էր Պաւլի (1) ձեռնադրեալն 'ի Հայոց: Գնացին նմա խնդրակք երիցունք վանից երկուք: Նոյնպէս և ընդ Բարսումայ կոչեցին 'ի ձեռն առն միոյ: Իսկ Բարսումայ արար պատասխանի թէ ես ընդ ձեռամբ Պաւլեայ կամ: Եթէ նա գայ և ես գամ: Իսկ Պաւլի անսաստակ եղեալ ոչ եկն. այլ գրեաց թուղթ 'ի ժողովն, և ասաց. մեք ընդ իշխանութեամբ անօրինաց կամք և չար տէրանց, և չեմք 'ի կամս մեր. վասն որոյ երկնչիմք եթէ կարծեն զմեզ բանսարկուս այդր եկեալք 'ի Պարսից. և սուրն սպանող հարցն մերոց և ոչ 'ի մեզ խնայեսցէ և ոչ 'ի հօտս մեր. այլ զոր ինչ և հոգին սուրբ խօսեսցի առ ձեզ, տուք առ իս բերել, և հաւանիմ: Եւ զարսն որ գնացին առ նա սիրով դարձոյց. և զթուղթն ոչ ետ 'ի ձեռս նոցա զի մի փնտռեսցեն. այլ ընթերցաւ առս երկու յիւրոցն, և այլափոխեաց զնոսա և առաքեաց թղթովն. զի և նոքա և գիրն լցեն զտեղի նորա:

"Իսկ նոքա եկին 'ի Մծբին և գտին ընդ Բարսումա անդ խոյս տուեալ 'ի կոչողացն յԵփեսոս. և հարցեալ զնոսա Բարսումայ, և ուսեալ զիրսն, խնդրեաց թուղթն և ասաց.

(1) Երկու օրի. սուրբն Պաւլի:

Պաւղի 'ի ձեռս նորա և զամենայն քրիստոնեայս որ ընդ իշխանութեամբ Պարսից. և ետ զօրս օրչափ և կամիցի. և չոգաւ առ Պաւղի:

«Նա ասէ ցնա ապաքէն լուար զհաւատն Նեստորի դու. և ասէ. լուայ զի նզովեցին զնա. զի ոչ պահեաց զաւանդ սուրբ առաքելոցն. և եղէցի նզովեալ: Նա բարկացեալ կատաղին այն եհատ զլեզու նորա, և առաքեաց առ Թագաւորն և ասէ. հայհոյեաց զՔեզ. և նա ասաց կորեա և զգլուխն: Նա արար այնպէս. և չոգաւ 'ի Բաղտատ և սերմանեաց անդ զՆեստորին. և գնաց 'ի Նինուէ. և ըմբռնեաց զարհեպիսկոպոսն Մարտիրոս, և երկոտասան եպիսկոպոսս ընդ նմա և երիցունս իննսուն, և ասէ ցնոսա. այլ ինչ ոչ խնդրեմ 'ի ձէնջ. հաղորդեցէ՛ք դուք զիս. կամ հաղորդեցարուք յինէն:

«Իսկ նոքա ասեն ոչ տամք զսրբութիւն շանց, և ոչ առնումք զսրբութիւն 'ի շանէ. և սրամտեալ սպան զերիցունսն. և զեպիսկոպոսունսն բերեալ 'ի Մծբին եդ 'ի բանտի 'ի տան Հրէի միոյ. և հանեալ անտի ետ քարկոծել զօրացն, և զմարմինսն կախեաց զփայտից. և երեւեցաւ 'ի վերայ նոցա նշան երկնաւոր փառաց. և հաւատաց Հրէ-

րեայն 'ի Քրիստոս ըստ կրօնից սպանելոյն ․ և մկրտեցաւ ։

«Իսկ մետասակարն այն գնաց եմուտ յեկեղեցի Հայոց և առաքեցին հալածեցին զնա և զզօրաւորն որ ընդ նմա ․ և գրեցին սպառնալիս , որ եթէ կրկնեսցեն զգալն հրով մաշին ։

«Իսկ պիղծն այն գրեաց առ Թագաւորն և ասաց ․ ապստամբեցին Հայք 'ի քէն , և զայրացոյց ․ զնա և գրեաց Թագաւորն առ Հայս զի երթիցեն արացեն պատասխանի վասն իրացն Թագաւորն Հայոց և Կաթուղիկոսն ։ Իսկ պատասխանեցին Հայք Պարսից՝ և ասեն ․ վասն հաւատոյ մեք քեզ ինչ ոչ պարտիմք ․ աւադիկ առաքեցաք զգիր երդմանդ քո , յորում գրեալ է ․ եթէ Հայք յորժամ դան առ մեզ 'ի գնալն մեր 'ի վերայ Թշնամեաց մերոց , եկեսցեն խաչիւք իւրեանց և քահանայիւք և օրհնաւոր կարգօք հարցն իւրեանց ։ Արդ եթէ ոչ ես դու 'ի բանս քո , ապա եւք և մեք յերդմանէ մերմէ ․ և ոչ գամք առ քեզ վասն այդր բանի ․ և ոչ դարձցի առ քեզ Մարտուսմայ եւ․ որք ընդ նմա , եթէ գան առ մեզ ։

«Իսկ այսու օրինակաւ (1) սուրն սատանայի

(1) Երկու օրի ․ Եւ զայս Եւ այսու պատճառաւ սուրբն սատանայի ։ Մի օրի ․ ըլն սատանայի ։

և երկրորդ ջրհեղեղն աշխարհի ոչ եմուտ 'ի Հայս. այլ դարձաւ 'ի վերայ Ասորոց. յե-ղես տեղիս արար ժողով հակառակ երից սուրբ ժողովոյն 'ի Կոստիբոսն 'ի Պադրի 'ի Պրոմիա (1). և գրեաց կանոնս զՆեստորին մի-տքս, և բռնադատէր դաւանել զայն. եւ զոչ հաւանեալն կողոպտէր, հալածէր. եւ զբազումս սպանանէր անողորմաբար. որոց Թիւ եկեղեցականացն սպանելոց ընդ. եպիս-կոպոս և ընդ քահանայս և ընդ սարկաւագ եւԹն հազար ութ հարիւր: Իսկ աշխար-հականացՙ Թիւ ոչ գոյր. զայսպիսիս աղէտս զոր կրեաց Ասորեստան գրեաց սուրբն Մա-րուԹայ, յորմէ դուք ապրեցարուք շնորհօքն Քրիստոսի:

«Եւ արդ աշխարհդ Պարսից եւ կող-մանքդ Նինուէի որ ընդ իմով իշխանու-Թեամբս է աԹոռոյս Անտիոքայ. և ես 'ի բազումս վտանգից միջի կալով. ոչ ժամանեմ խնամել զինացեալ ուղղափառսդ, զորս յանձն առնեմ սրբուԹեանդ ձերում հո-գալ ցաւակցաբար. և առաքել քարոզս և բժիշկս ուր մանաւանդ յաճախեաց հիւան-դուԹիւնն. և ըստ պատշաճի ձեռնադրեք նոցա հովիւս և տայք նոցա օգնուԹիւն եղ-

(1) Գրաւմիա:

քարց. մերովք աղաչանօք. ողջունեմք զամենայն աթոռակիցս ձեր մերովք աթոռակցովքս ’ի Քրիստոս Յիսուս Աստուած մեր յաւիտեան »:

Այլ մեք անդրէն դարձցուք ’ի յոճ կարգին մերոյ զոր թողաք:

Արդ ’ի յինն հարիւր վաթսուն և հինգ թուին Ասորոց, և Հայոց իննսուն և վեց՝ գնաց Ալլուր զօրավարն Տաճկաց ’ի Կիպրոս և յատակեաց. քակեաց ծախախիլ(1) արար զամենայն կղզին. և զմնացեալսն անդ ’ի Մաւեայ և զայլսն եւս ժողովեալսն ընդ հարկաւ արարեալ, դարձաւ:

Իսկ Մաւի չոգաւ յՌոդոն կղզի և առ զնա և աւերեաց. և տեսեալ անդ զպատկերսն պղնձի՝ որ մի էր յեւթն հրաշիցն՝ շըրջեալ պարանօք շատ աւուրբք ծգնեալ և հազիւ կարացեալ. և գտաւ չափ երկայնութեանն հարիւր եւթն ոտն. և վառեալ ’ի ներքոյ նորա հուր՝ քակեցան շամփուրքն. և գնեաց զնա Հրեայ մի ’ի Հեմսայ. և կալեաց ’ի նմանէ բեռինս երեք հազար. եւ տարաւ ’ի տուն իւր: Նա առ Մաւի զՄարուդ(2) կղզի, և զԿրուէ(3). և դարձաւ:

(1) Մի օրի. տակախիլ արար.

(2) Մի օրի. զՄարխուդ:

(3) Երկու օրի. զԿղուէ.

ոչ ընկալան ՚ի նմանէ ։ Սակայն նա ստրմա-նեաց և շշջէին զնմանէ ։

Իսկ Թէոդորիկէ կոմսն խնդրեաց ՚ի պապէն Հռովմայ որում՝ անուն էր Ագաթոն՝ զի արասցէ քննութիւն վասն այսորիկ ։

Իսկ պապականիչն Ագաթոն արար ժողով և հաստատեաց զհերձուածն Մաքսիմոսի ըն-կրնի հարիւր քսան և եւթն ամի ժողովոյն Քաղկեդոնի . քանզի տասցին երկու բնու-թեանն յատուկ կամք և գործք արժան է լինել . և մեք ասեմք , եթէ և անձն ևս ակ-նի , զի լցցի չափ չարեաց նոցա , և մի կաց-ցեն հեռի ՚ի Նեստորէ ։

Ի թուին Նսրուոյ ինն հարիւր վաթսուն և վեց , և Հայոց լինսուն և եւթն , յերե-սուն և եւթն ամին Տաճկաց , և յինն ամի իշխանութեանն Աւթմանայ , կազմել ետ Մաւի յոյժ բազմութիւն նաւաց ՚ի Տրա-պոլիս , երթալ ՚ի Կոստանդնուպոլիս . և էին ՚ի վերայ նաւացն երկու եղբարք որդիք քրիստոնէից . սոքա արձակեցին զգերիսն և այրեցին զնաւսն և ելեալ ՚ի մի նաւացն ինք-եանք գնացին ՚ի Հռովմ , զի Փռանկ էին ազգաւ ։

Իսկ Մաւի եւս զայրացեալ կազմեաց ա-ռաւել քան զառաջինն . և ետ ՚ի ձեռս

Ոլշուրին զի գնասցէ 'ի Կոստանդնուպօլիս :

Եւ լուեալ Թագաւորն Կոստոս, եթէ խորհին Տաճիկքն գնալ առ նա, հաւաքեաց զզօրս ըստ կարի եւ նաւս բաւականս, եւ չոգաւ 'ի վերայ նոցա 'ի Փիւնիկէ ընդ ծով եւ ընդ ցամաք. Կազմեցան եւ Հագարացիքն հրձնակի պատրաստութեամբ :

Իսկ 'ի գիշերին յորում վաղիւն մարտն լինէր, զարթոյց 'ի քնոյ զայրն երազալոյծ եւ ասէ. տեսի զիս 'ի Թեսաղոնիկէ 'ի խրախութեան : Նա պատասխանի այրն եւ ասէ. երանի թէ ոչ ննջեալ էիր եւ ոչ տեսեալ. զի Թեսաղոնիկէն յաղթութիւն այլոց թարգմանի. եւ սաստեաց նմա թագաւորն, եւ լռեաց. եւ 'ի վաղիւն խմբեցաւ պատերազմըն 'ի վերայ ծովուն ահեղ յոյժ, մինչ պղտորեցաւ յօդն փոշւով որպէս 'ի ցամաքի. եւ պարտեցաւ Կոստոս եւ փախեաւ, եւ անկաւ 'ի նմանէ քսան հազար արանց. եւ դարձոյց զՊողոմէոս իշխանն առ Մաւիա, զի մի գնասցէ 'ի Կոստանդնուպօլիս, եւ տացէ նոցա հարկս. եւ լուաւ Մաւիա եւ դարձաւ :

Բայց ստեաց ուխտին Կոստոս եւ ոչ առաքեաց զխոստացեալն. եւ դարձան Հագարացիքն 'ի Սուրիա յաւար. եւ եկն Պողոմէոս եւ եբեր հարկս երեք ամի, եւ զԳրիգոր զոր-

դին իւր պատանդ. և եհան զնոսա յերկրէն։

Յետ այսորիկ սակս կասկածանաց եւպան Կոստոս զեղբայր իւր զԹէոդոսիէ (1) և եղեւ ատեցեալ 'ի զօրացն. և գնաց 'ի Հռովմ՝ երեսաց նոցա. և նոքա յղեցին և կոչեցին անուրէն և յարեաւ 'ի գնալ. և չոգաւ մինչեւ 'ի Սիրակուսայ. և անդէն առաքեաց կոչեաց զորդիսն իւր զերեսին՝ զԿոստանդիոս, զՏիբերիոս, զՀերակլ. և ոչ ետուն զնոսա. այլ կոչեցին զնոսա Կեսարս. և անդէն պահեցին։

Յաւուրս յայսոսիկ սպանին Հագարացիք զՈւթման Թագաւորն իւրեանց յԱթրապ(2) քաղաքի վասն պղծութեանն իւրոյ. և առ զիշխանութիւնն Ալի փեսայն Մահմէտի 'ի վերայ Արաբիոյ և Ասորոց։

Իսկ Մաւի իշխանացաւ 'ի վերայ Եգիպտոսի, և զոր առեալն էր անձամբ. և կռուեցան ընդ միմեանս միանգամ և երկիցս, և բազումք սատակեցան 'ի մէջ նոցա։

Եւ զկնի այնորիկ ծառայ մի Մաւեայ չոգաւ նենգութեամբ առ Ալի և սպան զնա. և հնազանդեցան ամենեքեան Մաւեայ և փոխեցին զարքունիս իւրեանց յԱթրապեայ 'ի

(1) Մի օր. Թէոդոսիոսէ. Մի օր. Թէոդորիկէ.

(2) Երկու օր. Աթրապ քաղաքի.

Գամանակոս։ Եւ տիրեաց Մաւի ամս քսան. և աւերեաց մինչեւ 'ի Բիւթանիա զամենայն տունն Յունաց. և գաղայքն 'ի նմանէ ամենայն երկիր ։

Իսկ Թագաւորն Կոստանդին նեղեալ 'ի զօրացըն սպանաւ 'ի բաղանիս յԱնդրէասայ սողբատերպատէ 'ի Միւռամիա։ Եւ Թագաւորեցուցին զՊատրիկն Մեժէժ (1). այր քաջ և կորովի յիր և 'ի բան հայ ազգաւ և բարեպաշտօն։

Իսկ որդի Թագաւորին Կոստանդին զօրաժողով լեալ սպան զնա. և Թագաւորեաց ընդ եղբարս իւր ։

Իսկ զօրն Տաճկաց եկին յԱփրիկէ. եւ գերեցին ութսուն հազար անձինս. և վերստին դարձան 'ի Կիւլիկիա, և սպանին 'ի նոցանէ երեսուն հազար արանց յունական զօրքն, որ էր առաջին պարտութիւն նոցա ։

Եւ այր մի 'ի Բաղբաքայ Կալինիկէ անուն ճարտարութեամբ իւրով գործեաց զնաւփաթըն (2). և այրեաց զնաւսն 'ի ծովուն լցեալ զօրօք Տաճկաց, որ է սկիզբն գիւտին փայտի (3). և այրն Ասորի էր ազգաւ ։

(1) Որ է Մժէժ. Մի օրին. մեծ յոյժ։ Մի օրին. Մէժմէժ.

(2) Երկու օրին. զՆաւփաթն

(3) Մի օրին. և այն եղեւ սկիզբն գտանելոյ զնաւթն. ուստի ինչ գիւղական նաւթոյ։

Յայսմ ամի երեւեցաւ ծիածանդ զգեշեր մի բովանդակ զերկնիւք ծածկելով զնա. և զանհի հարաւ երկիր 'ի նմանէ :

Յերեք հարիւր կնն ամին Կոստընդեայ. ելին որիկայք և բնակեցան 'ի լեառն Լիբանանու և կոչեցան ապստամբք. և Ասորիք անուանեցին զնոսա Ջուռաճանս. (Թերեւս այսու պատճառաւ կոչին Վրացիք Ջուճանս 'ի Փռանկաց. զի ապստամբեցին 'ի Հայոց հաւատակցութենէ և 'ի ծառայութենէ). և չոգան Տաճիկք և սպառեցին զնոսա սպանմամբ :

Եւ 'ի նոյն ամին Յովհաննէս որդին Մեժեժայ հալածեաց զԿոստանդին զեւթն ամիս յաղագս քինու հօր իւրոյ. և սպանաւ 'ի նմանէ. և հպարտացեալ Կոստընդին յաղթութեամբն արհամարհեաց զեղբարսն իւր. և զԼեւոն իշխանն ծայրակտուր արար զի բարեկամ էր եղբարցն. և եղեալ նմա որդի, կոչեաց զանուն նորա Յուստինիանոս :

Իսկ Մաւի իշխանն Տաճկաց մեռաւ. և առ զիշխանութիւն նորա Իզիտ (1) որդի նորա ամս չորս, և մեռաւ. և շփոթեցաւ զօրն Տաճկաց զի Մուխթար ապստամբեաց 'ի Բաբելոնն, որ ասէր զինքն մարգարէ. եւ 'ի

(1) Ցայլ օրինակսն Եզիտ նշանակի :

յԱթրապ Աբդլլայ, և 'ի Դամասկոս որդին Իզիտի. և այս ծեր մի ասաց. ժողովեցարուք ամենեքեան, և զոր Աստուած ընտրէ նա է իշխան. և ժողովեցան, և գրեցին երեք անուն երեք նետ և ձգեցին. և մանուկ մի արձակեցին 'ի նոցանէ առնուլ զմինն, և որ գտցէ՝ այն լիցի Թագաւոր. և բերաւ անուն ծերոյն որ խորհեցաւ զայն. և իշխանեցաւ ամ մի. և զկնի նորա Աբդլմելք՝ որդին Մրուանայ:

Մեռաւ և Թագաւորն Յունաց Կոստընդդին. և Թագաւորեաց Յուստինիանոս որդի նորա:

Եւ Աբդլմելքն նեղեալ յապստամբացն արար խաղաղութիւն ընդ Յուստինիանէ ամաց տասն, և խոստացաւ տալ նմա յամին հազար դահեկան և ծառայ մի և ձի մի, և Կիպրոս լիցի կիսովն (1) երկուցն. քանզի Հայք օգնէին Յունաց:

Յայնժամ և երկոտասան հազար հեծեալ բնակեալ էր 'ի Լիբանան ընդդէմ Տաճկաց, զորս անդրէն ածին Յոյնք:

Ի սոյն ժամանակս էր սուրբն Յակոբ. որ էր 'ի գաւառէն Անտիոքայ շնորհապայծառ և ուսումնասէր, որ եղեւ եպիսկոպոս

(1) Մի օրի. կիսովի.

Ուռհայոյ. սա չոգաւ եմուտ ընդ հրէու-թեամբ պատճառանօք, զի արար հնարս և թարգմանեաց զծածուկս նոցա յասորի լե-զու. սա հանգեաւ յերկիրն Բեսենոյ(1). Ի վանքն որ կոչի յանուն նորա սուրբ Յակով-բայ:

Ի ժամանակին յայնմիկ գերեաց Յուստի-անէ զԿիպրոս, և ժխորեցան ընդ նոսա Տա-ճիկք:

Եւ առաքեաց Աբդլլայն զամիրայն Ճժե-րոյ յերկիրն Յունաց 'ի Կեսարիայ. և վա-նեցին Յոյնք զԱկլաւան. և եկն 'ի վերայ նո-ցա, և կոտորեցան յԱրապկացն. և մնացեալ Ակլաւքն խնդրեցին ուխտ և խառնեցան 'ի Տաճիկսն եւթն հազար հեծեալ. և կացու-ցին զնոսա Տաճիկքն յԱնտաք և 'ի Կիւրոս և ետուն նոցա ագարակս և կանայս:

Ի թուին Մարոց հազար վեց, և Հայոց հարիւր երեսուն և եւթն, եկին Յոյնք 'ի վե-րայ Տաճկաց մինչեւ յԱնտաք. և հարան 'ի նոցանէ. և մնացեալքն փախեան: Եւ թիւ-անկելոցն 'ի սուր յերկուց կողմանցն էր քա-ռասուն բիւր. և էր տեղի պատերազմին Բուզերիքն. որ մինչեւ ցայսօր երեւին ոս-կերք նոցա տարածեալ ընդ դաշտն:

(1) Մի օրի. Քեսունոյ: Մի օրի. Քանենա:

Յերրեք հարիւր եւթանասուն և եւթն ամին իւրեանց Տաճկունք բարձին զպատկերըս 'ի դահեկանաց, և 'ի դրամէ և 'ի փողոյ վասն կարծեաց կռապաշտութեան. և եդին միայն զգիրն։

Իսկ Յուստինոս խստացեալ սրտիւ կայր ընդ մեծամեծս իւր. վասն որոյ կալան զնա. և հատին զքիթ նորա և եդին 'ի բանտի. և եդին իւրեանց թագաւոր զԼեւոն։

Եւ եհան զԼեւոն Ափեմրոս զօրագլուխն. և ինքն թագաւորեաց և հնազանդեաց զՍկլաւոն. և եկն 'ի վերայ Տաճկացն 'ի Սամիտոն. և սպան 'ի նոցանէ հինգ հազար այր, և գերի բազում առեալ դարձաւ։

Ի սոյն ժամանակս կացոյց Աբդլլայ երկու զօրագլուխս զՀաջալ, և զՄահմետ այր անաստուած և չարադեւ. որ և զՀայկազունս իշխանս ազնուականս նենգիւ ժողովեալ 'ի Նախջուան. և ածեալ յեկեղեցին այրեաց հրով, վասն ոչ առնլոյն յանձն ըզկրօնս նոցա. որք համդիմակից և մասակակից եղեն սուրբ Ղեւոնդեանցն. որոց մաղթանօք նոցա գթասցի Քրիստոս Աստուած յազգս և յեկեղեցիս։

Յայսու ժամանակօք գումարեցին առաջի Աբդլլայի այր մի Ուռհայեցի Աթանաս ա-

նուն, որդի Կուժիայ իմաստուն և աստուա-
ծապաշտ, և կոչեաց զնա Աբդլլայ. և կա-
ցոյց զնա 'ի վերայ արքայութեան իւրոյ
մատակարարս. և յաջողեցաւ նմա, և եդիտ
շնորհս առաջի նոցա. և տային նմա յամսին
վաթսուն հազար դահեկան. և ամենայն
զօրն Տաճկաց ըստ թուոյ իւրեանց տային
մէն մի դահեկան. և շատ մխիթարութիւն
և դիւրութիւն եղեւ սա քրիստոնէից։

Սա շինեաց երկու եկեղեցի յանուն սուրբ
Աստուածածնին, և յանուն Թէոդորոսի, բե-
րեալ անդ զնշխարս նորա յԱւխայիտոյ, որ
է Ապլասթայն. և 'ի մէջ եկեղեցեացն եր-
կուց շինեաց գետնափոր սրբատունս. և դա-
տաւորն Քրիստոսի էր ընդ իշխանութեամբ
Տաճկաց. գնեաց 'ի նոցանէ յիսուն հազար
դահեկանի և եդ անդ. և սանդղօք ելանէին
և իջանէին անդ. և յաւուր տօնին իւրոյ
հանէին 'ի տեսիլ տօնողացն մինչեւ 'ի ժա-
մանակս Յովհաննէս պատրիարքին՝ որ եդ
զնա 'ի մէջ երկուց վիմաց, և ամփոփեաց և
անյայտեաց զտեղին ոչ ուրեք գիտելով.
և գրեաց թէ արարի վասն երկիւղի անօ-
րինաց. և մի ոք եւցէ 'ի խնդիր զի ոչ գտա-
նէ զնա։ Բայց թէ կրաւի է զօր Հռովմա-
յեցիքն ունին եւ ոչ գիտեմ։

Իսկ Յուստինոս զկնի տասն ամի առ-
գելման իւրոյ ել 'ի բանտէն, և գնաց փա-
խստեայ առ Թագաւորն Խազրաց Խաքան.
և ընկալաւ զնա խնդութեամբ. և ետ նմա
կին զդուստր իւր. և օգնեաց նմա զօրօք և
դարձաւ 'ի Կոստանդնուպօլիս. և փախեաւ
Տիբերիոս. և զԼեւոն եսպան. և կոտորեաց
զարքունի արսն, և վեց հազար գերի տա-
ճիկ ազատեաց, և գնացին խաղաղութեամբ.
Եւ արար զօրս բազում եւ առաքեաց
ընդ ծով, ածել զկին իւր, և խեղդեցան
յալիս ծովուն. և լուեալ Խաքան տրտմեցաւ.
և առաքեաց զկին նորա, և զՏիբերիոս որ-
դին և մեղադրեաց ասելով. անմիտ, ընդ-
էր էր բազմութիւն զօրացն 'ի կորուստ.
կարծէիր եթէ արգելում զկին քո. Թէպէտ
կորուսեր զորդին իմ, ես ոչ ստեցից զբանս իմ։

Ի թուին Ասորոց հազար տասն և եւթն
և Հայոց հարիւր քառասուն և ութ, շինե-
ցաւ Մամուեստիա 'ի Մսիսայ ընդարձակս,
և կացուցին 'ի նմա զօրս ընդդէմ Յունաց:

Զկնի Աբդլլայի իշխանացաւ Տաճկաց
Աբդլմելէք. և յետ նորա Վլիթ ամս ինն. յո-
րոյ աւուրս հալածեաց Յուստինոս զազ-
գըս Հայոց յիշխանութենէ իւրմէ վասն
ուղղափառութեան. և խնդրեցին Տաճիկք

և բնակեցուցին զնոսա 'ի Մելիտինի և 'ի Միջագետս. և եղեն մեծ ամրութիւն ուղղափառաց Ասորոց. և շինեցան անդ գիւղք և վանորեայք, և սպասաւորք նոցա. և կան մինչև ցայսօր:

Իսկ Մահմէտ արար բազում մարտիրոս յերկիրն 'ի հաւատացեալ Տաճկացն. և զգլխաւոր նոցա ազգի ազգի հարուածովք եսպան. և ընկէց զնա պէշ գազանաց. և ոչ մերձեցաւ 'ի նա գազան, և ոչ թռչուն, և ոչ ապականեցաւ. և զաւուրս երեսուն, և բուրէր 'ի նմանէ հոտ կնդրկի. և յայնմանէ յորդորեցան 'ի մարտիրոսութիւն և մեռան հազարք և բիւրք:

Իսկ Մսլիմ չոգաւ 'ի Կապադովկիա. և ելին ընդդէմ նորա զօրքն Յունաց, և անկան 'ի Տաճկաց յանողորմ սուրն. և մեռան քառասուն հազար հեծեալ թող զգերեալսն. և առաւ Տիանայ քաղաք և Տարանդաբերդ. և դարձաւ Մսլիմ 'ի Կիլիկիա. և առ զՄ՚ածումբերդ. և զՊօտանդա քաղաք և այլ բազում տեղիս:

Ի սոյն ժամանակս զօրացաւ Փիլիպիկոս, և եսպան զՅուստինիանոս և զորդի նորա զՏիբերիոս, և թագաւորեաց: Եւ սա վարժ գրովք, և ջանայր նզովել զվեցերրորդ ժո-

զմին և բառնալ զաղանդն Մաքսիմոսի, և ոչ եղեն ձեռնտուք նմա խմորեալքն յաղանդին հպարտութեան :

Ի սոյն ժամանակս ոգի պղծութեան շարժեաց զՎլիթ. և հրամայեաց բռնադատել զՔրիստոնեայս յուրացութիւն. և զոչ հաւանեալսն սպանանել յեկեղեցւոջ իւրեանց. և նահատակութեամբ պսակեցան բազմութիւնք յոյժ արանց և կանանց: Եւ չոգաւ Մսլիմ յԱմասիայ և առ զնա և գնաց մինչև յԱնտաք Պիսիդեայ, և մարտեաւ ընդ նմա և առ զնա. և յերկրորդ ամին Փիլիկտոսի հանին զաչս նորա և աքսորեցին. և թագաւորեաց Անաստաս :

Եւ զկնի Վլիթայ թագաւորեաց Տաճկաց Սուլիման ամս երկու. յորում ժամանակի առ Մսլիմ զերկիրն Գաղատացւոց : Իսկ Անաստաս զկնի երկուց ամաց փախեաւ 'ի Նիկիայ, զի կամէին սպանանել զնա. և թագաւորեաց Թէոդոսիէ : Յայսու ժամանակօք գնաց Մսլիմ յերկիրն Թուրքաց. և բազում աւարաւ դարձաւ :

Եւ դարձեալ գնաց 'ի վերայ Նորոց (1) և առ զՀրաքլիայ և զՍադրիա և գերեաց. հպարտացաւ 'ի միտս իւր. և խորհեցաւ

(1) Եւկու օրի. Ասիոյ :



գնալ 'ի Կոստանդնուպօլիս . և առ ընդ իւ-
քեան երկու հարիւր հազար հեծեալ. և
նաւս երկու (հազար)[1] և երից հեծելօք . և
էառ այլ ևւս երկոտասան հազար Բուլղարս
և եբարձ ռոճիկս վեց հազար ուղտուց և
վեց հազար իշուց . և եկին ընդ նմա Օ-
հեաք երեսուն հազար . և զայս ամենայն
բազմութիւն առաքեաց առաջի իւր ընդ
ծով և ընդ ցամաք . և ինքն երկոտասան հա-
զարաւ գայր զհետ նոցա մեղմով ։ Եւ ե-
կեալ նստաւ 'ի Աբիկիա, և ընդ որ անցա-
նէին զօրքն՝ տային բան խաղաղութեան, և
ոչ մեղանչէին ումեք ։ Լուաւ զայս զօրա-
գլուխն Յունաց Լևոն . և չոգաւ առ Սը-
լիմ 'ի ծածուկ . Եւ ուխտեաց նմա Սուլիմ
դնել զնա թագաւոր, զի ձեռն տացէ նմա,
և դարձաւ Լևոն 'ի քաղաքն ։

Եւ իմացաւ թագաւորն, և կալաւ զըն-
տանիս նորա . և փախեաւ Լևոն և չոգաւ
առ Սուլէյման թագաւորն Տաճկաց, և առ
'ի նմանէ վեց հազար հեծեալս . և եկն (ի-
ջաւ) էջ 'ի վերայ Խամուրին քաղաքի . և խօ-
սեցաւ գաղտ յականջս քաղաքին եթէ նեն-
գութեամբ շրջիմ ընդ սոսա ։ Եւ լուեալ

(1) Մի օրի ։ եռ (5000) առնըլով մոյն երկու ։
Այլ օրինակք ըստէն զհազար .

Թագաւորին առաքեաց առ նա զընտանիս նորա և ասէ ցնա. մի մեղանչեր քաղաքիդ 'ի գլխոյ ընտանեացդ քոց. և եթող զքաղաքն, և գնաց 'ի վերայ Կոստանդնուպօլսի Լեւոն։

Եւ եկին զօրքն Յունաց ընդդէմ Լեւոնի, և յղեցին պատգամս և ասեն. Թագաւորեա մեզ մերովք յօժարութեամբ և երդուան նմա. և առաքեն առ նա զորդին Թէոդոսի. և հաւատայ նոցա. և ասէ. ընդ զօրն Տաճկաց կացէք մնացէք աստ, և ես մտից 'ի քաղաքն. և արարից զկամս ձեր։ Եւ գնաց Լեւոն 'ի Կոստանդնուպօլիս քաղաքին Թագաւորութեան. և լուաւ Թէոդոսիէ և կորեաց զհերս իւր. և եղեւ եկեղեցական։ Եւ Լեւոն Թագաւորեաց. և ամրացոյց զքաղաքն։

Եւ իմացաւ Մսլիմ թէ խաբեաց զնա Լեւոն, բախեցաւ 'ի վերայ ոսկի դրանն չորս հազարօք. և օգնեաց Տէր, և միայն զերծաւ Մսլիմ և կոտորեցան զօրքն որ ընդ նմա չորս հազարքն։ Եւ 'ի միւս կողմանէն անկան երեսուն հազարք. և եհաս 'ի վերայ նոցա ձմեռն. և անկաւ սով 'ի բանակն նոցա։

Եւ մինչ յայսոսիկ էին մեռաւ Սուլիման Թագաւորն նոցա, և առ զԹագաւորութիւ-

նըն Օմար. և լուեալ զայս դուարձաւ Սոլէմ ամօթով յոյժ սակաւուք. և փառեալ քինու զբազում կոտորեցին ՚ի քրիստոնէից. զի յանցեան (1) զօրք նոցա ՚ի պատճառս աղօթից եկեղեցւոյ ։

Յայսմ ժամանակի ասորի մի Սեւերոս անուն սկսաւ մոգութեամբ խաբել զազգն Հրէից թէ նա իցէ Քրիստոսն. և պարտ է ժողովել բազում գանձս, և երթալ թագաւորել յԵրուսաղէմ. և հաւատացին բազումք. և կուտեաց բազում ինչս ։

Եւ լուաւ Օմար և կոչեաց առ ինքն. և կատակաբանութեամբ կակղացոյց զբարս նորա, որ էառ զինչսն (2) և եթող զայրն ՚ի կամս իւր ։

Իսկ այսու պատճառաւ եդ օրէնս Օմար ոչ ընդունել զՔրիստոնէից վկայութիւն. և ոչ հեծանել երիվար թամբօք. և թէ ըսպանանէ Տաճիկ զքրիստոնեայ, ոչ մեռցի ինքն. այլ տացէ գինս արեանն հինգ հազար դրամս ։ Բայց եկեղեցականքն առէ մի տացեն հարկս յարքունիս յամենայն ստացուածոց իւրեանց. և Տաճիկքն մի արբցեն առէ գինի ։

Եւ մեռեալ սորա՝ առ զթագաւորու-

(1) Երեք օրին. անցան ։ (2) Երկու օրին. զինքն ։

թիւնն Իզիտ ամս չորս ։ Սա առաքեաց ընդ-ամենայն երկիր և ջնջեցին զնկարս պատկերաց յեկեղեցւոյ 'ի գրեանց 'ի հանդերձից յար-ձանաց և յամենայն իրաց . և ետ նմա իրա-ւունս Լեւոն արքայն Յունաց . և Թափուր առար 'ի պատկերաց զաշխարհն Յունաց . և տրտմեցին ընդ գործ նորա բազումք, և ոչ հաճեցին ։

Պարձեալ նեղեաց Լեւոն զՀրեայսն դառնալ 'ի քրիստոնէութիւն կամ մեռանել. և յոլովք մկրտեցան, և ոմանք սպանան. և կէսք փախեան ։

Մեռաւ Իզիտ և թագաւորեաց Հեշմ ամս տասն և ինն . այր չար և ագահ, որ և հարկապահանջութեամբ հատոյց զերկիրն 'ի ցանկութիւն մահու (1) ։

Սա եհան ջուր Եփրատայ և 'ի վեր քան զԿալանիկէ ոռոգանել զդաշտս, սա էառ զան-մատոյց բերդն Ճխղէ յերկիրն Կիւլիկեցւոց և զՆիկէսարն 'ի վերայ Գայլն գետոյ ։

Յայսմ ժամանակի էին Աթանաս պատ-րիարքն Անտիոքու, և Յովհաննէս իմաստա-սէրն հայրապետն Հայոց. և Սիւնիք և Վաս-պուրական և աղուանք և Սասանունք և Յա-կոբիկ Ասորիք էին 'ի մի դաւանութեան

(1) Ոմանք՝ 'ի գրչագրին ձեռ. հա. ։

առաքելական հիմամբ . և վասն այսորիկ եր-թային Ասորիք առ Սասանօք առ Հայք և ասէին մեք սուրբ Գրիգորի դաւանութեան-քն եմք , և առնուին 'ի նոցանէ ձեռնադ-րութիւն , և ոչ գոյր հակառակութիւն . և վասն այսորիկ կոչեցան Գրիգորիկք :

Յայնժամ՝ երէց մի Բարշաբուհ անուն . և սարկաւագ մի Գաբրիէլ անուն 'ի Սմ-փարկնայ եղեն քանսորկուք 'ի մէջ Հայոց , և Ասորոց . զՀայոց ասէին թէ Յուլիանոսի-տք են և զԱսորոց թէ ապականացու ասէ-ին զմարմինն Քրիստոսի . այլ և պղտորու-թեան Ծղրի միացեալ էր 'ի Հայս 'ի տեղիս տեղիս առ քաղումս :

Իսկ Յովհաննէս այր սուրբ և սքանչելա-գործ և լուսաւոր քանիւ գրեաց առ Աթա-նաս առաքեալ առ նա եպիսկոպոս իւրեանց դաւանութեան գրով . և ինքն եկն 'ի քա-ղաքն Մանազկերտ Հայաստանեայց . և վեց ե-պիսկոպոսք գնացին յԱսորոց , եւ յոլովու-թիւնք երիցանց . և արարեալ քննութիւն , ոմանք յԱսորոցն ասեն զի՞նչ է որ գրեալ է 'ի գործս Առաքելոցն եթէ "Աստուած յա-րոյց զՅիսուս 'ի մեռելոց և այսուհետեւ ոչ եւս դառնալոց է յապականութիւն" . և խնդրեցին զօրինակն Հայոց և ոչ գտին զայ-

տուհետեւն. բերին և զԱսորոյն և ոչ անդ-
գտին. և նզովեցին զՅուլիանիտան և զապա-
կանեացու խոստովանողն զՔրիստոս, և ըզ-
Նարշապուհ և զԳաբրիէլ. և զԽոզրիտոն. և
եղեն Հայք միաբանք 'ի վերայ ճշմար-
տութեանն. և Յակովբիկ Ասորիք՝ դաշնա-
կիցք նոցա:

Բայց սակս տօնից և արարողութեանց
գտաւ զանազանութիւնս ինչ. որոց ոչ ա-
րարին կարի փոյթ, և արձակեցան սիրով: Եւ
եղեւ այս 'ի հազար երեսուն և հինգ թուին
Ասորոց և Հայոց հարիւր վաթսուն և վեց.
այլք զՀայոցն հարիւր երեսուն և հինգ ասեն:

Յայնմ ժամանակի ելին Թուրքք յերկիրն
Արթուխի (1) և առին քաղաքս բազումս. և
գնաց Ամիմ ընդ առաջ նոցա. և անկան
յերկուց կողմանցն հազարք և բիւրք: Եւ
ապա արարին սէր ընդ միմեանս. և թողին
Տաճիկք զառեալ քաղաքսն 'ի նոսա և դար-
ձան: Եւ այս եղեւ սկիզբն ելանելոյն Թուր-
քաց:

Ի սոյն ժամանակս եղեւ անձրեւ սաս-
տիկ, որ կարծեցին թէ բացեալ են սահանք
երկնից. և վերստին անկաւ պարիսպն Ուռ-
հայոյ: Եւ չոգաւ Հեշմ առ Հռովմովք. և

(1) Երեք օրի. Արտուղէ:

առ զՂ՚ենձերայ քաղաք, և զՄխիթա. և ա-
ռեալ գերի բազում դարձան։ Իսկ Հռոմա-
յեցւոց Հեշմ ապանանել զգերեալսն առ Հա-
սարակ. և եղեւ յարբագս կոտորեցան քննու-
թիւն ՚ի յԱւուռհայ թէ երբ՞ն մարտիրոսք թէ
ոչ. և ոչ յայտնեցաւ երբեն, այլ տարակոյս
մնաց։

Իսկ Թագաւորն Լեւոն ՚ի քսան և չորս
ամի արքայութեան իւրոյ, էառ զդուստրն
Խազրաց Թագաւորին որդւոյ իւրում Կոս-
տանդիանոսի ՚ի կնութիւն մկրտելով զնա.
և եառ զթագն յորդին. և մեռաւ ՚ի նմին ա-
մի։ Բայց Արտաւազ փեսայ Թագաւորին
հալածեաց զԿոստանդիանոս, և ինքն Թագա-
ւորեաց։

Մեռաւ. Հեշմ Թագաւորն Տաճկաց. և
առ զԹագն(1) Վլիթ, որ արար չար առաւել
Հեշմայ. և եդ զօրագլուխ զԱբաս անուն, և
արկ զնա ՚ի ծովն սակերղէն ՚ի դամբան Տաճ-
կաց. որ բաշխեաց զոսկին առ աւագակս և Թա-
գաւորեաց։

Բայց յորժամ ոչ ընդունէին զնի հարձորդէր
էր. և Վլիթ եղեւ սատակեցեալ վասն չարա-
գործութեան. և խոստացաւ(2) զեօրկոսին Թա-

(1) Մի օրի. զԹագաւոր. (2) Չորք օրի. խոնչացու-
թիւնն.

թագաւորեցուցին զԻղիա եղբայրն Վլիթայ 'ի Դամասկոս. որ և կորեաց զգլուխ եղբօրն. և եդեալ 'ի սայլի և ընդ նմա տիկս գինւոյ, շրջեցուցանէին ընդ քաղաքն։

Եւ յետ այսորիկ մատեան ընդ միմեանս ամիրայքն, և խնդրելով իւրեանց թագաւորութիւնս։ Մրվան՝ զՀայս էառ, և զԴարոս Վասիդն. և զԽորասան՝ Սարիթն և զԱփրիկէ Աբդհել և Իղիա մեռաւ յետ եւթն ամաց. և առ զտեղի նորա Իբրհիմ. այր բարեբարոյ և ողորմածիրտ. և սակաւօրեայ եղեալ մեռաւ։

Եւ Մրվան ելեալ 'ի Հայոց. եկն և դիպեցաւ եղբօրն Սուլիմանայ 'ի վերայ Եփրատայ. և կռուեցան ընդ. և անկաւ 'ի մէջ նոցա երկոտասան հազար այր։ Եկն Մրվան 'ի Դամասկոս, և թագաւորեաց անդ. և առ զգահճն թագաւորութեանն և բարձեալ ընդա երեք հազար ուղտու եբեր 'ի Խառան. և չոգաւ 'ի Հեմս, և յամիս չորս էառ զնա. և քակեաց զպարիսպ նորա։ Նոյնպէս էառ զԲալբաք, և քակեաց զնա. առ զԱյինուէ և գնաց 'ի Պարթեւս, որ կոչի Ռահ՝ և աւրեաց նմա։

Իսկ Ըլի որդին գնաց 'ի Խորասան. և 'ի պատերազմելն Տաճկաց ընդ միմեանս խաղաղացան Յոյնք. և խորագիտութեամբ իւ-

րով օգնականս գալեալ Կոստանդիանոս եկն 'ի Կոստանդնուպօլիս . և կուրացոյց զԱրտաւազդ . և թագաւորեաց դարձեալ , և եղեւ նմա որդի . և կոչեաց զանուն նորա Լեւոն

---

## ԳԼՈՒԽ Ի.

*Յաղագս որ նշանք մեծամեծք և ցոլմունք, և փոշի գայր. և 'ի ծովն խռովեալ սիւնք հրեղէնք երեւեալ . և եկն կարկուտ, կշիռն երկու լիտր, և Ջամբրի հարկապահանջութեան անիշխելի ։*

Յորում աւուրս եղեն նշանք մեծամեծք 'ի սկիզբն մարտի ամսեան մինչեւ ցելն ապրիլի . օդդ փոշի տեղեաց , և տիւն գիշեր կարծէր . և ապա երեւեցան երեք սիւնք ամպեղէնք խառնեալ ընդ հրոյ զերիս աւուրս . և ելանէին և իջանէին 'ի վայր ։ Իսկ զկնի սորա երեւեցաւ աստղ մի անծանօթ 'ի չափ լուսնի և ելանէր յարեւելից ընդ արեգականն . և երթայր յարեւմուտս երեք օր տեսանելով մարդկան ։ Իսկ զամենայն գիշերս լինէին ցոլմունք , և թռչէին հանդէպ յարդգողին ։ Իսկ զկնի նորա եղեւ շարժ սաստիկ և պատառեալ երկիր ելին աղբիւրք 'ի գոյն արեան ։ Իսկ յետ նորա խռովեցաւ ծովն մեծ ։

և եռայր յանդնդոց, և բարձրանայր ալիք նորա իբրև զերկինս. և բազումք 'ի կենդանեաց մեռան մարդ և անասուն 'ի ձայնէ որոտման. որ ծովեզերեայք էին կործանեցան տունք և ապարանք. և բերդ մի որդւոցն Բ՟մնայ որ կայր 'ի մէջ ծովուն խլեցաւ յատակաց. և բուրգն մեծ զոր շինեաց Սողոմոն 'ի վերայ ջերմկին որ գտաւ յաւուրս նորա 'ի ծովուն՝ փլաւ և ընկղմեցաւ:

Եւ յետ նորա եղև սով սաստիկ. և ապա մահտարաժամ փողացաւութեամբ, որ մեռանէր 'ի Բասրա աւուրն քան հազար անձինս. և յերկիրն Սադիամու կատաղեցան կապիկք և ապականեցին զբազմութիւն մարդկան յոյժ:

Զայս ամենայն տեսեալ Թագաւորին Տաճկաց, զահի հարաւ և զղջացաւ սիրտ նորա. և եհան քարոզ ընդ ամենայն երկիր վասն ապաշխարութեան, զոր և արարին իսկ պահս և աղօթս հսկմամբ գիշերաց, և ողորմութիւնս և արտասուս. քանզի հաւատացին թէ կատարած ամենայն երկրի հասեալ է յաղագս նորանշան և ազգի ազգի պատուհասիցն մանաւանդ վասն շարժմանն անծանօթի. զի գիւղ մի յոտն լերինն Թաբօրայ նոյն տեղեաւն 'ի բաց վազեաց մինչ երկու.

և շինուածքն ոչ խախտեցան . և ոչ պակասեաց հաւ մի ։ Եւ Անքէծ քաղաք ընկղմեցաւ 'ի տեղւոջն . և երրորդ (1) մասն Կոստանդնուպօլսի անկաւ . և Նիկիայ բովանդակ տապալեցաւ . և այլ բազում քաղաքք Բիւթանիայ ։ Իսկ Գաղկեդոնիայք ոչ զղջացան և ոչ դադարեցին 'ի չարեաց իւրեանց. քանզի այնք որ կային յԱնտաք կաշառեցին զԱրվան . և եդին պատրիարգ իւրեանց ըզԹէոփիլէ Սաղմանի որդի , որ գնաց 'ի Խառան . և առ զեկեղեցին Ասորոց ուղղափառաց . և արքեպիսկոպոսն նորա ձգեաց զձեռըն իւր և եհար յեկեղեցին ասելով . ով պղծեալ խորան , վաղիւն որբեցից օրհնութեամբ և ուղղափառ պատարագաւ ։ Եւ ընդ յեղանել բանին վառեցաւ հրով և այրեցաւ . և անկաւ ահ 'ի վերայ նոցա և առեալ զմոխրեալ ոսկերան փախեան 'ի գիշերին ։

Յայնմ ժամանակի եկն Աբդլլայ որդին Ալեայ 'ի Խառան . և փախեաւ Արվան յերեսաց նորա առեալ ընդ իւր ոսկի բարձեալ վեց ուղտու . և գնաց յԱսկալոն , և անտի յերկիրն Նուբեացց . և Աբդլլայն զհետ նորա . և եհաս նմա 'ի Ասուան (2) 'ի վերայ Նեղոս գետոյ և եսպան զԱրվան . և առ զա-

(1) Մի օրի. երկրորդ մասն ։ (2) Երեք օրի ։ 'ի Նքնուէ.

մենային ստացուածս նորա զժողովեալն ապա-հութեամբ. և թագաւորեաց միայն Իզ-դըլլան։

Եւ մինչ նստէին ՚ի տեղւոջ մի առ ընթեր գերեզմանաց, եղեւ թնդմունք ինչ. և բացան գերեզմանք ութ. և ահա ելանէին արք իբրեւ ծերք և ներկեալ զմորուս. և մինչև ցմէջն ՚ի դուրս ելեալ զտեղւոյ առին զերիս աւուրս. և հարցանէին զնոսա և ոչ խօսէ-ցան. և ձանձրացեալ թողին զնոսա. և ոչ որք իմացաւ թէ զի՞նչ նշանակէին. և ծածկեցին հողով։

Իսկ թագաւորն Յունաց Կոստանդինոս վարժ էր գրովք և իմաստութեան մտօք. վասնորոյ ծածկապէս ունէր զուղղափառութիւն. և զի մեռաւ կին նորա, ստիպէին զնա առնուլ կին. և նա ասէ զնոսա ոչ է պարտ երկրորդ կը-նաւ թագաւորութիւն առնել. ապա զոր-դխօդ իմ՛ դնիք թագաւոր. և արարից զոր ասէքդ. և թագ եդին Լեւոնի. և հայրն խը-նամէր զաշխարհն։ Եւ առեալ զօրս չոգաւ ՚ի Մելիտենի. և եհան անտի զՀայս և զԱսո-րիս, և տարաւ յիշխանութիւնն իւր ասե-լով. քրիստոնեայք են առ մեզ կացցեն իբ-րեւ զեղբարս մեր. և ասեն Յոյնքն ատեն զմեզ դոքա և անիծանեն. և ոչ են եղբարք.

և խնդրեաց Թագաւորն դաւանութիւնս. և ետուն գրով ՚ի վերայ միոյ բնութեանն և կամաց գործոյ նոյնութեան Բանին։

Եւ տեսեալ Թագաւորին յոյժ գովեաց. և ետ հրաման ժողովոյ. և յորժամ եկեւ ժողովն զոր եւթներորդն կոչեն, և արարին քննութիւն, և ոչ կարէին աղաւաղել զուղղափառացն խոստովանութիւնն. և ասէ Թագաւորն. երկու իրք կամ՝ են ինձ. եթէ բառնայք զժողովն Քաղկեդոնի և ըզպատկերապաշտութիւնդ. և անկան յոտս Թագաւորին և ասեն. չէ հնար այդմ լինել. բայց եթէ արա ճարակ տայցես զմեզ. և ասէ Թագաւորն. երդնում յԱստուած, եթէ ոչ բառնայք գոնէ զԱքսիմոսին գնեստորականին, ես ոչ եղէց ընդ ձեզ։

Եւ լուեալ նմա և նզովեցին զԱքսիմոսին, որ երկու կամս և գործս ասէր, Քրիստոսի։ Եւ վասն այնորիկ բազումք ՚ի Յունաց ոչ մեծարեն զեւթներորդ ժողովն։ Եւ ասէ Թագաւորն. ընդ ուղղափառսն գնացէք յաշխարհն ձեր, ուստի հանի զձեզ. զի մի զկնի մահուան իմոյ չարչարեսցեն զձեզ. և ետ նոցա պաշարս և պարգեւս, և գնացին խաղաղութեամբ։

Ի նոյն ամի եկն մարախ և կերաւ զգա-

ւառս բազում. և 'ի դաւլ միւսոյ ամին եկն կարկուտ անդուր և անտես. և փլոյց բազում շինուածս, և սպան յոյժ բազմութիւն կենդանեաց վայրենեաց և ընտանեաց. և էր կշիռն լիտրս երկու ։

Ի նոյն ամի մեռաւ Աբդլլէյ. և թագաւորեաց Աբուջաբր. և շինեաց զՄելտենի, և զԿարնոյ քաղաք. զոր ոմանք 'ի Յունաց Կալանիկոն կոչեն, և Տաճիկք Արզրում. որ կոչի Աշտանկոյ կամ Արծրէլք ։ Շինեաց և զՆի որ է Կամախ. քանզի աւերեալ էր զսոսա Կոստանդիանոս թագաւորն Յունաց ։ Եւ զկնի շինելոյն զքաղաքս զայսոսիկ առ զԱփրիկէ. և չոգաւ առ զՏաբարստան աշխարհն Պարսից, և զշրջակայսն ամենայն, և դարձաւ և առ զՄէ քաղաք ամուր ։

Ի թուին Ասորոց հազար եւթանասուն և երեք. և Հայոց հարիւր յիսուն և չորս, շինեաց Դ ամբրս(1) 'ի վերայ Տիգրիս գետոյ 'ի վեր քան զԿատիզզոն(2) քաղաք և կոչեաց զնա Բաղդատ որ թարգմանի միջոց. այսինքն Պարսից և Ասորոց ։ Յորում ամի եղ Բուրգն հաւաքածոյ որ է Մարն. և գերեաց 'ի Գաղանայ (3) յիսուն հազար անձինս ։

(1) Երէք օրի. Զարր ։
(2) Երկու օրի. Կատիզոն.
(3) Մի օրի. 'ի Գաղանայց

Ի այն ժամանակս համբաւեցաւ կին մի թէ ի ծնանելն կաթն ոչ եկեր 'ի մօրէն. և զարգացաւ հասակաւ 'ի չափ երեսուն ամաց և չկերաւ ինչ. և ածաւ առաջի Գաբրի. և գտաւ որպէս համբաւն էր. և արար Գաբր ժողով իմաստնոց, գիտնոց զի իմասցին վասն նորա. և ասացին թէ երբէք չէ լեալ. և մեք ոչինչ կարեմք իմանալ. սակայն գործ նշանի Տեառն Աստուծոյ է։ Յորմէ նըշանէ խաբեալ զօրքն Պարսից եդին իւրեանց թագաւոր և ապստամբեցին։

Եւ գնաց 'ի վերայ նոցա զօրն Տաճկաց, և հարան 'ի նոցանէ. և դարձեալ գնաց Գամբր 'ի վերայ նոցա. և կոտորեաց քառասուն հազար անձինս. և սպան զթագաւոր նոցա։ Եւ դարձաւ 'ի Մնջագեաս. և կացոյց գործակալս երկու հարկապահանջս։ Հըրեայ մի Մուսի անուն. և Տաճիկ մի Մուլեման անուն. որ 'ի դրունս մահու հասուցին զաշխարհս անողորմ տանջանօք՝ վասն Դիմոսին անիրաւութեան։ Եւ հատաւ ոսկի և արծաթ յաշխարհէ. և փորէին զգերեզմանս կռապաշտից և գտանէին ինչս և տային 'ի հարկն։

Սովորեցին և Յոյնք զնոյն առնել. և բացին զգերեզման Նիկոմիդայ չքնաղն հանձն-

նուն քաղաքին, և գտին յոլովութիւն ոսկւոյ լուսատու ականց. և ազդեցին Թագաւորին Կոստանդեայ. և չոգաւ ետես զայն ամենայն. և ոչ կամեցաւ առնուլ ինչ այլ կրփածու վիմօք փակեաց զնա. և ասէ. զինչ գարշագոյն քան զայն իցէ, յորժամ կենդանին կողոպտիցէ զմեռեալս: Նա սաստեաց և սպառնացաւ, եթէ այլ ոք զայն մի իշխեսցէ առնել:

Իսկ 'ի չարագոյն ագահութենէն Զամբրի վաճառէին զէշ և զէգն ընդ դրամի միոյ. և զողոյս ընդ հինգ դրամի. զի տայցեն հարկս պահանջողացն: Որ և զկնի քան ամի սատակեցաւ. և հանգեաւ երկիր 'ի չարեացն Զամբրի. և Թագաւորեաց Մահադի որդի նորա:

Նա 'ի նմին ամի մեռաւ Թագաւորն Կոստանդիանոս Թագաւորեալ ամս երեսուն և չորս. և հաստատեցաւ Լեւոն որդի նորա որ ընդ նմա էր Թագաւորեալ:

Իսկ Մահադի ցրուեաց զամենայն ժողովեալ ստացուածս հօր իւրոյ. և հաւատաց աստեղագիտաց, և ուսաւ զարուեստն. և վարէր նոքօք:

Նա լուեալ Լեւոնի առաքեաց նմա ընդիրան յԱնիոյ և յԱմրիոյ հակառակացն

Իսրայելի. և խնդաց յոյժ. և կախարդու-
թեան եւ զանձն։

Եւ եկն Մահադի 'ի Հալապ. և ելին ընդ-
առաջ նորա երկոտասան հազար քրիստո-
նեայք 'ի պատիւ նորա։ Իսկ նորա նախան-
ձեալ խոցեալ ընդ բազմութիւն նոցա. ա-
սաց մի յերկուց առաջի կայ ձեր. կամ մե-
ռանիլ կամ ուրանալ զՔրիստոս. և հինգ հա-
զար այր 'ի նոցանէ տանձկացան. և եւթն
հազարքն վկայեցին Քրիստոսի Աստուածու-
թեան և մեռան. և կանայք և տղայք ա-
րացողայն Թողին զնոսա և գնացին։

Եւ Մահադի գնաց յերկիրն Արաբիոյ.
և առաքեաց զԱհարոն զորդին իւր յԵփե-
սոս յաւար։

Որ և գերեաց անտի եւթն հազար [1] այր.
բայց պակասեաց 'ի զօրաց նորա չորս հա-
զար այր։

Եւ Լեւոն առաքեաց զօրս 'ի Միջագե-
տս. և ետ ածել անտի զքրիստոնեայսն ըզ-
Հայս և զԱսորիս ուղղափառս, և բնակեցան
ընդ նմա 'ի Թիրակ։ Եւ գնաց նա 'ի ճա-
նապարհս հօրն՝ իւրոյ զի ոչ երկրպագեաց
պատկերաց. և ոչ հաղորդեցաւ 'ի Քաղկե-
դոնացւոցն. վասն որոյ ոմանք 'ի պատմագր-

(1) Մի օրի. հինգ հազար։

բայցն Յունաց տրտնջելով, Յակովբիկ կոչեն զնա։ Սա և թագաւորեալ ամս տասն մեռաւ։

Եւ թագաւորեաց Կոստանդին որդի նորա երկոտասանամեայ. և Իրինէ մայր նորա ընդ նմա։

Եւ լուեալ Ահարոնի եկն յերկիրն Յունաց և դարձաւ ամօթով։

Եւ 'ի սոյն ամի շինեաց Ալի Մահադեայ հրամանաւ զՀադ քաղաք յանուն նորա յերկիրն Մարաշու. և ոչ յաջողեցաւ նմա. քանզի մեռաւ Մահադի. և թագաւորեաց Մուսի որդի նորա ամս երկու։

Եւ յետ նորա առ զթագաւորութիւնն Ահարոն եղբայր(1) նորա, որ կոչեցաւ Ռաշիտ. որ և հրամանաւ նորա շինեաց Աբդըլմելքն զՀաշխր։

Իսկ Հռովմական զօրացն եկեալ աւերեցին զՀադ։ Եւ Ահարոն սկսաւ շինել զնա կրկին. և կազմեաց սայլս երկու հազար։ Եւ քակեաց զեկեղեցին, որ կայ յարեւմտից Շնճէ գետոյն. որ է մերձ Սամուսատայ. և ետ տանել զքարինս նորա։ Նոյնպէս քակեցին զառաքելաշէն եկեղեցին որ 'ի Բեսոն եւթն և տասն խորանի(2). և սոքօք շինեաց զպարիսպն Հաթայ։

(1) Մի օրի․ որդի նորա։ (2) Երկու օրի․ Բժ․ խորանի։

Ի սոյն ժամանակս գտաւ յԱւռհայ տապան մի Հրէի որ ունէր գիր հազար ամաց հետէ. և այս է գրեալն 'ի նմա. թէ «Աստուած մարմնով ծնցի 'ի կուսէ. և խաչեծացէ լոյս փառաց նորա 'ի տիեզերս. և ողորմութիւն նորա տեսցէ (1) զիս »:

Ի նոյն աւուրս լուաւ Կոստանդին Թագաւոր. թէ Փիլիկէ պատրիկն Սիկիլիոյ, շնայ ընդ մօր նորա, և կամեցաւ ըմբռնել զնա: Եւ նորա իմացեալ փախեաւ առ Ահարոն. և առեալ 'ի նմանէ քառասուն հազար հեծեալս, գնաց դարձուցանել զՍիկիլիա 'ի Տաճկաց. և կալաւ զնա ձիւն սաստիկ. և կոտորեցան այրուձի բազում. և տակաւ մնացորդքն եկին 'ի Կոստանդնուպօլիս. և նոքա արարին նոցա ողորմութիւն, և ետուն զկարիս նոցա և արձակեցին:

Եւ Կոստանդին արգել զյիշատակ մօր իւրոյ յեկեղեցիս: Եւ զի մեռաւ կին նորա, էառ կին երկրորդ, և արհամարհեաց զկանոնսն առաքելականս. վասն որոյ ատեցեալ եղեւ 'ի բազմաց: Եւ իմացեալ մօրն կորուսանել զորդին արար խորհրդակից. և օգնականս. և կալեալ զորդին եհան զաչս նորա: Եւ թագաւորեաց և արար երկրորդ իւր զներքինին Փիլարէ.

(1) Մի օրի. տիրեսցէ:

Ի ժամանակս յայս թոռունքն Աթանա-
սայ Ուռհայեցւոյ գտին զգանձն հաւուն
իւրեանց․ և օձս և կարիճս ոսկեղէնս մա-
րամէջս լցեալ քեմիայիւ որ ցանէին ՚ի վե-
րայ հալեալ պղնձից․ և ատղ մի որ ստոկէին
՚ի վերայ սեաւ արճճոյ, և դառնային ՚ի բնու-
թիւն ոսկւոյ։ Եւ գրէր անդ ՚ի բաժինս եկե-
ղեցւոյ և աղքատաց։ Եւ ետուն զայն, և
ինքեանք մեծացան լցան․ և ստացան ձիս և
ջորիս․ այլ և բազէս և շունս․ և երանէին
և որսային և զբօսնուին։

Եւ լուաւ թագաւորն Տաճկաց, կոչեաց
զնոսա և չարչարեաց և առ զամենայն ստա-
ցուածսն․ բայց զքիմիայն ոչ ճանաչելով
զատուրջինն թափէին զնոսա յերկիր իբրեւ
զհող կարմիր․ որ և ապա իմացեալ զղջացան
և ապաշաւէին։ Բայց զորդիսն Աթանասի
եդին ՚ի կապանս և կուսան մի արգելին ՚ի
փիրնաստան․ և եդին պահապանս․ և նա
երկուցեալ ՚ի խայտառակութեանց ընկէց զինքն
բարձունէն ՚ի խոնարհ և մեռաւ։

Եւ իմացեալ Թագաւորն աղորմեցաւ, և
եհան զեղբարսն նորա ՚ի բանտէն։

Իսկ զօրացն Յունաց գիտացեալ, եթէ
նախատեն զնոսա Տաճիկք վասն Երինեայ․
զի կին էր թագաւոր նոցա․ եդին իւրեանց

թագաւոր զոմն Նիկեփոռ անուն. և նա ար-տաքսեաց զԻրինէ յԱթէնս։

Յորում ամի շինեցին Տաճիկք զՍւպատարա քաղաքն (1) Հայոց։

Եւ զի այր քաջ էր Նիկեփոռ և իմաստուն չոգաւ յերկիրն Տաճկաց. և դարձաւ բազում աւարով։ Եւ ասեն վասն նորա ոմանք թէ 'ի տաճիկ ազգէ էր։

Եւ պատմեցաւ Ահարոնի թէ Նիկեփոռ որդի զօրութեան է, և պահող և աղօթող, և սիրեաց զնա. և չոգաւ առ նա, և արարին սէր և երդուան միմեանց. և կերան հաց 'ի միասին։

Եւ Ահարոնն ետ զամենայն պատրաստութիւն սպասուցն և զվրանս իշխանացն Նիկեփոռայ, և արձակեցան 'ի միմեանց։

Եւ առ Ահարոն կին յԻրակլեայ, և շինեաց յանուն նորա քաղաք 'ի վեր քան զԿալինիկոս. և կոչեաց զնա Իրակլիա. և Նիկեփոռ շինեաց զԱնկիւրիայ։

Յայսու ժամանակօք սուրբ եպիսկոպոսն Անանիայ, որ էր 'ի լեռնէն հազարաւորաց. այսինքն 'ի լեռնէն Նինուէի շինեաց վանք մի յանուն սուրբ Անանիանցն 'ի վերայ աւերակ դղեկի միոյ. զոր գնեաց 'ի Տաճկաց

(1) Ամենայն օրինակք բաց 'ի միոյն՝ ունին զերկիրն։

և շինեաց ՚ի մէջ նորա տուն սրբութեան խորանազոյնս և անյայտս, և եբեր ՚ի Տարայոյ զնշխարս Նանիխանցն, և զսուրբ առաքելոցն զԲարդուղիմէոսի ՚ի Հայոց և զՓիլիպպոսի ՚ի Անրեձայ, և երթեալ ՚ի Հռոմ աղօթեաց անդ առատատուօք առ Տէր և տուաւ նմա ՚ի նշխարացն Պետրոսի և Պօղոսի, և եբեր անդ: Եւ չոգաւ ՚ի Բաբելոն, և առ անտի զմարմին Դանիէլի մարգարէին. և զՅեզեկիէլի մարգարէին, և զՍեմայ զորդւոյն Նոյի, և այլ բազում նշխարս. և բերեալ եդ ՚ի սրբատանն զոր շինեաց, և ծածկեաց: Եւ շինեաց ՚ի վերայ նորա եկեղեցի փառաւոր, և է մինչեւ ցայսօր. և կատարին անտի խնդիրք աղօթից:

Իսկ Ահարոն Թագաւորն Տաճկաց արար խնդիր զանձուց իւրոյ. և գտաւ աւելի քան զԹ ամբրայն հազար բիւր. և բերկրեցաւ և կրկնեաց երեք ծուներ Աստուծոյ, և կոչեաց զերիս որդիսն իւր. զՄահմէտ, զՄահմուտն (1) և զԿասումայ, և գրեաց նոցա գիր, զի կարգաւ առցեն զԹագաւորութիւն ըզկնի մահուան նորա ըստ աւագութեան և կրտսերութեան: Եւ առեալ զՄահմուտն և

(1) Երեւի որդի զՄամունին

տարաւ 'ի Խորասան, և ինքն մեռաւ անդ. Թագաւորեալ ամս քսան երեք։

Իսկ Թագաւորն Յունաց Նիկիփոռ չոգաւ 'ի վերայ Բուլղարաց. և եհաս մինչև ցաթոռ թագաւորութեան նոցա զօրութեամբ մեծաւ. և կոտորէր զնոսա անողորմ այնպէս, մինչև ժողովեալ զմատաղ մանկունսն կալսէր զնոսա կամնասայլիւք. զոր տեսեալ փրանկի միոջ զվայրենի և զգազանացեալ բարս նորա, եհար զնա յանկարծ և սատակեաց, մեկուսի դնեալ զնա յիւրոց մարտիկապահաց։ Եւ դարձաւ զօրն և թագաւորեցուցին զԼեւոն ոմն. և յանկարծս սպան զնա զօրագլուխն Միխայէլ. և թագաւորեաց Յունաց։

Իսկ թագաւորութիւնն Տաճկաց չփոթեցաւ. յերկուս տէրութիւնս։ Քանզի թագաւորեաց Մահմէտ 'ի Միջագետս և Մահմուտն 'ի Խորասան, և կռուեցան ընդ միմեանս. և հարան զօրքն Մահմետի, և փախեաւ 'ի նմանէ և չոգաւ ամրանալ 'ի Մամուստա ամրացուցեալ զնա։ Իսկ Հուսէյն զօրապետն Մահմետի յարեաւ 'ի վերայ նորա, կալաւ և եդ 'ի բանտի. և ինքն գնաց նստաւ 'ի Բաղդատ։ Եւ աղաչէր Մահմէտ զՀուսէյն, զի միայն արձակեսցէ զնա 'ի կա-

աղբիւրք բացան նաւթոյ և կուպր և ջրոյ, և յոլովք լցան ։

Իսկ Մահմուտ (1) թագաւորն Տաճկաց ունէր առ ինքն այր մի յոյն ազգաւ Թումաս անուն, որ եկեալ էր առ հայրն նորա Ահարոն և ասէր զանձնէ թէ իցէ որդի թագաւորի. և ունէին զնա պատուով. և հաւատացին նմա ։

Վասն որոյ առաքեաց զնա զօրօք 'ի Կոստանդնուպօլիս զի կամ առցէ զնա և կամ զանէ արասցէ զնա յանհանգիստ. և չոգաւ Թումասն և պաշարեաց զԿոստանդնուպօլիս զվեց ամիս. և յոյժ նեղեաց զքաղաքն ։ Եւ Միխայլն եհան զՏաճիկ ծառայսն և խոստացաւ նոցա ազատութիւն, եթէ սրտի մտօք կռուեսցին ընդդէմ Տաճկաց. և միաբանեալ նոքօք ընդ Թումասն և պարտեաց զնա. և փախեաւ սակաւուք, և հասեալ կալան զնա. և կտրեալ զոտս և զձեռս նորա շրջեցուցին ընդ քաղաքն ։ Բայց զծառայսն ոչ ազատեաց Միխայլն ըստ խոստմանն ։

Իսկ Մահմուտն լուաւ եթէ Կուրոպաղատքըն (2) ազգաւ մի Տաճկաց ապստամբեցին 'ի Բաղդատ և եդին իւրեանց թագաւոր զ[illegible]

(1) Զայս մի և նոյն անուն Մահմուտ երբեմն Մոգմուտ. երբեմն ժէլ Մահմուդ, երբեմն (2) Այլ օրէ. Կուրոպաղատ.

րեհիմ ոմն. և եկն 'ի վերայ նորա: Իսկ փախեաւ Իբրեհիմն և անյայտ եղեւ: Իսկ նըստաւ Մահմուտն 'ի Բաղդատ. և գնաց առնա Դրահիմն, և առաքեաց զնա իշխան 'ի Խորասան:

Զայսու աւուրբք ծովն Անդրիանոս, ձուկն մի ընկեց յերկիրն Կիւլիկիայ քառասուն կանգուն երկայն և նոյնչափ լայն. և տեսանէր որպէս բլուր մի ահագնալի տեսլեամբ: Իսկ ժողովեցաւ երկիրն և կտրատեցին զնա. կերան և ապխտեցին և հանէին 'ի նմանէ իւղ բազում ամանօք, և վաճառէին և ուտէին և հիւանդային:

Ի թուին Ասորւոց հարիւր քառասուն առ հազարաւ, և Հայոց երկու. հարիւր և վեց մեռաւ Միխայլ թագաւորն Յունաց և թագաւորեաց Թէոփիլոս. և եկին Բուլղարք. և Բուրդանք 'ի հնազանդութիւն նոցա:

Իսկ Բուրդանքն ազգ են առանձին լեզուաւ. և դոյր 'ի հին ժամանակաց բան ինչ դիւթական 'ի մէջ նոցա. եթէ այր մի 'ի նոցանէ յայտնելոց է Մահադի անուն, եւ թագաւորէ. և որ հաւատայ 'ի նա և մեռանի՝ զինի քառասուն աւուր յառնէ. և տակաւ ինչ կեցեալ փոխի յանմահական աշ-

խարհն։ Եւ ոմանք կարծեցին թէ Աստուած իցէ, և այլք զօրութիւն ինչ, և կէսք. թագաւոր. և սպասէին նմա։

Զայսու ժամանակօք յայտնեցաւ այն անուամբ ոմն։ Եւ կարծեցին թէ նա է, և ինքն ասէր թէ ես եմ ն.եղիւր թագ. և հաւաքեցան առ նա ազգն իւր, և ել յերկրէ անտի բազմօք. և եղ հանդերձ զինմանէ և գայթին յամենայն կողմանց. և ձգէր նա քաղ 'ի վերայ երեսաց իւրոց. և անցեալ զգաղթ զօրուօք և չոգաւ յաշխարհն Հայոց 'ի բերդն Ասպարատու կոտորելով զանհաւանեալսն։ Եւ զահի հարաւ Սահմուռն 'ի նմանէ քանզի դարձաւ. և եկն 'ի Նդերա, աւերէր և կոտորէր զամենայն ազգ նմանապէս։

Եւ պնդեցաւ զոնձն զօրագլուխն Սեհմուսայ Հասան, և խաղաց գնաց 'ի վերայ նորա և սկսաւ կոտորել։ Եւ Սահմադի ընկեցեալ զքողն և զթագն և փախչէր. և անկաւ յերկիրն Սահակայ հայկազնց. և դարձաւ Հասան 'ի նմանէ։

Եւ Սահակ եղ զհետ Տաճկաց և կոտորեաց 'ի նոցանէ զբազումս և փախոյց. և յորժամ դարձաւ 'ի կոտորածէն Տաճկաց եգիտ պաշարեալ զտուն իւր 'ի Բուրդանացըն, և եհար զնոսա. և կալեալ զՍահմադի

կտրեաց զգլուխ նորա, զայն՝ որ երբեմն ա-
սէր թէ Աստուած եմ ես, և երբեմն հրա-
գի ասէր զանձն։ Եւ առ զկանանս նորա Սա-
հակ իշխանն և ոսկւոյ ՚ի նոցանէ ապրեալք
թագաւորականք եկին առ Թէոփիլոս։

Եւ գնաց Թէոփիլոս նոքօք ՚ի Զուպատ-
րայ. և առ զնա և աւերեաց և դարձաւ։

Իսկ Մահմետ վերստին շինեաց զԶու-
պատրայն. Եւ եկեալ Մուհաւյ եհարց ըզ-
մուտն եկեղեցւոյն. և ասացին թէ որքան և
ունի հարկատու ձեր է։ Եւ ետ Մահմետ
գրել օրէնս, զի ազատ լիցի եկեղեցի յամե-
նայն ստացուածս իւր և ոչինչ տացէ յարքու-
նիս։ Եւ գնաց Մահմետ յամարայնի ՚ի Կապ-
պադովկիայ, և առ բերդս չորս. և դար-
ձաւ ՚ի Դամասկոս ձմերել։

Եւ ՚ի գալ միւսոյ ամին չոգաւ պաշա-
րեաց զբերդն Լուլիայ (1) և ոչ կարաց առ-
նուլ զնա. և եթող զօրս ՚ի վերայ նորա. և
չոգաւ ՚ի Բեւտն։

Եւ ել ընդ առաջ նորա պատրիարքն
Յովհաննէս և մեծամեծքն յոյժ. և հաստա-
տեաց նմա զազատութիւն եկեղեցւոյ։

Եւ մինչ խօսէր ընդ նմա Մահմետ հա-
սին աւետաւորք թէ առաւ զԼուլիայ. և հր-

(1) Մէ օրի. Լուլվայ։

մնայեաց զերքն. և 'ի սրտէ սիրեաց զպատրիարգն, և ետ նմա պարգևս։

Եւ առաքեաց Թէոփիլոս առ Մահմուտ խնդրել խաղաղութիւն։ Եւ ասէ Մահմուտ տուք ինձ հարկս. և կարդացէք զիս Թագաւոր 'ի վերայ ձեր, և արարից զոր խնդրէքդ. և ոչ եւս լուաւ պատասխանի։ Եւ գնաց Մահմուտ 'ի Կիլիկիայ. և եկն առ նա ոմն 'ի Յունաց խաբեբայ. և ասաց զինքն որդի Թագաւորի. և հաւատաց նմա Մահմուտ, եւ կամէր նմա Թագ յերէք հազար դահեկանէ. և կոչեաց զՅոբէ պատրիարգն Անտիոքու, և ասէ ցնա. օրհնեա զսա Թագաւոր բուն ազգ-նացդ ձեր. և արար այնպէս։ Եւ լուեալ 'ի Կոստանդնուպօլիս նզովեցին զՅոբէ։ Իսկ Թագաւորեալն 'ի Յոբէայ յետ սակաւ աւուրց ուրացաւ զՔրիստոս. և սատակեցաւ։

Իսկ Մահմուտ գնաց յերկիրն Յունաց և խաբէութեամբ զամենայն երկիրն Հեղեղեաց մինչև 'ի քաղաքն Տայանու. զոր աւերեալ էին Տաճիկք. և նա սկսաւ շինել 'ի հարկաց երկրին զոր առնոյր դաժան և խիստ և անագորոյն դահճօքն. մինչև ամենայն քեզու նզովէր զնա։ Եւ եհաս յանկարծ Տեառըն զօրութեանց. և սպան զնա Աստուած 'ի սեղուոջն։

Եւ Թագաւորեաց Մ.բուսահլ(1) եղբայր նորա որ և այրեաց զամենայն շինուածն և զնոցա ՚ի Բաղդատ։

Եւ եկին առ նա արք ՚ի Բասրայ և ասեն. կղզի մի է ՚ի մէջ ծովուն որ կոչի Պարսից ՚ի տեղւոջն ուր խառնին Տիգրիս և Եփրատէս ՚ի ծովն. և է անդ բերդ մի միշտ ապստամբ բանակաց լեալ. և մտանեն զխաժամուժանն որ կամին գնալ ՚ի Հնդիկս, և յԵթովպիայ։ Եւ առաքեաց Թագաւորն յԵգիպտոս և ՚ի Սաբայ(2) և եա ածել անդի առս արուեստաւորըս ծովանաւաց հնարիմացս, որք ծածկէին ըն- զայսպիսանս սաղմամբ տախտակ, և առնել ձէթ տապակով ընդ ինքեանս մխէին ՚ի խորն. և ուր և պատէր, եղանէին։

Եւ գնացին հանդերձ բազմութեամբ զօրաց լեալ ՚ի նաւս, և եկին բնակիչք բերդին կռուել ընդ նաւսն. և խորամուխք ծովատուզեալք ՚ի ներքոյ նոցա եկին ՚ի գուբս առ դրան դղեկին. և դատին զդուռն ՚ի բացյըս. և զարս բերդին, զի կռուէին նաւովք ընդ զօրս Տաճկաց։ Եւ առին զբերդն և քանդեցին ՚ի հիմանց. և զարսն սպանեցին, և բարձաւ խռովն այն. և եղեւ գիւ-

(1) Երկու օրէ․ Աբու- (2) Երկու օրէ․ ՚ի Պաղդա- տաղ․ մի՝ Աղասանիալէ։

ոսկեղէն և նկարեալ 'ի չարս մարգարտաց 'ի վերայ նորա զմբեթաձեւ զարդ խաչ ոսկեղէն ունելով 'ի գլուխն. և ինքն զգեցեալ և պսակեալ անասելի բանիւ հանդերձս և թագիւ: Իսկ խաչ ոսկի 'ի վերայ ոսկեղէն խնձորոյ 'ի մի ձեռն, և 'ի միւսն գաւազան ոսկի խաչիւ. Նոյնպէս և բազմութիւն երիցանց ընդ նմա, և չորս եպիսկոպոսք և չորս քահանայք աստի և անտի գնային ընդ նմա խաչիւ բարձեալ. և զօրքն զգեցեալք և զարդարեալք ազգի ազգի յօրինուածովք աժանաւոր տեսողաց: Եւ ել ընդ առաջ նորա զօրաւոր Տաճկաց, և գովեաց զյօրինուածս զարդուն, և տարաւ զնա 'ի Բաղտատ երեւելի փառօք. և նստան 'ի միում բարձի:

Եւ կոչեաց զպատրիարգն Գրէգորիոս. և եհարց զուղղափառութենէ նորա, և ետ նմա պատարագ առնել, և հաղորդեցաւ 'ի ձեռաց նորա:

Եւ զարմանայր պատրիարքն ընդ իմաստուն և կատարեալ հաւատ պատանւոյն. զի անարգէր զերկու (բնութիւնն) ասացեալն 'ի Քրիստոս:

Իսկ թագաւորն Տաճկաց ետ պարգեւս թագաւորին Քրիստոնէից անհամար և անկշիռ, գիտելով թէ ոչ ոք յառաջնոց թա-

գաւառացն պատուեցաւ իբրեւ զնա գալս- տեանն Թագաւորին Նուբեայ. և հաստա- տեցին սէր կատարեալ ոչ ծախիւք իբրեւ զառաջինն 'ի Նուբեացն այլ միայն բարի կա- մօք և անմոռացութեամբ. և զՆուբիան քա- ղաքս և զԻոզան արարին կիսաքաժինս, որք կան 'ի վերայ Նեղոս գետոյն:

Եւ գնաց գեղեցիկն Գորգի երկուեքե փառօք յաշխարհն իւր:

Բայց երկու եպիսկոպոսք և բազումք 'ի զօրացն մեռան զի չէին սովորք փոփոխական[1] օդոյ ամարան. և ձմերան: Իսկ երկու զօրա- գլուխքն Տաճկաց, Նասրան և Պասաքն[2] հաճեալ ընդ վարս քրիստոնէից զոր տեսին: Նուբեացն, գնացին առ Թէոփիլոս Թագա- ւոր, և եղեն քրիստոնեայք:

Եւ Թէոփիլոս հպարտացեալ նոքօք չո- գաւ 'ի Զուպատրայ, և առ զնա. և կոտո- րեաց նմանապէս զքրիստոնեայս և զՏաճիկսն:

Եւ գնացեալ 'ի Մելտենի գերեաց զնա. և եւ յԱշմուշայ և 'ի Հանձիթ, աւերեաց և գերեաց:

Եւ լուեալ զայս Աբուսահլն բարկացաւ և խաղաց ամենայն ուժով իւրով 'ի վերայ Յունաց, եղեալ յերկուս բանակս անթիւ

(1) Երկք օրի. փոփոխանակ: (2) Մի օրի. Բասպաքն:

հեծելով և յոլով կազմութեամբ․ զի կային ընդ նմա և երեսուն հազար Մուղլի, և վաճառականս երեսուն հազար, որ ունէին բարձեալ բեռինս քան հազար ջորիս (1)․ զայն դու տես․ և գնացեալ յԱնկիւրիա առ անձեռն․ և աւերեաց մինչեւ յԱմուրին քաղաք մեծ և բազմամարդ և վայելուչ և ամուր յոյժ․ և ոչ գոյր նման նմա ՚ի վերայ երկրի․ և պաշարեաց զնա երկոտասան օր․ և առ զնա մատնութեամբ իշխանի միոյ Ռուձ անուն․ և սպան ՚ի նմա անձինս տասն եւութ հազար․ Եւ եգիտ անդ կուսանաց վանորայս (2) հազար, զորս ետ ՚ի կնութիւն ծառայից իւրոց, և այրեաց զքաղաքն․

Եւ անձառ է իրաւունք դատաստանին Աստուծոյ․ և ոչ ոք է հասու նմա․ և զոր-նեալ են խորք նորա մեզ անծանօթ․

Եւ էր որդի Սբուսահլայ, Պաւութ անուն նորա որ չնչեալ ՚ի դիւաց աղաչեաց զհայրն բառնալ զքրիստոնէից համարձակութիւնն ամենեւին․ ոչ երեւել խաչի արտաքոյ եկեղեցւոյ և ոչ բառնալ մեռեալ ՚ի բազկաց և ոչ լսելի առնել զպաշտօն եկեղեցւոյ և խօղ ոչ ունել ումեք, և ուտել խո-

(1) Մէ օրի․ յիսուն հազար ուղտոյ․ և քսան հազար ջորիս․

(2) Հինգ օրի․ վանս․

յուսոյ (1). բայց տաց քեզ վերադիրս. Է արարին այնպէս. և եղեւ խաղաղութիւն 'ի մէջ նոցա :

Յորում ժամանակի յայտնեցաւ այր մի Թամամ անուն. որ ասէր զինքն պատգամաւոր եկեալ յԱստուծոյ (2). և ասէր՝ «մի առնուք հարկս 'ի քրիստոնէից աւելի քան զբաժ չորս դրամոյ և խնդացին յիսուսացիք (3). և հաւաքեցան առ նա աւելի՛ քան զերեսուն հազար արանց 'ի յաղքատաց. և եղ նոքօք յԵրուսաղէմ: Եւ քակեցաւ զաւուրբ Յարութիւնն :

Եւ գնաց առ նա Ամիրայն Դամասկոսի և սպան զնա. զի հակառակ էր օրինաց նոցա:

Յայնժամ մեռաւ Աբուսահլն և Թագաւորեաց որդի նորա Աշոտն այր կերող և արբեցող. և ոչինչ գիտէր յանձից և 'ի պատահմանց երկրի: Եւ վեց ամ արքայութեանն կեցեալ մեռաւ: Եւ 'ի սոյն ամի մեռաւ Թէոփիլոս: Եւ Թագաւորեաց Միխայէլ որդի նորա մայրբն Թէոդորաւ:

Եւ 'ի ժամանակս սորա վեց Թագաւորք

(1) Մի օրին. ոչ է մարթ փոխել սրբոյ մարգ պատուական ընդ յոյն մարդոյ յուսւոյ:

(2) Զոր օրին. պատգամաւորեալ:

(3) Մի օրին. քրիստոսացիք. Մի օրին. հնացոյն. քրիստոնեայք:

հլըն . և առաքեաց Կոստանդին զորդի իւր զՎասիլն որ առ զՍամուսատ քաղաքս։ Եւ նոյն ժամայն եհաս գուժկան թէ մեռաւ հայրն նորա . և թագաւորեաց Ռոմանոս միւս եղբայր նորա . և դարձաւ Վասիլ և եղև հընազանդ եղբօրն ։

Եւ առաքեաց Ռոմանոս զօր 'ի վերայ Հալպայ և առին զնա ։ Եւ մեռաւ Աբուսահլն և թագաւորեաց Աբասկայ Աբուլըսան ամս վեց։ Եւ յետ սակաւուց մեռաւ Ռոմանոս . և թագաւորեաց Նիկիփոռ այր աղգէտ և ատեցող ուղղափառութեան . որ և գնացեալ 'ի Մելտենի եգիտ աւերեալ և անմարդ զնա . և էառ նմա խրատ զի կոչեսցէ զոմն Յովհաննէս պատրիարգն Անտիոքու և տայցէ ցնա զերկիրն . զի բերեալ զազգն իւր շինեսցէ զաշխարհն ։ Որ թէ դէպ լիցի և դարձեալ զօրանան Տաճիկք , լաւ է մեզ առեն զի նոքա կորիցեն . և արար այնպէս . և երդուաւ նմա դադարեցուցանել զհալածանս ուղղափառաց . և հաւատաց նըմա պատրիարգն . և շինեաց զքաղաքն և զաշխարհն և ելից զերկիրն գեղիւք և վանորայիւք , ածեալ 'ի Միջագետաց և 'ի Հայոց ուղղափառս . և արար զբնակութիւն իւր 'ի Պերխան ։

Իսկ յորժամ յաջողեցան իրքն կոչեւոց զՏէր Յովհաննէս 'ի Կոստանդնուպօլիս. և չոգաւ եպիսկոպոսօք և վարդապետօք. յերեք հարիւր եւթանասուն և ութ թուականին Հայոց. և արարին ժողով մեծ և մարտեան ընդ ուղղափառսն. բանիւք և զօրութեամբն Քրիստոսի այնպէս յաղթեաց Ճշմարտութիւնն. որ և ամենայն լեզու օրհնեաց զհաւատս մեր։

Բայց անօրէն Թագաւորն խոստանայր աթոռս և պատիւս ուղղադաւանիցն. թէ առն միայն զերկու բնութիւն. և սպառնայր, թէ ոչ լսեն նմա.

Նոքուն պատասխանի ետեն. մեք ոչ վասն երկիւղի, և ոչ վասն յուսոյ փառաց սնոտեաց չքամանեմք զմիննն. զի մի քակեսցուք 'ի նմանէ. և զայրացեալ Թագաւորն եդ զնոսա 'ի բանտի չորս ամիս։ Իսկ Թագուհին Թէոփանէս սպան զՆիկեփոռ՝ զի չէր ամուսնացեալ ընդ նմա. և առ զՅովհաննէս անուն այր իւրեան և եդիր նմա Թագ, որ և յառաջագոյն կրէր զմուշկ Թագաւորին. և շնայր ընդ Թագուհին, և խորհեալ ընդ միմեանս սպանին զԹագաւորն։

Եւ Թագաւորեաց Յովհաննէս, որ և Չմշկիկն կոչի. և սա եհան 'ի բանտէ ըզպատրիարքն և զեպիսկոպոսունսն և գնացին

Եւ յետ այնորիկ դարձեալ արարին աւերումն և նուաճումն, և առին զպատարիայքն. հաւանեցաւ մեզ և առ զաթոռն Անտիոքու միայն։ Եւ ասէ ցնոսա. Ես աթոռ ունիմ յերկինս և յերկրի [1] և մարմնական աթոռ ոչ է պիտոյ ինձ. և ասեն դարձեալ. դուք ոչ մկրտութիւն ունիք և ոչ քահանայութիւն, առէք 'ի մէնջ և գնացէք։ Ասէ սուրբն. զոր Քրիստոս և Առաքեալքն ետուն և պահեաց Դէոսկորոս և Սեւերոս, մեք ունիմք. և հաւատամ զոր ասեմս, թէ դուք բնաւ ոչ ունիք., բայց միայն նզովք 'ի գըլուխս ձեր։ Եւ բարկացեալ նոցա վճիռ ետուն յաքսորս երթալ յարեւմուտս։ Եւ տարան զնա քանի և ութ օր, և դարձեալ զղջացան, և դարձուցին 'ի Կոստանդնուպօլիս. և եդին զնա 'ի բանտի. և եղեն 'ի ձեռս նորա բազում բժշկութիւնք 'ի կոյրս և 'ի կաղս և 'ի հիւանդս. և ել համբաւ բարի ընդ ամենայն երկիր. և բազումք դարձան յուղղափառութիւն. և անդէն 'ի բանտին կատարեցաւ սուրբն Յովհաննէս. և նըշխարք նորա եղան ընդ Մարտիրոսս յաշակերտաց նորա և ընդ սուրբս յիշատակ նորա։

(1) Հին. օր. Ես զաթոռն յերկինս. և մարմնաւոր աթոռ Պետրոսի ունիմ յերկրի և թոռ ոչ է պիտոյ ինձ։

Եւ բարկութիւն Տեառն եղեւ 'ի վերայ Իսմայելի եւ սաստկեցաւ, եւ թագաւորեաց Միխայլն ամս ութ. եւ ամն ազգայինն նորա խորհեցան. թագաւորել, եւ արար ժողով զեւլթն ամիս. եւ կալան փորեցին զաչս նորա 'ի ոտեղունն ուր դնաւ գիր 'ի վերայ քարի միոյ թէ սաս թագաւոր խաւարի:

Եւ յաւուրս Միխայելի Սուլիման Տաճիկ դարձոյց զՍեւոհայ 'ի Յոյնս: Իսկ յետ մահուանն Միխայելին կալան զթագաւորութիւնն Զոյի, եւ Թէոդորան դստերք թագաւորին Կոստանդիանոսի: Եւ Տաճկաց թագաւոր Մըբդլըբաս էր:

Բայց հաճոյ եղեւ մեզ յայսմ միջոցի յոյս առնել ուսումնասիրաց, յաղագս երանելոյ ազգին Թուրքաց թէ յորմէ ազգէ իցեն եւ ո՞ր է աշխարհ նոցա եւ ուստի. եւ զի՞նչ պատճառաւ եկին յաշխարհս մեր. եւ առաջին բնակութիւն 'ի գաւառս գաւառս: Գրքին մարգարէից սուրբն Մովսէս ասէ 'ի գիրս ծննդոց այսպէս. Յաբեթ ծնաւ զԹիրաս եւ նա զԹորգոմ եւ զԳոմեր եւ զայլս ընդ նմա. ուստի յայտ է թէ յազգէ Թորգոմայ են, վասն որոյ եւ Թուրքք ասին. յորմէ Գոմեր եւ Մագոգեր, որ է ազգ ամբոխական. որ եւ զինի ցրման աշտարակին գնացին արեւելեայք եւ

դարձան 'ի կողմն Հիւսիսի և առին բնակու-
Թիւն յայնկոյս լերանցն. մեծաց և երկայնա-
գունից՝ որ կոչին առինք Հիւսիսի ։ և ձգե-
ցան տարածեցան յարևելից Հիւսիսոյ,
մինչև յարևմուտս Հարաւոյ. և ունին եր-
կուս մուտս. մի 'ի Պարսս և միւս յԱլանս
և 'ի Միրս, զոր փակեաց Աղեքսանդր Մակե-
դոնացին. և են նոքա հեզագնացք և անա-
գահք և պարկեշտք 'ի ցանկութիւն կանանց.
և պաշտէին մի Աստուած, և կոչեն զնա
Կօքտանգրի (1) որ է կապոյտ Աստուած քան-
զի զերկինքն կարծեն Աստուած. և ուտեն
զամենայն գարշելի և զմեռելոտի. և ագա-
նին բրդեղէնս մաղեղէնս զի այլ ինչ ոչ լինի
առ նոսա. և օրէնս ինչ գրով կամ աւանդս
ոչ ունին՝ քանզի ոչ գնաց առ նոսա մար-
գարէ ոք կամ առաքեալ. վասն որոյ Պար-
սիկք յորժամ զօրացան, ամրագոյն դրամբք
փակեցին զելս նոցա. և շինելով 'ի վերայ
նոցա և առ ընթեր նոցա բերդս վեց և կա-
ցուցին պահապանս, զի մի ելցեն լցեն
զերկիր բազմութեամբն իւրեանց. և պղծ-
ծեն զնա գարշութեամբն իւրեանց.

Նոյնպէս Աղեքսանդր Մակեդոնացին
գործել էր զդուռն որ 'ի Դարպանդն երեք

(1) Թուրքերէն կէօյ Թանկրի. երկ. նոյ Աստուած.

հազար դժարբնայ 'ի պղնձոյ և յերկաթոյ զվէց ամ 'ի մէջ լերինն և ծովու երկայնագոյն աղխամբ (1) փակերով զնա ։ Ասէ վասն նոցա Եզեկիէլ մարգարէ ․ Գովք և Մագովք կոչելով և իշխան Թոբելայ և Մոսոքայ ։ Եւ նոքօք ապականեալ ազգին Հրէից ․ և դարձեալ կատարել ասէ նոցա յԵրուսաղէմ ․ և երիցս անգամ կրկնէ մարգարէն որ յաղագս նոցա բանն է ․ ուստի իմանամք երիցս անգամ ելանել նոցա արտաքս ․ և առաջին ելանելն նոցա այն է որ նախ քան ըզՔրիստոս հինգ հարիւր տասն ամաւ , եղեւ այնպիսի պատճառաւ ։

Թագաւորքն Պարսից 'ի կարեաց ժամանակի հանէին 'ի նոցանէ ընդ դուռն որքան պիտոյ լինէր վարձուք ․ որ և Կամբիւսոս որդին Կիւրոսի զոր ասեմք 'Նաբուգոդոնոսոր կոչեն , եհան 'ի նոցանէ և կռուեցաւ ընդ արքային Եթուբայ ․ և զՀողոփեռնէս որ 'ի նոցանէն էր առաքեաց 'ի Պաղեստինէ ․ այնպէս հանէին , և զկնի վճարման պատերազմին դարձեալ տանէին արկանէին 'ի ներքս որ և տանէին ընդ ինքեանս յամենայն բարութեանց երկրի ․ ոսկի և արծաթ և հանդերձս ազնիւս , և պտուղս ․ և շարժէին

(1) Երկու օրի․ գրանք ․ և․ րեք օրի ․ ասղանք ։

նոցա ցանկութիւն ելանելոյ եթէ կարասցեն գտանել հնարս ։ Եւ եղեւ զի ըստ սովորութեանն տանէին զնոսա յարգելարանն իւրեանց . և սակաւք էին տանողքն (1) . և մօտ եղեալ 'ի դուռնն յարեան 'ի վերայ տանողացն և զահապանաց դրանն և կոտորեցին զնոսա և առին զմի 'ի բերդիցն և արարին 'ի հրամանս իւրեանց . և ազդ արարին յերկիրն իւրեանց և եկին օգնել նոցա , և առին զայլ բերդսն և ամրացսն . և ազդ եղեւ հեռաւոր ազգի սոցա որ կային իշխանք և ճոխագոյնք նոցա , զի կենդանի մի սպիտակ երեւեալ առաջնորդէր նոցա իբրեւ զշուն . և յորժամ ցրուէին և մոլորէին մեծագոյնս կանչէր և դարձուցանէր առ ինքն , և սրագին նմա երկիր և հաւանեցան . և բերէր զնոսա մինչև 'ի դուռնն և ահա բացէր , և եկին ընդ նմա . և յորժամ կարի յաճախեաց բազմութիւն ազգին ելանել, դարձեալ փակեցին զդուռնն և եկին մինչեւ յԱրաբիայ մերձ աշխարհին Պարսից . և ապա եղեն երեք բանակք . և արկին վիճակս ձգելով երեք գաւառաւս ընդ երկիրս . մինն անկաւ 'ի հարաւ , և գնաց բաժինն առաջին 'ի կողմն Հնդկաց . և միւսըն անկաւ յարեւմուտս հիւսիսի , և գնաց

(1) Մի օրի. տարողքն։

միջին բաժինն բնակեցաւ առ ընԹեր Թրա-
կիոյ և յանուն աշխարհին կոչեցան Կոմանիք։
Իսկ երրորդն անկաւ 'ի միջոցս երկրի, և եկին
խառնեցան 'ի Պարսիկս և հնազանդեցան նո-
ցա ուր եւ գնային. եւ դարձեալ բացաւ
դուռնն և ելին այլք բազումք, և փակեցին
զդուռնն. և կային 'ի նոսա իշխանք եւ Թա-
նասուն որք արարին բողործելով և կացին
շուրջ 'զնովաւ. և իւրաքանչիւր գաւազան
'ի ձեռին իւրում և ձգեցին յերկիրս 'ի վեր
և ասացին. որ անկանի 'ի ծիրն 'ի գաւազա-
նացն. տէր գաւազանին Թագաւոր է. և իւր
գաւազանն անկաւ 'ի ծիրն. և մինն 'ի նոցա-
նէ ցցեցաւ. և կանգնեցին 'ի տեղւոջն իւր
Թագաւորութիւն, և ութն հնազանդեցան
միոյն, որում անուն էր Խաքան, և կան 'ի
տեղւոջն հաստատուն որ է աշխարհ ընդար-
ձակ և տիրեն ներքոյ դրանն. և վասն դրանն
ոչ մեկնեին անտի զի այն է ամրութիւն նոցա.
և քանզի բազումք այն են որ խառնեցան յԱ-
րաբացիս` նոցա անուամբ կոչին Սելճուկք 'ի
Սելիմայ առեալ զանուանակոչութիւնն. և
առաւել միաբանեցան ընդ նոսա. զի նոքա
մի Աստուած դաւանեին իբրեւ զնոսա։ Իսկ
լուան 'ի նոցանէ Թէ մի երկրպագանէք ա-
րարածոց. անարգեն զխաչն. և զեկեղեցիս.

Իսկ այնոքիկ որք գնացին 'ի Հառան և յարեւմուտս որք դիպեցան քրիստոնէից, քրիստոնեայք եղեն. և որք դիպեցան 'ի կռապաշտ ազգ. նոյնպիսիք եղեն վասն զի հաւանական են. նոյնպէս և ընդ միոյ դուռն հանեին Հայք և Իբերք յօգնութիւն իւրեանց 'ի նոցանէ և յարելով 'ի նոսա եղեն քրիստոնեայք և Խփչախք կոչին. զի խիւն ձոր ասի և խաչն աման որպէս թէ յամանի կան 'ի ձորս և ըստ պիտոյից ժամանակի ժամանակս Ընդ երկու եւք նոցա լեալ է և երրորդն տակաւ ին կատարեալ է ըստ մարգարէին Եզեկիէլի. որ ապականելով զաշխարհ գան մինչեւ 'ի Պաղեստին մօտ 'ի յայտնութիւն որդւոյն կորստեան. քանզի Յովհաննէս ասացեն ասէ թէ Տիբեր կայսր առաքեաց առ նոսա դեսպանս. և յորժամ եսես զնոսա խաքան նեղեալ յոյժ. և հարցեալ զպատճառն ասաց քան է առ մեզ նախատանութեան, զոր ըսպայես 'ի հարցն իմոց թէ յորժամ թագաւորքն Հռոմայեցւոց հնազանդութիւն առաքեն Թուրքաց, մերձեալ է աւեր աշխարհի. և եհարց Խաքանն եթէ դուք հարկս տայք Պարսկաց. և նոքա ասեն ոչ. այլ նոքա մեզ տան զխնամս. և զարմացեալ խաքանն եթէ այդպէս մեծ է Հռոմայեցւոց

թագաւորութիւնն ։ Եւ նոյն Յովհաննէս ասէ . թէ Տրայիանոս ընդ հարկաւ արար ըզ-Պարսս ։ Նոյնց դեսպանքն որ երթան ոչ ՚ի բուն աշխարհ նոցա երթան . այլ ՚ի խաքանն որ կայ արտաքս դրանն յայնկոյս աշխարհին Պարսից անդր քանզերինն Կաւկասու որպէս պատմեցին դեսպանքն Յուստինոսի և Հերակլեայ . և թագաւորն նոցա միշտ խաքան կոչի . և Շապուհ արքայն Պարսից հինգ հազար կուսանս անդ առաքէր և Խրադաշ էր անուն աշխարհին . և ձգին նոքա մինչև ՚ի Թետալիայ որ Թուրքաստան կոչին , ուստի գերիս էած Մահմուտ ամիրայն ՚ի Խորասան . յորմէ ազգէ սուլթանացս Թուրքացն , և յետ նորա Ալփասլան . և կան նոքա բուն օրինօք աշխարհին իւրեանց . բայց միայն թողին զմարդակերութիւնն զոր ունէին յերկիրն իւրեանց . այլ մեք դարձցուք անդրէն ՚ի կարգ առաջին ։

Ի թուին Հայոց չորս հարիւր վաթսուն թագաւորն Յունաց Կոստանդինոս Մոնոմախն թագաւորեաց ամս երկոտասան , այր մեծամիտ և առատաձեռն ։

Իսկ զթագաւորութիւնն Տաճկաց ունէր Աբլաքամ՝ յորում աւուր ընկղմեցաւ Զօրն Աղեկայն , և մնաց տուն մի ուղղափառ.

ռջի և ողորմածի առն, որում անուն էր Սկե-ռակոս։ Եւ 'ի նոյն ամի եղեւ շարժ ահագին 'ի պահքն առաջաւորաց։ Եւ զկնի այնորիկ եղեւ աղմուկ յԱնտաք յեկեղեցականսն 'ի միաբանութեան վասն խնդրոյ ինչ. և կէսքն 'ի նոցանէ գնացին առ պատրիարգն երկաբնա-կացն 'ի դատաստանն։ Եւ նա արար զնոսա քաղ-կեդոնիկս, և առ զեկեղեցիս ուղղափառացն զոր շինեալ էր 'ի վերայ գերեզմանի Ղուկա-սու աւետարանչի. որպէս նախ քան զայն առեալ էին զաթոռն Պետրոս։

Իսկ 'ի զատկի տօնին էառ Տէր զվրէժն. քանզի մինչ կային 'ի պաշտամանն եղեւ որոտ յերկինս, և անկաւ հուր 'ի Տեառնէ. և այ-րեաց զպատրիարգն և զքաղուածս ընդ նմա. և ոսկր մի անգամ ոչ կարացին հանել 'ի հը-րոյն. և գիտացին ամենեքեան, եթէ դա-տաստան Տեառն է։ և ուրացողքն դարձան 'ի խոստովանութիւնս իւրեանց. և բազումք յօտարացն մեր եղեն, և փառաւորեցաւ հաւատս մեր։

Իսկ 'ի լնուլ Թագաւորութեանն Տաճ-կաց չորս հարիւր երեսուն ամ, պատահե-ցաւ իշխանութիւն նոցա 'ի բազում մասու-նս. և սկսաւ Թագաւորութիւնն Թուր-քաց. զի 'ի գերեաց անտի զոր ած Մահմու-

տըն և բնակեցոյց 'ի պարարտ երկրի, և եթող զնոսա 'ի կամս անձանց, ածեցին և հըպարտացան: Իսկ սմա 'ի նոցանէ խրախանացաւ. և Թագաւորեաց որոյ անունն էր Տուղրիլբէկ. Դօղլաբէք ասացաք վերագոյն բառ այլոց կոչման. որ է մեծացաւ բարձրացաւ. և եղեւ (1) գոռոզ մեծ և տիրեաց բազում աշխարհաց և առաքեաց զօրս բազում 'ի սահմանս Հայոց մինչեւ 'ի Մելտենի, և առին աւար բազում, և գերի. և դարձան վերստին կողմանքն. և կալաւ զնոսա ձիւն սաստիկ 'ի լերինս Սասնոյ. և մեռան երեք հազար անձինք 'ի Թուրքաց: Իսկ գերիքն ազատեալք դարձան. զի վարժ էին ցրտոյ և ձեան:

Իսկ Թագաւորն Յունաց Մոնոմախին վախճանեալ. առ զԹագաւորութիւնն դուստրն նորա Թէոդորն ամ մի. և յետ նորա Միխայէլ ծերն ամ մի. այր պարկեշտ և աստհեցող. որ ոչ ունէր զվաստակս այլոց. այլ արուեստիւ ձեռաց իւրոց կերակրէր տարգալս գործելով վաճառէր: Սա յորժամ ետես թէ զօրացաւ Թուրքն. և տիրեաց Պարսից և Մարաց և Ասորեստանեայց և գայր աւերէր զերկիրն Յունաց, երկեաւ և անցոյց զքրիստոնեայսն յայնկոյս ծովուն, և յամուրք

(1) Մի օրին. Թագաւորեաց

տեղիս ։ Եւ եկեալ Թուրքացն, և գերեալ զերկիրն Նոսալեայ և զՍևծն և զԿաւներն անմարդ (անմարդաբնակ), ապա բնակութիւն առեալ դադարեցին 'ի տեղւոջն. և վասն այնորիկ տրտնջեցին բազումք զոր արար ծերն. բայց մարդասիրութիւն արարեալ խնայեաց 'ի հաւատացեալսն ։

Եւ իշխան մի Կոմանոս անուն յինքն շըրջեաց զԹագաւորութիւնն. և Մխայէլն գերծեաց զգլուխն գնաց 'ի վանս. և Կոմանոս վարեաց զԹագաւորութիւնն ամս երկու ։ Եւ յետ նորա Կոստոս (1) Տուկիծն յերկրէն Պամփիլագոնեաց (2). ամս իննն ։ Սա զօրացեալ եկաց ընդդէմ Թուրքաց. և շինեաց զպարիսպն Մելտինոյ ։ Եւ եկեալ Բաւսարոս (3) զօրագլուխն Տուղրիլին առ զՃալապ. և այս եղեւ սկիզբն առնլոյ քաղաքին 'ի խորին Ասորոց որ է կողմն յարեւմտից Միջագետաց ։ Եւ տիրեաց 'ի Դամասկոսէ մինչեւ 'ի ծովն Ասաղրիանոս (4) և գնաց 'ի ծովն Պոնտոսի ։

Յաւուրս յայսմիկ շնչեաց սատանայ 'ի պատրիարքն Կոստանդնուպօլսի. և արար գործ մի սոսկալի հրեշտակաց և մարդկան ։

(1) Երկու օրի. Կոստոս ։

(2) Այլք՝ Պամփիւագոնիոյ. Մի օրի. Պամփիլագոնեայց.

(3) Մի օրի. Քիսարոս. Մի օրի. Քրիսարոս ։

(4) Երեք օրի. Ադրիանոս ։

Վռանգն գրգռեաց զԹագաւորն և զիշխանսն. և զխաչն և զհաղորդ. և զմեռոն ուղղափառացն այրել ետ և առ ոտն կոխել. և ոչ հացի անգամ և ձիԹոյ պատիւ ոչ առնէին. և ետ տանել առ ինքն զպատրիարքն ԱԹանաս քսան և հինգ եպիսկոպոսօք. և նախ քան զհասանիլն նոցա 'ի քաղաքն 'ի բարկուԹենէ Տեառն հարաւ, և պատառեցաւ իբրև զԱրիոս ապականիչն այն. և նախատիչն Քրիստոսի որդին կորստեան: Եւ արարեալ քննուԹիւն հաւատոյ, Յոյնք պարտեալ լինէին 'ի Հոգւոյն. ըստ որում զայրացեալ սուրբն ԱԹանաս անէծ զնոսա. և նոքա ետուն զնա իւրովքն յաքսորս 'ի Քիոս կղզի. և աղաչանօք Թագուհւոյն դարձաւ յաԹոռ իւր:

Իսկ Տուկիծն վախճանեալ Թագաւորեաց Դէօժանն Ռոմանոս. և Թագաւորն Թուրքաց Տուղրիլն մեռաւ. և առ զտեղի նորա Ալփասլան (1) որ և անձամբ եկն 'ի Հայս. և հնազանդեաց զնոսա առեալ զՃամշուակէ. և անցեալ յԱնի հարիւր հազարաւ առ զնա և սպան հազար այր 'ի փոս մի, և լցացաւ արեամբ. և դարձաւ 'ի Նախջուան:

Իսկ Դէօժանն կուտեալ անԹիւ զօրս,

(1) Մի. օրի. Ալփասլան: Մի օրի. Ալփասլանչան:

չոգաւ 'ի վերայ նորա. և եկեալ 'ի Կարս այրեաց զՀայոց եկեղեցին. և երդուաւ եթէ յաղթէ Թուրքաց կամ ջնջէ բնաւ զՀայս կամ 'ի կրօնս իւր դարձուցանէ։ Եւ լուաւ Տէրն և ոչ յաջողեցաւ նմա. քանզի կոտորեցաւ զօրքն նորա, և ինքն ըմբռնեցաւ 'ի 'ի գերութիւն։ Եւ լուեալ 'ի Կոստանդնուպօլիս թագաւորեցուցին զՄիխայէլ։ Իսկ Դիէօժանն զերծեալ ապաշանօք և ուխտադրութեամբ յԱլփասլանայ կամեցաւ գնալ 'ի Կոստանդնուպօլիս. և կալեալ զնա հանին զաչսն. և շիջաւ փառք նորա սնոտիք. եւ պարծանքն 'ի չարն։ Յետ այսորիկ առաքեաց Ալփասլան զՍուլիման քուրորդի(1) իւր 'ի Հայս. և իշխանացաւ նոցա և թագաւորեաց. որ և եմուտ 'ի գիշերի յԱնտաք և առ զնա, և զսուրբն Պետրոս զաւագ եկեղեցին արար Մզկիթ։

Եւ 'ի սոյն ժամանակս ամիրայ մի պարկեշտաձեւ, աղօթասէր և քաղցրաբարոյ, եկն 'ի Կապպադովկիայ զօրօք և հրամանաւ Ալփասլանայ. էառ զՍեւաստ և զԿեսարիայ, և տիրացաւ և մեծացաւ. և այս եղեւ սկիզբըն տանն Դանիշմանայ. զի այս էր անուն նորա։ Քանզի յորժամ զառաջինն առան

(1) Երկու օրի. որդի իւր։

տօքա գերութեամբ 'ի Թետալացւոցն ուսան պօրէնս Տաճկաց, և եղեն հաւանեալք օրինացն Մահմետի յայնմ հետէ. որոց առաւել վրէժխնդիր և նախանձաւոր ցուցա-այլս այս :

---

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Յաղագս աստի սկսանի պատմութիւնս 'ի յառումն Կիւլիկիոյ առ Հայս :

ՅԱՒՈՒՐՍ յայսոսիկ արք յիսուն հայկազունք նեղութիւն կրեալք 'ի Թուրքաց ելին յանապատս սպառազինեալք և 'ի տեղիս տեղիս առնէին վնաս Թուրքաց ծեծելով զնոսա. և եկին յերկիրն Մարաշայ, և տեսին անդ այր մի համազգի իւրեանց. և խօսեցան ընդ նմա ըստ մտի և ասեն եկ ընդ մեզ, և լեր մեզ իշխան և խնդրեսցուք մեք զադարս աջողելովն Աստուծոյ. և լուա նոցա: Նա էր նա անձնեայ. և գեղեցիկ երեսօք, և արիական հոգւով, և գնաց ընդ նոսա. և էր անուն նորա Փիլարտոս, և մտին յերկիրն Կիւլիկիայ. և ահա դեռ եւս տիրեալ էր երկրին Թուրքն, և Թափեցին 'ի

նացանէ բերդ մի, և ամրացան անդ։ Ու-զք կարճ ատացից առին զբովանդակ երկիրն դղեկօք և քաղաքօք լերամբք և դաշտօք, և մեծացաւ յոյժ Փիլարտոսն, և եղեւ անուանի. և ել ՚ի դուրս և առ զՄարաշ և զԱպլթայն, և զՄելտենի, և զՔեսուն, և զԿարկառն, և անց յայնկոյս Եփրատայ. և և առ զՈւռհայ և զայլս քաղաքս և սարսեցին ՚ի նմանէ Թուրքն։

Իսկ լուեալ Յունաց Թագաւորին առաքեաց նմա պարգեւս և անուանեաց զնա Սեւաստոս. սակայն միմեանց ձայն տուեալ Թուրքաց ժողովեցան յամենայն կողմանց ՚ի վերայ նորա և վանեցին զնա։ Եւ առին ըղկէս երկրին ՚ի նմանէ, և արարին հնազանդս։ Եւ յետ այնորիկ չոգաւ ՚ի Բաղդատ զի առցէ զաշխարհն իւր լեռն. և ակարացաւ ՚ի հաւատոյն։ Եւ էառ գիր իշխանութեան իւրում առաջնոյ, բայց ոչ յաջողեցաւ։ Քանզի յորժամ եկն առեալ էին զմնացեալ մասն նորա, և ելին ընդդէմ և հալածեցին զնա. որ և հառաչեալ ՚ի խորոց սրտէ ելաց դառնապէս. և կորեալ զհերսն չոգաւ յապաշխարութիւն և ՚ի հաւատս իւր ՚ի դաւանուլ կրօնաստանս։

Իսկ Արաբացիքն որ մինչեւ ցայն վայր

Տաճիկք կոչէին յանուն գլխաւորին իւրեանց որոյ անուն էր Տայաւ, խառնեցան ՚ի Թուրքքըն և եղեն ազգ մի վասն համակրօնութեան իւրեանց. և միմեանց անուամբ կոչէին։ Որ և ՚ի Բաղդատ իշխանն էր յազգէն Սահմետի. Թողին զնա անդ և խալիփայ անուանեցին, որ է ժառանգորդ ՚ի Սահմետէ, կամ յետ նորա, և հնազանդեցան նմա երկոքին ազգն գրով և երդմամբ. զի ՚ի նմանէ առցեն օրէնս և հրամանս, և պատուեսցեն զնա իբրև զՍահմէտ. և ամբարձուցին զնա յոյժ։ Եւ յայնմ հետէ հրամանաւ սուլտանին որ ՚ի Խորասան և ՚ի Խալիփայէն առնուին պատիւ ամիրայութեան Թուեցեալքըն արժանաւորք, և գնային տիրէին աշխարհաց և գաւառաց. որպէս Սուլթանն ամիրայ Թուրք ազգաւ, գնացեալ տիրեաց Հայոց և կոչեցաւ Շահրի Արմէն որ է Թագաւոր Հայոց։ Եւ Արթուխն եկեալ ՚ի Միջագետս տիրեաց երկրին, ուստի կոչեցան Արթուխք և են ազգաւ Թուրք։

Իսկ Թագաւորն Յունաց Միխայէլն վատասրտեալ ՚ի Թուրքաց պղերդացաւ ՚ի պատերազմէ, և զչարեալ իշխանն Նիկեփոր ապստամբեալ մարտեաւ ընդ Կոստանդնուպօլիս և առ զքաղաքն. և սկսաւ կռուել։

Իսկ Միխայէլն առ զԹագն 'ի վերայ ձեռացն և գնաց ընդ առաջ նորա և ասէ. ահա զոր խնդրեսդ և արդեւ զսուրբդ 'ի քրիստոնէից. և արար այնպէս. և չոգաւ Միխայէլն կրօնաւորեցաւ 'ի վանս. և զերկուս որդիսն նորա ներքինացոյց Նիկեփոռ. և ոչ հաճեցան ընդ այն արքունիքն և ատեցին զնա։

Վասն որոյ փրացեալ Ալէքս ոմն Թագաւորեաց և արար Նիկեփորայ. զոր և նա Միխայելին արար. և Թագաւորեաց ամս քսան և հինգ։

Զայսու ժամանակօք մինչ տիրէին Թուրքն Երուսաղեմի և ամենայն ծովեզերացն, իշխան մի Զնճիլ անուն եկն յԵրուսաղէմ յաղօԹս. և առին 'ի նմանէ զահեկան մի որպէս՝ յամենայն ումեքէ աղօԹաւորէ. և յետոյ այլ եւս պահանջէին. և 'ի չտալն զաւելորդն՝ հարին զգլուխ նորա և խլեցաւ աջոյ ակն, և նորա առ եալ դնէր 'ի գրպանն և տանէր 'ի Հռովմ շրջեցուցանէր և շարժէր զնոսա 'ի նախանձ. և ելին անտի Կոմսունք և ամբարձին զգլուխս խաչեանց. և կուտեցան առ նոսա զօրք բազումք. և եկին 'ի Կոստանդնուպօլիս. և պաշարեցին զնա զեւԹն ամ։ Իսկ յամին եւԹներորդի եղեւ շարժ յԱնտիոք և անկաւ պարիսպ մի

յարմատոց խլեալ. և յայտնեցան 'ի նմա պատկերք պղնձիք 'ի վերայ պղնձի երկվարաց 'ի կերպարանս և 'ի ձևս փռանգաց. և բերին առաջի Ամիրային և ժողովեալ զքաղաքն տեսանել թէ զի՞նչ իցեն այնք. և ոմանք ասացին թէ կուռք են 'ի հին ժամանակաց. և հրամայեաց ամիրայն խորտակել զնոսա և ցրուել. և եղեւ այնպէս: Եւ լուաւ զայն կին մի հին աւուրբք կուրացեալ և ասէ, այն ալխամ էր դիւթական հնարիւք գործեցեալ 'ի Յունաց, զի մի եկեսցեն փռանգք յայնըմ կողմանէ ծովուն. զի ահա ո՞չ տեսէք երկաթեղէն շղթայիւք կապեալ զնոսա: Եւ իմացեալ Ամիրային յոյժ արտմեցաւ վասն քակման պատկերացն, և խկայն հնազանդեալ զԿոստանդնուպօլիս անցին յայնկոյս զօրքն փռանգաց. և եկին յԱնտաք և առին զնա և էին ինն գլխաւորք. երկուքն 'ի նոցանէ յազգէ Թագաւորաց էին, որոց անուանքըն էին այսոքիկ Ռոճէլ, Պէամուն, Ճօշլին, Կաղարան, Կոնդոփրի, Սալէկէս, Դէքալիտ:

Յայնժամ իշխանն յՈւռհայոյ Թէոդորոս որ կայր անդր 'ի Փիլարտոսայ հայկազնոյն եղեալ՝ առաքեաց առ նոսա. զի առաքեսցեն տէր քաղաքին Ուռհայոյ: Եւ զը-

ուարձացան յոյժ և ասեն. օրհնեալ ես Քրիստոս Աստուած. նախ հաւատաց 'ի քեզ Ուռհայ. և դու յառաջ նմա թագաւորեցեր հաւատովքն արքային Հայոց և ապա Երուսաղեմի՝ և այժմ զնա եւտուր մեզ կանխագոյն առհաւատչեայ Երուսաղեմի թագաւորել քեզ Տէր հաւատացելովքս 'ի քեզ:

Եւ առաքեաց Կոնտոփրի զեղբայրն զՊղատոնն. և տիրեաց Ուռհայոյ: Եւ յետ այնորիկ Ափսան և Ըզլուսան ամիրայն Անտաքայ. որ կային 'ի Թաքոտի եղին և փախեան. և գիպեցան նոցա արք երկու Հայ ազգաւ առակոնք սպանին զնոսա. և առեալ զգլուխս նոցա բերին առ Կոմսունն. և յոյժ պատուեցան 'ի նոցանէ:

Զայսու ժամանակաւ Սուլիման որ թագաւորեալ էր յաշխարհին Յունաց սպանաւ 'ի յԻկոնիոն. և թագաւորեաց Կլիճասլան 'ի տեղի նորա:

Եւ լուաւ Սուլտանն որ 'ի Խորասան զեկն 'ի Փռանգաց և յղեաց ընդդէմ նոցա՝ զԱփուապաղան հարիւր հազար հեծելովք, որ եկեալ պաշարեաց զՓռանգն յԱնտաք և յոյժ նեղեցին զնոսա. որպէս ապաւինեալք յԱստուած աղօթիւք անդադար գային ընդ գեղարդն Քրիստոսի յայտնութեամբ պա-

տրխարգին ՚ի հիմն եկեղեցւոյն պահեալ. և նովաւ զօրացեալ կոտորեցին զԹուրքն երեւելի հրաշիւք: Եւ զահի հարան այլազգիքն և խոտեան ՚ի ծովեզերացն և չոգաւ զօրն փռանգաց. և առ զամենեսեան մինչեւ ՚ի Յոպպէ և եհաս յԵրուսաղէմ: Եւ նա լըցեալ էր Սրապկօք որք այնինչ եկեալ յԵգիպտոսէ և առեալ էին զնա ՚ի Թուրքացն, և սուր ՚ի գործ արկեալ կոտորեցին զնոսա. և պատուականքն ՚ի նոցանէ լցան ՚ի տաճարին. և հանեալ զնոսա արտաքս սպանին զամենեսեան, և պատրիարգն կալաւ փողոց մի և կոտորելով եհաս ՚ի սուրբ Յարութիւն և արեամբ մարզեցան ձեռք նորա ընդ սուսերն. և լուանայր անդ ասելով զսաղմոս զայս ուրախ լիցի արդար ՚ի Տէր ՚ի տեսանել զհատուցումն իւր և զձեռս իւր լուացէ յարեան մեղաւորի. և նոյն ժամայն արար պատարագ և ասաց. այսպիսի հաճոյական պատարագ Աստուծոյ ես այլ ոչ մատուցի ՚ի կեանս իմ:

Եւ Թագաւորեաց յԵրուսաղէմ Կոնտոֆրի ամս երկու. և զկնի նորա Պաղտոյնն(1) ամս հնգետասան:

Իսկ Իլղազեան կամեցաւ ելանել ՚ի կող-

(1) Մի օրի. Պաղտոյն:

ձանս Մելտենւոյ ; և լուեալ զառնուլն Ե-րուսաղէմի գաղղարեաց. Բայց Դանիշմանն կռուէր ընդ Մելտենի զամս երիս այրելով զվաստակս նորա։

Եւ իշխան մի կայր անդ 'ի Փիլարտոսէն հետէ որ խոստացաւ զքաղաքն տալ 'ի Փը-ռանգն և ստեաց. և ետ զնա 'ի Դանիշման-նըն տալով նոցա հաց և անասուն և ազա-տութիւն, և շինեցաւ քաղաքն. և յայնժամ 'ի տեղիս տեղիս իշխէին ոմանք յազգէն Հայոց 'ի Փիլարտոսին ժամանակաց։ Վասի-լըն ունէր զՔեսուն և զՌաբան. և որդիքն Ռուբենի զԿիւլիկիայ։

Զայսու ժամանակօք անկաւ աղմուկ 'ի մէջ Տաճկաց և Թուրքաց 'ի Խորասան. և կռուէին ընդ միմեանս և յափշտակէին ըզ-միմեանց։ Բայց 'ի Կապադովկիա, և 'ի Բիւ-թանիա ոչ գոյր Տաճիկք, այլ Թուրքք ու-նէին զնոսա. և տային պատերազմ ընդդէմ Յունաց։ Իսկ Դանիշմանն յետ առնլոյն զՄելտենի անցելոյ երկու ամաց մեռաւ։ Եւ եկն Խլիճասլան. և առ զՄելտենի 'ի Սա-ղուքէն (1) յորդւոցն Դանիշմանայ. և տի-րեաց նմա։

Իսկ Սուլտանն Խորասանայ կոչեցաւ Իփ-

(1) Երկու օրի. 'ի Սանդղուքէն.

աթոռին. և յղեաց զՉաւլի ընդդէմ Փռանկ-
գաց. և յորժամ եկն 'ի Մօսլ Նըրմիշ ամի-
րայն ել ընդդէմ նորա. և կապանօք ած զնա
'ի քաղաքն և 'ի սակաւ աւուրս մեռաւ Նըր-
միշն և ազատեցաւ Չաւլի. և յղեցին Մօ-
սլցիք առ Խլիճասլան և խոստացան նմա զեր-
կիրն. չոգաւ և տիրեաց նմա: Եւ Չաւլի
դարձեալ զօրացեալ չոգաւ 'ի վերայ Խա-
պուրին և առ զնա. և Խլիճն եկաւ և զդի-
նաց պատերազմել ընդ նմա. և յանկարծ գե-
տոյն կորեաւ սասանկմամբ. և խնդացեալ
Չաւլի գնաց և առ զՄօսլ և զՄծբին. և ա-
ռեալ բազում գանձս դարձաւ 'ի Խորասան:

Իսկ զմահն Խլիճասլանայ լուեալ 'ի Թա-
գաւորութեան նորա թագաւորեցուցին ըզ-
Տօղասլան որդի նորա փոխանակ հօրն. և նա
արար իւր երկու զօրագլուխս Օայլասլան (1)
և զՊիզմիշն. էին նորա երեք եղբարք, որոց
անուանքն Արապ և Շահնշահ և Մասուտ.
և Շահնշահ սպան զՄասուտն. և զԱրապն
սպան Ամիրխազէ որդին Դանիշմանայ զի ոչ
կամէր տիրել նմա իշխանութեան հօր իւրոյ:
և այլ ոչ ինչ պակասեաց թշնամութիւն 'ի
տանէ նոցա:

Յաւուրսն յայնոսիկ եկն իշխան մի Փռ-

(1) Մի օրի. Զելասլան:

ռանգաց երեսուն պատուական արամբք ա-
նուն նորա Կունստափրի Երուսաղէմ յաղօ-
թըս . և այլ ոչ կամեցաւ դառնալ անդրէն
այլ եղեն կրօնաւորք . և կացին աղօթիւք և
սրբութեամբ Երուսաղէմ։

Իսկ երկրորդ թագաւորն Երուսաղեմի
Պաղտուինն և պատրիարգն աղաչեցին զնոսա
երթնել 'ի պատերազմ ընդդէմ Թուրքաց զի
այն առաւել հաճոյ է առին Աստուծոյ պա-
տերազմել ընդ անօրէնսն 'ի փրկութիւն
քրիստոնէից . նա ետուն 'ի բնակութիւն նո-
ցա զտաճարն և ապրանք 'ի ծովէ . և 'ի ցա-
մաքէ նաւաւ գեղերս և այգիս . և սովո-
րեցին այլք գալ և յարիլ 'ի նոսա 'ի նոյն կրօ-
նըս և հաստատեցին խորեանց կանոնս զի
կացցեն անարատ կուսութեամբ 'ի փառս
Աստուծոյ , և ունիցին զամենայն ինչ հասա-
րակաց . և չունիցին առանձնականս և ոչ
ինչ հոգեւորս կամ մարմնաւոր . և կոչեցին
զինուորք Քրիստոսի կռուելով ընդ անօրէնսն
և մի բնաւ ընդ հաւատացեալսն ։

Եւ լուեալ բանս այս 'ի Հռովմ և յա-
մենայն տեղիս , և ետուն նոցա միաբանու-
թիւնս բերդս և գիւղս և մեծամեծ հարկաց
յերկիրէ քրիստոնէից . վասն որոյ մեծացան
և փարթամացան . և եղեն զօրք առանձինն .

այսու օրինակաւ եղեւ սկիզբն Փրերացն որ կոչին Աւսպեթալք. քանզի ստացան տունս աղքատաց և հիւանդաց։ Եւ զկնի բաժանեցան այլք որք առանձնացեալք ասացին տուք մեզ բաժին զամենայն հնոտիս ձեր զըրավ, և ետուն նոցա. և առեալ ծախէին զայն և հարստանային, և խնդրեցին հող 'ի ստացուածս պարտիզի որչափ կրէ գրաստ մի և կրէին զայն զգայգ և զցերեկ։ Եւ հայեցեալ տեսին զի ոչ կարէին դիմանալ եղկոցուննցն գնեցին դարձեալ զհինս իւրեանց և զհողն բազումս գնոց տալով ոսկի արծաթ և գեւղս։ Եւ ետուն այլք միաբանութիւնս և նոցա. և կոչէին նոքա Գրամփլ[1] որ է աղքատատուն. և մեք զայս լուաք պատճառ նոցա։

Իսկ 'ի յազգէն Արթուխեացն յարեաւ ամն Գաղակ անուն և Թագաւորեաց և եզեւ անուանի և գնաց 'ի վերայ Կամախայ. և Մանկուճակն[1] տէրն Կամախայ փախեաւ 'ի Տրապիզոն ապաստանեալ 'ի Յոյնս. և և առեալ 'ի նոցանէ օգնականս եկն 'ի վերայ Գաղակին. և հարան զօրքն Յունաց և ըմբռնեցաւ Մանկուճակն 'ի Խաւառան.[3]

(1) Մի օրի. ունի 'ի լուսանցն Դրամփլակք։

(2) Ընդ Մանկուճակն։

(3) Մի օրի. Խաւավառան. Մի օրի. Խոռաղն։

զոր վաճառեցին երեսուն հազար դահեկանի։

Ընդ այն ժամանակս արքայազունքն Հայոց որ յաւուրս Վասլի կայսերն եկեալ էին 'ի Վասպուրականայ և առեալ զՍեւաստ և զԿեսարիա և զխաւատանէքն փոխելով զերկիրն իւրեանց. որ և զկնի ժամանակաց պակասեցան 'ի նենգութենէն Յունաց և տկարացան. և մինչ յերկիրն Կիւլիկեցւոց և բռնացեալ ունէին զքաղաքս գաւառս դղեկօք և ամրոցօք Ռուբինեանքն կոչեցեալք. որք էին յազգէ երկուց արմատոց ազնուական և գոռոզ թագաւորաց Հայկազանց և Սենեքերիմանց խնամութեամբ խառնեալ ընդ միմեանս՝ որք զառաջինն թագաւորեցին 'ի Վասպուրական յորում ժամանակի և Բագրատունիքն թագաւորեցին 'ի մեծն Հայք. և այժմ դարձեալ սկսան թագաւորել յերկիրն Կիւլիկեցւոց և Իսաւրացւոցն։

Նախ Ռուբէն սկիզբն արար զօրանալոյ նոցա. և ապա Կոստանդին և Թորոս և այլք մի ըստ միոջէ։ Ի հինգ հարիւր ամի իշխանութեանն Տաճկաց դարձեալ թագաւորեաց Սատաղ(1) Տաճիկ 'ի վերայ Թեկրթայ, և առզնա. ժողովեցան ազգայինքն իւր. և լուաւ Խլիֆայութեան Սուլթանն 'ի Խորասան, և ել

(1) Մէ. գրչ. Սատախ։

ամենայն ուժով 'ի վերայ նորա. և վանեցաւ առաջի նորա Սաստաղայ և ըմբռնեցաւ ապանաւ։ Եւ կէսք ասա ասեն բառնալ թագաւորութեանն Տաճկաց զկնի եւթնեւտասն ամի իշխանութեանն Թուրքաց։

---

## ԳԼՈՒԽ ԻԳ.

### Յաղագս կռուելոյ արագիլք և խորդք։

ԶԱՅՍՈՒ ժամանակօք եղեւ մեծ պատերազմ հաւուց. քանզի խորդք և արագիլք զբազում աւուրս ժողովեցան յաշխարհն Ամթայ 'ի տեղին՝ որ կոչի Թլխում. և ապա յերկաքանչիւր կողմանց եւթն եւթն դեսպանս արձակեալ առ միմեանս զերիս աւուրս. և ապա բախեցին զմիմեանս մեծամեծ ճչիւք. և կռուեցան յերրորդ ժամէ աւուրն մինչեւ ցիններորդ ժամն. և անկան յերկոցունց կողմանցն բազում յոյժ. և ապա պարտեցան արագիլքն և փախեան. և խաղաղացաւ պատերազմն. և զպատճառն գիտէ արարիչն։

Յորում ժամանակի մեռաւ Գաղիկն. և քուեալ Եմիրխաղէ որդին Դանիշմանայ չա-

դաւ և առ զՄելտենի. և արար նոյա դիւրութիւն, զի Պաղակն նեղէր զնոսա յոյժ. և խալիփայն առաքեաց նմա Թագ. և անուանեաց զնա Մելէք Խազի, Թագաւոր Հիւսիսոյ։

Իսկ Յունաց Թագաւորեաց Յովանէս և առ զԿաստամանի և բերդս երկուս. և չադաւ Մելէք Խազի, և առ ՚ի ձեռաց նորա դարձեալ։ Իսկ յայն աւուրս (1) Զանկի ամիրայն Մօսլայ եկն և առ զՀալապ. և ետուն ՚ի նա սիրով վասն համբաւոյ նորա. թէ քաղցր և արդարադատ է։ Եւ ՚ի նոյն ամի առաքեն դարձեալ Մելէք Խազեայ պարգևս խալիփայն և խիլաթատիրնն չորս ալամ սեաւ, և շղթայ մի (ոսկի) պարանոցին և գաւազան ոսկի և նաղարայ և փող։ Եւ յորժամ բերին զայս, գտին զնա մեռեալ. և ետուն զպատիւն որդւոյ նորա Մահմատին. և արկին շղթայն ՚ի պարանոցն և կապանս ոսկի ընդ յոտսն. և հարին զնա գաւազանաւ երկոտասան անգամ, նշանակեալ այնու զհնազանդութիւնն. և քարոզեցին զնա Մելէք այր պարկեշտ ՚ի վարս Տաճկաց զի գինի ոչ ըմպէր և անօրէնապէս ոչ գնայր. սակայն ատէր զքրիստոնեայս, և նեղէր զնոսա։

(1) Մի օրի. ՚ի նոյն ամի։

Իսկ Զանկի ամիրայն արարեալ պատերազմ ընդ Երթուխին հնազանդեաց զնոսա։

Զայսու ժամանակօք եկանէ պապն Հռոմմայ և գայ յԵրուսաղէմ. և անտի յԱնտաք. և մատեան առ նա Յոյնք քաղկեդոնիկք և սկսան կատակել զՅակովբիկ Ասորւոցն և ասեն. խաբեբայք այս ասեն զմեզ և զժողովն Քաղկեդոնի, և պատուեն զՊարսամա որ անէծ զժողովն. և ունին զաջն նորա ոսկի գզրոցաւ և պատուեն զմարդիկ ասելով նշանս առնէ։ Եւ յորժամ աղաչեմք ցուցանել մեզ՝ ասեն ոչ կարեմք. զի մի լիցի ասեն հեղեղ և կարկուտ. և զայս ասէին և ծիծաղէին։ Եւ հրամայեաց պապն բերել զաջն ՚ի սուրբն Պետրոսի յեկեղեցին եւ երթեալ բերին ՚ի լեռնէն. և ասաց բանալ. և ասեն մեք ոչ իշխեմք, բաց դու հայր. և յորժամ բացաւ, միգացաւ երկինք և եղեն ձայնք և որոտմունք անձրեւք, և կայծակունք և կարկուտ մեծամեծք, և կամէր ապականել զքաղաքն. և անկան յերեսս պատրիարքն և ամենայն քաղաքն եւ անդէն անփոփեցին զաջն. և լալիւն մեծ եղեւ՝ ապա դադարեաց վնասն. և յամին յայնմիկ մարախ ուտէր ըզսահմանսն Ասորւոց. և ասաց պապն արարէք հսկումն վասն մարախս դուք Ասորիքդ,

և հաւատամ եթէ ողորմեսցի Տէր աղաչանօք սրբոյն որ արար զնշանս զայս մեծ ։ Եւ ժողովեալ ապա ուղղափառացն արարին աղօթս յայգուէ մինչեւ յառաւօտն. ապա առեալ զաջ սրբոյն ելին արտաքոյ քաղաքին հանդերձ կենսակիր նշանաւն և զօրութեամբըն Քրիստոսի և աղօթիւք ուղղափառացն. և միջնորդութեամբ և բարեխօսութեամբ սուրբ աջոյն միահաղոյն ամենայն բազմութեան մարախոյն վերացեալ գնաց և լցաւ ՚ի ծովն ։ Եւ փառաւորեցին զԱստուած և զսուրբն Պարսամա ։

Եւ եդ նզովս պայմն եթէ ոք իշխեսցէ հայհոյել զնզովողսն Քաղկեդոնի ժողովոյն ։ Այլ համարձակ նզովեն. զի ահա որ քննէ զըծածուկս Աստուած հանգուցեալ է յանկերս նոցա, և մեք ոչինչ կարեմք ասել առաջի նորա. և խնդրեաց զչարախօսս սրբոյն զի պատժեսցեն, և ոչ գտան (1). զի փախուցեալ էին. և ասաց մի ընդունիլ զնոսա ՚ի քաղաքս զի պատճառք վնասու եղեն մեզ աստ ։ Այլ

(1) Աստ՝ այլ օրինակք երևին տպելոյ ունել. յորոց միոյն դընեմք աստ, որ է. և եդ նզովս պայմն. եթէ ոք իշխեսցէ հայհոյել՝ առցէ զնզովս Քաղկեդոնի ժողովոյն. զի ահա աւէ որ քննէ զծածուկս Աստուած հանգուցեալ է յակերս նոցա. և մեք ոչ ինչ ունիմք ասել առաջի նորա ։

դուք անդամքդ Քրիստոսի խաղաղութիւն կալարուք առ միմեանս առաջի Տեառն. և տուք պատերազմ միայն ընդ անօրէնսն։

---

## ԳԼՈՒԽ ԽԴ.

Յաղագս գեղարդեանն Քրիստոսի։

Եւ յետ այնորիկ բերին զգեղարդն Քրիստոսի անուանեալն, և ասաց. զերուն գեղարդն Քրիստոսի գիտեմ, եթէ Թադէոս առաքեալն 'ի Հայք տարաւ. այս ո՞ր է. և գտաւ պատմութիւն զնմանէ որ գրեալ էր, թէ ազգն Հրէից որ բնակեալ էր 'ի Տիբերիա՝ յաւուր ուրբաթու խաչելութեանն Տեառն գողացան մանուկ մի և տարան յանապատ, և խաչեցին զնա և փշով պսակեցին և ծիրանի և կարմիր զգեցուցին, և գեղարդեամբ խոցեցին զնա. և զամենայն որպիսութիւն կատականաց (1) Տեառն արարին նմա. Նոյնպէս և հրաշք Տեառն (2) մերոյ կատարեցան 'ի վերայ մանկանն զի խաւարեցաւ

(1) Երեք օրի. կատականաց։ Մի օրի. [զամենայն կատականս որպէս արարին Տեառն։

(2) Երկու օրի. հրաշքն որ 'ի վերայ Տեառն մերոյ. կատարեցաւ 'ի վերայ մանկանն

արեգական և շարժեցաւ երկիր և պատառեցան վէմք և արիւն և ջուր բղխեաց 'ի տեղախոց կողէն. և գիտաց ամենայն աշխարհըն Փիւնիկեցւոց զգործեցեալն յեղեալ նըշանէն. ելեալք 'ի խնդիր և յայտնեցան իրքն և փախեան Հրեայքն յիշխանութենէ Տաճկաց. և առաքեցին առ քրիստոնեայսն զի թողցեն նոցա զմեծ մեղանսն. և նոքա խոստովանեցին զՔրիստոս Աստուած ճշմարիտ քարոզեալ 'ի մարգարէից, և խաչեալ 'ի փրկութիւն աշխարհի։

Եւ երդուան նոցա քրիստոնեայք և կռչեցին (զնոսա) անդրէն. և մկրտեցան առհասարակ և եղեն քրիստոնեայք յոյժ բազմութիւն հաւատացելոյ 'ի փառս Քրիստոսի. և այս է գեղորդն այն ուստի լինի 'ի սմանէ մեծամեծ սքանչելիք. և լուեալ պապուն զգրեալն հաւատոյ. և փառաւորեաց զԱստուած և երկրպագեաց նմա։

Եւ առ ժամայն եկն զրոյց թէ եղև շարժ ահաւոր 'ի Խորասան, և շատ վնաս եղեն. և փլաւ մզկիթ մի, և սպան ութ հազար այր և կին, որք եկեալ էին յաղօթս, և 'ի լուր քարոզութեան իւրեանց. քանզի ուրբաթ էր օրն։

Ի հազար չորս հարիւր յիսուն և հինգ

Թուին Ասորոց, և Հայոց հինգ հարիւր եւթանասուն և մի՝ մեռաւ թագաւորն Յունաց Յովաննէ ՚ի Կիւլիկիա. և թագաւորեաց կրտսեր որդի նորա Մանիլն որ կայր առընթեր. և երթեալ ՚ի Կոստանդնուպօլիս հնազանդեցաւ նմա երէց եղբայր նորա և քաղաքն արքունական։

Եւ ՚ի նոյն ամի մեռաւ թագաւորն Երուսաղեմի. և թագաւորեաց որդի նորա Պաղտոյնն տղայ հասակաւ. և վարէր զիշխանութիւնն մայրն։ Եւ ՚ի նոյն ամի մեռաւ ամիրայն Խարբերդոյ Տաւուդն որ էր արթուխի ազգաւ. և առ զտեղի նորա Կարար(1) ասլան որդի նորա։ Ի հինգ հարիւր եւթանասուն և երկու թուին Հայոց Զանկի աթաբէկն էառ զՈւռհա ՚ի Ջոսլեայն(2)։ Եւ զկնի ամի միոյ սպանաւ Զանկի. և առ զտեղի Նորատինն որդի նորա տէրն Մօսլայ։

Յաւուրսն յայնոսիկ շնչեաց սատանայ ՚ի պատրիարգն Կոստանդնուպօլսի. և ասաց եթէ Քրիստոս կախարդութեամբ առնէր զնշանսն զքանչելիսն և արուեստսն. և առաքեալքն այնու հաւանեցուցին զաշխարհս. և յոլովք հաւանեցան նմա. և թագաւորն

(1) Երկու օրի. Ղարա ասլան։

(2) Մատթէոս Ուռհայեցի ջօսլին անուանէ։

տպան զնոսա ։ Բայց աղանդն մնաց մինչեւ յաւուրս մեր չարագոյն քան զամենայն հերձուածսն ։

Իսկ Գօշլինն տէրն Ուռհայոյ արար ժողովս զկնի մահուանն Զանկեայ և չոգաւ մտաւ 'ի գիշերի յՈւռհայ և առ զիւրն . և իմացեալ Թուրքաց ձայն ետուն միմեանց և եկին պաշարեցին զնա ։ Եւ զարհուրեցան Փռանգքն յերեսաց նոցա և անգիտացան անգիտութիւն մեծ կորստեանն Ուռհայոյ . քանզի հանին զքրիստոնեայս բռնութեամբ անցուցանել զնոսա յայնկոյս գետոյն Եփրատայ . և խաղաց 'ի վերայ նոցա Թուրքն , և սպան 'ի նոցանէ երեսուն հազար , և առ գերի վեշտասան հազար . իսկ զելով զօրացն յայլ պատմագիրս գտցես ։

Բայց լուր 'ի տեղւոջ աւերմանն Ուռհայոյ և զհնութենէ նորա թէ ով շինեաց զնա , և զինչ պատճառաւ ։ Ասեն գիրք ըղամանէ թէ Ուրէդ է անուն սորա . զոր շինեաց Նեփրովթ զկնի ջրհեղեղին . և ըստ մեր լեզուիս կոչեաց Ուրհաւ՝ որ է գեւղ ըստ Քաղդէացւոց . քանզի ուրն գիւղ լսի , և հաւն քաղդէացի . որպէս և Մելքիսեդեկ որդի Քամայ շինեաց 'ի Պաղեստինէ քաղաք , և կոչեաց զնա Ուրիշլէմ . որ է գեւղ խա-

ղաղութեան. քանզի ըստ Ասորոց լեզուին քաղաք ոչ կարէ առնել, այլ գիւղ։

Իսկ զշինեալն 'ի Նեբրովթայ քաղաքաց Սենեքերիմ թագաւորն Աթուրացւոց, և մնաց աւերակ մինչև յաւուրս Աղեքսանդրի Մակեդոնացւոյն. որ և 'ի տեսանելն ըզտեղին ասաց ցՍելևկիոս բարեկամ իւր. սիրեմ զտեղիս զայս, շինեա՛ զաս քաղաք. և զկնի մահուանն Աղեքսանդրի շինեաց, և կոչեաց Եդեսիա, որ ասի Մակեդոնացւոց լեզուաւն սիրեմ զդա. զի Աղեքսանդր ասաց սիրեմ զդա, շինեա՛ զաս քաղաք։ Իսկ Յոյնք կոչէին զնա Սօրտաւ. (1) Մակեդոնիայ որպէս ասել Ասորոց Մակեդոնիա։ Եւ զկնի երեք հարիւր ամի Աբգարիս արքայ Հայոց և Ասորոց որդի Արշամայ (2) եգիտ զնա պակասեալ (5), և նորոգեաց զնա. և հաստանացոյց Քրիստոսի դշխոյ սրբուհի։ Եւ ըզկնի նորա և որդւոյ նորա եղև ընդ Հռովմովք ամս երեք հարիւր։

Իսկ Նահապետակք որք 'ի սմա եղեն այսոքիկ են Օմնի, Կորի, Հաւպիր (4) Կողմն.

(1) Մի օրի. Սաւտրաւ. Մի օրի. Սարատաւ։ Մի օրի. օրտու։

(2) Երկու օրի. Աշխամայ։

(3) Երկու օրի. տարականեալ։

(4) Երկու օրի. Հարակիկ։

Դամիանէ, Դուրփանիայ.ք և այլ.ք բազումք ընդ նմա ։ Եւ սա Կոստանդիանոսիւ շի-նեցան վանորայ.ք 'ի լերին բազմաթիւ ։ Եւ Յուլիանոսի ոչ հնազանդեցաւ.քաղաքս այս ։ Եւ սա Վաղեսիւ ոչ ընկալաւ զհեր-ձուածս նորա՝ մինչոս կեալ վասն անուանն Քրիստոսի ոչ սակաւս ։ Եւ սա Մարկիանո-սիւ ոչ 'ախտացաւ. բայց զկնի սակաւ ինչ տկարացաւ յանզգամ առաջնորդէ. և ե-մուտ ընդ ձեռամբ Տաճկաց Ամրէ հե-տէ ամս չորս հարիւր մինչեւ 'ի տիրելն Թուր-քաց ։

Եւ արդ սակաւ ինչ տիրեալ 'ի Փռանկ-գաց լցաւ աղէտիւ.ք և 'ի սուգ նստոյց զոր-դիսն Սիովնի. և աւաղ կորստեան նորա. և Տէր տեսցէ զնա յաւետիսն իւր ։

Ի հինգ հարիւր եւթանասուն և չորս թուին Հայոց եկն պարոն Թորոսն 'ի Կոստան-դնուպօլսէ զերծեալ 'ի գերութենէն զկնի մահուան հօրն իւրոյ Լեւոնի. զոր տարեալ էին Յոյնք չարութեամբ իւրեանց տարա-գիրս առնել զնա 'ի հայրենեացն իւրոց յերկ-րէն Կիւլիկեցւոց. զոր ստացեալ էր զնա սրով և աղեղամբ. և եկն հետեւակ առ Տէր Աթանաս Մետրապօլիտն Յակոբիկ Ասորոց, և ետ նմա զերիվարն իւր. և ետ

երկոտասան այր, և ած զնա 'ի բերդն՝ զոր Նմուռայն կոչեն 'ի գիշերի. և վաղիւն կա-պեաց զնշանակս իւր, և ցցեաց. և տեսին մերձակայքն և ծանեան եթէ գթութիւնն Քրիստոսի եհաս քրիստոնէից, և խնդացին յոյժ ուրախութիւն մեծ. և տարածեցաւ համբաւ նորա: Եւ զի կարճ ասացից. զկնի սակաւ ժամանակի դարձեալ տիրեաց ամենայն երկրին: Եւ յայնմ հետէ անկաւ ահ Տեառն և երկիւղն նորա 'ի վերայ ամենայն Թուրքաց և Յունաց և սարսէին 'ի նմանէ. մինչ յաւուր միում երթեալ յԱւաքան երկոտասան հեծելով առ Գօղինն. և դիպեցաւ բազմութիւն զօրաց Թուրքաց եկելոց յաւար և յասպատակ. և եհար 'ի նոցանէ Աստուծով յաջողեալն այն երեք հազար անձինս. և դողացին 'ի նմանէ ամենայն մերձակայ Թշնամիքն:

## ԳԼՈՒԽ ԻԵ.

Յաղագս առման Կլային Հռովմայ (Հռովմկլային):

Ի նոյն աւուրս գնաց Գօղինն 'ի վանքն Մօր Պարսամա, և ելին ընդ առաջ նորա քահանայքն աւետարանաւ և խաչիւ

որպէս քրիստոնէի, և տարան զնա յեկեղեցին։ Իսկ նա էառ զամրոցս վանացն, և կացոյց անդ պահապանս 'ի զօրացն։ Եւ 'ի նոյն ամի ել յորս 'ի միում աւուր. և հեծեալն ցրուեցան 'ի նմանէ. և երիվար նորա եհար զնա ընդ ծառ և անկաւ 'ի վայր. և կորոյս զխելսն. և ելին 'ի վերայ նորա երկու Թուրքք և առին. տարան զնա 'ի Հալապ յանծանօթս, և վաճառեցին զնա հրէի միոջ. և ապա իմացան և տարան առ Նորատինն և եդ զնա 'ի բանտի և էառ զամենայն երկիրն նորա. զԱզազն, զԹլպաշարն, զՊիրն, զՌաբան, զՄարաշ, զԲեհեսնի, զՀարանմուր (1), զԿարկառն և զԿախթայն. և մնաց միայն Հռոմկլայն՝ ուր կայր կինն նորա երկու դստերօք. և կուրացուցին զՋօսլինն և մեռաւ անդէն։

Եւ կինն այն առաքեաց առ Տէր Գրիգոր Կաթուղիկոսն Հայոց որ կայր 'ի Ծովքն, զի եկեսցէ նա նստցի 'ի բերդն. և նա գնացէ առ ծնողսն իւր յայնկոյս ծովուն. և է նորա (2) որդի մի, թէ իցէ կենդանի և գայցէ, 'ի նա տացէ. և թէ ոչ՝ լաւ իցէ քեզ քննել, քան թէ առցէ Թուրքն։ Եւ

(1) Երկու օրի. Հարանամուր։

(2) Երկու օրի. և էր նորա որդի։

եկն Կաթուղիկոսն և եղեւ անդ մինչեւ ե-կըն որդին Ջօշլինին և հաւանեցուցին զբա-ժովլ. և դարձուցին անդրէն։ Բանզի և ին-քըն ոչ հաւատայր եթէ կարէ ունել զնա ՚ի մէջ Թուրքաց. և խնամօքն Աստուծոյ եղե-նա նոցա աթոռ յաւիտենական։

Ի նոյն ամի յառաջ քան զհամբարձումն միով աւուրբք եկն անձրեւ ՚ի Պաղեստինէ, և լինէր ՚ի նման կաթիլք արեան. ՚ի Մայիս ամսոյ յառաջ ցօղ առաւօտուն որ իջանէր յԵրուսաղէմ արիւնագոյն լինէր։ Եւ ՚ի Յունիս ամսեան եկն ձիւն կարմիր. և այս ամենայն գուշակէր զհեղումն արեանն, որ լինելոց էին յառնուլն զԵրուսաղէմ։

Ի թուին Ասորոց հազար չորս հարիւր վաթսուն և չորս, և Հայոց հինգ հարիւր ութսուն՝ զարգացաւ թագաւորն Պաղես-տինու Պաղտոյնն, և կամեցաւ զրկել զմայրն ՚ի պատուոյ արքայութեանն. և նա արար զոմանս զօրացն ընդ ինքեան. և մտեալ ՚ի սուրբ Դաւթի ամրացաւ. և որդին մարտ-եդեալ կռուէր ընդ նմա. և եղեւ զի խօ-սեցաւ մայրն բանս խանդաղատականս ընդ որդւոյն, և ելաց թագաւորն, և երդուաւ մօրն. և եհան զնա անտի, և ետ զԵրուսաղէմ ՚ի հրամանս մօրն. և ինքն առեալ զօրս չո-

գաւ ՚ի վերայ Ասկաղոնի Փղշտացւոց, եւ եղեալ մերձնայս փլոյց մասն ինչ ՚ի պարըսպէն և կուտեցան ՚ի փլեալ տեղին քան հազար սպառազինեալ Տաճիկ և առէին. այս է քաղաքն՝ որում Մահմէտ զօրացաւ ՚ի սկիզբն հաւատոյս մերոյ. քաջ մարտիցուք և բաց ՚ի սմանէ զարեւ մի տեսցեն աչք մեր: Եւ չորս հարիւր հեծեալ ՚ի Փռանկգացն դիմեցին ՚ի վերայ քան հազարացն. և մի ոք ոչ դարձաւ. այլ անդէն մեռան. և խստագոյն սորջացաւ Թագաւորն զօրօքն և ազգային: Իսկ քաղաքն զբովանդակ պիշերըն ջանային չինել զփլածն. բայց իշխան մի Սիրունազո (1) անուն մահու չափ ջանացեալ ոչ ետ չինել զնա.

Իսկ ՚ի լուսանալ առաւօտուն Թագաւորն էառ. զխաչն ՚ի ձեռնն, և գնացեալ մերձ առ պարիսպն ձգեաց զնա ՚ի մէջ քաղաքին և ասաց. ահա Թէ դու քրիստոնեայ, և է յոք հաւատ խնդրեսցէ զնշանն Քրիստոսի զներկեալն արեամբն Աստուծոյ. և խոկոյն բորբոքեցան սիրտն Քրիստոսի զօրն Փռանգաց. և յականն քԹԹեն մտին ՚ի քաղաքն յամենայն կողմանց. և ոչ ոք գիտէր

(1) Մի օր. Սիրնուազո Սիրախոս:
Մի օր. Սիռնաստ Մի օրի.

թէ մարմին զգեցեալ իցէ և առին զքաղաքն,
և սպանին անդ վեշտասան հազար անձինք
և առին գերի բազում. և սակաւք 'ի նոցա-
նէ մնեալ 'ի նաւ փախեան յԱնգիպտոս. իսկ
զՄիխռանայն արարին տէր Տնախքու և ե-
տուն նմա զկինն Պաւեայ :

Ի սոյն ժամանակս մեծ իշխանաց իշխանն
Թորոս որդին Լեւոնի որդւոյ Կոստանդեայ
որդւոյ Թագաւորին Ռուբենայ եւ յերկիրն
Կապադովկացւոց 'ի վերայ Թուրքաց, եւ
դարձաւ բազում գերութեամբ և աւարաւ
և արիական անուամբ : Իսկ 'ի Կոնն Թագա-
ւորեաց Մասուդն յորդւոյն Խաքանայ. և
ետ զդուստրն իւր Ռուբասլանայ Դանշ-
մանեանց. և նա հպարտացեալ կամեցաւ մը-
տանել 'ի Կիւլիկիայ. և մերձ երթեալ երկ-
րին ոչ համարձակեցաւ. քանզի դարան գոր-
ծեալ էր նմա 'ի նեղուցս մտից երկրին. և
դարձաւ ամօթով անդէն.

Եւ Թագաւորն Յունաց բարկացաւ 'ի
վերայ Թորոսին զի առ զամենայն երկիրն 'ի
ձեռաց Յունաց, և առաքեաց զԱնդրոնիկոս
զօրագլուխն իւր ծանր ամբոխիւ 'ի վերայ
նորա :

Եւ մեծն Թորոս առ ինքն հաւաքեալ ըզ-
զօրս իւր. գնաց ընդ առաջ նորա. և պա-

տահեցան միմեանց առ ընթեր Տարօնի. և կռուեցան. և օգնեաց Աստուած Հայոց, և պարտեցան Յոյնք առաջի նոցա. և անկան 'ի նոցանէ երեք հազար անձանց, և առին գերի բազում 'ի պատուաւորացն Յունաց և արգելին 'ի բանտս և վաճառէին մեծամեծ ստացուածոց. և առեալ զկազմուած բանակն նոցա և զզէնս զերեացն, և փառթամացաւ յոյժ մեծն Թորոս կոհանալով զՏեառնէ, որ արար վրէժխնդրութիւն նմա 'ի թշնամեացն իւրոց։

Ի սոյն ժամանակս որդիքն Զանկեայ որ 'ի Մօսլ միաբանեցան ընդ ամիրային Թլկըրթայ. և սպառնացեալ 'ի Խալիփայէն. և նորա լուեալ եկն 'ի վերայ Մօսլայ և ոչ կարաց առնուլ զնա. և դարձաւ 'ի վերայ Թլկըրթայ, և խոստացաւ զնա աւար զօրացն. և առին զնա և հարին յաւարի և քակեցին. և զբերդն տուին 'ի Շմաւոնին ամիրայն քաղցրաբարոյ և քրիստոնէասէր, որ փութով շինեաց զքաղաքն նոյնպէս և զեկեղեցիսն. և կայր 'ի հնազանդութիւն Խալիփային։ Իսկ Նորատին տէրն Հալպայ չոգաւ և առ զԴամասկոս երդմամբ, և կորոյս անդ զմեծատունն որ 'ի նմա և քակեաց զաղխաւաչէն պարիսպն, և շինեաց քարամբք։ Յայնժամանա

կի հիւանդացաւ Տամբուաշն արթուխի տե-
րըն Սեբաստիայ. և բժիշկք ոչ կարէին հնար
գտանել բժշկութեան, և յուսահատեալ
Թողին զնա և գնացին։ Եւ նա ապաքինե-
ցաւ յաղօթս քրիստոնէից և առաքելոց 'ի
վանքն Սօրաքայի. և բերին զաջ նորա. և
նա տեսանէր այր մի հրեղէն, զի գնայց կա-
լաւ զձեռանէ նորա զաջոյ և ասէ ցնա քրի-
ստոնէայքն առաքեցին զիս առ քեզ. զի
մի մեռցիս. և առ ժամայն ողջացաւ, և սի-
րաւորեաց զՔրիստոս, և շատ մխիթարու-
Թիւն արար քրիստոնէից և ազատութիւն
եկեղեցւոյ 'ի Մերտինն 'ի Նսեպինն, 'ի Մու-
փարղինն, յԱմալայն և 'ի Տարսա. և յայլ քա-
ղաքս տեղիս որ ունէր ընդ ձեռամբ. և զնոյն
պատուիրեաց որդւոց իւրոց՝ որոց բաժա-
նեաց զիշխանութիւնն իւր. զՄուփարղինն
և զՄերտինն ետ 'ի Նաճատինն, եւ զԴիառ-
ուան ետ 'ի Գամալդինն, և զՏարսա ետ 'ի
Շամսատինն։

Յայնմ ժամանակի Թագաւորն Յունաց
լուաւ եթէ եկեալ է Սաւաւան սուլթանն
առ Միջագետօք և առաքեաց առ նա հրեշ-
տակս պատարագօք, զի մնասցէ 'ի Կիւլիկիոյ
'ի վերայ Թշնամեաց իւրոց Թորոսին. և գնաց
ամենայն ուժով իւրով. Իսկ նորա իմա-

տութեամբ խոյս ետուն և գաղթեցան յա-
մուրս իւրեանց , և զօրքն Հայոց նստան առ
լերամբքն . և սուլտանն իջաւ 'ի վերայ Թլին
Համդնոյ, և եհար զնա տէր Աստուածն քր-
իստոնէից ոչ հրեղէն զինուք որպէս եր-
բեմն զզօրսն Սենաքերիմայ , և ոչ 'ի ձեռն
կնոջ որպէս զՀողեփեռնէս , այլ ճանճիւ
և մժղկաւ . որք և ասէին բազումք թէ այս
հարուածն է խստասրտին Փարաւոնի . զի
անհնարին էր եղանակն և մեռանէր մարդ
և անասուն , և դարձան 'ի փախուստ . և ի-
ջին զօրքն Հայոց 'ի լեռնէն և կոտորեցին
զպղծովն մասն նոցա , և առին աւար զմեծու-
թիւն անօրինացն , և լցին զտունս իւրեանց
գոհանալով զԱստուծոյ : Իսկ Սուլտանն մե-
ծաւ ամօթով գնացեալ 'ի Կոնն և կրկին
հարեալ 'ի տեառնէ , մեռաւ 'ի թուին Յու-
նաց հազար չորս հարիւր վաթսուն և վեց .
և Հայոց հինգ հարիւր ութսուն և երկու .
և թագաւորեաց որդի նորա Կլիճ Ասլանն .
և էին նորա երկու եղբարք զմինն եսպան
դեզօք . և միւսն փախեաւ յեզր ծովուն , և
ամրացաւ անդ 'ի բերդան զոր առեալ էր
նախ հայրն իւր նախ քան զմահն . որոյ ա-
նուն էր Շահնշահ և էր փեսայացեալ տանն
Դանիշմանայ . և վասն այնորիկ Աղուպ տալան

մարտ եղեալ կռուէր ընդ Խլիճ ասլանայ, և առաքեաց առ Նորատինն որ եկն և առ զՓարզման և զՄնլթափ ։ Իսկ զՄիգիդաւս դեռ եւս Տաճիկք ունէին ՚ի Մահմետէ և այսր, և ոչ կարացին տիրել նմա Թուրքք. և լինէր նոցա խալիփայ յազգէն Ալեայ, յորմէ հետէ և Բաղդատայն նստաւ ։ Եւ յայսմ ժամանակս մեռաւ խալիփայն Եգիպտոսի. և էր որդի նորա Աբաս անուն՝ որ կամեցաւ առնուլ զտեղի հօրն՝ բայց զի իշխանն Եգիպտոսի ոչ կամէր, էառ Աբաս զամենայն գանձս խալիփայութեանն, և եհան երեք հազար ծառայ Հայ ազգաւ, և կազմեաց զնոսա զինուք և առաջնորդ ճանապարհին իւրոյ ՚ի Պոոյեացն, և եղ ՚ի գիշերի և կամէր երթալ առ Նորատինն ։ Եւ վաղուն պնդեցան զհետ նոցա զօրքն Եգիպտոսի և հասան նոցա ։ Եւ դարձան ազատեալ ծառայքն Հայազունք և հարին զնոսա ՚ի հարուածս մեծամեծս. և մնացեալքն փախեան անդրէն և գնացեալ ՚ի Պաղեստինէ իջին անդ. և ոմն ՚ի Պոոյեանցն գնացեալ յԵրուսաղէմ ազդ արար Փռանգացն. և նոքա պատրաստեալ զինքեանս եկին ՚ի վերայ նոցա. և Աբասն կազմեաց զզօրսն և ասաց. հապա որդեակք քաջացարուք, որպէս ՚ի

վերայ Եգիպտացւոցն, և ես մեծացուցից զձեզ յոյժ։ Իսկ նոքա զգեցան և զգաստացան և ելին ընդ առաջ նոցա. և յորժամ տեսին զնշան խաչին առաջի նոցա վառեալ թուլացան ձեռք նոցա և սկսան լալ. և իջեալք յերիվարացն երկրպագեցին նշանի խաչին որպէս կարօտեալք. և Փռանգն էառ դիւրաւ զանչափութիւն զանձուն. և զՇ.քասն վաճառեցին իշխանքն Եգիպտոսի. և նա առեալ կախեաց զփայտէ։ Իսկ զորդիսն Հայոց թողին Փռանգքն միայն հանդերձիւք իւրեանց երթալ ՚ի խաղաղութիւն՝ ամարդիկք լեալ առ երախտաւորսն և առ քրիստոնեայսն որ կամօք իւրեանց լցին ըզնոսա մեծութեամբ ստացուածոց։

Յայսմ ժամանակի Սինաղտն որ կոչեցաւ Բրինծ Անտաքու վիճէր ընդ պարոն Թորոսի վասն բերդերոյն (1), զոր Յոյնք առեալ էին ՚ի Փլերացն՝ և նա էառ ՚ի Յունացն. և ասէր թէ վասն ամենայն քրիստոնէից են ՚ի պատերազմիլ. տուր՝ ՚ի նոսա զիւրեանց լեալն. և կռուեցան ՚ի Սկնտըրունն (2) և անկան բազումք յերկոցունց կողմանցն. եւ

(1) Հին օրի. վասն բերդին՝ որ կայր ՚ի սիւնոսն Սելեւկիոյ, զոր առեալ էին ՚ի Փրերացն Յոյնք։

(2) Երեք օրի. իսկ ընդդրանն սխալ ընդ. օրինակումնեանս

դարձաւ Ոնաղոն ՚ի տուն իւր ամօթով. բայց յետ այնորիկ իւրով կամօք ետ ՚ի Փռ-րերան կղզեակն որ կայր ՚ի Ախոռն Ըն-տաքու: Եւ նոքա երդուան նմա օգնել Հա-յոց յամենայն կարիս մահու չափ և յամե-նայն իրս ցաւալցիլ:

Ի Թուին Հայոց հինգ հարիւր ութսուն և չորս ել պարոն Ստեփանէս եղբայրն պա-րոն Թորոսի յերկիրն Մարաշայ՝ և եմոյծ ըզ-զօրսն ՚ի գիշերի ՚ի Մարաշ ՚ի տունս քրիս-տոնէիցն՝ որ անդ կամակցութեամբ քահա-նայի միոյ ՚ի նմին քաղաքէ. և ընդ լուսանալ առաւօտուն առին զքաղաքն և կոտորեցին զԹուրքն որ անդ. և հպարտացեալ նախա-տէին զպահապանս բերդին և շնային յապա-նապէս ընդ կանայս նոցա. և բարկացա-տէր և ոչ մատնեաց զբերդն ՚ի ձեռս նոցա. այլ այրեցին զքաղաքն և առեալ զքրիստո-նեայսն որ անդ, մտին յերկիրն: Բայց զե-րէցն կամակից գործոյն ձաղեալ կենդանւոյն քերթեաց և հրով այրեաց Ամիրայն:

Ի նոյն ամի Ոնաղոն կամակցութեամբ և օգնութեամբ Թորոսի չոգաւ ՚ի Կիպրոս կղզի, և առ զնա, և յաւարի եհար. և ած զմարդ և զանասուն յեզր ծովուն, և կրա-

րեաց ամենեցուն գինս, և եԹող զնոսա. և առեալ պատանդս ած ընդ ինքեան եպիսկոպոսս, և քահանայս, և ազատս մինչև բերցեն զհատեալ գինսն. և եղեւ այս վասն երկու պատճառի. մի՝ զի ննջեցին Յոյնք ըղՓռանգսն որ անդ էին, և մի՝ զի յորդորեին նոքա զԹուրքն ՚ի կորուստ Հայոց։ Իսկ Պարոն Ստեփանէ չոգաւ ՚ի վերայ Ներդուսին և նեղեալ զնա. և նոքա խնդրեցին երդումն զի Թողցէ զնոսա կենդանիս, և տայցեն ըղբերդն. և երդուաւ նոցա. և առեալ զբերդըն եԹող զնոսա եւ. գնացին խաղաղուԹեամբ։

Եւ պատմեցաւ Ստեփանեայ եԹէ ըսպառնալեօք երԹային Թուրքն. Թէ երԹամք և առնումք զօրս, և գամք և աւերեմք զաշխարհս զայս. և նա եհարց զեկեղեցականսն. և նոքա ասեն Թէ այդպէս սպառնան՝ անխիղճ եւ յերդմանէն. և յղեաց զկնի նոցա. և կոտորեցին զամենեսեան. և լուան զայս ամենայն այլազգիք. և դարձան ՚ի Թշնամիս (1) քրիստոնէից։

Յայնմ ամի մեռաւ աւագ Սուլտանն Խորասանեայ Մասուդն. և եԹող որդի մի տղայ փոքր, և եդին նմա աԹապակ (աԹա-

(1) Ոմանք՝ ՚ի Թշնամանս.

ռապահ)[1] զԵղեկուղ[2] ամիրայն. որ առ 'ի կնութիւն զմայր տղային. և վարէր զսուլ-թանութիւնն: Եւ զկնի սակաւ մեռաւ տղայն. և հաստատեցաւ սուլթանութիւնն Եղեկուղին. բայց անուն աթաբակութեանն ոչ բարձաւ. զի յայնմ հետէ թագաւորն Խորասանայ Աթաբակ կոչի և աշխարհն տուն Աթաբակեան մինչեւ 'ի Մօսլ. և 'ի Միջագետս, և յԱրան ամենայն երկիրն[3]. Նոյնպէս և որ 'ի Կապադովկիայ է թագաւորութիւն Խաքանեանք և Մալչուքեանք կոչի. սակս անուան նախնւոյն[4]. և Դանիշմանիքն ոչ էին կատարեալ թագաւորութիւն: Բայց զի Խլիճ ասլանն և Ղարասլան[5] տէրն Մելատայ վիճէին ընդ միմեանս, պարոն Ստեփանէ ելեալ 'ի դուրս աւերէր զերկաքանչիւրոյն զերկիր:

(1) Այսր' ամենայն օրինակք ունէին աթաբակ: Հին օրի. ունի այսպէս: Յայնմ աւուր մեռաւ աւագ սուլտանն Խորասանայ Մասուդն, և ոչ ունէր որդի. բայց միայն մանկիկ մի փոքրիկ. վասն որոյ եդեւ աթոռապահ նմա ամիրայ մի Եղեկուղ անուն:

(2) Մի օրի. Երկսուղ:

(3) Երեք օրի. մինչեւ 'ի Խրասան ամենայն երկիրն:

(4) Հին օրի. Նոյնպէս և որ 'ի Կապադովկիայ լինէին թագաւորք, զի ընդ ձեռամբ Աղեկուղին ('ի վերոյ Եղեկուղ) մտին, Աթաբակեանք կոչին:

(5) Յառաջագոյն զառ Ղազար ասլան յիշեցին ամենայն օրինակք բաց 'ի միոյն. որ Ղարա ասլան ունէր. և այլ ամենայն օրինակք ունէին Ղարասլան:

Եւ թագաւորն Երուսաղեմի եկեալ յԵնտաք, և առեալ զօրս 'ի Հայոց չոգաւ առ զՀերիմն և աւերեաց մինչեւ 'ի Հալպ(1)։ Յորում աւուր չարախօսութիւն մատուցին առաջին Թորոսի, թէ Սեւափանէ խորհի սպանանել զքեզ. և հաւատաց նոցա. և կալեալ զեղբայրն եդ 'ի բանտի զատան ամիս. իսկ միջնորդութեամբ բազմաց, երդմնեցուցեալ եհան զնա (2). և սիրէին զմիմեանս։

Իսկ Իլխճ ասլան զՏանուն ամիրայն Կեսարու արար իւր սիրելի. և նովաւ խաբէր(3) զտունն Դանիշմանայ։

Ի հազար հարիւր եւթանասուն թուին Յունաց, և հինգ հարիւր և վեց Հայոց՝ Տաճիկք որ կոչին Թուրքմէնք ասպատակեցին 'ի Սպանիայ, և յամեցին անդ տարի մի. և թէ ո՞ք են որքա, պատմեսցուք։

Ի չորրորդ Խալիփայէն որ նստէին յԵգիպտոս յազգէն Ալեայ եղեն երեք որդիք. և 'ի մեռանել հօրն էառ աւագն զխալիփայութիւնն և խորհէր սպանանել զեղբարսն. և նոցա իմացեալ առին երկու գիրք, և փախ-

(1) Առեալ զօրս և չոգաւ ետա 'ի Հայոց զՀերիմն, և աւերեաց մինչեւ 'ի Հալպայ։

(2) Զուգ օրի. և միջնորդեալ բազմաց, առեալ երդումն դարձեալ եհան զնա։

(3) Երկու օրի. խախտէր։

եան յարեւմուտս. և անցին ընդ Սպանիայ և գնացին առ ազգս բարբարոս և վայրենամիտս, այլ և աղքատս և անարուեստս և անթագաւորս, և բնակեցան անդ. և ունէին ընդ ինքեանս յազգէն իւրեանց, և զերկնաւոր գիրսն յառաջ բերեալ ընթերցան. մին ուսուցանէր քիմեայս արուեստս ոսկեգործութեան, և արծաթապարութեան, և յօրինման մարգարտաց. և միւսն արուեստս հըրաշագործութեան և ոսկոյ և կախարդութեան. և սկսան ստանալ ոսկի և արծաթ և նորօք անասունս ձիս և ջորիս 'ի ձեռս վաճառականաց և զօրս անդէն կային. և մեծացան յոյժ. և մանաւորէին 'ի բարութեանց անտի դրացեացն և մօտակայից. և յանդուգին յինքեանս և առին կանայս 'ի նոցանէ և ստացան որդիս և աճեցին և փարթամացուցին զերկիրն. և ապա սկսան քարոզել զօրէնս իւրեանց՝ զոր թէ առնեն, լինին իբրև զնոսա յաջողեալք. և նոքա ասեն ցնոսա. և ո՞ գիտէ թէ բարի են օրէնքդ ձեր. և յետ մահու արարէք մեզ նշանս. և նոքա խնդացեալք առնէին տոմերս պէս պէս. և հանէին դիւթութեամբ դև 'ի գերեզմանաց նոցա 'ի պատկերս մեռելոց նոցա որք և ասէին. այդ է հաւատս, այդ է Աստուածապաշտութիւն, երա

նելիք էք[1] եթէ առնիցէք զոր դոքայդ առնեն. զի և յետ մահու անեզրապէս թագաւորէք։ Իսկ նոքա լսելով զայս եւ տեսանելով ապշեալք լինէին, և զարմանային. և հաւատային նոցա. և նոքա առեալ զնոսա թլփատէին և դնէին կրօնս զօրէնս Մահմետի զոր ինքեանք ունէին. և այսպէս առ սակաւ սակաւ աճէին և բազմանային և շինէին քաղաքս և ամրացուցանէին բերդս առ ծովեզերօքն և 'ի լերինսն. և եդին յորդւոց իւրեանց թագաւորս և խալիփայս. և զի անուն էր միոյն Աբդալլա, և միւսոյն Մամունի այնպէս կոչեցան ազգն Աբդլմումնիք և կարի ընդարձակեցան, եւ տիրեցին բազում աշխարհաց և ծովացն. և եղեն անուանիք. և հարստացան այնքան, մինչ զի շինեցին բերդս պղնձիս, և բերդս երկաթիս. և այլ բերդս ոսկիս և արծաթիս. և եղեն մեծ և հզօր թագաւորութիւն մինչեւ կարել գալ նոցա 'ի Սպանիա. և կռուել բովանդակ ամ մի ընդ արիական ազգն Փռանկաց 'ի Սպանիա, և առնել ընդ հարկաւ զնոսա. և դառնալ յոլով աւարաւ և գերութեամբ։

Վասն որոյ դիպող ժամանակ գտեալ

(1) Մի օրի. երեւելիք էք։

Սանիլ թագաւորն Յունաց եկն 'ի Կիւլիկէայ յերկիրն Թորոսին . զի անպարապ էին Փռանգքն 'ի նմանէ՝ վասն նեղութեան Սրդըլմուծնեացն . և Թորոս խոյս ետ 'ի նմանէ զօրօքն առ լեռնակողմամբն . և էանց ընդ դաշտն Սանիլն և չոգաւ մինչև յԱնտաք և կամէր փռանգօքն երթալ 'ի վերայ Հալպայ. և լուաւ գոյժ ելթէ ոմն յիշխանաց նորա կամի թագաւորել . և դարձաւ խնդրելով 'ի Թորոսէն հնազանդութիւն . և բազում մեծաշահասուցին նմա 'ի Ճանապարհի Թուրքն , որ զառապարօքն բնակեալ էին կոծոպելով 'ի զօրացն . զոր իմացեալ Սանիլն առաքեաց զօրըս աւերել զերկիրն Կըլըճասլանայ ըստ կարողութեան . և կայր անհաշտ պատերազմ 'ի մէջ Յունաց և Թուրքաց : Զոր իմացեալ Նորատինն գնաց աւերել զերկիրն Կըլըճայ որ առ սահմանօքն Եփրատայ , զԲեհեսնի և զԽաբան և զՄարաշ և զայլսն , և յինքն գրաւեաց զնոսա վաղվաղակի : Բայց յետոյ հաշտեալք ընդ սուլտանն դարձոյց առ նա վերստին . հաշտեցաւ նոյնպէս և Սլուք ալանն , և արարին խաղաղութիւն ընդ միմեանս :

Իսկ թագաւորն Երուսաղեմի ետ զՀարիմն յորդին Ջօշլնին որ էր անուամբ հօրն .

և էր ժառանգ Հռովմկլային, և նա սակս քինու հօրն մահու աւերէր զերկիրն Հալպայ զՋայդ և զպերէկ, զոր և զկնի երկուց ամաց ըմբռնեցին զնա զօրքն Հալպայ (տարան 'ի Հալապ) և մեռաւ 'ի կապանս. Յայսու ժամանակօք ել Թագաւորն Երուսաղէմի Պաղտոյնն որ առ սահմանօքն Դամասկոսի և արար ընդ ինքեան զՊոոյիսն, ոյք հրամանաւ Նորատնեին կային անդ. և չոգաւ նոքօք ընդ անապատն յերկիրն Եգիպտոսի, և եհար զնա յաւարի. և եդ 'ի վերայ նոցա հարկս հարիւր վաթսուն հազար դահեկանըս. և դարձաւ բազում փառօք ածելով ընդ ինքեան գերիս ոչ սակաւս և յոլովութիւն աւարի կայուն և գնայուն.

Եւ 'ի նոյն ամի Թագաւորն Վրաց Գէորգի եհար զՍալտուխ ամիրայն որ նստէր 'ի Կարնոյ քաղաք և կալեալ զնա վաճառեաց, անդէն: Եւ միւս անգամ ժողովեալ բազմութիւն Թուրքաց 'ի վերայ Գէորգայ, և կոտորեցան 'ի նմանէ հազարք և բիւրք, և դարձեալ կռուեցան ընդ միմեանս Սուլտանըն Խլիճ և Նուր ասլան և յաղթահարեցաւ սուլտանն. և էառ Նուր ասլան զամենայն կրազմած արքայութեանն Խլիճայ. և մեծահոգի եղեալ անդրէն դարձոյց և խընդ-

րեաց հաշտութիւն . եւ արարին լակ :

Ի այն ժամանակս ազդ եղեւ Թագաւորին Երուսաղեմի , եթէ տէրն Սայիտայ Ռիրան կազմեալ է նաւս և լցեալ ուտապակօք . բայց վնաս առնէ առաւել քրիստոնէից քան թէ Թուրքաց . և բարկացաւ 'ի վերայ նորա և հալածեաց զնա . և նորա երթեալ յԱնտաք առ Բրինծն և ետ նմա զՊաղրաս . և սկսաւ առնել և անդ նոյնպէս զվնասագործութիւնն 'ի ծովու և 'ի ցամաքի : Եւ իմացեալ Բրինծն հալածեաց զնա : Եւ նորա գնացեալ առ Նորատինն ուրախ արար զնա յոյժ . զի խոստացաւ նմա առնել զամենայն ծովեզերայն ընդ ձեռամբ նորա . վասն որոյ ետ զզօրս իւր 'ի ձեռս նորա , որ և գնացեալ ապականէր զաշխարհն ծովեզերեայ :

Իսկ Թագաւորն Երուսաղեմի անուամբն Քրիստոսի զօրացեալ գնաց 'ի վերայ նորա և կոտորեաց զզօրս Թուրքացն , և զանօթն սատանայի ձերբակալ արարեալ տարաւ յԵրուսաղէմ . և այրեաց հրով և բարձաւ չարն :

Ի ժամանակս այս Մանիլն Թագաւորն սպան զկին իւր դեղով սակս ամլութեան . և առ կին զդուստր Բրնծին Անտաքայ հակառակ օրինաց Քրիստոնէից : Իսկ Աղու-

տալան արար խաղաղութիւն ընդ Մելանենի
և եթող զնա ամիրայեալ տղային եղբօրոր-
դւոյ իւրոյ ։ Բայց քսեցին զնմանէ առ սուլ-
տանն, թէ Նղուբ ասլան միաբանութեամբ
բազում ամիրայից կամի սպանանել զքեզ, և
գնել սուլտան զեղբայր քո. և հաւատաց
բանիցն և առաքեաց առ Սանիլն զՔրիստա-
փոր դպրապետն իւր խնդրել 'ի նմանէ օգ-
նութիւնս, և թէ երդնուցու նմա, գնասցէ
առ նա կամօք սիրոյ. և խնդրեաց Սանիլն, և
երդուաւ նմա. և չոգաւ Սուլտանն հազար
հեծելով 'ի Կոստանդնուպօլիս, և յոյժ պա-
տուեցաւ, և եղեւ անդ աւուրս ութսուն ։
Եւ յամենայն աւուրս առաքէին նմա հաց-
կերոյթս երկու անգամ ոսկեղէն և արծա-
թեղէն ամանօք. և ամենայն ամանքն մնա-
յին Սուլտանին և ոչ եւս դառնային. եւ
զկնի ութսուն աւուրն կերան հաց 'ի մի-
ում սեղանի և զամենայն պատրաստութիւն
սպասուցն ետ սուլտանին. և յորժամ կա-
մէր գնալ ծածկեաց զհասակն նորա ոսկւով
յոտն կալով նորա 'ի մէջ տաճարին. և ետ
նմա զօրս և գնաց. և ժողովեաց զամենայն
ամիրայսն Նջմադեառոց Նղուբ ասլան առ
ինքն, և ել ընդդէմ նորա և յորժամ հասին
առ միմեանս՝ զարհուրեցան երկոքեան կող-

մանքն 'ի բազմութենէ միմեանց . և առին զտեղի և առեալ խորհուրդս 'ի մէջ՝ արարին երդմունս սիրոյ . և արձակեցան 'ի միմեանց։

Յաւուրսն յայնոսիկ Անդրոնիկոս իշխանն կայր 'ի Կիւլիկիա հրամանաւ Մանուէլի , և կոչեաց զպարոն Ստեփանէ 'ի ճաշոյ պատրաստութիւն . և դարան գործեալ սպան ըզնա զաղտնի և զօրս ընդ նմա . և շարժեցաւ պարոն Թորոսն 'ի ցասումն 'ի վերայ Յունաց , և սպան 'ի նոցանէ տասն հազար անձինս ։ Եւ Անդրոնիկոս աղաչէր զԹագաւորըն Երուսաղեմի գալ հաշտեցուցանել զնոսա , և խոստանայր նմա բազում ոսկի 'ի Կոստանդնուպօլսէ . և երդնոյր եթէ անպարտ է յիրայն կարծեաց և ոչ է սպանեալ նորա զնա ։ Եւ եկն Թագաւորն Երուսաղեմի . և արար խաղաղութիւն մեծաւ աղաչանօք , և դադարեցին 'ի կոտորելոյ զՅոյնսն ։

Յայնմ ժամանակի Թագաւորն Վրաց Գէորգի եառ զԱնւոյն քաղաք և սատակեաց զՊարսիկն որ անդ . և քակեաց զմինէրայն , զոր արեամբ և ոսկերօք Քրիստոնէից շինեալ էր ։ Յորում աւուրս ըմբռնեցաւ Առնաղոն տէրն Անտաքա 'ի զօրաց Նորատինին հարիւր քան հեծելօք , և հինգ հարիւր հետեւակօք գնացեալ յերկիրն Հալպայ .

ուր բազում եցոյց քաջութիւնս նախ քան զըմբռնումն. բայց զի բազում էր Թուրքն և դարան գործեալ էր 'ի ծածուկ պատեցան զնովաւ. և Թէպէտ և կարող էր պատառել և ելանել, այլ ոչ կամեցաւ միայն ապրել, ետ զանձն 'ի ձեռս նոցա, և տարան առ Նորըտինն 'ի Հալապ. և առ ժամայն տապատակեալ 'ի Լատիկն առին անդ եւԹն հազար գերիս 'ի քրիստոնէից, և եղեւ մեծ տրտմութիւն եկեղեցւոյ. և լուեալ զայս Թագաւորն Երուսաղեմի եկն 'ի վերայ Հալպայ, և ոչ կարաց առնել ինչ նմա. և արարեալ խաղաղութիւն դարձաւ յԵրուսաղէմ. և հասեալ յԱքքայ(1) վախճանեցաւ տուեալ զԹագաւորութիւնն Ամարեայ եղբօր իւրոյ, որոյ տարեալ զդի նորա յԵրուսաղէմ Թաղեաց, և սգաց զնա յոլով աւուրս. և ինքն Թագաւորեաց ամս ինն և տասն: Իսկ Նորատինն չոգաւ յերկիրն Երուսաղեմի, և առեալ զաւառ և գերի դարձաւ. և ել զհետ նորա Եմմաւի կոտորեաց զնա և փախոյց և Թափեաց զաւն, և դարձաւ գերին: Եւ 'ի սոյն ամի Նչուբ սուլտան հնազանդեաց զՏանուն զեղբօրորդին իւր որ ապստամբեալ էր 'ի Կեսարիա. և գնաց 'ի Կամաւի որ է Ենի.

(1) Աքայիա, որ է Աքքէ.

այսինքն Կամախ. և սպան զապստամբ ամիրայն որ անդ, և դարձաւ։

Եւ Պարա ասլան չոգաւ յԱմիթ, և ոչ կարաց առնուլ զնա. և դարձաւ 'ի Հարսնաքեփ, և կոչեաց զԱղուպ ասլան 'ի ձայն ընդունելութեան. և նա կարծեաց թէ նենգութեամբ մեծարէ, չոգաւ փոքու մեծաւ յերկիրն նորա, և գերեաց անտի տասն հազար (1) անձինս և եպիսկոպոսս երկուս զԻգնատիոս և զՊխոնէսիոս, որք զերծան 'ի նմանէ կենդանիք։ Իսկ պարոն Թորոս յետ գերութեան Ոնաղտին եկն յԱնտաք, և կալցոյց Րոբինձ Անտաքու զորդի նորա զՊամուղն՝ ոչ կամելով մորն։

Յաւուրսն յայնոսիկ Նորատինն զօրաժողով լեալ ասպատակեաց 'ի Տրապօլիս, և գիպեցան նոցա երեք հարիւր ձիաւոր Փըռանգ ոչ գիտելով զմիմեանս. բայց Փռանգըն գիտաց թէ Թուրք է. և Նորատինն կարծեաց զԹագաւորն Երուսաղեմի, և փախեաւ. և ելին զհետ նոցա երեք հարիւրքն և կոտորէին, և յորժամ ելին յարձակն. և տեսին զյոլովութիւն Թուրքին, և իմացան թէ Նորատինն է, զահի հարան. և ելին 'ի բլուր մի, և իջեալ յերիվարացն աղօթէին

(1) Երեք օրի. հարիւր հազար։

զվերջին աղօթման ալն ունելով մահու ։ Եւ տեսեալ Թուրքացն անկեալ երկիւղ Տեառն 'ի վերայ նոցա և Թողին զկարասիս իւրեանց և մերկացին զսպառազինութիւնս իւրեանց և փախեան անյետս դառնալիք. և Քրիստոսասէր զօրացն սրտապնդեալ հասին նոցա և կոտորեցին բիւրս և հազարս. և զերծաւ Նորատին յոյժ սակաւուք. և նոցա լցեալ կահիւք և կազմածովք նոցա դարձան կազմածօքն խնդութեամբ 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ ։

Իսկ Եղուպ ասլան գնաց առ Շահնշահ եղբայր Սուլտանին որ կայր ամրացեալ առ ծովեզերեայ դղեկին իւր հայրատուր, և դարձաւ խնդութեամբ. և հասեալ 'ի Գանգրայ առ Ալիս գետով մեռանէր. և զօրքն եդին 'ի տեղի նորա զԻսմայիլն զեղբօրորդին նորա ։ Իսկ որք յԱպլութայն էին զօրք Թագաւորեցուցին զՄահմուտն որդին Մահադեայ. և եղեւ ամբոխեալ տունն Դանիշմանեայ ։

Զայսու ժամանակաւ չոգաւ Թագաւորըն Երուսաղեմի յԵգիպտոս առնուլ զՀարկըն. և Եգիպտացիքն փեղկեալ 'ի միմեանց, ոմանք մեծարեցին զնա կարգեալ հասիւն, և կէսք հպարտացեալ ընդդիմացան, և առաքեցին առ Նորատին օգնել նոցա. և

նա յղեալ առ նոսա զՇիրաքաւ զօրապետն իւր օգնել նոցա ։

Իսկ Թագաւորն Երուսաղեմի սուր 'ի գործ արկեալ կոտորեաց զապստամբեալսն յանխնայ անթիւ և անհամար. և չոգաւ և իջաւ 'ի վերայ Պղապէս[1] քաղաքի ամիսս եւթըն. և բերին նմա գրոյց, եթէ Նորատինն պաշարեալ է զՇերիմն և կամի առնուլ զնա. և գրեաց Թագաւորն խորամս և ասաց. ամենեւին մի ելանէք 'ի քաղաքէդ արտաքս մինչեւ գամ ես. և ինքն եթող զՊղապէս և եկեալ գայ: և նոքա ոչ պահեցին զպատուէրըն նորա այլ ելեալ կռուեցան ընդ նոսա, և խոյս ետ Թուրքն և հեռացաւ. և Փռանգն նստաւ բացեալ 'ի քաղաքէն. և անդրէն դարձեալ Թուրքն եգիտ զնոսա յանհոգս. և կոտորեցին և առին զքաղաքն. և գերեցին զԱրինձն Նստաքու և զայլս բազումս 'ի գլխաւորացն ։ Ի հազար չորս հարիւր եւթանասուն թուին Յունաց և 'ի հինգ հարիւր իննսուն երկու Հայոց՝ զօրացաւ Խլիճ ասլան Սուլտան 'ի վերայ որդւոցն Դանշմանայ 'ի ձեռն Տանուն ամիրային, և առ զԿատուկըն և զԿապլթայն և զՏարանտա ։

(1) Մերթ Պըպէս ։

## ԳԼՈՒԽ ԻԶ.

*Յաղագս պարոն Թորոսի և Սալահատնին և հարցմանց Տ. Ներսեսի և հաւատոցն քննութեան և երկու բնութիւն ասելոյն.*

Ի սոյն ամի պարոն Թորոս արձակեաց դեսպանս պատարագօք 'ի Հալպ և խնդրեաց զՀայ գերիսն՝ որ անդ, և ոչ ետուն. և զայրացեալ Թորոս ել յերկիրն Մարաշայ եւ աւերէր. և Նորատինն արձակեաց զօրս 'ի վերայ նորա, և Թորոս եհար զնոսա և զքաղումն կալաւ 'ի ձեռս և Նորատինն երկեաւ 'ի նմանէ. և եթող զորս խնդրէրն:

Նոյն բացաւ բերան փռանգաց և խնդրեցին զՐինձն, և վաճառեցին զնա հարիւր հազար դահեկանի. և ելեալ Րինձն չոգաւ 'ի Կոստանդնուպօլիս առ քոյրն իւր, և բազում գանձիւք դարձաւ. և ած անտի 'ի Յունացն պատրիարք Անտիոքայ. և եմոյծ 'ի քաղաքն Աթանաս անուն. և տեսեալ զայն փռանգ պատրիարքն Հերմի ել 'ի քաղաքէն և գնաց նստաւ 'ի Կուռս այրն, և բանադրեաց զքաղաքն:

Օկնի ամի միոյ չոգաւ թագաւորն Յունաց Մանիլն 'ի վերայ Բուլղարաց եւ պարտեցաւ, և կալան զնա գերի. և այր ոմն զեր-

ծեաց զնա վասն երդման զոր երդուաւ նմա տալ. և բերեալ 'ի Կոստանդնուպօլիս էառ զակնունելլն։

Իսկ Եգիպտոս եղեւ ընդ հնազանդութեամբ Սուլտանին, և իշխէր նոցա Շիրաքաւ. և չոգաւ դարձեալ Թագաւորն Երուսաղեմի 'ի վերայ նորա և փախեաւ Շիրաքաւ յերեսաց նորա. և առ զՄսր, և առար ընդ հարկաւ, և յոլով գանձիւք դարձաւ. և յետ աւուրց լու եղեւ թէ բռնադատեն Տաճիկքն զՔրիստոնեայսն որ յԵգիպտոս, և գնաց միւսանգամ և էառ զայլազգիսն 'ի նուաղութիւն սպանութեամբ կողոպտելով և դերութեամբ, և դարձաւ։

Յաւուրսն յայնոսիկ Անդրոնիկոս հօրեղբօր որդին Մանիլ Թագաւորին ել յերկրէն Կիլիկեցւոց, և չոգաւ յԱքքոյ. զի անդ էր եղբօր իւր դուստրն, որ լեալ էր կին հանգուցեալ Թագաւորին Երուսաղեմի, և եղեւ տանն հոգաբարձու և անկաւ ընդ նմա պոռնկութեամբ. և յայտնեցաւ իրքն, և փախեան երկոքեանն 'ի Խառան. և անդ ծնաւ նոցա չար ծնունդ և գարշեցան 'ի նըմանէ. և գնաց 'ի Մերտինն և ոչ անդ ընկալան. և գնաց 'ի Կարնոյ քաղաք և դադարեաց անդ. և առնոյր զօր 'ի Թուրքացն և երթայր

և գերէր զՔրիստոնեայսն, և բերէր վաճառէր անօրինացն և կայր չարաչար ։

Իսկ պարոն Թորոսի եղբայր մի էր Մըլեհ անուն չարաբարոյ և վայրենամիտ, որ ոչ հաւատայր նմա Թորոս և ոչինչ. վասն որոյ զչարեալ նորա չոգաւ առ Նորատինն, և ետ նմա զԿիւրիս. որ և արար յոլով չարիս գերելով զՔրիստոնեայսն և յանխնայ կոտորելով զնոսա որ և գողացաւ զՄանաւէր ՚ի Հայոց և ոչ գոյր չափ պղծութեան նորա ։ Իսկ պարոն Թորոս հիւանդացեալ ազանէր կրօնաւորական հանդերձս և մեծաւ յուսով կատարէր ՚ի Քրիստոս կեցեալ երեւելի փառօք և արիական քաջութեամբ. յիշատակ նորա օրհնութեամբ և դրուատիւք լիցի յեկեղեցիս ուղղափառաց. և եթող տղայ մի փոքրիկ յանձնելով զնա յիշխանսն ։ Իսկ զի Մլեհն ապականութիւն յոլով առնէր, երդուման առին ՚ի նմանէ իշխանքն զի մի զըրկեսցէ զտղայն, և մուծին յերկիրն ։ Իսկ նա ստեաց երդմանն և էառ զբոլոր երկիրն. և փախուցին զտղայն ՚ի Հռոմկլայն, և անդ սնանէր ։

Ի թուին Հայոց հինգ հարիւր իննսուն եւ վեց բարձաւ իշխանութիւնն Տաճկաց յԵգիպտոսէ, որ սկսաւ յԱլմարայ. զի անկա-

'ի նոսա հերձուած մի որ Ոսամփդիքն կոչէին. և միւս եւս 'ի յԱթուր որ Սիւնիքն կոչէին. արդ Ոսամփդիքն որք են Շէլքն՝ ասէին. մի է Աստուած, և չար ոչ արար և ոչ առնէ. և յայտ անտի է զի Աստուած մի է և չարն բազում է: Եւ Սիւնիքն ասէին ամենայն ինչ յԱստուծոյ է չարն և մահն և ամենայն հակառակ պատահմունք. և սկսան տալ ըդ-միմեանս. և բաժանեցան աղանդք անդէն յԵգիպտոս. զի յերկուց կողմանց կային անդ. Շէլքն էին ընդ Նորատինին. և Սիւնիքն ընդ Փռանգացն. և Նորատինն առաքեաց պատգամս առ Սիւնիքն զի 'ի բաց կացցեն 'ի Փռռանգացն, և կացցեն անհարկս և օգնեսցեն զենին իւրեանց, և լուան նմա. և մտին ընդ իշխանութեամբ Թուրքաց, և ամրացուցին զՊղպէս. և արգելին զհարկն Փռանգին:

Եւ լուաւ թագաւորն Երուսաղեմի. և չոգաւ առ զՊղպէս, և եգիտ անդ երկոտասան հազար հեծեալ: Եւ երկու հարիւր հազար հետեւակ և մատնեաց զնոսա 'ի սուր: Իսկ Շաւուրն զօրապետ այրեաց զՄսր քաղաք. և առեալ զբազմութիւն, գնաց ամրացաւ 'ի Շարէ քաղաք. և աղաչեաց առ Նորատինն զեղեալ զօրսն 'ի ձեռն Շիրաքուայ. և դարձոյց Նորատինն զՇիրաքու հարիւր

հազար հեծելօք. որ ընդ երթալն նորա սպան զխալիփայն, և եբարձ զազգն նորա յԵգիպ-տոսէ. և սպան դարձեալ զգլխաւոր Տաճկաց և իշխանացն ինքն։ Եւ թագաւորն Երու-սաղեմի դարձաւ անդրէն 'ի տուն իւր մեծ աջողուածովք։

Եւ զկնի երից ամաց մեռաւ Շիրաքաւ. և առ զիշխանութիւնն եղբօրորդին Շիրա-քայ Յուսուփն՝ որ նա ինքն է Սալահատին։ Եւ թէ ո՞ էր սա ասացից։

Հայր սորա էր 'ի Դունին քաղաքէ Հայոց մեծաց ազգաւ քուրդ Այուբ անուն որդի Սուլեմանայ։ Այս Այուբս և Շիրաքաւ եղ-բայր իւր ելին 'ի Դունայ վասն աղքատու-թեան, և եկին 'ի Միջագետս. և երթեալք 'ի Թիկրիթ մտին 'ի ծունդկութիւն բերդին. և յաւուր միում պատմեաց Այուբն երազ Հրէի միում. ելանէր, ասէ, յերանաց իւ-մոց հուր, և այրէր զաշխարհս. և ասէ ցնա Հրեայն. ծնցի 'ի քէն որդի աւերիչ երկրի. ասէ ցնա Այուբն. եթէ ելցէ մեկնութիւնդ քո 'ի գլուխ, առ դու 'ի նմանէ յորդւոց յոր-դիս յամենայն ամի՝ հազար կարմիր. և գրեաց Զ հաւտն զբանն և զժամանակն և ամիսն. և 'ի նոյն ամի ծնաւ Յուսուփն և զարգանայր. Եւ էր կայտառ. և Շիրաքաւ հօրեղբայր

նորա առ զնա և գնաց առ Պոտափրինն. և եգիտ Շ խրաքաւ շնորհս առաջի նորա, և էր յառաջադէմ և յաջողէր նմա ամենայն ուրեք. և արար զնա զօրապետ, և յղեաց զնա յԵգիպտոս. և Թէպէտ յաղԹահարեցաւ միանգամ և երկիցս յԵրուսաղէմի Թագաւորէն, սակայն նմա զԵգիպտոս. և յորժամ մեռաւ. եղին 'ի տեղի նորա զՅուսուփն. և լուաւ Երազահան Հրեայն. և խնդրէր ըզգրաւն յՌուբէն. և ասէ ցնա Ռուբէն Էկ երԹիցուք առ հուրն բորբոքեալ զի տացէ քեզ զոր պարտիմք. և չոգան առ նա, եւ խնդրաց Յուսուփն. և եհարց Թէ քանի՞ ամք են. և նա ետ զգիր Թուականին ցնա. և ընԹերցեալ հաւատաց. և ետ զանցեալ ամացն գրաւն հազար հազար դահեկան. և գնաց Հրեայն խնդուԹեամբ 'ի տուն իւր 'ի Թկրիթ: Բայց զկնի սակաւ աւուրց Ռուբէն ոտամբ ձիոյ հարեալ 'ի գլուխն մեռանէր յԵգիպտոս. և Թաղեաց զնա պատուով որդին իւր. և երԹալով երԹայր և զօրանայր և մեծանայր Սալահատինն. և էր ահարկու և մեծամիտ և աջողէր նմա: Սա հրամանն եհան յերկիրն Եգիպտոսի Թէ քրիստոնեայք մի հեծցին 'ի ձի և 'ի ջորի և հանապազ զգօտի ածեալ ցուցցեն 'ի հրապարակս Նշանակ ծառայուԹեան:

Ի վեց հարիւր թուին Հայոց խլիճ ասլան էառ զԿեսարիա, և զՕ՚ամնդաւ յորդւոցն Դանիշմանայ :

Եւ 'ի նոյն ամի Նեստորական Եպիսկոպոս մի էառ զեկեղեցին Յակոբկաց որ 'ի Բաղդատ, և եհար զնա ցասումն Տեառն, և դարձաւ եկեղեցին առ տեարս իւր :

Յաւուրսն յայնոսիկ պայծառանայր աստուածային շնորհօք և վարդապետութեամբ սուրբն Յակոբ որդին Սալիբայ. զոր ձեռնադրեցին եպիսկոպոս, և կոչեցաւ նա Դիոնէսիոս : Սա արար բազում գրեանս խրատուց և հանճարոյ, և մեկնեաց զբովանդակ հին և նոր կտակարանս ցանկալի իմաստնոց. և լինէր նովաւ նշանք և սքանչելիք և գովութիւն շնորհաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի :

Ի թուին Ասորոց հազար չորս հարիւր իննսուն երեք՝ և Հայոց վեց հարիւր տասն երեք, թագաւորն Յունաց Մանիլն առաքեաց առ տէր Ներսէս կաթուղիկոսն Հայոց և առ իս 'ի Միխայէլս և խնդրեաց միաբանութիւն հաւատոյ և սիրոյ և կրօնից. նախ 'ի ձեռն Քրիստափորի ումեմն, և. երկիցս անգամ 'ի ձեռն Թէորիանայ իմաստասիրի :

Իւր գրեալ առ մեզ Տ. Ներսէս Թէ խնդրեալ են 'ի մէնջ երկու բնութիւն ասել Քրիստոսի, և չորրորդ ժողովն պատուել, և զԾնունդն Քրիստոսի 'ի Դեկտեմբերի քսան և հինգն կատարել, և զպատարագն խմորով և ջրով առնել, և զսուրբ Աստուածն խաչեցարիւ չասել. և այս խոստացեալ են մեզ շատ բարիս առնել. զինչ տացուք պատասխանի. և ես ասացի նմա այդ զոր ինչ խնդրեն զատ յերկու բնութեանցն և 'ի չորրորդ ժողովոյն և 'ի խաչեցարէն մեր կարծիքս է։ Բայց Թէ այսօր փոխես զսահմանս հարց քոց զմեծ կամ զփոքր, երեւեցուցանես այնու Թէ մինչեւ ցայսօր Թերի էիք 'ի ճշմարտութենէն, և արդ լցայք. և ոչ է պարտ 'ի մետասան ժամու և 'ի վարձութեան օրինափոխ լինել ակն առեալ երեսաց. այլ մեք կատարեալ տեսանեմք զձեզ առաքելական հիմամբ, և զայլն դու դիտես. և յղեցաք զմի յաշակերտացն մերոց որ վարժ էր արտաքին գրով Ընթեռնինէ անուն զի խօսեսցի 'ի մեր կողմանց (1). և զի նոքա ոչ գայր խելամուտ փիլիսոփայական արուեստից։

(1) Մի օրի. որ վարժ էր արտաքին գրոց Ընթեռնինէ անուն 'ի մեր կողմանց. Մի օրի. որ վարժ էր արտաքին գրոց զի խօսեսցի ընդ Թեռնինէ 'ի մեր կողմանց.

Իսկ յորժամ գնաց աշակերտն իմ, հրամայեաց կաթուղիկոսն խօսել առաջի իւր վասըն բնութեանցն. ապա եհարց մեր աշակերտ Ընթեռինէ և ասէ. 'ի քանիս բաժանի բնութիւնն: Թաւրիանէ ասէ. յերկուս, յանձնաւորութիւն և յանանձնաւորութիւն. և ասաց Ասորին ցԹաւրիանէ անուանեալ իմաստասէրն առաքեալ 'ի Թագաւորէն. իսկ երկու բնութիւնդ զոր դուք ասէք և 'ի մէնջ պահանջէք, անձնաւորի՞ն է թէ անանձնաւորն. և կարկեցաւ Յոյնն զբազում ժամս տարակուսեալ. և ոչ կարաց պատասխանել. զի գիտաց ըմբռնեալ զինքն յանելանելի որոգայթս: Ապա ասէ զի՞ կայ մեր և արտաքնոցն, թող զայդ. և կաթողիկոսն պարսաւեաց զնա և ասէ. ապա զի՞նչ արասցուք զախոյեանդ. զի և յաստուածային գրոց նոյնպէս խրտնուս և վազս առեալ փախչիս. և զոր դու ցնորիս 'ի մտաց իբրեւ զգետնակոչս, զայդ մեք ոչ ընկալցուք. և այսպէս զբազում աւուրս հարց և փորձ արարեալ յամօթ լինէր անուանեալ իմաստասէրն: Իսկ զի խնդրեալ էր Մանիլն և զԱսորոց դաւանութիւնն, գրեցաք և մեք և առաքեցաք յետ այնորիկ. և եկն առ մեզ թուղթ աղաչանաց թէ գոհութիւն և շնորհ ձեզ վասն

խոստովանութեան հաւատոյն զոր գրեալ էիք ։ Բայց աշխատ լերուք և եկայք տեսցուք զմիմեանս և 'ի բերանոյ լուիցուք ․ և մեք ոչ կամեցաք գդնալն, այլ գրեցաք պատասխանիս․ եթէ մեր դաւանելն զՔրիստոս այս է 'ի մի բնութիւն և 'ի մի կամս, և 'ի մի ներգործութիւն փառաւորեմք զնա անբաժանելի յամենայն տնօրինականսն ․ և թէ այդ խոստովանութեամբդ կայցէ ոք ընդ մեզ սէր և խաղաղութիւն, յօժարիմք և մեք ևս առաւել ․ և թէ ոք վասն այդորիկ ատէ զմեզ և հալածէ, մեք գնասցուք ընդ մերս մահու չափ որ է աւանդ հարցն մերոց կացեալ անշարժապէս 'ի հիման առաքելոց և մարգարէից ․ և վասն այսորիկ մատուսցուք զպարանոցս մեր 'ի վկայական հանդէս նախնեացն մերոց կարօտեալք ։

Իսկ զպատասխանին Տ․ Ներսիսի ․ զոր գըրեաց մեք ոչ իմացաք ․ բայց կոլովլի էր յաստուածաշունչ գիրս և պարկեշտ և ջանացող այր ուղիղ կանոնաւ գրոց և սուրբ ․ նմանեալ սրբոյն Ներսիսի հաւուն իւր ։

Բայց և զայս գիտացաք և հաւատամք, եթէ փառաւորեալն 'ի մէնջ տնտեսութիւն Աստուծոյ մերոյ խափանեաց զջան Թագաւորին ․ զի յարեաւ 'ի վերայ նորա տագնապ

Թուրքաց. և կաթուղիկոսն Ներսէս փոխէր յաստեացս, և մնաց հիմն մեր անսասան 'ի հողմոյ որպէս և 'ի դրանց դժոխոց աղօթիւք և արտասուօք և արեամբ հարցն մերոց։

Ի սոյն ժամանակս և Թագաւորն Երուսաղեմի խնդրեաց օգնութիւն 'ի Թագաւորէն Յունաց՝ որ էր աներ նորա երթալ 'ի վերայ Եգիպտոսի. և առաքեաց նմա զօրս ընդ ծով. բայց յորժամ հասին յԵգիպտոս, Յոյնքն ըստ հնացեալ չարութեանն իւրեանց նենգել կամէին զԹագաւորն Երուսաղեմի, և իւրեանց առնուլ զԵգիպտոս. և զգացուցին ոմանք Թագաւորին զկամս Յունաց։ Եւ տէրն Եգիպտոսի Յուսուփ ետ նմա ոսկի զհորկն պարտուց և խոստացան յապայն տալով պատանդս. զի տակաւին չէր բաւական Յուսուփն կռուել ընդ Թագաւորին. և դարձաւ Թագաւորն Երուսաղեմի թողլով անդէն զՅունաց զօրն. և նոքա ոչ իշխեցին յամել 'ի տեղւոջն, այլ առին զնաւսն և գնացին. և առ չնոսա ձմեռն, և յոլովք կորեան 'ի ծովուն։

---

## ԳԼՈՒԽ ԻԵ.

*Յաղագս շարժին որ եղեւ 'ի յունիսի քսան և ինն. և 'ի խաչի ամսեան եկն ձիւն քսան և հինգ թիզ.*

Ի նոյն թուին եկն շարժ ահագին 'ի յունիսի քսան և ինն 'ի տօնի սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի. և դողայր երկիրն 'ի հիմանց մինչեւ ցիններրորդ ժամ աւուրն 'ի ժամ պատարագին և թուէր թէ 'ի վեր բարձրանայր և 'ի վայր իջանէր երկիրն. և էաք 'ի վանքն Մորհանայ. և հրամայեցաք ոչ ումեք ելանել յեկեղեցւոյն մինչեւ դադարեսցէ բարկութիւնն Տեառն. և զճշմարիտն է ասել ակն ոչ ունէաք դադարմանն՝ զի ասէաք 'ի ներանչան ցասմանէն թէ հասեալ է վախճան աշխարհիս: Իսկ յորժամ յիշեաց Տէր զարարչական խնամսն և հաստատեցաւ աշխարհ և տեսաք զիրեարս, էր ամենայն ակն յարտասուս և ամենայն բերան 'ի գոհութիւն և յօրհնութիւն բացեալ: Եւ եկն մեզ զրոյց եթէ փլաւ պարիսպն Հալպայ և ամենայն ձեռագործ շինուածն որ 'ի նմա, և մնաց միայն մի եկեղեցի. և պատառեալ գետնոյն սեաւ ջերով ծովացաւ քաղաքն, և սպան զքիւրս

թիւրուց ։ Եւ այս եղեւ յարդար իրաւանցն Աստուծոյ, քանզի իբրեւ զանաստուն էր անդ- տեսանել զքրիստոնեայս 'ի վաճառարանն. և իբրեւ զջուր համարեալ էր նոցա հեղու- մըն արեանց հաւատացելոցն, և անյագ 'ի ագահութիւն նոցա որպէս 'ի գիւտս գան- ձուց. և հատոյց նոցա փրկութիւնն քրիս- տոնէից հաւասար չափով. Թերեւս թէ ոչ զոյգն, այլ ըստ հաւատչեայն անշիջական հը- րոյն՝ որ պահի նոցա ։ Քանզի մեր է վրէժ գործոյն Աստուծոյ՝ յորս կան հաստատեալք. և կամ ջրահեղոյս հսկայիցն անօրէնութիւնն՝ որ յաճախ է առ նոսա. մինչ զի բազումք երկմտէին 'ի դատաստանացն Աստուծոյ կար- ծամիտք եղեալ ։ Նոյնպէս և յԱնտաք փլա- սուրքն Պետրոս. և Յունաց եկեղեցին սպան զպատրիարգողն և զյոլովս 'ի ժողովրդենէն. և Երմնծն և ամենայն քաղաքն զգեցան քուրձ և գնացեալ անկան առաջի պատրիարքին իւրեանց. և աղաչէին, զի մնացէ 'ի քաղաքն. զի կարծեցին թէ 'ի բանադրանացն նորա եղեւ այս, և ապա ասէ ցնոսա. հանէք ա- նարգանօք զչպատրիարգն Յունաց. և յոր- ժամ չոգան գտին զնա մերձ 'ի մահ, զի ան- կեալ էր 'ի վերայ նորա քար 'ի փլմանէ եկե- ղեցւոյն. և գնացեալ ասացին նմա թէ յելս

հօգւոյն կայ. և հրամայեաց բառնալ մահ-ճօքն և ընկենուլ արտաքոյ քաղաքին. և ա-րարին այնպէս. և մեռաւ յանարգութեան. և սպա եմուտ պատրիարքն Փռանգաց Հեր-մի յԱնտիոք. և մխիթարեցաւ քաղաքն, և սկսաւ շինել զաւերեալն ՚ի շարժմանէն. Այլ թէպէտ յամենայն երկիր արար մեծ շարժն այն նորագործ բերդից և քաղաքաց և եկեղեցեաց, այլ ողորմութիւն Քրիստոսի յԱնտաք և յամենայն ծովեզերեայն պա-հեաց զուղղափառացն եկեղեցին. ոչ վասն բարեաց գործոց այլ յաղագս հարցն աւան-դից միայն.

Ի հազար չորս հարիւր թուին Ասորոց և Հայոցն հազար տասն և չորս՝ մեռաւ Խուդբդինն աթապակն Մօսլայ և ամենայն Աթուրպացւոյն. և զի Նորատինն եղբայր էր նորա՝ առ յինքն զՄծբին և զՃնճայն, եւ յոյժ տրտմեցան Փիւրքն զի գինի ոչ ըմպէր Խուդբդուռինն, և ընդ սահման աղօթիցն նո-ցա ոչ անցանէր. և ասէին զնա մարգարէ.

Զայնու ժամանակօք մեռաւ Խալիֆայն Մսրնջղ, և առ զպատիւն Մսրտինն որդի նորա. և գրեաց առ Նաւրատինն եթէ պա-տերազմ Մահմատայ, որ ասաց թէ զհինգ հա-րիւր ամ ոչ կամի Աստուած զընջումն քրիս-

առնէիր. և արդ կամիմ գալ առ քեզ. զի խորհեսցուք վասն այսորիկ։ Եւ խնամքն Աստուծոյ արկ 'ի սիրտ նորա, թէ նենգաւ-թեամբ կամի գալ առ քեզ զի սպանցէ զքեզ և բարձցէ զխալիփայութիւնդ, որպէս ե-բարձ զԱդլիպտոսին 'ի ձեռն Շիրաքաւայ. և վասն այսպիսի կարծեաց գրեաց առ նա խստագոյնս և սպառնացաւ, և ետ հրաման հանկարծակի նմա ընդ ամենայն երկիր շինել եկեղեցիս և վանորայս, և համարձակել զա-սուածն քրիստոնէութեան. զի Նորատինն ոչ տայր հրաման նորաշէն եկեղեցւոյ, և ոչ վա-նաց. և կոչեաց առ ինքն զՄլեհն (1) որ կամա-կից էր Նուրատինին, և սպան զնա։

Իսկ Նորատինն գնաց պաշարեաց զՄօսլ. և կային անդ եւթն որդիք եղբօր իւրոյ. և երդուաւ նոցա թէ ոչ կամի մեղանչել նոցա, թէ սիրով ընկալցին զնա 'ի քաղաքն. և բա-ցին նմա, և մտաւ 'ի քաղաքն և ել 'ի կլայն. և առ զամենայն գանձսն և եհան 'ի քաղա-քէն. և եդ անդ զծառայս իւր զի յանուն նորա պահեսցեն զքաղաքն. և զերկիրն բա-ժանեաց եղբօրորդւոցն. և զամենայն ա-մուրսն արար ընդ ձեռամբ, և գնաց։ Եւ սկսաւ ծանրացուցանել զհարկն քրիստոնէից,

(1) Մէ օրի. զՎաղիրն։

և եւս հրաման հարթել զհերս իւրեանց՝ հաւատացելոց. և Ջ հաւան ասէ կարմիր կա-կաստան ձգեցէ 'ի փակեղայնն յաջոյ յուսն, զի նշանաւորք լիցին ։

Իսկ Իմրի Թագաւորն Աշուտաղեմի չոգաւ 'ի Կոստանդնուպօլիս. և յոլով գանձիւք դարձաւ յԱշուտաղէմ ։ Եւ Իլիճ սուլան եկն 'ի Մելտենի և ոչ կարաց առնուլ զնա. և առեալ գերի անձինս երկոտասան հազար, դարձաւ ։

Իսկ Նորատինն առ ընդ իւր զԻսմայէլն Դանշմանեայ, և զՇահնշահ եղբայրն Իլիճայ. և այլ բազում ամիրայս, գնաց 'ի Կեսարիա. և Սուլտանն ոչ կամեցաւ ելանել ընդդէմ նոցա. և առաքեն առ նա և ասեն. տուր զկէս երկրիդ եղբօր քում. և կային առ նա որդիքն Շահնշահի եւթն. և առ 'ի նոցանէ զմիսն և ոսկան, և խորովեալ առաքեաց առ հայր նորա, և ասաց, եթէ ոչ երթաս այդի, դովլին օրինակաւ առնես զմնացորդդ ։ Եւ տեսեալ զայն լացին, և անկաւ ահ 'ի վերայ նոցա, և յարեան գնացին ։

Ի նոյն ամի 'ի խաչի ամսեան եկն ձիւն նոր, որ ոչ 'ի լեռս, և ոչ 'ի տեսանելոյ, կամ յիշմանէ ուանգից և 'ի դրաց կարէ գիտել զայ. քանզի չափեցին զԹանձրութիւն ձեանն

քսան և հինգ թիզ առ մեզ. և 'ի հնդիկս, որ բնաւ ոչ գայ, չորեքտասան(1) թիզ ձիւն եկն, և մեռան վայրի երէք, և թռչունք և սողունք, և պապկեցան ջուրք, և մեռան ձըկունք. և ընտանի անասունք նոյնպէս կոտորեցան 'ի չգոյէ կերակրոյ, և այրեցաւ ամենայն բոյս սերմանց. և 'ի գալ ամին եղեւ սով սաստիկ, մինչ զի իշխանքն Կապադովկիոյ ընդանեօք զՄըլիմ ամիրայն Սեւաստոյ Դանշմաննեայ, և յափշտակեցին զամբարս ցորենոյն, զի մի մեռանիցին. և գործ պղծութեանն ծածկեցաւ ամիսս երեք վասն ձմերանն: Եւ զկնի այնորիկ ուտան զեղեալսն, և դժուարացան ամենայն ազգն շուրջանակի. և ոմանք 'ի բնակչաց աշխարհին առաքեցին 'ի Դամասկոս առ Տանուն ամիրայն Կեսարիոյ. զոր փախուցեալ էր Սուլտանն ազգականօք խորովք. և կոչեցին զնա, և եկն էառ զիշխանութիւնն Սեբաստիոյ:

Յայնմ ժամանակի հիւանդացաւ Նորատինն. և յուսահատեցան 'ի նմանէ. և անկան ընդ միմեանս ամիրայքն և գործակալք երկրին: Իսկ նորա դարձեալ կանգնեալ 'ի հիւանդութենէն որպէս յարուցեալ 'ի մեռելոց անակնունելի. և անկաւ ահ նորա

(1) Մի օրի. երեքտասան:

կրկնակի 'ի վերայ երկրի։ Եւ Տանուտնն յուսա-ցաւ 'ի նա զի փրկեսցէ զնա 'ի Սուլտանէն։

Եւ զօրս հաւաքեալ Նորատինն եկն 'ի Սեբաստիայ, և հաստատեաց զՏանուտն, և սպառնացաւ Սուլտանին եթէ կռուիցի ընդ-նմա․ և դարձաւ և առ զՃեհեանի, և զՔե-սոն, և զՄարաշ․ և լուեալ Սուլտանն գնաց 'ի վերայ նորա․ և եկն ընդ առաջ նորա Նո-րատինն․ և նստան աստի և անտի Ջահան գե-տոյ և երկեան 'ի միմեանց։ Եւ անկաւ սով 'ի բանակն նոցա, և նեղեցան և ապա խօսեցան 'ի խաղաղութիւն։ Եւ եթող Սուլտանն զՏա-նուտնն կալ 'ի հնազանդութիւն Նուրատինին, և դարձան 'ի տեղիս իւրեանց։

Ասացից և յաղագս աղանդոյ միոյ որ երե-ւեցաւ յաւուրս մեր։ Նախ քան զվախճանն Ներսիսի կաթողիկոսի երեք ամբ եկեղեցա-կանք երկուքն վանաց երիցունք Յուսիկ և Պե-տրոս անուն․ և գեղջերեց մի Կարապետ անուն գնացին առ Տ․ Ներսէս, և անգոսնեցան 'ի նմանէ վասն անուղղայ համբաւոյ նոցա․ և ելին 'ի նմանէ ստրտմութեամբ, և չոգան յՈւռհայ․ և սկսան բամբասել զնա եթէ զաղանդն Սիմոնի կախարդի ունի․ զի առնէ արծաթով ձեռնադրութիւն․ և ինքեանք դաւանեցին զՔաղկեդոնին․ և դարձուցին

զկնի մոլորութեան իւրեանց չորս հարիւր ամն ՚ի քաղաքին . և քաղաքն կոչեցին զնոսա Յուսիկեանք նախատանօք :

Եւ կաթուղիկոսն գրեաց առ իշխան քաղաքին . զի հալածեսցէ զնոսա , և արար այնպէս : Եւ գնացին ՚ի Հալպայ առ Նորատենըն . և առին ՚ի նմանէ համարձակութիւն և դարձան ՚ի յՈւռհայ :

Եւ ես կոչեցի զնոսա առ իս մեղադրեցի և հաւանեցուցի դառնալ ՚ի կրօնս իւրեանց . և առաքեցի զնոսա իմ պատուաւոր արամբք առ կաթուղիկոսն . և մինչ գնացին նոքա կատարեալ էր հայրապետն ՚ի Քրիստոս : Եւ յԱստուածածնին ամսին յութն , յաւուրն հինգշաբաթւոջ . ՚ի թուին Հայոց վեց հարիւր քան , և Ասորւոց հազար հինգ հարիւր : Իսկ անօրէնն Յուսիկ գնաց Անտաք և վերստին մկրտեցաւ ՚ի Յունաց :

Իսկ Տեառն Ներսիսի կային երկու եղբօրորդիք եպիսկոպոսունք Գրիգոր և Գրիգորէս անուանք նոցա . աւագ եղբօրորդին Տ. Գրիգոր չէր մերձ ՚ի վախճանին . վասն որոյ զՏ. Գրիգորիսն քարոզեցին Կաթուղիկոս . բայց ոչ ձեռնադրեցին : Իսկ յետ աւուրց եկեալ տէր Գրիգոր . և իմացեալ զիրքն դարձաւ , և գնաց առ փեսայն իւր Մլեհն . և ու-

և ասանիք թէ հրեշտակ Աստուծոյ կայ առ քեզ և խօսի ընդ քեզ, և հաւատայր նոցա. և մինչ յայսպիսի միտս հպարտացեալ նստէր 'ի Դամասկոս, և յամենայն կողմանց գային առ նա զօրք որ ոչ էր թիւ, յանկարծակի եհար զնա Տէր և սպան. որ թագաւորեաց ամս քսան և հինգ. և ցրուեցան զօրքն յիւրաքանչիւր տեղի: Եւ առ զթագաւորութիւնն Մելիք Սալեհ որդի իւր:

Եւ թագաւորն Երուսաղեմի եկն 'ի վերայ Դամասկոսի և պերեաց զաշխարհն. և նստաւ 'ի վերայ քաղաքին. և խոստացան տալ նմա հարկս թէ գնասցէ 'ի նոցանէն. այլ նա ակն ունէր առնուլ զքաղաքն, բայց մեղքն քրիստոնէից ոչ ներեաց. զի կալաւ զնա ցաւ մահու. և առեալ ունկի 'ի Դամասկոսէ դարձաւ յԱքքայ. և մեռաւ անդ զկնի քառասուն աւուր մահուանն Նուրադնին, թագաւորեալ ամս տասն և երկու: Եւ եղեւ տրտմութիւն ամենայն քրիստոնէից մահ նորա. և որդի նորա Պաղտոյնն առ ըզթագաւորութիւնն ամաց հնգետասանից:

Իսկ յորժամ լուաւ Իլիճ ասլան զմահ Նորադինին, չոգաւ 'ի Սեբաստիա և առ զնոնամանայէս և զԿոմանայ և զԿեսարիան. և հանոյց զազգն Դանիշմանայ. որ տեւեաց

ամս հարիւր քսան երկու, և կացին իշխանք վեց զկնի միմեանց։

Իսկ Մեփեստին եղբայր Նորատնեին ել 'ի 'ի Մօսլայ, և առ զՄծբին և զՍաղա և ըզԽառան. և հնազանդեցաւ նմա եղբօրորդին իւր Մելիք Սալեհն. և ելոյծ զկանոնք եղբօրն որ գրեալ էր յամենայն Մզկիթ, նալաթ զգինին Թուրքաց և Տաճկաց. և ետ հրաման տաշել զգիրն, և ետ հրաման համարձակութեամբ ըմպել յամենայն տեղիս թէ եւ 'ի Մզկիթ կամիցէ ումեք։

Իսկ Յուսուփն որ նա ինքն է Սալահատինն, որ տէրն էր Եգիպտոսի իշխանացաւ 'ի վերայ ներքսագոյն Արաբիոյ և մասին ինչ 'ի Նուբեաց աշխարհէն։

Եւ 'ի սոյն ժամանակս զդղեակն զոր ունէին Հայք ընդ ձեռամբ ինքեանց յերկիրն Սասնոյ, նեղեալ 'ի Մուփարղնայ ամիրայէն տուին յամիրայն Խլաթայ 'ի Շահի արմէնն։

Յայնմ ժամանակի սպանին զՄլեհ իշխանն Կիւլիկեցւոց կամաւ իշխանացն. և զի որդին Թորոսի տղայն մեռեալ էր 'ի Հռոմկլայն ետուն զիշխանութիւնն յՌուբէն որդին Ստեփաննեայ ածեալ զնա 'ի Տարսոնէ. և նա եսպան զսպանողսն հօրեղբօր իւրոյ։ Զի ասացին թէ ոչ միայն սպանին, այլ և

ընկեցին զնա շանց. զոր լուեալ ոչ կարէր համբերել։

Յորում ժամանակի եւ Սալահատինն յԵ֊գիպտոսէ եւ առ զԴամասկոս. եւ չոգաւ ՚ի Հալապ. եւ դողաց ՚ի նմանէ Մելիք Սալեհն. եւ առաքեաց առ նա Սալահատինն եւ ասէ. ես ծառայ քո եմ եւ եկեալ եմ յօգնութիւն Տեառն իմոյ, կալ ընդդէմ թշնամեաց քոց. եւ ոչ հաւատաց նմա, եւ ոչ եբաց զքաղաքն. եւ նա դարձաւ ՚ի Հալպայ եւ առ զՀեմս եւ զՀամայ պատերազմաւ. եւ գնաց ՚ի Դա֊մասկոս. եւ եհան զՓռանգ գերիսն որ անդ, եւ վաճառէր դիւրագին. եւ արար խաղաղու֊թիւն ընդ Փռանգն. եւ եա ածել ոսկի բա֊զում յԵգիպտոսէ եւ կուտեաց զօր բազում։

Եւ Մեփետինն եկն ՚ի վերայ նորա խորա֊մանօք եւ նախատանօք. եւ ասէր զնա շուն կատաղի որ հաչէ ընդդէմ տեառն իւրոյ, եւ փութայր զգալն զի մի փախիցէ։

Եւ Սալահատինն բազում անգամ առա֊քեաց ընդ առաջ նորա, մի գալ եւ մի պա֊տերազմել. զի մի ազգ՝ մի հաւատոյ՝ եմք ասէ. եւ ոչ լուաւ նմա. այլ եկն եւ բախեաց ՚ի վե֊րայ նորա. եւ յաղթեաց եւ կոտորեաց եւ սկսաւ կոտորել զզօրս Մեփետինին. եւ փախեան յե֊րեսաց նորա եւ անկանէին բազումք առանց

ձեռքն ։ Եւ իբրեւ ետես Ալպհասլանն, ե-
թէ յաղթեցաւ Սեփեառինն, արգել զզօրսն
իւր 'ի կոտորելոյ և անց 'ի մէջ, և բարկու-
թեամբ դարձոյց և ասաց. բաւական է, զի
մի բարկասցի Աստուած. և զկենդանի ծա-
ռայսն հանգոյց և արձակեաց ազատս. և զզօ-
րականեալն թաղեաց. և իբրեւ լուան զայս,
երկեան 'ի նմանէ ամենայն Ալամանքն, և
ազգն Թուրքաց. եւս առաւել պահէր հաւա
Մելիք Սալէհն ։ Եւ եհան զՓռանգ գերիսն
և վաճառեաց սակաւ գնոց. զԿոմսն Տրա-
պօլսոյ ութսուն հազար դահեկանի. զՋօս-
լին որդին Ջօշլինին՝ յիսուն հազար դահե-
կանի. զԱնաղտ Երինձն՝ հարիւր քսան հա-
զար դահեկանի։ և խնդրեաց յԱնտիոքայ օգ-
նութիւնս ։

Իսկ Սեփեառինն դարձեալ արար ժողով.
և առ ընդ իւր զտէրն Սերանայ և զՀարան-
քեփայն. և եկն 'ի վերայ Ալպհասլանին վաթ-
սուն հազար հեծելով. և Ալպհասլանն ու-
նէր երկոտասան հազար. և առաքեաց Ալ-
պհասլանն առ Սեփեառինն և ասէ. մի գար
'ի վերայ իմ. և մի կռուիր ընդ իս. ով եմ
ես և զինչ մեղայ քեզ, ծառայ եմ քո, եթէ
յաղթիմ 'ի քէն ոչ է ինձ նախատինք. բայց
եթէ հարկանես զիս, և անիրաւիս յիս, և

յաղթիս յինէն, մեծ կորանք (1) է քեզ տեառ-նըդ պարտիլ 'ի ծառայէս. և ոչինչ եղեւ նըմա ունկնդիր. և ելեալ կացին առ ընթեր և պատրաստեցաւ Սալահատինն. և յարեան 'ի վերայ միմեանց. և վերստին պարտեցաւ Սեփետինն, և փախեաւ. և մատուցին նմա ուղտ, և նստաւ 'ի վերայ. և գնաց մազապուր և զերծաւ 'ի Մօսլ:

Եւ գնաց Սալահատինն և առ զՄնբէճն. եկին առ նա տեարքն Թլպաշարայ և Ընթապայ. և գնաց յԱզազն և կռուէր ընդ նմա. և յարեան 'ի վերայ նորա Հաշըշիք և խոցեցին զնա. բայց ոչ մեռաւ. այլ սպան զնոսա, և ինքն ողջացաւ փութով. և առաքեաց զօրըս յերկիրն Հաշշեացն և գերեաց զնոսա. և էառ զԱզազն. և գնաց նստաւ 'ի վերայ Հալպայ. և առաքեցին յԱնտաք աղաչանս գալ օգնել նոցա. և չոգաւ Ռէնալտն զոր վաճառեցին, և կոտորեաց մասն ինչ 'ի զօրացն Սալահատինին, և արար զնա փախստական. և գնաց յԵգիպտոս:

Ի վեց հարիւր քսան երկու թուին Հայոց մեռաւ Նաճըմտին տէրն Մերտնայ. և առ զիշխանութիւնն Խութբըտինն որդի նորա:

Եւ 'ի նոյն ամի վարազ մի եհար զԹա-

(1) Մի. օրի. կոտրանք: Մի օրի. կորեանք:

զաւուրն Յունաց և համբաւեցաւ թէ մեռաւ անգի : Իսկ Խլիճ ասլան ապստամբեաց յերկիրն Նորա և յառաջի եհար զբազում տեղիս : Բայց նա ողջացաւ 'ի խոցոյն և կալեալ առ նա երկու յորդւոց տանն Դանշմանայ առ նա փախուցեալք . և ժողովեաց զօրս և արար զնոսա զօրագլուխս . և առաքեաց դեսպանս առ Խլիճ ասլանն , և ասէ . դարձո զհայրենիսն որդւոց Դանշմանայ որ կան առ իս . և ինքն կարճագոյնս գնաց զկնի և անպատրաստ գտեալ զԹուրքն , յառաջարի կոտորեաց :

Իսկ Թուրքն որ կայր յՍւճն գնաց ընդ կողմն Հիւսիսոյ ծածկապէս , և դերեաց յերկրէն Յունաց հարիւր հազար անձինս կանայս և տղայս կոտորելով զարսն . և Թագաւորն խնդրէր զՍուլտանն . և վարէր զնա առաջի իւր . զի ոչ կամէր կռուիլ ընդ նմա Սուլտանն :

Եւ Թագաւորն առաքեաց զորդիսն Դանշմանայ յիսուն հազարաւ 'ի վերայ Նէօկեսարու , որք երթեալ նստան 'ի վերայ նոցա :

Իսկ Թուրքն խորամանկ որ իշխէր քաղաքին , գրեաց Թուղթ առ զօրսն յերեսաց քրիստոնէիցն որ անդ , եթէ Դանշմանիքդ զօրս եղեալ էք մեզ առաջնորդս , ահա մատ-

նել կամին զձեզ 'ի ձեռն Թուրքաց. որ գործեալ են դարան ձեզ, և սպասեն ժամանակի. և Թուղթն ընկեցին արտաքս։

Եւ տեսեալ զօրացն հաւատացին, և փախեան. և ելին զհետ նոցա զօրքն Թուրքաց պահապանք քաղաքին, և զբազումս կոտորեցին 'ի նոցանէ. և սպանին զքեռորդին Թագաւորին. և տրտմեցաւ յոյժ. և իջաւ մերձ 'ի Ելօնն, և նստաւ 'ի ձորակի միոջ 'ի մէջ երկուց բլրոց դժուարագունից. և ահա պատահեցան զնովաւ Թուրքմանքն Պուի յոլովութիւնք յոյժ. և պաշարեցին զնա անդ յաւուրս եւթն. և ընկենուին նմա գիր վիմաց աստի և անտի, և նետիւք խոցոտէին զնոսա 'ի տուէ և 'ի գիշերի. և սպանին 'ի նոցանէ մարդ և գրաստ բազում. և առին զառձիկս նոցա հինգ հարիւր (1) բեռինս. և երկեան յոյժ զօրքն Յունաց։ Եւ առաքեաց Թագաւորն առ Սուլտանն, և ետ զնա երեք քաղաքս, զոր նոքայն էին շինեալ. և աղաչեաց զնա զերծուցանել զնա 'ի նեղութենէն, և առնիցեն սէր ընդ միմեանս. և ուրախ եղեւ Սուլտանն և յղեաց առ նա, երեք ամիրայս հեծելօք, հանել զնոսա անտի և տանել 'ի Կոստանդնուպօլիս. որք եկեալ

(1) Երկու օր. հարիւր հազար։

Հալածեցին զԹուրքն, և յուղի անկեալ բա-
կաւն գնալ. և Թուրքմանն երթայր աստի
և անտի. և անարգէր զՍուլԹանն. զի Թա-
փեաց զնոսա ՚ի ձեռաց նորա զօրաւորացեալ
Թշնամին և զառեալ առձխլան անաշխատ.
և զայս առնէին և հետզհետէ բաժնէին և յա-
փշտակէին հանդերձս և ղէնս և երիվարս.
և սպանանէին պղատունս նետիւք և պարսա-
քարիւք: Իսկ Յոյնքն մեղադիր լինէին ամի-
րային, Թէ դուք տայք ծախել զմեզ. իսկ
նորա երդնուին Թէ ոչ, այլ նոքա խել ան-
հնազանդք են և վայրենաբարոյք և սպա-
նողք, և ոչ ոք կարէ զնոսա արգելուլ ՚ի
վնասէ. և այնպէս առնէին մինչև հանին
զնոսա յերկրէն իւրեանց. և անկան զճա-
նապարհայն ՚ի Յունաց քան հազար ան-
ձինք. և գնաց Մանիլն լի ամօԹով (պարտկա-
ռեալ) և պակասեալ ՚ի քաղաքն իւր, այն՝ որ
խոստացեալ յաղԹել երեւելի պատերազմա-
շխարհի, և խմանալ կռուով ուղղափա-
ռայն եկեղեցւոյ, այսպէս անաշխատակ պատ-
յերկոսին պատերազմն: Իսկ յետ այնորիկ
առաքեաց Սուլտանին բազում գանձս, և
գնեաց զգերիսն որ մնացեալ էին կենդանիս:

Զայսու ժամանակօք քրիստոնեայքն որ ՚ի
Մելտենի՝ կային ՚ի մեծ նեղուԹիւն յամի-

բայէն իւրեանց որ կայր անառակութեամբ, և 'ի սղութենէ հացի ։ Եւ քարոզեաց նոցա եկեղեցին և ասաց. եղբարք թշուառութիւնըս այս վասն մեղաց է. քանզի կատարեալ տեսանեմք առ մեզ զբամբասանս Եսայեայ, զորոյ ամբաստան լինի մարգարէն և ասէ. «խառնեցան ընդ հեթանոսս և ուսան զըգործս նոցա. ծառայեցին սովորութեանց նոցա և եղև. նոցա գործք իւրեանց 'ի գայթակղութիւն ». և արդ ահա սպառեցաք, ընչեցաք և խոպառ նուաղեցաք և լքեալք եմք 'ի Տեառնէ. և այժմ եկայք դարձցուք իւրաքանչիւր ոք 'ի ճանապարհաց մերոց չարաց, և աղաչեսցուք զերկնաւոր ողորմութեանն Աստուծոյ և հայեսցի առ մեզ ողորմութեամբըն իւրով բնականաւ. և նովաւ կեցցուք և մի մեռցուք ։ Եւ լուան ժողովուրդն զպատուէր եկեղեցւոյն. և դարձան առ Տէր պահօք և պաղատանօք և արտասուօք և հսկմամբք գիշերականօք ։

Եւ ցածեաւ Տէր 'ի բարկութենէ իւրմէ, և արկ 'ի սիրտ ամիրային և ցաւեցոյց զմիտս նորա խղճիւ վասն գործոց իւրոց, և ետ զքաղաքն 'ի Սուլտանն և ինքն գնաց 'ի Խարբերդ. և դիւրացաւ քաղաքն և առատացաւ հացն, և թեթևացաւ հարկատու-

թիւնն (1), և փառաւորեցաւ Աստուած շնորհակալութեամբ, և քաղցրացաւ ճաշակ ապաշխարութեանն երեւեալ արդեամբք. զի առն պազանեցելոյ և խակամտի զղջմանալ եւ և թողուլ զհայրենիս իւր և գնալ. և միայն նա էր մնացեալ 'ի տանէն Գանձմանայ:

Ի վեց հարիւր քսան և ինն թուին Հայոց եւ Սալահատին Եգիպտոսէ երեսուն երեք հազար սպառազինեալ հեծելովք 'ի սոսկականացն և հետեւակացն (2). յիսուն երկու հազար գրաստս զինաբարձս առաջի իւր. և եկեալ 'ի Պաղեստին կալաւ Փռանգ մի, և արեամբ նորա լուացաւ աղօթից (3) և աղօթեաց, և յայնմհետէ կազմեցաւ պատերազմի և աւերման աշխարհին:

Իսկ թագաւորն Երուսաղեմի Պաղտոյնն յորժամ լուաւ զայս հաւաքեաց զզօրս իւր առ ինքն. և տեհա սակաւուք էին յոյժ առ բազմութեամբ անօրինացն. և անկաւ թագաւորն 'ի վերայ երեսաց իւրոց հանդէպ արեւելից առաջի զօրաց իւրոց. աղաչէր և նոքա նոյնպէս. և աղաղակեցին առ Տէր սրտի միօք և լալին, և յարուցեալ կանգնեցան և

(1) Մի օրի. հակառակութիւն:

(2) Հին օրի. բաց 'ի սոսկականացն և 'ի հետեւակացն:

(3) Թէրեւս լուացաւ 'ի ձեռն աղօթից և աղօթեաց:

ուխտեցին առաջի Աստուծոյ ոչ դարձուցանել զԹիկունս 'ի Թշնամեացն. այլ յօժարուԹեամբ մեռանել 'ի վերայ սուրբ եկեղեցւոյ: Եւ ապա կազմեցան սպառազինեցան մի հաւատով. և գնային ընդ առաջ նոցա. Իբրեւ երեւեցաւ գունդ այլազգեացն, և էին բազումք, և եղեւ ելս ամենեքին զմիմեամբք, դարձեալ իջին յերիվարացն և 'ի ծունր խոնարհեալ արտասուեցին. և լցին զքերանս իւրեանց ահաւոր անուամբն Քրիստոսի, Աստուած զնա կարդալով և իշխան մահու և կենաց. և վառեցան 'ի սէր նորա և նստան յերիվարս իւրեանց և խոյացեալ իբրեւ զարծուիս յերամակս նապաստակաց հարին իւրաքանչիւր զնիզակ իւր 'ի լանջս Թշնամեացն չեչաւակի, և ձգեցին զնոսա:

Եւ Քրիստոս Աստուած օրհնեալ Թագաւորն մեր եհան հողմ ուժգին ընդդէմ նոցա՝ որ ընկենոյր զնոսա 'ի ձիոցն առանց ձեռին, նիզակի. և նոքա կոտորէին զնոսա և ոչ զոք ապրեցուցանէին. և ցրուեցան փախստականն ընդ կողմն հարաւոյ առ անապատովն. բայց սուրն ոչ դարձաւ 'ի նոցանէ մինչեւ 'ի մուտս արեգականն. և 'ի վաղիւն սկսան դարձեալ 'ի մնացեալսն և մինչեւ յեւԹըն օրն գտանէին 'ի նոցանէ լքեալս 'ի տա-

վոյ և սպանանէին. և առին զամենայն ծանրութիւն ու ոճկացն նոցա, և զառատախանայս նոցա կոչեցեալն ընետան և զաղեղունս և ըզնիզակս և զվրանս նոցա և զամենայն պատրաստութիւնս սպառուցն, և լցան և փարթամացան. և ուրախ արար Տէր զյուսացեալս իւր. և ցնծաց սուրբ եկեղեցի ՚ի համբաւս յայս աւետեաց. և տային օրհնութիւն Աստուծոյ որ եբեկ զմէջս անօրինայն, և թափեաց զխրատս նոցա պղնձացեալս ՚ի սնոտի յոյսն իւրեանց։

Իսկ Սալահատինն նորապարտ և նախամօթ անկաւ ՚ի Սոր յուժ սակաւուք. և զգեցաւ սեաւ և արգելաւ ՚ի սենեակ, և տանջեաց զինքն խաւարաւ զբազում աւուրս։ Եւ վասն այսր յաղթութեան ամիրայն որ կայր ՚ի Հերիմն, դարձաւ ՚ի Թուրքաց և եղեւ ընդ Նոտաքու հնազանդութեամբ. և երդուաւ նմա Իրինձն Թողուլ զքերդըն առ նմա. և յետոյ ստեաց երդմանն, էառ ընդ ինքեան զՍոբէն զիշխանն Կիւլիկեցւոց, և գնաց առնուլ զՀերիմն. և ոչ մատնեաց զնա Տէր ՚ի ձեռս նոցա, քանզի ստեաց Իրինձն երդմանն։ Եւ դարձաւ ՚ի Հալպայ հնազանդութիւնն ամիրայն որ անդ։

Ի թուին Հայոց վեց հարիւր երեսուն

գնաց Թագաւորն Երուսաղեմի 'ի Յորդանան, և նստաւ 'ի տեղւոջն՝ որ կոչի անց Յակոբայ․ զոր առեն հուն Յակոբայ փղշտացիքն, և սկսաւ շինել անդ քաղաք առնուլ նովաւ զԴամասկոս․ և յաջողեցաւ զաւաջինն գործն, և շինէին և գային բնակէին անդ քրիստոնեայք ։

Իսկ լուաւ Սալահատինն, և երկեաւ վասըն Դամասկոսի, և ժողովեալ վերստին զօրս չոգաւ եկն եմուտ 'ի քաղաքն․ և զի ամիրայն Բալբաքու, որ կոչի Արեգական քաղաք որ առ Իլուպօլիս ապաստան լեալ յանձին զօրութիւն, ոչ հնազանդէր Սալահատինին, չոգաւ 'ի վերայ նորա․ և սիրով և խոստմամբ առ զնա և զօրացաւ․ և վստահացեալ յանձըն, գնաց 'ի վերայ նոր քաղաքին, զոր շինեալ էին Փռանգքն․ և յարեան ընդդէմ նորա զօրքն միաբանեալ Փռանգացն․ և յաղթահարեալքն հարին զնոսա և կոտորեցին որպէս յերէկն և յեռանդն․ և փախեաւ Սալահատինն, և անկաւ 'ի Դամասկոս․ և Փռանգքն առեալ աւար բազում և գերի 'ի նոցանէն և յերկրէն, դարձան 'ի քաղաքն զոր շինէին․ և դարձեալ միւսանգամ ասպատակեցին 'ի Դամասկոս, և առին սակաւ ինչ կարասի և գերի և կամէին գնալ․ և պնդեալ զինքն Սա-

լահատինն, եւ զհետ նոցա. և կալաւ 'ի նո-ցանէ հարիւր Փրեր. եւ քաղցրացաւ. 'ի Ճաշակս (1) իւր զոր ետ 'նմա չարութիւնն մեր և մոռացութիւն պատուիրանին Աս-տուծոյ. և ժողովեալ զԱրաբն անապատին չոգաւ 'ի վերայ Նորաշէն քաղաքին. և ոչ ե-գիտ անդ զԹագաւորն Երուսաղեմի. այլ միայն հինգ հարիւր Փրերս, և պաշարեաց զքաղաքն և յաղթահարեաց զնա. և ընկէց հուր 'ի շինուածս նորա, և բորբոքեցաւ, և վառեցաւ բոլոր շինուածն նորակազմ։ Եւ յորժամ տեսին Փրերքն թէ վանեցան, և ակարացան ոմանք 'ի նոցանէ, արկին զան-ձինս 'ի հուրն և կէսք 'ի գետն, զի մի անկ-ցին 'ի ձեռս նոցա։ Եւ զայլ բնակիչսն կոտո-րեցին, և գնացին 'ի Դամասկոս։

Ի վեց հարիւր երեսուն (2) թուին մե-ռաւ Մանիլն Թագաւորն Յունաց զկնի ե-րեսուն և եւթն ամի արքայութեանն իւրոյ. և թագաւորեաց որդի նորա Աղէքս տղայ երկոտասանամեայ. և իշխանք երկոտասան կարգաւորէին զԹագաւորութիւնն։ Իսկ մայր նորա եղեւ հաւատաւոր, բայց ընդ-ձեռամբ ունէր զտունն պանձուցն. և սը-

(1) Երկու օրի. 'ի Ճաշու իւր.

(2) Մի օրի. 'ի վեց հարիւր երեսուն և մէկ։

տեսալ Ստառուծոյ անկեալ ՚ի պառնկութիւն,
և ոչ պահեաց զհաւատ պարկեշտութեանն.
և յորժամ յայտնեցան իրքն խորհեցան ըս-
պանանել զնա օրէնք Թագաւորութեանն և
դնել զդուստր Սանկլին որ էր յայլմէ կնոջէ.
և իմացաւ կինն և որդին իւր Ալէքսն. և
հրամայեցին ըմբռնել զմետաղաւն իշխանն.
և փախեան յեկեղեցին, և չտան դահիճքն
առնուլ զնոսա, և սպանանել. և կալաւ ամ-
բոխ քաղաքին զդուռն եկեղեցւոյն զաւուրս
եւթն, և ապա չոգաւ պատրիարգն և ա-
ղաչեաց զԹագաւորն և զմայրն. և առ ՚ի
նոցանէ երդումն. և եհան զիշխանսն յե-
կեղեցւոյն, և տարաւ յարքունիսն: Եւ ս-
տեցին երդմանն. ատելքն Տէառն ոչ սպա-
նին զնոսա բայց հանին զաչս նոցա վատթար
.քան զսպանութիւնն:

Իսկ տէրն Բէսնոյ և Հասնքեփոյ որում
անուն էր Նորըդին փեսայ էր Սուլտանին. և
ատեաց զկին իւր և արար իւր օգնական ըզ-
Սալահատինն. զի կռուեցին ընդ աներն
իւր. և լուաւ նմա Սալահատինն, և չոգան
՚ի վերայ Սուլտանին: Բայց եկն ընդ առաջ
նոցա Հասան ամիրայն. և իմաստուն բա-
նիւք դարձոյց զնոսա. և խաղաղութիւն ե-
ղեւ ՚ի մէջ նոցա:

Եւ ամիրայն Ուռհայոյ և Խառանայ ապստամբեալ ՚ի Մօսլացւոյն գնաց առ Խալահատին։

Բայց պատրիարքն Թէոդորոս(1) որ առեալ էր յերաշխի զիշխանն, որոց խաւարեցան աչքն, ել ՚ի քաղաքէն և գնաց. եւ թ՛ն ամիս պատուարագ ոչ մատեաւ ՚ի Կոստանդնուպօլիս, և մեռեալ ոչ ծաղեցաւ. զի անմտութեամբ անէծ զանպարտսն, և ոչ զծագաւորն և զպոռնիկ մայրն իւր զերդմնազանցսն։

Եւ Սալահատինն չոգաւ ՚ի վերայ Ամթայ և առ զնա և ետ ՚ի Նորըդինն. զի խոստացեալ էր նմա(2)։

Եւ Սեփետինն դարձեալ զօրս ժողովեալ եկն ՚ի վերայ Սալահատինին, և ոչ իշխեաց պատերազմել ընդ նմա։

Ի Թուին Հայոց վեց հարիւր երեսուն երեք մեռաւ Սեփետինն և Մելիք Սալէհն. և առ զիշխանութիւնն Ազատինն միւս եղբայր Սեփետնին(3)։

(1) Երկու օրի. Թէոդոս։

(2) Այս պարբերութիւն գտանի ՚ի միում՝ օրինակի և եթ։

(3) Հնագոյն օրի. ՚ի Թուին Ասորւոց հազար չորս հարիւր իննսուն երեք, և վեց հարիւր քսան, մեռաւ Մելիք Սալէհն որդին Հալպայ մեռաւ. և Սեփատինին որդին Մօսլա. և առաւ Հալպ և Մօսլագին Սեփատինին. և Ազատինն ետ զՀալպ եղբօր իւրում և էառ ՚ի նմանէ զՍնձարն։

Ի Թուին Հայոց վեց հարիւր երեսուն և. չորս անօրէննն Մ՛զրմնիկոս սպանողն պարոն Սանփաննեայ, որ փախեաւ յՄ՛քքայ և առ ընկէց(1) զՀարազատն իւր, և շրջեցաւ շարութեամբ 'ի տեղիս տեղիս, այժմ եկն և եմուտ խաբէութեամբ 'ի Կոստանդնուպօլիս որպէս թէ ցաւակցաբար եկեալ է 'ի խնամակալութիւն տղայ թագաւորին. և աւուրս ինչ ընտանեցեալ տան թագաւորին, ապա յայտնեաց զչարութիւնս իւր՝ խեղդեաց զՄ՛լէքսն և զմայրն նորա 'ի ծովն. և ինքն նստաւ յաթոռն և սպան հազար այր յիշխանաց տանըն Յունաց. և չորեքտասան հազար գիւղ եւ վանորայք աւերեաց յիշխանութենէն Յունաց. եւ առ զկին Մ՛լէքսին իւր 'ի կընութիւն չարաձերն այն որդին Մ՛ելլիարայ. և հալածեաց զՓռանգն. զորս եգիտ 'ի քաղաքին և 'ի գաւառսն. և կամեցաւ սպանանել զՓիլիպ իշխանն որ էր յազգէ թագաւորութեանն. և առաքեաց կոչեաց զնա, և ոչ կամեցաւ գնալ. զի գիտէր զկամս նորա. և սպառնացաւ կոչնականին եթէ ոչ ածցէ զնա բռնութեամբ, փոխանակ նորա ինքն մեռցի:

Միւս այլ օրի. Միաւան Սէյ- [illegible] Սէյֆատինն. Բէրեա [illegible] և Մելիք Սալէհն. Սէյֆատինին.
և կառ. զիշխանութիւն միւս [illegible]

(1) Մի օրի. [illegible]

և յորժամ չոգաւ Նուիրակն ածել զնա, 'ի Հարկէ եհան Փիլիպն զսուրն և եհար զնա. և ինքն գնայր յեկեղեցին, և սուրն արիւնոտ 'ի ձեռին իւրում. և ասէ լուարուք ազգք և հասարակք ամենայն, զի Անդրոնիկոս ջնջել կամի զբոլոր ազգս Յունաց. և շարժեցաւ քաղաքն ամենայն. և հաւաքեցան յեկեղեցին. զի ոմն էր որ ոչ էր սրտառեալ 'ի պղծոյ անտի. և ասացին իշխանք Թագաւորութեանն որ մնացեալ էին ցպատրիարգն. օծ փաղփաղակի զՓիլիպն Թագաւոր 'ի վերայ մեր, և արար այնպէս. և լուաւ Անդրոնիկոս և մըտեալ 'ի նաւ փախեաւ. և եկին զհետ նորա և հասին նմա, և դարձուցին. և 'ի բերերն կտրատէին զնա պատառս պատառս և ընկենուին 'ի ծովն (1). և զմնացեալն բերեալ 'ի քաղաքն այրեցին զնա հրով:

Իսկ Սալահատինն տիրեցեալ Միջագետաց չոգաւ ամենայն ամիրայօքն, և նստաւ 'ի վերայ Բարաքոյ և Շաւպաքոյ. և եկեալ Փռանգացն մարտեան ընդ նոսա և յաղթեցին օգնութեամբն Աստուծոյ և հալածեցին 'ի բաց. և ամրացուցին զքաղաքսն և զբերդսն ծովեզերեայս:

Բայց եղեւ պատահար ինչ 'ի վերայ Թա-

(1) Մի օրի. տայրն 'ի ծովն.

գաւորին Երուսաղէմի, և անկաւ յախտ դադութեան և բժիշկք ոչ կարացին օգնել նմա. և կացոյց զքոյր որդին իւր թագաւոր, որ էր անուամբն իւրով, յոյժ տղայ:

Իսկ Սալահատինն չոգաւ էառ զԱ՛ծքին. և գնաց ՚ի վերայ Ս՛օլայ. և ոչ կարաց առնուլ. բայց յաւաւել նեղութենէ պաշարմանցն խոստացան նմա հնազանդութիւն, տալ զօրս նմա ՚ի ծառայութիւն. և առեալ ՚ի նոցանէ երդումն գնաց ՚ի Ս՛ուփարղինն և առ զնա դարձաւ ՚ի Դամասկոս: Եւ ՚ի նոյն ամի մեռան՝ Նորըտինն, և Խուդբդինն տեարքն Ա՛մթայ և Մ՛երտնայ. որք էին ազգականք միմեանց յԱ՛րթուխեայ անտի, աւերիչք եկեղեցւոյ և ատեցողք քրիստոնէից, և թշնամիք ճշմարտութեան: Եւ յետ նոցա էառ զՄ՛երտինն Հուսամադինն որդի Խուդբդնին. և Էմըդինն տէրն Բ՛ալուայ էառ զԽարբերդ. և ՚ի նոյն ամի մեռաւ Ա՛միր Ս՛կիրանն տէրն Խլաթայ Շահի արմէնն: Եւ առ զտեղի նորա Բ՛ակդեմուր ծառայն իւր: Եւ՝ ՚ի սոյն ժամանակս Ռ՛ոբինծն Ն՛ստաքայ արար գործ սիրոյ ընդ Սալահատինն և որսացաւ զՍ՛ոբէն տէր Կիւլիկիոյ կալաւ զնա. և եդ ՚ի բանտի, և եմուտ յերկիրն նորա. և յամեաց անդ զեղանակս ամրան, և ոչ կա-

րաց մնասել երկրին զի Լեւոն եղբայրն Մու-քենայ իմաստնապէս կառուէր ընդդէմ նորա և խնամարկէր աշխարհին 'ի շնութիւն և 'ի դիւրութիւն. և ել ամօթով յերկրէն Բրինձն։

Բայց վասն սիրոյ եղբօրն Լևոն ետ զԱյոա-նա և զԹիլն և եհան զՄոբէն 'ի բանտէն. որ և յետ այնորիկ առին զկուրեանցն որպէս և էրն։

Ի վեց հարիւր երեսուն և վեց Թուին պատերազմեցան ընդ միմեանց Մադացիքն որք են Մարք. և Թուրքն որք են Թուրգա-մեանք, և յերկարեաց մարտն զամս ութ. և այս էր պատճառն։ Ազգք Թուրքաց որ բա-ցօթեայ շրջին խորանօք շատացեալք ընդ-դէմ խորշակի և ցրտոյ, զձմեռնային եղանա-կըն երթային 'ի կողմն հարաւոյ սակս կակ-ղութեան օդոյն և ցամաքութեան երկրին. և զամառնայինն երթային առ հիւսիսիւ յա-ղագս առատութեան ջրոյ և զովութեան խորշակ օդոյն. և յերթեւեկութիւնս յայս կցորդ լինէին Մարք որք անկեալ յարքա-յութենէն իւրեանց պանդխտանան ուր և դիպի. և զաղքատութիւն իւրեանց դար-մանեն ծածկապէս շորթելով զայլոցն։ Ըստ որում առաւել քան զայլոց, մեղանչէին Թուրքաց, գողութեամբ շորթելով զանա-սունս նոցա։

Եւ յասացեալ Թուիս գտան երկերիւր Քուրդ. դարանեալ յերկիրն Ճապղթանայ յանցս Թուրքին սպասելով 'ի գողանալ զնոցայսն. և կալեալ զնոսա սպանին. և վասն այսորիկ ժողովեցաւ Քուրդն տասն հազար, և Թուրքքն կրկին քան զնոսա, և կռուեցան 'ի Ճապղթան, և վանեցաւ Քուրդն և խայտակոտորեցան 'ի Թուրքէն։

Եւ լուան զայս ազգն Մարաց որ բնակեալ էին 'ի լերինս Ղզերոյ, և յերկիրն Տիւրեւանդայ. և ձայն տուեալ միմեանց ժողովեցան երեսուն հազարք ելին 'ի Մծբին և գրգռեցին զԹուրքն. և նոցա նոյնպէս հաւաքեալ բազմաձեռնութեամբ գնացեալ ընդդէմ նոցա կռուեցան 'ի մէջ Տարայոյ (1) և 'ի մէջ Մծբնայ (2) և զօրացաւ Թուրքն և պարտեցաւ Քուրդն լքրեւ զառաջինն. և խայտա կորեան քանզի սատակեցին զերեսուն հազար արան։ Եւ փութացան 'ի բանակետղս նոցա և: 'ի բնակութիւնս. և առին զկանայս և զտղայս և զկարասիս նոցա, և դարձան 'ի հանգրուանս իւրեանց. եւ հատաւ ազգն Քրդաց 'ի մեծէ մինչեւ 'ի փոքունս յերկրէն Միջագետաց. մինչեւ անցին ամք ոչ սակաւք և մնացօնքն եղեն ի-

(1) Մի օրի. 'ի միջատարայոյ.   (2) Երկու օրի. Բծբինի.

րացն. քանզի մնացեալքն 'ի նոցանէ յայժ ամկայք գնացին մօտն յերկիրն Կիւլիկեցւոց խնդրելով 'ի նոցանէ օգնութիւն: Նոյն զկնի պատերազմին անցելոյ գտին 'ի տունս քրիստոնէից թաքուցեալ 'ի Վրդացն վասն խղճալոյ նոցա. զայրացան Թուրքքն 'ի վերայ հաւատացելոցն և առին զԼրայ Թիլն և ըղԹլպմնէ(1), և սկսան կոտորել և վաճառել զքրիստոնեայսն, և աղաղակեցին առ աւագսն և շարժեցան 'ի բարկութիւն ընդդէմ շրջակայ Թուրքմանին, և առին տուգանս և իւրաքանչիւր ոք յամիրայիցն այնուհետև խնամարկէին ընդ ձեռամբ անկեալ քրիստոնեայս:

---

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Յաղագս Սալահատնին և մահուն Լեւոնի:

Ի վեց հարիւր երեսուն և ութ թուին Հայոց զօրացաւ Սալահատինն 'ի յաճախութենէ մեղաց մերոց և ժողովեաց զամենայն հնազանդեալսն իւր, զԵգիպտացիս և զներքին Լիբէացիս, և զՊոսյիա զԹուրացիս և

(1) Երկու օրի. Թլմնէ.

զՄիջագետս , և եղեւ բանակ մեծ և ահա-գին . և արար պատրաստութիւն զինուց և մեքենայից որոց ոչ էր թիւ . և խաղաց գը-նաց ամենայն բազմութեամբ Եգէոնին իւ-րոյ 'ի վերայ Թագաւորին Երուսաղեմի , առ-նուլ զ.քէն վրիժուց կորանաց իւրոց զորս կը-րեաց 'ի նոցանէ յառաջինն յելանելն իւրում յԵգիպտոսէ երեսուն երկու հազար սպա-ռազինօքն՝ զորս կորոյս և սպառեցաւ . եւ դարձեալ 'ի սրտի իւրում զխոյս սրամտու-թեան մինչեւ եկից օր թափելոյ զնոսա : Եւ զօրն որում ցանկայր նա , եկն եբեր բա-պանօղն մեր հին չարութիւնն զոր սերմա-նեաց որոմնացան մշակն :

Որդ՝ գնաց երկրորդն Յերոբովամ(1) սա-տանն Սողոմոնին մերոյ Սալահատինն և ե-հար զբանակն իւր մօտ 'ի Տաբարիա(2) . և գնաց Թագաւորն Երուսաղեմի 'ի վերայ նո-րա . և յիշատակեցան մեղքն .քրիստոնէից ա-ռաջի Տեառն . և .քննեցան 'ի.քանոնս արդար իրաւանցն Աստուծոյ և կշռեցաւ 'ի կշիռս(3), և գտաւ պակասեալ . .քանզի կամին(4) Տեա-պօլեաց եղեւալ յառաջնայոյն բանս ընդ ա-

(1) Երկու օրի. Որոբովամ. կախուս :
(2) Տիբերիա :
(3) Մի օրի. կառուեցան 'ի կշռին :
(4) Մի օրի. Տուրաուղ

տուր և կամեցայ երԹալ համդերձ նոքօք. և ետուն զքաղաքն 'ի ձեռս նորա. և առեալ զԹագաւորն Երուսաղեմի գնացին 'ի Տիւրոս որ է Սուր անառիկ քաղաք եԹէ ուէր պահեցէ. և Թէ ոչ՝ 'ի նանիր տքնիլն չինոյքն և ընդունայն զգուշանան պահապանքն ։

Եւ Սալահատինն մնեալ յաղԹուԹեամբըն իբրև զկողոպուտ եւ խնդուԹեամբ 'ի սուրբն Երուսաղէմ, և աւուրս ինչ պաշարեաց զնա. և զի ոչ գոյր նոցա ուստեք ակնկալուԹիւն, կամեցան տալ զքաղաքն և մատնել զանձինս անյագ սրոյն հեԹանոսաց ։

Բայց նա անդանօր եցոյց զանձն մեծախորհուրդ, և կարեաց նոցա գինս տասն դահեկանս ըստ գլուխս տալ և գնալ 'ի խաղաղուԹիւն, և արարին այնպէս. և ելանէին կականեալք յարտասուայն իբրև զգառինս 'ի մօրէ զատչէին բառաչելով յաստուածաընկալ քաղաքէն՝ շարժելով յարտասուս մինչև սրտից անդամ. որ մնացին 'ի տեղին էին քսան հազար արք և կանայք. և ազատեաց 'ի նոցանէ չորս հազար (1) անձինս ծերս և պառաւունս. և եւԹն հազար տղայս արու և էգ բաշխեաց զօրաց իւրոց. և հինգ հազար երիտասարդս առաքեաց Եգիպտոս

(1) Մի օրի. երեք հազար.

յաղթագործութիւն 'ի շինութիւն պարսպա-
պաց և ապարանից. ազատածին որդիքն Սի-
ոնի դարձան 'ի գործս հնոյն Իսրայելի 'ի
մերոյն Փարաւոնէ. զոր ես մեզ չարչարիչ
անմարմինն Փարաւոն. և հինգ հազարս ե-
թող անդ էն Երուսաղէմ շինել զպարիսպն
յամրութիւն, խուռն անձինն սեպհակա-
նեալ զնա: Իսկ զտաճարն լուսային արեամբ
քրիստոնէիցն զոր անդէն սպանին. և դար-
ձեալ լուսային ջրով, և ապա վարդի ջրով. և
աղօթեցին 'ի նմա և ստացան ինքեանց. և
ես Սալահատինն գիր սահմանի, զի մի մըտ-
ցէ 'ի նա քրիստոնեայ. և որ մտանէ, մահա-
պարտական լինիցի կամ հաւատոյն. և զտա-
ճար սուրբ Յարութեանն արար ընդ հար-
կաւ զի որք գան 'ի նմա աղօթականք, տա-
ցեն դահեկան մի կարմիր ըստ գլխոյ մարդոյ:
Եւ յետ այնորիկ գնաց Սալահատինն 'ի վե-
րայ Տիւրոսի ամենայն պատրաստութեամբ.
և քանզի եկեալ էր անդ կոմս մի՝ և մտեալ
'ի քաղաքն նախ քան զպաշարելն զնա, այր
քաջ և հանճարաշատ, 'ի ձեռն նորա ապրե-
ցոյց տէր զՍուր 'ի պաշարմանէն, և ոչ ինչ
կարաց նմա մեղանչել: Եւ ել անտի Սալա-
հատինն և գնաց 'ի Սիդոն, և առ զնա դիւ-
րաւ: Եւ գնաց անտի և մարտեաւ ընդ

Գերութ, և ընդ Ճեպելն և ընդ Սփնին (1). և զկնի սակաւուց մատնեցան 'ի ձեռս նորա. և տիրեաց 'ի վերայ նոցա ։

Իսկ 'ի թուին վեց հարիւր քառասուն՝ գնաց Սալահատինն 'ի Բարաք և 'ի Շօպաք. և նստաւ 'ի վերայ նոցա. և շատ աշխատեալ զզօրս իւր յաղթահարեաց զնոսա, և առեալ կոտորեաց զնոսա և գերեաց և յաւարի եհար. և գտաւ 'ի Բարաք (2) այր մի լցեալ արծաթով որ հալ մի էր պակաս առ 'ի զտել և սրբել զնա ամենեւին. և ոչ կարացին առնուլ 'ի պէտս. և ոչ գտաւ արուեստաւոր որ կարէր իմանալ ինչ 'ի նմա. և թողին զնա նոյնպէս և գնացին ։

Զկնի այնորիկ գնաց Սալահատին յերկիրըն Մեհմնին և պաշարեաց զՄատիկն, և առ զնա. և մարտուցեալ ընդ Ճեպելէ քակեաց զնա. և թողեալ զնոսա չոգաւ 'ի Պալըաս և հնազանդեաց զնա. և 'ի վեր մատուցեալ կռուեցաւ ընդ պարսպակն (3), և փլոյց զնա ։

Ապա դարձաւ 'ի Դամասկոս. և զոհեաց Սուռկանին իւրոյ. և արար խնդութիւն տանըն Մուսլիմանաց, և խնդացոյց զզօրս իւր

(1) Մի օրի. Տփնին ։

(2) Մի օրի. և գտաւ 'ի քարայր մի լցեալ ։

(3) Մի օրի. դարպասակն ։ Մի օրի. Պարսպակն ։

պարգեւօք և առատ ընծիւք. և արար սուգ սիրելեացն Քրիստոսի։

Յաւուրսն յայնոսիկ Հայոց զօրագլուխըն Խըլիճ ասլանայ դառնացոյց զնա ընդդէմ որդւոյն իւրում, և ատէր զնա. իսկ նորա զբազումն յանկուցեալ յինքն՝ արար մեծ հանդէս զօրաց պատերազմել ընդ հօրն. հաւաքեցաւ (1) և հայրն նոյնպէս ընդդէմ որդւոյն։ Իսկ նախ քան զդիպելն նոցա Մահրամ շահն տէրն Երզնկային, որ էր փեսայ նոցա անկեալ ՚ի մէջ նոցա՝ նուաճեաց ՚ի խաղաղութիւն սիրոյ. և հաշտեցան։ Բանզի ամաչեցին ՚ի ծերութենէ Սուլտանին զօրքն որ ընդ որդւոյն միաբանեալ էին, և առ ժամայն խաղաղութիւն խօսեցաւ ընդ ամենեսեան Սուլտանն։ Բայց զկնի այնորիկ սպան ապստամբացն չորս հազար անձինս. և զՀայոց զօրագլուխն սպանին հրամանաւ որդւոյն. և մի յորդւոցն Սուլտանին որում անուն էր Նգըդին Խոսրով շահ (2) էառ զՍեբաստենի ՚ի ժառանգութիւն իւր։

Ի վեց հարիւր քառասուն և մի թուին Հայոց շարժեցաւ տունն Փռանգաց խանիճաղանչ բազմութիւն առանց թագաւորի. սակայն բորբոքեալ սրտիւ յաղէտս քը-

(1) Մի օրի. հաւաքեցան։ (2) Մի օրի. խանհոր շահ։

րիստոնէից և 'ի սէրն Երուսաղեմի յօժարութեամբ դիմեալք եկին ընդ ծով. և ելին միայն (1) Աքքայոյ 'ի դուրս. և զԱքքայ տիրացուցեալ էր Սալահատինն և կացուցեալ 'ի նմա հարիւր հազար այր պատերազմող, և մարտնչէին ընդ միմեանս. և Սալահատինն ոչ վստահանայր օգնել քաղաքին. և հանդարտեցին Փռանգքն և շինեցին տունս բազումս, և եկեղեցիս և ջրաղացս (2) որպէս ասեն չորս հազար շինեցին. և եղեւ 'ի յամենայնացս անդ, եւ թագաւորն Ալամանոց (3) և գնաց 'ի Կոստանդնուպօլիս. և ժամանակ մի կռուեցաւ ընդ նոսա. և զի յերկարէր գործն արար ընդ նոսա սէր և անց յայս կոյս (4) ծովուն. և որպէս է նենգութիւն Յունաց առաջնորդեցին նոցա ընդ անջուր և ընդ առապարս քարաժայռաց և անկոխս. և սպանանէր 'ի նոցանէ օր ըստ օրէ: Այլ և Թուրքմանն վնասէր նոցա յայտնի և 'ի ծածուկ: Բայց հասեալք յԻկոնիոն քաղաք զբազումս կոտորեցին 'ի Թուրքացն. և իմացեալ Սուլտանին արար ընդունելութիւն նոցա և ետ

(1) Երեք օրի. 'ի միւսոյն. յաւելին:

(2) Երկու օրի. ջրաղացս և ջաղաղացս. այսինքն աղօրի ձիոյ ջրոյ և հողմոյ [illegible] գործ.

(3) Երեք օրի. Ալամանց.

(4) Չորք օրի. յայնկոյս.

վերայ դիականցն արարին աղօթս 'ի փառս անուանն Քրիստոսի . որպէս արար Սալահատինն 'ի վերայ քրիստոնէից . և շինեցին վերստին զՆաքայ և բնակեցան 'ի նմա: և զորդի քեռ Էնկիլթեռ (1) թագաւորին եդին կամս Նաքայոյ . և քանզի եհաս համբաւ ինչ տրամադին յերկրէն իւրեանց , արարին խաղաղութիւն ընդ Սալահատինն . և գնացին յաշխարհն իւրեանց :

Իսկ 'ի թուին վեց հարիւր քառասուն երկու՝ մեռաւ Խլիճ ասլանն 'ի Կոնն , և անդէն թաղեցաւ թագաւորեալ ամս երեսուն և ութ . և մնաց թագաւորութիւն նորա երկոտասան որդւոց նորա :

Եւ զկնի ամի միոյ մեռաւ Սալահատինն 'ի Դամասկոս , և եթող քսան երեք որդիս . զաւագն կացոյց 'ի Դամասկոս , և զերկրորդն 'ի Մսր , զերրորդն 'ի Հալապ , և կարգեաց զնոսա Սուլտանս . և այլոցն տուեալ տուրս կացոյց ընդ ձեռամբ նոցա : Եւ եղբայր մի էր նոցա Յետլ անուն . կոչեաց զնա Մելքը . և ետ նմա զՈւռհայ գաւառն , զՄէրտին , զՄուփարղինն , զՍամուսատ , զԽըլճապար , զԹարպաք և զՃոպաք , որ և յետոյ առ զՄծբին և զԽաղայ :

(1) Երեք օրի . Եւ զորդի քեռանկին թագաւորին :

Իսկ տէրն Մօսլայ արար միաբանութիւն ընդ եղբարս իւր ընդ տէրն Պղլրոյ և ընդ տէրն Շնձարայ. և եկն նոքօք առնուլ զԽառանն, և կալաւ զնա յաւ (1) ՚ի ճանապարհին և դարձաւ անդրէն ՚ի Մօսլ. և գնացին եղբարքն ՚ի տեղիս իւրեանց։ Յորժամ գնացին նոքա մեռաւ Մլըդինն. և առ զտեղի նորա Նորլատինն որդի իւր։

Իսկ ՚ի նոյն ամի մեծն Լեւոն իշխանն Հայոց կալաւ զՄրինձն Նատաքայ, և արկ զնա ՚ի չարչարանս, փոխարինեալ նմա զյանցանս նորա՝ զոր արար Մօսրէնայ եղբօր իւրում. և եկեալ կոմսն Նատաքոյ Թափեաց զնա աղաչանօք ՚ի ձեռաց նորա. զի այր խաղաղարար էր նա և բարեսէր, որում անուն էր Հեռի։ Իսկ ապիրագոյնն Լեւոն տիրեաց եւթնևտասուն և երկու բերդից. և եղ անուն նորա ընդ ամենայն երկիր. և փութացան պսակել զնա տունն Յունաց և տունն Փռանկաց. ըստ որում առաքեցին նմա թագ յերկրաքանչիւր կողմանց, ՚ի պարծանս իւրեանց առնելով զնա. և էր յայնու հետեւ թագաւոր ծոխ և անուանի և ահարկու ՚ի մերաց օտար ազգացն որ շուրջ էին զնովաւ և գողային ՚ի նմանէ. վասն որոյ պարաւինեցան

(1) Երէք օրի. բանիւն Ղչաւան։

'ի նա որդիքն Կըլիճ ասլանայ . քանզի տկարա-ցան 'ի բաժանել իշխանութեան իւրեանց 'ի բազում մասունս . քանզի ումն Թագաւո-րեաց 'ի Կոնն որ կրտսերն էր, և ումն յԱպ-լասթայն, և ումն 'ի Նէոկեսարն. և այլք զայլ մասունս աշխարհին առին, և էր հակառա-կութիւն 'ի մէջ նոցա. մանաւանդ յուսա-ցաւ 'ի նա Մելիքն որ ունէր զվերջին աշ-խարհն (1), և նստէր յԱպլասթայն. և նա եւ 'ի դուրս և յաւել 'ի բաժինն նորա բերդս և գաւառս ։

Իսկ Թագաւորն Մսրայ Մելիք Ազիզն ե-կըն 'ի վերայ եղբօր իւրոյ 'ի Դամասկոս ։ Եւ-լուեալ զայն Մելիք Ադէլն հօրեղբայրն նոցա գնաց առ նոսա առնել խաղաղութիւն 'ի մէջ եղբարցն, և արար նեղութիւն մեծ. քանզի արբոյց դեղ մահու Թագաւորին Մըս-րայ. որ և ընդ հասանելն 'ի Մսր՝ մեռաւ, և առ յինքն զԵգիպտոս և տիրեաց նմա ։ Նոյն-պէս խաբեաց և զՄելիք Սալէհն. և առաց զնա յերկիրն իւր 'ի Սամուսատ և կաց 'ի խա-ղաղութեան և 'ի հանդարտութեան, և քեղ-լեցի Ուռհայ և Խառան և Սուաղայ. և ես նստեալ 'ի Դամասկոս կացից ընդդէմ փռան-գին, և ամենայն Թշնամեաց մերոց. և հա-

(1) Մի օրի. զվերին աշխարհն.

ւանեցաւ և կամեցաւ առնուլ զգանձս հօր իւրոյ և գնալ. և ասէ ցնա միթէ ոչ վստահանաս յիս, քանզի և իմն ում է, եթէ ոչ քո. առի և գնա և ես բառնամ զամենայն և առաքեմ զկնի քո. և հաւատաց նմա. և յարեաւ գնաց և զառաջինն չոգաւ նա յԱբաղայ, որ մանաւանդ պատուեաց (1) զնա : Բայց նոքա գիտելով զկամս Յեսուին՝ ոչ ընկալան զնա ՚ի ներքս, և ոչ պատուեցին զնա. դարձաւ անտի և եկն յԱբաղայ. և ոչ նոքա ընկալան զայրն պարզամիտ. զի և ոչ ՚ի նոցանէն էր ծածկեալ խաբամանկութիւն հօրեղբօր նորա. դարձաւ յայնմանէ զայրացմամբ և չոգաւ ՚ի Սամոսատ, և զայն ետուն ՚ի ձեռս նորա. և նստաւ անդ. այլոցն եւս ակն ունելով յետ այնորիկ:

Իսկ Մելիք Յեսուն շրջեալ և տեսեալ զտունս գանձուց Սալահատինին, և զարմացեալ ընդ յառաւելութիւնն և ընդ պատուականութիւնն զոր ոչն կարծէր ագահեաց ՚ի յիշան, և ոչ կամեցաւ տալ ՚ի նմանէ եղբօրորդւոյն իւրոյ. այլ և արար զնա ծառայ. քանզի եգիտ նա տուն լցեալ մաստուտակով զոր կոչեն ըստ աշխարհաց Մարուխոս կուտեալ ՚ի պէտս իւնչ, զայն երբարձ քսան բեռն և կնքեաց մատանեաւ, և առաքեաց առ նա : Իսկ

(1) Երկք օրի. պատուաստեաց :

նորա տեսեալ զնախատինս իւր, ապաշաւէր այնուհետեւ զանմտութիւն իւր. քանզի չէր ձեռնհաս օգնել խելաց իւրոց և կամ փոխարինել նենգչին, որ ընկէց զնա 'ի բարձրութենէ 'ի խոնարհ. վասն որոյ ոչ եւս նմա պատասխանի, այլ եթող կարող դատաւորին (1) Աստուծոյ և վերջին օգնականին:

Իսկ պատկաւորն Հայոց Լեւոն բարուք կարգաւորեալ զաշխարհն իւր լայն իմաստութեամբ և կարող ձեռօք ընդդիմանայր արտաքին թշնամեացն. եւ խաղաղացաւ 'ի կեանս իւր շինելով բազում վանորայս և զառաջագոյն շինեալսն ընդարձակելով առատապէս տալով զպէտս նոցա. այլ և արձանագրով սեպհականէր նոցա գիւղս և ագարակս այգիս և անդաստանս, և դրեթէ ետ նոցա զպարարտութիւն երկրին իւրոյ, և առատացոյց զռոճիկս նոցա պատրաստագոյնս 'ի ծովէ և 'ի ցամաքէ. և ոչ միայն զհամազգի վանորայսն այնպէս փարթամացուցանէր, այլ և զայլալեզու քրիստոնէից, զԱսորոց և զՓռանգաց, այլ և զՅունաց և զՎրաց ոչ պահելով նոցա ոխս զոր արարին նոքա ընդ նմա և ընդ ազգն նորա արենայս. այլ և ընդ ա-

(1) Մի օրի. դատաստանին:

մենայն ուղղադաւանս առ հեռաւորս և առ-մերձաւորս ։

Իսկ նա բարեգութ լեալ առ ամենեսեան բարի առնէր եկեղեցականաց և աշխարհականաց . և էին եկեղեցիք նոցա պայծառք և անկարօտք յանապատս և 'ի քաղաքս սահմանեալ մուտք որ են մինչեւ ցայսօր ժամանակի . և այսպէս բաղում դրուատիւք կեցեալ առ ամենայն ազգս, հանդերձ 'ի Քրիստոս . Թողով դուստր մի ժառանգ Թագաւորութեանն իւրոյ . զոր տուեալ յամուսնութիւն որդւոյ Պրինձին Անտիոքայ, որում անուն էր Փիլիպ, և եդին զնա Թագաւոր գրաւեալ զնա երդմամբ զի պահեսցէ զդաւանութիւն և զօրէնս Հայոց . որ և կեցեալ ամս երկու խաբեալ լինէր 'ի հօրէն իւրմէ, և ընդ ակամբ հայէր յաւագ իշխանսն Հայոց, և խորհէր բառնալ զնոսա . զոր իմացեալ նոցա ըմբռնեցին և եդին յարգելանս ժամանակս ինչ, և անդէն վճարէր 'ի կենաց ։

Եւ ընտրեցին զորդի Կոստանդեայ փառաւոր իշխանին Կիլիկեցւոց, որ էր յազգականութենէ անտի Լեւոնի արքայի, որում անուն Ճանաչիւր Հեթում . և պսակեցին ընդ նմա զաղջիկն Պայազատ արքայութեանն Զապէլ կոչեցեալ ըստ փառ-

որ ըստ օրէ երթայր և զօրանայր Աստուծով յաջողեալ, և յամենեցունց փառաւորեալ· և յայնժամ յորժամ տկարացոյց Աստուած շուրջանակի զթշնամիս նորա, և 'ի կոր կործանեաց զամենայն հակառակորդս նորա. և տիրեաց նա լիով երկուց Կիլիկէից, լերամբք և դաշտօք, քաղաքօք և ամրական դղեկօք, էառ քաջութեամբ իւրով և զհասարակն Սօրսուցւոց. և մասունս ոչ սակաւս Երկրորդ Կապադովկացւոց. Երրորդ Հայոց զոր ունիք Ռուբինեանքն Հայք։ Պրաւեաց ընդ իւրով իշխանութեամբ և յԱսորեստանեայց գաւառաց. և ցուցաւ ինքնագլուխ և ձոխ իշխանութեամբ. զի ոչ ոք տիրէր 'ի վերայ նորա։ Եւ համբաւ արիութեան նորա թուլացուցանէր զձիս անօրինաց. և պարզէր զերեսս քրիստոնէից և լնոյր խնդութեամբ և ուրախութեամբ։

Վասն որոյ փութային պատուեալ զնա թագիւ. Թագաւորն Յունաց վասն պատճառին, զի թերեւս հնար լիցի նովաւ յաղթել Թուրքացն, որ բռնացեալ կալան զիշխանութիւն նորա։

Իսկ Թագաւորն Փռանկաց, վասն դաշանց սիրոյն զոր ունէին ընդ Հայք ուխտիւք 'ի հին ժամանակաց։ Եւ վասն այսո-

բիկ երկոքին առաքեցին նմա Թագ ոսկիակազմ. և պսակեցին զնա յաղթութեան պսակաւն ըստ վայելման և պատշաճի արժանաւորութեան իւրում :

Եւ այսպէս վերստին նորոգեցաւ Թագաւորութիւն Արամեան զաւակին, և Թագըն Հայկազանց և Սենեքերիմանց եղաւ 'ի գլուխ արժանաժառանգ զարմին Յեւանի 'ի վեց հարիւր քառասուն և հինգ Թուին Հայոց՝ այր քաջ և պատուամիր և արիական և հեզ, և մեծահաւատ : Որ և բազմացոյց զարդիւնս աստուածպաշտութեան, ելից վանորայիւք և անապատաւորօք պաշխարհանքւր և շինուածօք եկեղեցեաց, զմասն՝ ազնիւ և զպայծառութիւն երկրի իւրոյ տալով նոցա և նուիրելով Աստուծոյ՝ արձանագրութեամբ և կտակօք անլուծիւք : Եւ էր ահագին առ օտարսն, և քաղցր առ իւրսն, ահաւոր առ անիրաւեալսն, և ողորմած առ որբս և այրիս, և առ աղքատս : Եւ հեզ և խոնարհ առ ամենեսեան :

Եւ այսպէս դրուատիւք Թագաւորեալ ամս քսան երեք, հանգեաւ 'ի Քրիստոս բարի անուամբ և ուղղափառ հաւատով կենցաղավարեալ. Թողլով ժառանգ Թագաւորութեանն դուստր մի, Զապէլ անուն.

յանձնելով զնա մեծ իշխանին Ափրատնայ, սակայն երդմամբ. տալ զնա որդւոյ Թագաւորին Ռւնկաց (1). Ընկալելով զնա Հայ դաւանութեամբ, զի դեռ երեխայ էր. Արդ ննջեցեալ ախտին ըստ բնական ատելութեանն Յունաց ընդ ազգիս Հայոց, քանզի Հռոմ էր ազգաւ, խորհէր 'ի միտս յինքն առնուլ զիշխանութիւնն. վասն որոյ փութապէս 'ի խնամոցն Աստուծոյ առեալ զարժանն պատուհաս՝ սպանաւ 'ի Հաշիշեանցն. սակաւ ժամանակս ինչ կալեալ զպայլութիւնն.

Եւ յետ նորա տուաւ նա որդւոյ Պրինձին Անտիոքու Փիլիպ անուն. որ ատելութեամբ գնայր ընդ իշխանս Հայոց 'ի խրատու հօր իւրոյ խաբեալ և թագաւորեալ ամս երկու, և վախճան էառ 'ի կապանս.

Այլ Թերեւս կամք վերին խնամոցն տնօրինէր և դարձուցանէր զմարդկօրէն անհաւատասութիւնն. և զչարաբարութիւն ոմանց 'ի բարիս. քանզի զայն պաւաղանն փոքրիկ զոր ետ Աստուած Հայկազանց 'ի մխիթարութիւն լքեալ և խոնարհեալ ազգին, փոխան բարձրացեալ թագաւորութեանն նոցա, զայն ոչ կամեցաւ տալ 'ի ձեռն օտար ազգի. վասն որոյ յետ բազում ժխորմանց և ամբո-

(1) Մի օր. Ռւնկնւզաց.

խից և վիճմանց, ընտրեցաւ որդին պարոն Կոստանդեայ 'ի Թագաւորութիւն. զոր ընտրեալ էր Տէր յորովայնէ, գեղեցիկ հասակաւ, և բարի խորհրդով, մեծահոգի, և երկայնամիտ, հեզ և հանդարտ 'ի տիս մանկութեան: Եւ տուաւ նմա յամուսնութիւն շառաւեղն օրհնութեան ազատուհին Զապել: Նմթերին 'ի գովելութենէ աստուածապաշտ և երկիւղած կնոջ, ողջախոհ և ցածուն և անզարդասէր և լռին լիահաւատ և մեծայոյս: Քրիստոսասէր և որբասէր, աղօթասէր և ծերունի հանճարով, 'ի տղայութեան հասակի: Եւ լցաւ բանն Սողոմոնի թէ՝ 'ի Տեառնէ պատրաստի կին առն: Զի վայել էն նոքա 'ի մի մարմին կատարիլ 'ի Քրիստոս օրինօք: Վասն որոյ սիրեաց զնոսա Տէր. և եհան 'ի միջոյ նոցա զմեքենայսն սատանայի, որ զառաջինն հակառակէր ըստ բնական խուրոյ չարութեանն. և աջողեաց նոցա տէր յամենայնի և ետ նոցա ուստերս և դստերս: Եւ է այժմ թուին Հայոց վեց հարիւր իննսուն և հինգ:

Եւ որ ինչ 'ի միջոցի աստ եղեն, և զայն աստացուք համառօտ:

Ի ժամանակս թագաւորութեան Հայոց Լեւոնի, յորում էր թիւն Հայոց վեց հա-

րիւր վաթսուն և հինգ, եւ 'ի տէրութեանըն Կապադովկացւոց աշխարհին, Խոստրով Շահ Սուլտանին. և 'ի ժամանակս Մելիք Յետղ Սուլտանին, որ բռնացեալ ունէր զԵգիպտոս, զԵրուսաղէմ, և զԴամասկոս, և զՄիջագետս Ասորւոց և զԽլաթայ իշխանութիւն, ելին զօրքն Փռանգաց յԱքքայ, հրամանաւ պապուն Հռովմայ. առնուլ 'ի Տաճկաց զաստուածակոխ քաղաքն Երուսաղէմ: Զոր լուեալ զհամբաւ ելիցն նոցա ազգքն անօրինաց, սրտաբեկեալ լինէին:

Իսկ որդի Մելիք Յետղ Սուլտանին. զբռնացեալ յԵրուսաղէմ. քակեաց զսուրբ Սիոնն որ կոչի մայր եկեղեցեաց: Եւ այլ բազում ուխտեր և եկեղեցիք և զՆազարեթայ եկեղեցին. և թողին զսուրբ գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ զՅարութիւնն, և զԳողգոթայն և զԲեթղահեմի եկեղեցին: Եւ զայլն ամենայն և զպարիսպն Երուսաղէմի առ հասարակ քակեցին. և հայր նորա Մելիք Յետղն արարեալ ժողով ամենայն զօրաց իւրոց, առ ծովյն Տիբերիական բանակեալ զտեղի առնոյր:

Եւ լուեալ Հռովմայեցի զօրացն. դիմեցին գնալ 'ի վերայ նոցա պատերազմել. և որչափ ոսքա մօտենային 'ի բանակ նոցա նո-

քս օթեւանօք ընդ կրունկն դարձեալ հե-
ռանայքն. և յերկարէր այս 'ի բազում ա-
ւուրս: Մինչեւ ձանձրացեալ քրիստոնէիցն
կամեցան յետս դառնալ երկուցեալք 'ի խա-
բէութեանց նոցա: Եւ յաղագս անծանօ-
թութեան աշխարհին խորհեցան դառնալ
յԱքքայ. և համակամութեամբ ամենայն
զօրագլխացն խորհուրդ առեալ իջին յԵգիպ-
տոս, և հասեալք 'ի քաղաքն որ կոչի Տեմի-
աթ, պաշարեցին զնա. և 'ի ներքս արկեալ
ընդ յերկար, մինչեւ երրորդ մասն քաղա-
քին սատակեալ լինէր 'ի սովոյ և 'ի տարա-
ժամ մահուանէ որ անկաւ 'ի նոսա: Եւ ա-
պա առին զքաղաքն և կոտորեցին զմնացեալ-
սն առ հասարակ. և առին յաւարի զմթերս
գանձուց նոցա և լցան առ հասարակ ոսկւով
և արծաթով:

Եւ յայսմ ամի մեռաւ Մելիք Ադելն:
Եւ որդիք նորա Մելիք Քեմլն Սուլտանն
Եգիպտոսի, և Աշրաֆն, և Սուլտանն Դա-
մասկոսի Մուղատամն. և այլ եղբարքն նոցա
առ հասարակ արարեալ ժողով բազում և
անհամար զօրաց, եւ 'ի թուին Հայոց վեց
հարիւր վաթսուն և վեց, մտին յԵգիպտոս:
Բայց յերկեղէ լեալ, ոչ իշխէին պատերազ-
մել ընդ Քրիստոնեայն:

Եւ 'ի նոյն իսկ Քրիստոնեայքն իբրեւ առին զՏէմիւլթն, կամեցան երթալ առնուլ և զայլ քաղաքսն ։ Եւ էր ընդ նոսա թագաւորն Աւքքայոյ Սեստձուանն փեսայն Հայոց թագաւորին Լեւոնի, և Գիտմբըն (1), և Սապիթայն և այլք բազումք յիւրաքանչիւր կողմանց յարելոց 'ի նոսա ։ Եւ գնացեալ բազմութիւն զօրացն բանակեցան առ ափն Նեղոս գետոյ, 'ի հարթայատակ դաշտի միում. և իմացեալ անօրինացն, լուծին զկապս ջրաքուղին անղեացն. և եկեալ ջուրն շրջապատեաց զզօրսն ։

Եւ Սահմն տակաւին յարձակեալք 'ի վերայ նեռանձնութեամբ սկսան խոցոտել զամենեսեան. մինչեւ անյոյս լինելոյ Քրիստոնէիցն 'ի փրկութենէ, տուին զքաղաքն զոր առին. և յանձն առին դառնալ յիւրեանց աշխարհն. և դաշինս եդեալ՝ հաստատութեամբ մնալ 'ի նոյին, երդուան և Սուլտանայքն նոցա անխիղա պահել զամենեսեան. և այսպէս 'ի շփոթս հասեալ զօրացն Քրիստոնէից, դարձան 'ի տունս իւրեանց ։ Իսկ Սելիք Յեալն 'ի վախճանելն իւրում զաւագորդին զԲեմըն, կացոյց իշխան 'ի վերայ ազլոցն. և ամենեքեան հնազանդեցան նմա. զի էր բարեբարոյ և իմաստուն. և աստուածե-

(1) Մի օրի. Յամիիկն.

ուրն առ ամենեսեան ։ Նոյնպէս և Թուր եղբայրն Աշոտին որք կալան զիշխանութիւն հօրն իւրեանց բազում ժամանակս ։

Ի թուին Հայոց վեց հարիւր վաթսուն և ութն՝ Քէքայուզ Սուլտանն Հոռոմոց, որդի Խոստրով Շահ Սուլտանին յաղթող եղեալ քան զհայրն իւր, լինի պատճառ չմարի ընդ թագաւորն Հայոց Լեւոն. եւ բազում զօրս ժողովեալ հասանէ 'ի Կիլիկիան Հայոց. և պաշարէ զամուր դղեակն որ կոչի Կապան. և բազում աւուրս մարտուցեալ ոչ կարաց առնուլ զնա ։

Եւ թագաւորն Հայոց Լեւոն զիւրոյ աշխարհին զօրքն գումարէր, և փութայր ելանել ընդ առաջ նորա ։ Եւ նորին զօրագլխին պարոն Կոստանդին Գունդստաբլն. որ էր քեռորդի թագաւորին Լեւոնի, առեալ սակաւ ինչ գունդս 'ի զօրացն, յառաջ մատուցեալ 'ի կիրճըս լերանցն, և պատահեալ գնդի միում 'ի զօրացն Թուրքաց. և անկեալ 'ի վերայ՝ զամենեսեան կոտորեաց և ըմբռնեաց 'ի նոցանէ արս գլխաւորս. որք ազդեցին նմա զքուն գալուստ զօրացն Սուլտանին. և աղաչէին դառնալ, և բաւական համարիլ զյաղթութիւնն զոր արար. եւ նորա ոչ անսացեալ բանից նոցա. առաւել

եւս յամառեալ եւ քաջալերեալ զզօրսն. Հանդիպի ծանր զօրու կուռ վառելովք զինու, եւ 'ի պարտութիւն մատնի Կունդստաբլն եւ զօրքն որ ընդ իւր. եւ ըմբռնեցան իշխանքն եւ պարոնն Կոստանդին Լամբրոնեցին եւ Կեռասակն, եւ այլ մեծամեծ իշխանք. Թող զայս կոտորեցան 'ի նմին տեղւոջ, իբրեւ հազար այր պատերազմող: Եւ ըմբռնեալ զնոսա դարձաւ 'ի Կեսարիայ:

Իսկ Թագաւորն Լեւոն իբրեւ լուաւ զկոտորումն զօրացն, եւ զըմբռնումն իշխանացն, առեալ զզօրս իւր արշաւէր 'ի միւս այլ կողմն աշխարհին Հոռոմոց եւ բերէր աւար անթիւ, եւ կուտէր իբրեւ զաւազ առափն ծովու:

Եւ յետ սակաւ աւուրց արարեալ սէր ընդ միմեանս. ետ Թագաւորն Հայոց Լեւոն զբերդն Լուլուայ, եւ Թափեաց զիշխանսն որ ըմբռնեալ էին: Եւ խոստացաւ տալ Հոռոմոց Սուլտանին յամենայն ամի երեք հարիւր այր 'ի ծառայութիւն, եւ հնազանդեցաւ նմա: Եւ այս լինէր 'ի ծերութենէ եւ յանկարութենէ մարմնոյն. եւ իշխանքն ոչ էին ընդ նմա ուղիղ:

Եւ 'ի սոյն իսկ յայսմ ամի արարեալ ժողով Սուլտանն Բեքայուղ զօրաց, առեալ եւ

'ի Թագաւորէն Հայոց օգնականութիւն. գայ յերկիրն Հալպայ 'ի յՍապայն և առնու զնա. և անտի գնացեալ 'ի Թլպաշար առնու և ըզ-Թլպաշար և զԱնթափ: Եւ կամեցաւ գնալ 'ի վերայ Հալպայ. և երեք ամաւ յառաջ Սուլտանն Հալպայ վախճանեալ էր Մելէք Տահրն: Եւ որդի նորա Մելէք Ազիզն մանուկ գոլով ամաց հնգից, ունելով զիշխանութիւնն: Եւ էր նորա աթապակ մի յոյժ իմաստուն. առաքեաց առ Թագաւորն Հայոց Լեւոն, և խնդրեաց 'ի նմանէ օգնական լինել. Թերեւս զերծանիցին հնարիւք նորա 'ի հասեալ բարկութենէն. և խոստացան նմա տալ բաղում գանձս ոսկւոյ:

Եւ Թագաւորն Հայոց այնուհետեւ 'ի հոգս անկեալ իւրով կորովամիտ իմաստութեամբն. առաքեաց զանխլաբար առ Սուլտանն Հռոմոց, մինչ 'ի սահմանս Թլպաշարայ էր, գրեալ առ նա այսպիսի օրինակաւ:

«Թագաւոր Հայոց Լեւոն. եղբօր մերոյ Քէքայուզ Սուլտանիդ 'ի Տէր խնդալ.

«Յուշ լիցի քեզ իբրեւ սիրելւոյ մերում. զի իմացեալ հաստատեցաք. եթէ քառասուն ամիրայ 'ի զօրաց քոց դաշինս եդեալ են տալ զքեզ 'ի ձեռն Աշրաֆուն: Եւ դուն այսուհետեւ զգուշ անձին քո խոր-

հեաց․ զի մի անկցիմ՝ ՚ի ձեռս ատելեաց քոց․ ողջ լեր »։

Եւ իբրեւ ընթերցան առաջի նորա ըզ-պատճէն նամակին․ իսկոյն զարհուրեալ ահիւ մեծաւ հրաման տայր զօրացն դառնալ անդրէն փութանակի։ Եւ ինքն յառաջ անցեալ անձապարէր գնալ․ զոր իմացեալ Նշրափուն և զհետ մտեալ արար փախստական։ Եւ ինքն դարձեալ էառ զԱյապան և զԹըլպաշար, և դարձոյց ՚ի Հալապ։

Եւ այսպիսի օրինակաւ այնքան մեծ Սուլտանն շփոթեալ ՚ի պարտութիւն մատնէր․ և հասեալ ՚ի Կեսարիայ զամիրային զայնոսիկ զքառասուն խաշել հրամայէր։

Եւ յայսմ ամի եկն դեղին մարախ եւ ծածկեաց զերկիրս և զդաշտս․ և եկեր զամենայն ծառ սահմանաց մերոց մինչեւ ՚ի սըպառ զերիս և զչորս ամս։

Ի վեց հարիւր վաթսուն և ութ թուականին Հայոց Լեւոն թագաւորեալ ամս քըսան երեք, մեռաւ (1)։ Եւ յանձն արարեալ

(1) Մի օրի․ ունի այսպէս․ Իսկ վեց հարիւր վաթսուն և ութ թուականին Հայոց Լեւոն թագաւորեալ ամս քսան երեք․ և մեռաւ․ տասն ամ իշխան եկաց Հայոց․ և յետ տասն ամի թագաւորեաց ամս քսան երեք․ և յետ և յառաջ զամս երեսուն երեք, և մեռաւ։

զիշխանութիւն աշխարհին և զդուստր իւր զԶապէլն 'ի Միրատանն, որ էր ազգաւ Հոռոմ. և զկնի սուղ ժամանակի սպանաւ 'ի Հաշիշեացն. որպէս վերագոյնն գրեցաւ։ Եւ առնու զհոգաբարձութիւն աշխարհին պարոն Կոստանդին, որ էր քեռորդի Թագաւորին Հայոց Լեւոնի։

Յայսմ ժամանակի ոմանք յիշխանացն Հայոց ապստամբեալք, եղեն ընդ. Ռոբէնայ Բրընծին Անտիոքու, կամելով զնա Թագաւորեցուցանել. յորոց էր Ճօսլին Մարաջախտ և Լեւոն Կապանու տէրն և Կեռռակն և այլք. որք առեալ զԲրինծն Ռոբէն և մտին 'ի Տարսուս և ամրացան։

Իսկ պարոն Կոստանդին և տէր Յովհաննէս կաթուղիկոսն, գնացին զօրօք և պաշարեցին զնոսա սուղ ինչ ժամանակս. և յաղթեցին նոցա. և առին զքաղաքն. և ընբռնեցին զապստամբսն որ և ամենեքեան բանդարգեալք եղեալ վախճանեցան 'ի կապանս. և հանդարտեցաւ երկիրն. բայց տէր Յովհաննէս կաթուղիկոսն յառաջ քան զառնուլ քաղաքին վախճանեցաւ. 'ի Թուին Հայոց վեց հարիւր վաթսուն և ինն։

Եւ ապա միաբանութեամբ ամենայն իշխանացն, և եպիսկոպոսացն ընտրեցաւ յա-

մենեցունց տէր Կոստընդին. որ էր եպիսկոպոս Սըլէճոյն ։ Եւ եղաւ յաթոռ հայրապետութեան Հայոց ՚ի Թուին վեց հարիւր եւթանասուն ։ Եւ եղեւ ուրախութիւն ամենեցուն. յաղագս առաքինի և բարեբարոյ և խաղաղասէր մտացն. որով ամենեցուն հաճակաւոր լինէր ։

Իսկ իշխանացն Հայոց բազում անմիաբանութիւն լինէր վասն դնելոյ թագաւոր. զի ոչ հաւանէին միմեանց ։ Եւ ապա ՚ի մի կամօր եկեալ ընտրեցին զորդին Ընծին Անտիօքու թագաւորեցուցանել. զոր և արարին իսկ. և եդուն զդուստր թագաւորին Հայոց Լեւոնի նմա ՚ի կնութեան. և թագաւորեցուցին ՚ի վերայ Հայոց ՚ի Թուին Հայոց, վեց հարիւր եւթանասուն և երկու ։ Եւ անուանեցին զնա Փիլիպ թագաւոր ։

Ի Թուին Հայոց վեց հարիւր եւթանասուն երկու, եղեւ երաշտ սաստիկ. և յերկարեաց յոյժ՝ մինչ զի ՚ի Դեկտեմբերի հասարակին նշենիք ծաղկեալ եղեն ՚ի ջերմութենէ օդոյն ։ Եւ անպատմելի մշտօք տառապէր երկիր զերիս և զչորս ամս ։ Յայսմ ժամանակի մեռաւ Սուլտանն Բաքայուզն և առնու զՍուլտանութիւնն կրտսեր եղբայր նորա Ըլանդինն ։

Ի Թուին Հայոց հազար եւթանասուն եւ երեք՝ Փիլիպ Թագաւորն Թղտորով(1) հօր իւրոյ, կամեցաւ ըմբռնել զերկուս մեծամեծ իշխանսն. զպարոն Կոստընդին՝ որ էր Թագաւորահայրն, եւ զպարոն Կոստընդին՝ Լամբրունին տէրն։ Զոր իմացեալ յառաջեայ պարոն Կոստընդին, եւ ըմբռնեաց ըզնա 'ի Թիլն Համտնոյ. եւ տարաւ 'ի Բարձր բերդ, եւ անդ վախճանեցաւ։ Իսկ հայր նորա Գրինձն Լեռնիկցու լուեալ տրտմեցաւ յոյժ։ Եւ զի անկարանայր առնուլ զվրէժ որդւոյն՝ առաքէ առ Մալիքն Սուլտանն Հոռոմոց։ Որոյ եկեալ էառ զՃանձին(2), եւ զԿանչին եւ զՄազոտ խաչն. եւ արար վնաս բազում 'ի լեռնակողմանս։

Եւ Գրինձն ժողովեալ զօրս եմուտ յերկիրն, եկն ընդ սահմանսն, որ կոչի Ճկեր. եւ եհաս մինչեւ 'ի Թիլն Համտնոյ։ Եւ ոչինչ օգտեալ դարձաւ ամօթով յՍնտաք։

Ի Թուին Հայոց վեց հարիւր եւթանասուն եւ հինգ՝ միաբանութեամբ ամենայն իշխանացն տուին զՕշին դուստր Լեւոն Թագաւորին, 'ի կնութիւն Հեթմոյ, որդւոյ պարոն Կոստանդեայ, եւ Թագաւորեցուցին 'ի վերայ Հայոց. որ էր տղայ հասակաւ.

(1) Մի օրի. Ք[illegible]   (2) Մի օրի. զՃանձին.

և հայրն նորա կարգաւորէր զԹագաւորութիւնն. որ և արար սէր ընդ Նուրդին Սուլտան. և հնազանդեցաւ նմա. տալով նմա յամենայն ամի երեք հարիւր այր 'ի ծառայութիւն։

Յայսմ ժամանակի լուաք զհամբաւ երկուց ազգաց անաստուածից և գազանաբարոյից. որոց անուանքն Խորազմ և Տաթար. որք իբրև հուր ընդ խուխ ընթացեալ, ապականեցին զերկիր ուր և հասան. և ոչ ոք ընդդիմացաւ նոցա, և սարսեցին 'ի համբաւոյ նոցա ամենայն որ 'ի ներքոյ երկնից. Նոյն սկիզբն ելից նոցա 'ի բուն աշխարհէն իւրեանց 'ի վաղուց ժամանակաց է՝. և զքաղաքս աշխարհս և զազգս և զԹագաւորութիւնս աւերեալ և քանդեալ, հասին յաշխարհն արեւելից։

Եւ յայսմ ժամանակի Թագաւորէր Վըրաց դուստր Թամարին Ռուսուդուքան, և էր Աթապակ նորա Իւանէ. եղբայրն Զաքարիայի (1), որ էին ազգաւ Հայք. և 'ի հրամանաց Թամարին Վրացի եղեւ Իւանէ. և 'ի հակառակս դառնայր կրօնից Հայոց։

Եւ յայսմ ժամանակի 'ի գաւառն Եզնոյ եղեւ նշան ինչ, զի կրօնաւոր մի սուրբ և

(1) Սա այս Իւանէ՝ հայր Զա- [illegible] յայս փէշէս. [illegible] 'ի [illegible]

ընտրեալ վախճանեալ Հայ ազգաւ, որոյ գերեզմանն երկնաւոր լուսովն վկայեցաւ (1), և փառաւորեցաւ, որ և ամենեքեան տեսին. և ել համբաւ նորա ընդ ամենայն երկիր։ Իսկ Իւանէ նախանձ շարժեալ ամենայն Վրացւովքն նախատէին և Թշնամանէին, և յետոյ զոսկերս սուրբ կրօնաւորին հրամայէին այրել հրով, և 'ի տեղի պատուական ոսկերացն սատակեալ շուն Թաղէր։ Եւ եպիսկոպոսն Անւոյ տէր Յովհաննէս բազում բանիւք յանդիմանէր զանաստուածն Իւանէ։ Իսկ նա ըսպառնայր կամ դարձուցանել 'ի Վրացութիւն զամենայն Հայս, և կամ հանել յաշխարհէն։

Եւ մինչ յայտնի էին եհաս համբաւ Խորազմին. և նոքա փութով ժողովեալ զօրս կամէին ելանել ընդդէմ նոցա 'ի դաշտամէջքն Կառնի քաղաքի. զոր շինեաց մեծ արքայն Հայոց Տրդատ բերդ և սարաւոյթ 'ի մեծամեծ վիմաց Թագաւորութեան իւրոյ, որ կայ անխախտելի մինչև ցայսօր։

Իսկ ամբարիշտն Իւանէ ամենայն զօրօքն Վրաց գնաց և իջաւ 'ի լեառն Կառնոյ., որ կոչի Աղուջերմն (2)։ Եւ ապա խորհեցան միա-

(1) Մի օրի. երկնաւոր լուսովն վառեցաւ։

(2) Մի օրի. Աղօնուջերմն

քան առաքել զմեծ իշխանն քաջ և անուանի զԻւանէ զեղբայր Շաւշայի փոքր ինչ զօրօք ընդ առաջ խորազմին . որոյ հասեալ 'ի դաշտըն Գառնոյ որ կայր առաջի իւրեանց հարիւր մղոնօք 'ի զատէ . ապա ընդդէմ ելին անօրէն խորազմիքն և սկսան պատերազմել ընդ նմա . և յորժամ խառնեցան 'ի միմեանըս Իւանէ եղբայր Շաւշային , և խորազմիքն , յայնժամ առաքեաց զմի 'ի զօրաց իւրոց առ մեծ զօր հեծելուն գալ փութանակի յօգնութիւն նմա : Իսկ նա 'ի գնալն ձայնէր որպէս սովորութիւն է թէ՝ շուտով հասէք, և ձայնն ձիաւորին ոմանց լսելի լինէր թէ՝ փախիք և մի գայք . զի չեմք կարող դիմանալ սոցա : Իսկ ոմանց լսիւր թէ փութանակի հասիք կարող եմք յաղթել . և մինչ 'ի յայս էին , փախեաւ Աթաբակն Իւանէ անկանել յամուրս երկրի իւրոյ , և բազմութիւն զօրացն փախստեամբ անկանէին 'ի գեօղաքաքըն Գառնի , որ շինեալ է 'ի վերայ բարձր քարախորամի , և գետ յորդ անցանէ ընդ տակ խորամին . և յորժամ 'ի փախուստ դարձան անկանել յամուրս տեղեացն , նոյն ժամէն մրրիկ . փոշոյ մթացոյց զաչս փախուցելոցն . և առ հասարակ լցան ընդ բարձր և ընդ յորձ ահագին խորամն Գառնոյ 'ի գետն

յորձանուտ. և Խորազմիքն յետոյ հասեալ զմնացեալսն որոյ մատնէին. և առաջին Թէ՝ ասեմ՝ Աբաղայն հրով այրեցաւ. Նշանակեալ Թէ աստուածային է բարկութիւնն. Իսկ Դ. քաջ իշխանն Շուլէ ըմբռնեցին կենդանւոյն, և տարան առ Սուլտանն իւրեանց. և այսպիսի ահաւէքն վրէժս եառ Տէր Աստուած յանպարտաւանս և 'ի կենցաղասէր ազգէն Աբաղայ, վասն անարգելոյ Նոցա զհաւատս Հայոց:

Իսկ Պարսիկքն որ 'ի Դունին քաղաք, լուեալ զպարտութիւն Աբաղայն ըմբռնեցին զգլխաւորս քաղաքին և սպանին. և ապա սուր եդեալ կոտորեցին զամենայն Քրիստոնեայս որ 'ի քաղաքին:

Եւ զայսոսիկ լուեալ քաջ և անուանի իշխանն Հայոց որդին մեծին Վասակայ Բուռըն Հաղբակայ Պռօշ անուն և առեալ ըզզօրս իւր գնաց 'ի Դունին. և գտեալ պատճառս բանի մտանէ 'ի քաղաքն սիրոյ պատճառաւ և զուգեսէր խաբէութեամբ. և կոչէ զամենայն մեծամեծսն որ 'ի նմա և 'ի սիրելըն զնոսա, յանկարծակի յիշէ զկոտորումն Քրիստոնէիցն Թէ զինչ պատճառաւ արարիք, և ապա հրամայեալ զօրացն իւրոց առժամայն սուր 'ի վերայ եդեալ կոտորեցին

առ Հասարակ. և լինէր դարձաւ խաղաղու-
թեամբ 'ի տուն իւր ։

Յայսմ ժամանակի եկին խորազմիքն եւ պաշարեցին զմեծ քաղաքն Վրաց զՏփխիս. և Պարսիկքն որ կային 'ի քաղաքին, ետուն զքաղաքն 'ի ձեռս խորազմեայն. և խորազմիքն խոստացան թողուլ զՊարսիկսն խաղաղութեամբ ստացուածօք իւրեանց, և առեալ զքաղաքն կոտորեցին զամենայն Քրիստոնեայսն որ 'ի նմա. նոյնպէս և զՋըհուտան. և զամենայն ազգ բաց 'ի Պարսիցն. և արարեալ լիով ձեռամբ իւրեանց զքաղաքըն, գնացին ։

Եւ 'ի գալն գարնանային ժամանակին, եկն թագաւորն Վրաց 'ի Տփխիս. և կոտորեաց զՊարսիկսն որ 'ի նմա. և մնաց քաղաքն աւեր 'ի մարդոյ և յանասնոյ ։ Յայսմ ամի աստղ մի գիսաւոր երեւեցաւ յերկինս, և անյայտ եղեւ ։

Ի թուին Հայոց. վեց հարիւր եւթանասուն և եւթն Ալամանաց թագաւորն Ֆրերըուրն եւ բազում զօրօք 'ի Կիպրոս կղզի. և գնացեալ յԵրուսաղէմ, երկրպագեաց սուրբ տեղեացն ։ Իսկ Փրերք Դամբլուն առաքեցին 'ի Քէմէլն. որ էր Սուլտան Մսրայ զաղտնմա զօրօք որպէս զի տացէն զՖրերուքն 'ի

Այլ մեք թէպէտ լցեալ գիտուն բանիւ և թը-ռուցեալ ՚ի վերայ ծովացեալ պատմութեանց յոգունց, և հասեալք ՚ի մինայս հանգստեան մերում կենցաղավարութեան, դարձեալ նովին յուսով երկնաւոր սքանչելեացն և շնորհաց Հոգւոյն սրբոյ, երկրորդ անգամ ծովամուխ լիցուք յանհատական խորս քահանայական կարգաց և զարդուց. եթէ ուստի՞ սկսաւ և ո՞ւր լցաւ և յո՞ կատարի, տեղեկացուք ըստ մերում կարի աշխատեալք ՚ի պարգեւսն Աստուծոյ. եթէ զի՞նչ է քահանայութիւն և զի՞նչ է գործ և աստիճան քահանայութեան և պատիւ նոցա. և հանգուսցուք զյօժարութիւնս մեր ՚ի փառս Աստուծոյ:

---

## ԳԼՈՒԽ ԻԹ.

*Նորին տեառն Միխայէլի յաղագս քահանայական կարգաց թէ ուստի առնու զսկիզբն:*

ՍԿԻԶԲՆ քահանայութեան շնորհի է անժամանակին Աստուած, որպէս և ամենայն բարեաց. քանզի ամենայն տուրք բարիք և պարգեւք կատարեալք ՚ի վերուստ անտի իջեալ են առ մեզ ՚ի Հօրէն լուսոյ. որոյ առաջին և

անդրանիկ է յայլոց պարգեւքս այս քահա-
նայական. զարդ, զոր ինքնութեամբ եւ անս-
կզբնաբար ունի զնա ամենայն Աստուած.
ոչ յումեքէ առեալ եւ ոչ զոք ունելով վե-
րագոյն ինքեան՝ որով քահանայեսցէ եւ փա-
ռաւորեսցէ. եւ վասն այնորիկ ոչ է 'ի ներքոյ
հարկի միայն նորա քահանայութիւնն, այլ
բաշխելով եւ բաժանելով զպարգեւսն իւր,
է նա քահանայ: Համարձակելի է մեզ 'ի
ծանօթութենէ գրոց ասել զամենասուրբն
Հայր Աստուած՝ քահանայեալ յանհասա-
կան ծնունդն Որդւոյ եւ յանթարգմանելի եւ
յանհասաբար բղխումն Հոգւոյն սրբոյ,
անժամանակ անսկզբնապէս անախտաբար
եւ առանց միջնորդի յէութենէ եւ 'ի բնու-
թենէ իւրմէ. անձինք եւ երեսք ծանօթա-
կանք Որդւոյ եւ Հոգւոյ կատարելապէս իմա-
ցեալք, եւ միացեալք 'ի նոյն բնութեան եւ
յէութեան եւ յաստուածութեան եւ 'ի զօ-
րութեան եւ յանմահական մշտնջենաւորու-
թեան, 'ի մի կամս եւ 'ի մի իմաստութիւն եւ
'ի մի գործ եւ 'ի մի ճոխութիւն եւ 'ի մի թա-
գաւորութիւն եւ 'ի փառս կացեալ յաւի-
տենիւ իւրով, անպատառապէս բաժանեալ եւ
անխառնաբար միաւորեալ. այս է առաջին
եւ անստացական 'ի բնութենէ քահանայու-

թիւն վերագոյն և աննուաստ և ազատ քաւ-չայետութիւն։

Իսկ երկրորդ քահանայագործութիւն բա-կանի առ զօրս լուսեղինացն դասուց Աստ-ուոյն և 'ի Հոգւոյն, գոյացութեամբն երկնի՝ որ բնակութիւն է նոցա և խորան անձեռա-գործ բանիւ կատարեալք և հոգւով լցեալք. ըստ վկայութեան գրոց թէ «Բանիւ Տեա-ռըն երկինք հաստատեցան, և հոգւով բերա-նոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա. բնու-թիւնք անմարմինք և անմահ կենդանիք մըշ-տաշարժք 'ի բարիս և անշարժք 'ի չարիս. և թէ հեղգաշարժս ասել յաջողակ թուեսցի ումեք յաղագս խաւարեալ արուեստին, զոր ասեն առաջին և վերագոյն ամենայն դասուց զնա գոլ. և յաղագս այնորիկ հպարտացեալ աստուածանալ կամէր անձամբ. որ է առա-ջին ցաւ մոլեալ 'ի կամս բանաւորաց. և այլ-քըն զի կան և մնան, քանզի մի քան զմի խո-նարհ տեսանէին զինքեանս, և այն արգելոյր զախտն. և այլ ևս զի խրատեցան առաջին հիւանդոյն և կան 'ի յողջութեան. և դար-ձեալ զի արդ տեսանեն զԱրդի մարմնոյն, և երկիւղ երեւեցելոյն պահէ զնոսա անախտս, որպէս առնէր անմահութիւնն զանհոգու-թիւնն. նախ քան զմարդեղութիւնն տուաւ

նոցա շնորհ և սատարձան փառաց. այն՝ զոր Դաւիթ ասէ "ո՛ արար զհրեշտակս իւր յոգիս և զսարկաւագունս իւր հուր անկիզանող" և դարձեալ ասէ "օրհնեցէք զՏէր ամենայն հրեշտակք նորա հզօրք զօրութեամբ սարկաւագունք կամաց նորա և բանի նորա". և այս է գործ նոցա օրհնել զԱստուած և փառաւորել զնա ըստ Եսայեայ և Եզեկիելի։ Այլ և առաքինի պաշտօնութիւն, այսինքն 'ի սարկաւագութիւն այնոցիկ որ ժառանգելոց են զփրկութիւն. և են բաժանեալք յերիս երրեակս դասուց կարգաւ. 'ի կայանին առեալ զփառս և զիշխանութիւն վարդապետութեանն, զոր դայեկաբար խնամեն առաջինքն զերկրորդսն խնամակալք կերպակցովք սնուցանելով յաճախումն աստուածային հանճարոյն. զոր առնուն առաջինքն 'ի բացեալ նոցա լուսոյն անճառելւոյ Երրորդութեանն քան չափոյ կարելի բնութեան նոցա տարողութեանն. և անծերանալի կենօք սարկաւագեն Աստուծոյ 'ի նմանէ զօրացեալք տալով առաջնոյն 'ի միջինն. և միջինն 'ի վերջինն անցուցեալ և 'ի յԱստուած դարձուցեալ զնոսա կատարեն զզարդն երկնից։

Իսկ քանզի առաջինն գեղեցկապէս ունէր խորան լուսեղէն հրեղինաց լեալ պաշտօնէ-

իւք անճառելի փառօք, և անլծուական բազմութեամբ և անքանակ բարձրութեամբ։

Երկրորդ. այս տպաւորեցծէր (1) բանիւ հաստատակաւոյց հիմամբ և աննեցուկ ձեռուամբ կառուցեալ խորան խորհրդական և յօրինաժողով եկեղեցի՝ միութիւնն զայս աշխարհ. որոյ իշխան և գլուխ կացմէր զՔրիստոս տալով նմա շուք քահանայութեան, որ է գեղ պատկերի իւրոյ. և գնէ զնա ՚ի լուսինկալ բեմի բարձրացելոյ արեւելեան մասինն յարադուարձ գրախտին փափկութեան, ՚ի յարացոյցն հոգեւոր և անթառամ խնամութեանն Աստուծոյ. զոր հոգիացոյց մտաւորմամբ հանճարոյն, զի այնու քահանայացն Աստուծոյ միջնորդութեամբ միջնորդեսցէ. և այնու օրինակաւ էջ շնորհն քահանայութեան ՚ի ներքին բանահանդէս ընդ արձակեալ. որով շնորհիւ օծանեալ (Ադամ) կոչեցաւ զանուն արարչին իւրոյ Աստուած, որ է ածիչ ՚ի գոյութիւն յանգոյից. և տեսեալ զզօրս արարչին իւրոյ, ընդ նմա անուանեաց զնոսա հրեշտակս որ է բանաւորս. զի տանէին առ նա բանս. և այսպէս ամենայն շնչոյ կենդանւոյ կոչեաց անուանս յարմարականս որ կան մինչեւ ցայսօր ժամանակի յիշատակ

(1) Ա.Ձ. օրինակք. այս տպեցծէր.

իմաստութեանն արմատոյն մարդկութեանս, և շնորհի քահանայութեան նորա 'ի փառս տուողին Աստուծոյ։

Իսկ եթէ զի՞նչ է քահանայութիւն, ասասցուք։

Քահանայութիւն կարգ է բարձր, և առաջնեան սուրբ. որով բարձրանայ առ Աստուած ըստ կարի և լինի վերագոյն քան զամենեսեան որոց քահանայն է, և է միջնորդութիւն բարձրութեան և նուաստութեան որ բերէ 'ի վայր և տանի 'ի վեր. և ոչ ոք անձամբ կարէ առնուլ զքահանայութիւնն, որպէս ասէ սուրբն Պօղոս. այլ կոչեցեալն յԱստուծոյ. և է նա շնորհ աստուածեղէն սուրբ որ ասէ ցքահանայսն. «սուրբ լերուք զի ես սուրբ եմ. և 'ի սուրբս բնակեմ». և բնակէ յարժանաւորսն այսպէս. որպէս լոյս ընդ յօդ և հուր յերկաթ միանալով. և ներքուստ 'ի ներքս խօսի զկամս Աստուծոյ. և դնէ 'ի սրտի զփականս արքայութեան, և զբանալի դրանն երկնից, և մտին առ Աստուած. և կոչի նա ծնողութիւն երկրորդ և անմահ երկունք. և սա դաստիարակութիւն անապական ննդեան։ Եւ ըստ մերում լեզուիս Ասորւոց քահանայն փարթամ թարգմանի. այսինքն երկնաւոր հարստութիւն, անմահա-

կամ զանձուն սրահուստ և բաշխումն. և ըստ Հայկական բառին քաւիչ ստուգաբանի կամ հարկանող. որ է վրէժխնդիր չպահողաց պատուիրանին Աստուծոյ, և ոչ անձին. որպէս փենեհեան այն եցոյց զնախանձն Աստուծոյ։ Այլ ըստ այլում կոչման նմանութիւն բարեբախտիկ փառացն՝ որ է Աստուծոյն. որ է ընկզբնաստիպ անստացական քահանայութեամբ պարգեւք առողացն. որոց առաջինքն հանդիպին կուսական և անապական բնութիւնք հրեշտակաց. և երկրորդ՝ բաշխեցաւ նախատեղծն մարդոյն մարմնոյ և արեան միջնակելոյ. ուստի և մարդասէր կոչեցաւ սաւողն. բայց զի անարատից վայել է աստիճաննս տուայանմերձութեանն, և 'ի մերձանչելն նուազեցաւ շնորհն. թէպէտ և ոչ ամենեւին բարձաւ 'ի նոյն առացեալ մարդասիրութենէն մինչեւ 'ի լրումն աւուրց լյաւ։

Վարձեալ յորժամ յուզեալ 'ի խնամոց իւրոց եղև մարդ մարդասէրն Աստուած, և այսրէն դարձոյց յիշեցուցանելով 'ի վերնատանն զփչումն առաջին. և քանզի բնութիւն ոչ բարձաւ շնորհն պատուիրանազանցութեամբն Ադամայ 'ի բնութենէս. ցուցանէ քեզ Աբել արդար որդին Ադամայ մեղաւորին. որ և քահանայական օրինօք հրէականին մատու-

ցանէր Աստուծոյ յանբանիցն պատարագս . և մեծացեալ 'ի նա շնորհքն մատեաւ անձամբ պատարագ Աստուծոյ , անարժան ձեռօք յարինակ Տեառն մերոյ և Աստուծոյ , պիղծ քահանայիւն նուիրեալ և ողջակիզեալ : Սակայն Կայէն անկաւ 'ի շնորհէն զոհիւն իւրով յօրինակ այնոցիկ , որք զոհերն պատարագեցին Ղեւտացիքն , և անկան 'ի քահանայութենէն զոհիւքն իւրեանց և որդւովք , նման Կայենի տարագրելոյ ծննդովք իւրովք յերեսաց Աստուծոյ և յազգէն Ադամայ , անօթն վնասակար ոչ յաջողեալք 'ի տան Աստուծոյ . որպէս և այժմ անարժան քահանայք անկեալ լինին յեկեղեցւոյ և 'ի ժառանգութենէ . զոր և Հեզի օրինակեաց . քանզի եբաց նախ զդժոխս և լայնեաց զբան մահու , և արբոյց երկրի դառնագոյն ջուր . ուստի աճեցոյց զփուշս և զտատասկս և արգել զառատութիւն ցորենոյ և գինւոյ :

Սակայն էանց պարգեւքն այն 'ի յԵնովս , որ զյոյսն պատարագեալ Աստուծոյ , էառ վստահութիւն կոչել զՏէրն անուն օգնութիւն անկեալ ազգին : Իսկ զանարժանիւքն զանց արարեալ քահանայական պատուոյն երեւեցաւ յԵնովք , որ յաւել 'ի յոյսն Ենովսայ զպահս և զաղօթս , պատարագելով Աս-

տուծոյ զամս հարիւր վաթսուն և հինգ , հաշտեցոյց զԱստուած ընդ բնութեանս կործանելոյ . և ըստ խնդրելոյն Ենովքայ օգնեաց և էառ զքահանայն արժանաւոր 'ի դրախտն, ուստի ել անարժանն . և յայս ետ Նովաւ անմահութեան կենաց մահականուլ ազգին . և կոյս և մնայ քահանայ միշտ 'ի Տէր Ենովք , հաճեալ ընդ նմա Աստուծոյ : Իսկ յետ Նորա դարձեալ ծածկեցաւ 'ի մեղաւորացն և ծածկեցաւ յարդարն Նոյ փառքս այս . որ եգիտ զշնորհս զայս յԱստուծոյ ըստ վկայութեան գրոցն . քանզի պատարագէր Աստուծոյ զորքութիւն կուսութեանն ամս հինգ հարիւր , խնդրելով 'ի Տեառնէ զի պակասեսցին մեղք յաշխարհէ , և ամբարիշտ մի եւս պտղի 'ի նմա . և լուաւ նմա Աստուած և ջնջեաց զյանցաւորս յանցանօքն իւրեանց , զի մարմինք եղեն . և ոչ ետ նոցա Աստուած հոգի քահանայութեան և եթող զՆոյ և զարդարութիւն իւր միայն , որ և յետ ջրոյն դարձեալ մատուցանէր զՀաբելին պատարագ 'ի հոտ անուշից Տեառն Աստուծոյ . որ էր ստուերականն 'ի գոլորշի հոտոյ և ոչ յարդիւնս իրաց կատարեալ կերակրոց . որ էր փրկութիւնն մեր զոր կատարեաց Տէրն մեր . և հոտն այն փառքն էր արդարոյն և ոչ ճենճեր ճարպոյն .

և յետ այնորիկ ամփոփեալ շնորհքն 'ի կապաշտիցն՝ ցուցաւ 'ի Յովբ սքանչելին յորդւոց անուն Աշկտանայ. և թէ որպէս այլք ասեն՝ Յեսուեայ. որ աւուր աւուր մատուցանէր ըստ թուոյ որդւոցն պատարագ Աստուծոյ, յորոց վերայ և զկնիս փորձութեանցն համբերութեամբ. և յետ փորձութեանն մատոյց 'ի հաշտութիւն բարեկամաց պատարագս յանձանցն: Իսկ յառաւելուլ արդարութեանն և 'ի յաճման հաւատոյն Աբրահամու բացափայլեաց պարգեւք աստուծանին ոչ միայն յԱբրահամ և յորդիսն իւր, այլ և 'ի Մելքիսեդեկ որ և գերազանցեալ գըտաւ քան զամենեսեան. զոր և գիրն յայտնապէս կոչէ զնա անուամբ քահանայ Աստուծոյ բարձրելոյ որ բարձր քան զբնաւ արդարոցն ցուցեալ խորհուրդս. զոր Պօղոս խոստովանի ածելով զնա ամենեւին օրինակ մեծին և ոչ մասամբ, որպէս զայլսն. որ և զտիպն ճշմարտութեան մատուցանէր Աստուծոյ պատարագ հաց և գինի. զոր և Աբրահամու ընծայէր և օրհնէր զնա յԱստուծոյն բարձրելոյն. որ և ասեն զսա յորդւոցն Քամայ, որոյ ազգ և հայր և մայր ոչ գրեցաւ և ոչ պատմեցաւ յօրինակ Տեառն իւրոյ:

Բայց որպէս ասէ սուրբն Եփրեմ յաղ-

գէն Սեմայ էր, անուանն Սէմ. որոյ երեւեցաւ Աստուած փոխեաց զանուն նորա Մելքիսեդեկ, որ է Թագաւոր արդարութեան անհայր անմայր ոչ մարդն, այլ անուանն Մելքիսեդեկ ոչ ունի հայր և մայր. քանզի Խորայէլ և Մելքիսեդեկն պարգեւ Աստուծոյ են՝ հայր և մայր ոչ ունին. իսկ Սեմն և Յակոբն ունին ծնողս որ զայն կոչեցին նոցա անուանս.

Իսկ Աբրահամ յօրհնակէն Տեառն մերոյ օրհնեցաւ և եղեւ քահանայ, և զորդին մատուցանէր Աստուծոյ զհօրն երկնաւորի բերել զնմանութիւն, տալով զմիածին 'ի փրկութիւն աշխարհի: Եւ Սահակ անձամբ անձին լեալ մատուցիչ ընդ հօրն որպէս և Քրիստոս 'ի հօրէ և յինքենէ մատեաւ, և զերկիւղն միշտ այլովք ընծայիւք մատուցանէր Աստուծոյ. և զնոյն շնորհ յինքն ձգեալ Յակոբ յօրհնութենէն հօրն, զոր առեալ երթայր յԱսորիս, և տեսանէր զխորհուրդ եկեղեցւոյ. և կոչէր զտեղին տուն Աստուծոյ և օծանէր. և 'ի դառնալն պատարագ մատուցանէր Աստուծոյ ըստ ուխտին իւրոյ:

Նոյն և Յովսէփ ընկալաւ զշնորհս զայս խորհրդով տեսլեամբ երազոցն, և իջեալ յԵգիպտոս որ է Միծրայիմ, այսինքն Մսր, և զողջախոհութիւնն մատուցանէր պատա-

ըագ Աստուծոյ. և յայնմհետէ իմաստասիրէր քահանայական շնորհիւն, և փրկէր հացիւ զԵգիպտոս : Իսկ յորմէ հետէ մտին որդիքն Իսրայէլի անդ, մինչև յելսն, ոչ վկայի թէ մատոյց ոք պատարագ Աստուծոյ կամ քահանայացաւ. զի Մսրն կոչի մեղք. և 'ի մէջ մեղացըն սովորեալք նոքա ոչ լինէր հնար պատարագել Աստուծոյ. իսկ երևեալ շնորհացն երկնաւորաց և 'ի քաւութիւն մեղաց նոցա յորդեաց պարգևայն Աստուծոյ առատութիւնըն և մեծարեաց ողորմութիւնն Աստուծոյ զամենայն ժողովուրդն. քանզի քաւեցան նոքա դառն տանջանօք ապլիսագործութեամբն. վասն որոյ արժանացեալք առ հասարակ քահանայական պատուոյ, պատարագեաց իւրաքանչիւր ոք զգառն զատկին, տպաւորելով զշնորհսն որ տուաւ գառամբն Աստուծոյ ըլման աշխարհի, բառնալով զմեղս բազմաց. այն որ 'ի մէջ մեղաւորաց զենաւ և 'ի մէջ դըժոխոցն արար փրկութիւն արժանաւորացն. ուստի ոչ ինչ օգտեցան խաւարեալքն սըրտիւք այսու պարգևօք. անցին ընդ յանդունդըս, որպէս ընդ անապատ. և կերան ըզհաց քահանայական յանապատին յորմէ տանջեցան աններելի ախտացեալքն և տրտնջողքն անհաւատութեամբ, և այրեցան սակաւք 'ի բազմացն :

Իսկ 'ի յութսուն և հինգ ամին Մով- սէսի ընկալաւ Ահարոն զպատիւ քահանա- յութեանն յԱստուծոյ կոչեցեալ. և 'ի նո- մանէ առին որդիքն նորա և մատուցին յա- ճախապէս շնչաւորս և անշունչս, զի սպառ- կացին և ձանձրացին զանշահաւորն միշտ մատուցանելով, և կարօտասցին օգտակարին. և շնորհապարտք լիցին համառօտ և ձրի փրր- կողին. և թէպէտ ստուեր էր՝ սակայն զմտաւա- կան զԱստուած և զՔրիստոս՝ որ երկրորդ ան- գամ ծխեցին խունկս, և այն օտար հրով. զոր միանգամ օրէն էր ծխել սեղանոյն հրով քա- հանայապետին Ահարոնի, և ոչ երկրորդացն. և զայն կատարեալ էր հօր խուրեանց 'ի ժա- մու խորում։

Արդ կեցեալ Ահարոն յիւրում քահանայու- թեանն ամս երեսուն և ութ՝ կատարեցաւ. թողեալ զքահանայութիւնն Եղիազարու. որ և պաշտեաց զնա ամս քսան, փոխեաց զնա Փենեհէս ամս ութսուն, նախանձաւո- րըն Աստուծոյ. որ սուրբ ձեռօք զարժանա- ւոր զոհն մատոյց Աստուծոյ 'ի պիղծ կեն- դանեացն 'ի գործելն խորանին զԶամբրի և զԽասբիք։ Յետ սորա այլ (1) զԱբիսուէթ և մեք

(1) Հին օրի. Եւ պաշտեալ Եղիազարու զքահանայու- թիւնն ամս քսան, փո- խեաց զնա նախանձաւորն Աս- տուծոյ Փենեհէս. որ սպան զԶամրի և զԽասբի։

է. բայց Թէ քահանայուԹեան շնորհի եհաս, ասասցուք այն՝ զի եկեր զհացն առաջաւորուԹեան զքահանայականն. և Տէրն ստուգեաց զբան պատմուԹեանն որ կայ ՚ի գիրս Թագաւորացն Իսրայելի։ Բայց և զայս ևս գիտասցուք, եԹէ էառ զեպուդն զծածկոյԹս սեղանոյն արկաւ զիւրեաւ, և եհարց զՏէր. զի երկեաւ վասն քահանային և ոչ ետ՝ նմա հարցանել զի երդնուցու սուտ, և կամ ասելով զճշմարիտն մեռցի. այլ ինքն եհարց և ոչ մեղադրեցաւ. զի հայրն Քրիստոսի ոչ էր պատրա Թէ մնացէ ընդ օրինօքն իւրեւ զծառայ: Այլ և կարգեաց քսան և չորս դասս սաղմոսողաց. և երգել հրամայէր երիցս յաւուրն յերրորդ ժամուն և վեցերորդն և յիններորդն. զոր և արդ իսկ կարգեալ ունիմք ՚ի սուրբ եկեղեցիս:

Զկնի Սողոմոնի չփոԹեալ ցուցանեն ամենայն պատմուԹիւնք զօծ քահանայուԹեանն: Այլ մեք աշխատեալ գտաք Թէպէտ ոչ զքանիս ամացն՝ այլ զկարգն ստուգիւ զոր գրեմքս: Զկնի Սադովկայ՝ Աքարիայ. Սաղոմ. Սուսիա. Եղեկիա. Սիրիա. Ազարիա. Սադովկ. Աբիմելէք. Ասադովկ. Սադովկ. Աղարիա. Ահիմէէս. Աբիմելէք (1). Եղաղա.

(1) Մի օրի. Ահիմելէք: Մի օրի. Աբիմելէք:

Իսահակ. Յեսու. Իւսյուդ. Եղիսէ. Սողոմ. Յովկեղա հայր մարգարէի(1). Սամուէլ. Ա-մովսիա. Ազարիա. Անանիա. Շմաւոն. Սե-բորի. Յովսադակ. Ազարիա, որ յանդիմա-նեաց զՕզիա(2) թագաւոր. սմանք ասեն թէ սա է Զաքարիա որդին Բարաքեայ, որ վասն յանդիմանութեան թագաւորին սպանաւ ընդ մէջ տաճարին և սեղանոյն։ Նադաւ. Ուրիայ. Յովհաննէս. Անդիմաքոս. Անիա(3). Եզեկիա. Շմաւոն. Սիմէոն, սմանք զսմանէ ասեն բազմակեաց եղեալ և գգուեալ զՔրի-ստոս գրկօք. Ամարիա. Ազարիա, սա նախ քան զաւերն Երուսաղեմի գերեցաւ. և ե-կեալ ՚ի Սամարիա հրամանաւ Շաղմաշայ թագաւորին դնէր օրէնս և տայր նոցա ըզ-հինգ գիրքսն Մովսիսի. Ամուրիա. Աքիտու. Սադովկ. Քեղկի՝ հայրն Երեմիայ մարգա-րէի, որ եգիտ զերկրորդ օրէնսն. Սուրիա որ-դի Սամեայ քահանայց և մարգարէ, զոր սպան Յովակիմ արքայ. Սաղդի. Յովսեդէկ, որ գնաց ՚ի գերութիւն ՚ի չորրորդ գերու-թեանն Յուդայի ՚ի վերջնումն՝ յորում բար-ձաւ թագաւորութիւնն։

(1) Երկու օրի. հայր Երե-միա մարգարէին։

(2) Երկու օրի. զԱքազիա։

(3) Երկու օրի. Ոնիա, Ան-դիմաքոս։

Իսկ քահանայութիւնն ոչ բարձաւ 'ի գերութեան անդ. թէպէտ ոչ գոյր տաճար և սեղան, մասնաւոր ինչ առնէին քահանայագործութիւն. զի մի՛ չիջցի շնորհն այն մինչև 'ի գալ առաջնոյ քահանային, որ է Տէր մեր Յիսուս. զի ինքն իցէ առաջին և կատարումըն. որ ասաց ես եմ այբն և ես եմ քէ: Զկընի եւթն ամի գերութեանն սպանին զՅովսեդէկ քահանայապետ, և ութսուն իշխանս երեւելիս ընդ նմա 'ի տանէն Յուդայ. ըզՇիրիա(1). և զՍոփոնիա. և զԻուս որդին Յովսեդեկեայ. զի տակաւին յԵրուսաղէմ էր, ածին զնա 'ի Ռաբելաթն զկնի մահուան հօրն. բայց ոչ սպանին զնա. և 'ի դառնալն 'ի գերութենէ Հրէիցն, արձակեցաւ և եկն ընդ Զօրաբաբելի յԵրուսաղէմ. և էր քահանայապետ վկայութեամբ Աստուծոյ 'ի մարգարէս վասն նորա խօսեցեալ: Եւ յետ նորա Յովակիմ որդի նորա. յաւուրս սորա շինեցաւ տաճարն. Եղիաս որդի Յովակիմայ. Յովդայ՝ որդի Եղիայ. Յովհաննէս՝ որդի Յովդեայ. Յուդաս(2)՝ որդի Յովհաննու, առ որով Աղեքսանդր, որ զԱղեքսանդրիա շինեաց և եկեալ յԵրուսաղէմ Աստուծոյ երկրպագեաց և պատարագեաց. բայց գտի զանուն

(1) Մի օրի. զՇիրայ: (2) Երկու օրի. Յովդաա:

այսր քահանայապետին Նղբոմաքոս և ոչ Յուդայ ՚ի սոյնք օրինակս, զոր սպանին Սամարացիքն. Ոնիա որդի Եդդեայ. Շմաւոն որդի նորա. Եղիազար եղբայր նորա։

Զեղբայր սորա զՇմաւոն պարտ է ասել, որ եբարձ զՔրիստոս. քանզի առ Եղիազար առաքեաց Պտղոմէոս, և խնդրեաց զգրեանն և զԹարգմանիչսն, յորոց մինն եղբայր սորա էր. որ եկաց երկու հարիւր յիսուն և վեց ամ։ Սանաւէ. Ոնիայ՝ որդի Շմաւոնի եղբօր Եղիազարու. Յովսեպոս. Շմաւոն՝ հայրն Յեսուայ որ Սիրաքն կոչեցաւ. բայց առ սեն զՅեսու Սիրաքայ Թէ որդի կոչի կապելոյն. զհայր սորա հրաման ասեն առեալ ՚ի Հոգւոյն չտեսանել զմահ մինչեւ տեսցէ զՕծեալն Տեառն։ Ոնիա՝ առ որով Անտիոքոս պաշարեաց զԵրուսաղէմ. և առաքինացան բազումք. որ և զկնի տուաւ քահանայութիւնն Յեսուայ, որ Յասոնն կոչեցաւ՝ եղբայր Ոնիայ. և դարձեալ առեալ ՚ի նմանէ ետուն յՈնիայ՝ որ Մենաղոսն կոչեցաւ։ Յետ որոյ Յակիմոս ոմն առնու կաշառօք որ չէր յազգէ քահանայութեանն. վասն որոյ Ոնիա՝ Մենաղեայ որդին չոգաւ յԵգիպտոս, և շինեաց անդ քաղաք զԼմաւպօլիս. և ՚ի նմա տաճար նման տաճարին Երուսաղեմի յորում

աւուրս առաքինացաւ Մատաթէ ՚ի Մուղիմ որդւովք իւրովք. և Յակոբոս սատակեալ ՚ի Տեառնէ, քահանայանայ Յուդա Մակաբէ որդի Մատաթեայ. որ և սրբեաց և նորոգեաց զտաճարն յետ երրորդ աւերմանն՝ և արար նաւակատիս։ Յետ սորա Յովնաթանէս եղբայր նորա, և սպանաւ ՚ի Տրափոնեայ(1). ապա Շմաւոն եղբայր նորա և սպանաւ ՚ի Պտղոմեայ. և յետ նորա Յովհաննէս որդին Շմաւոնի, որ կոչեցաւ Հիւրկիանոս. և յետ նորա Արիստաբուլոս եղեւ քահանայապետ և աթագ եւս ՚ի վերայ քահանայութեանն. և ՚ի Յուդայէ մինչեւ ՚ի սա էին զօրապետք և քահանայապետք. և ՚ի սմանէ սկսաւ դարձեալ թագաւորութիւնն զկնի չորս հարիւր եւթանասուն և հինգ ամի բառնալոյն. և ՚ի մի եկին երկու աստիճանքն զի եկեալ հասեալ էր միածինն որ էր ճշմարտութիւնն։ Սա կալեալ զթագաւորութիւն ամ մի, ապանաւ յեղբօրէն Անտիգոնեայ. և սա զիշխանութիւնն միւս եղբայրն Յովհաննէս, որ կոչեցաւ Աղեքսանդրոս. և յետ նորա կալաւ կինն իւր Աղեքսանդրիա զերկոտասին աստեճանան և անարգեցան Հրեայքն. որ և յետ սորին եւս զքահանայապետութիւն Հիւրկիա-

(1) Մի օրի. ՚ի Զրիփոնեայ.

տնեայ որդւոյ իւրոյ, և զԹագաւորութիւնն միւս որդւոյն Արիստաբուլեայ. զոր և Պոմպէոս զօրավարն Հռոմայ կալեալ(1) տարաւ 'ի Հռոմ, և կացոյց 'ի տեղի նորա զՀիւրկանոս. և եկեալ զօրավարն Հայոց Բարզափրան(2) տարաւ զՀիւրկանոս գերի և եդիր փոխանակ նորա զԱնտիգոնոս եղբայր նորա: Եւ Հերովդէս երթեալ 'ի Հռովմէ(3) էառ զԹագաւորութիւնն և եկեալ յԵրուսաղէմ սպան զԱնտիգոնոս. և բարձան երկոքին աստիճանքն փառաւորք 'ի տանէն Հրէից:

Բանիւք և գլխոց աւուրց եկեալ 'ի գերութենէն Հիւրկանոս սպան և զնա Հերովդէս: Եւ ժողովուրդն ընտրեցին զՕսքարիս և զԱբիայ զի զմի ոք 'ի նոցանէ կացուսցէ Հերովդէս քահանայապետ. և կացոյց Հերովդէս զՕսքարիս քահանայապետ. բայց ոչ ետ նմա իշխանութիւն պատարագ մատուցանել. զի ոչ ունէր տալ նմա կաշառս: Եւ զի առաքեաց ժողովուրդն վասն հարկի երեւելի առնին քաւութեան, և արար զպատարագս նոցա. և լուաւ զաւետիս ծննդեանն որդւոյ իւրոյ Յովհաննու:

Եւ 'ի գալ ամսին յետ ծննդեանն Յովհան-

(1) Մի օրի. կալեալ: Մի օրի. Բարզափրանն:
(2) Մի օրի. Բարզափրի. (3) Մի օրի. 'ի Հռոմ:

նու, ըստ եղեւ Հերովդի թէ կատարէ Օւ-
քարիս զոմն Հրէից պատարագօք, քարկա-
ցաւ և եւ սպանանել զնա ընդ մէջ տաճա-
րին և սեղանոյն. և կացոյց քահանայապետ
զԱնանիէլ. ապա զՕւքի. ապա զՇմաւոն, զոր
ասացեալ եմք յառաջին գիրսն, և ապա զՆա-
նա և զԿայիփա, ամի ամի փոփոխելով զնոսա
կարասեաւ: Եւ այսպէս կացին մնացին օծ-
եալքն, մինչեւ եկն Օծեալն Աստուած:

Եւ թէպէտ ջանային Հրեայքն ակն-
ունել զօրէնսն. և անուանել քահանայս և
քահանայապետս, այն յանդգնութիւն էր,
և ոչ ըստ հրամանի օրինացն տուողին. որ
սահմանն եդ նմա և ոչ անցանէր. այն զի 'ի
ծննդեանն նորա բարձեալ էր ըստ Յակով-
բայ նահապետին, որ օրհնեաց զՅուդայ 'ի
դէմս Աստուծոյ Բանին Օծելոյ, և եդ զծիռ
ժամանակին երեւման ինքնակալ իշխանու-
թեանն, և բնաքար թագաւորութեանն ա-
նեզրականի և յաւիտենականի քաւչապե-
տութեանն. որ ոչ 'ի մարդկանէ այլ 'ի Հօրէ
և յանձնէ է փառաւորեալ. այն որ 'ի մօտ ե-
կեալ 'ի չարչարանս, զբարիսն զոր ետ Ադա-
մայ զերբեք աստիճանն, որ է 'ի փառս: Եւ ը-
բոլդութեանն պարգեւեալ 'ի Հօրէ և յՈրդ-
ւոյ և 'ի Հոգւոյն սրբոյ թագաւորութիւնն

քահանայութիւն և մարգարէութիւն, բաշխեաց զայն սուրբ Եկեղեցւոյ իւրոյ։

Զթագաւորութիւնն առաքեաց Աբգարու արքային Հայոց և Ասորոց. այն որ նախ քան զչարչարանսն առաքեաց նմա հաւատ. և մեծարեաց զնա բաժանակից արքայութեան իւրոյ. և ընկալաւ 'ի նմանէ երանութիւն և օրհնութիւն և սկիզբն լինել ըստ Քրիստոսի թագաւորութեան հեթանոսաց։ Իսկ զքահանայութիւնն եա սրբոց առաքելոցն յորժամ զաթոռն խոստացաւ, այլ և փըչմամբն և տալովն իշխանութիւն թողուլ ըզմեղս. և քանզի ամենայն քահանայ վասն մատուցանելոյ պատարագս կայ և ունի նիւթս պատարագի, և տէր զանձն մատոյց խաչիւն երկնաբերձ սեղանովն. և յաղագս գերադանցեալ գթութեան (1) իւրոյ առ մարդիկ աստուածային բազկօքն և կամաւ բաշխեցաւ յառաքեալս սիրով. և զնոյն եա յաւիտենական նւքօք ամենայն աշխարհի չենլի անծախելի և միշտ կենդանի. և այսպէս փոխեցաւ հինն 'ի նոր 'ի կատարման ստուերին 'ի վերնատանն խորհրդեան 'ի մեծի հինգշաբաթին 'ի հին զատկին· զորոյ զյիշատակն անմոռաց ունել հրամայեաց, մինչեւ եկեսցէ ինքն անե-

(1) Այլուր օրի. թագաւորութեան։

բեւոյթ աշխարհաւն և նորահրաշ կենօքն, և զգեցցի զեկեղեցի աստուածատեսակ զար-դուք զնա. և այնպէս աննիւթապէս և եւս միաւորաբար լիցի 'ի վայելս մարմնոյ իւրոյ եկեղեցւոյ յարագուարճ անվախճան կենօք։

Այսու երեւի ճոխութիւնն Սիոնի սըր-բոյս և նորոյս Իսրայելի. քանզի յանձն իւր փա-խեաց զպաշտօն պատարագին տէրն նորա սա-կալի և քառամնելի և անձառելի մնաց և զօրու-թեան բանի. և աստ կատարեցաւ խորհուր-դըն հայրենի և զկնաւորեցաւ. գաղափն է-առ շնորհ քահանայութեանն անսկզբնաբար յԱստուած կացեալ. և առ մեզ Աստուծով և յԱստուած կատարեալ։ Նա ոչ է այսու-հետեւ այլայլութիւն պատարագաց, և ոչ բազ-մութիւն քահանայից վասն մահու արգելման, և ոչ տաճար ձեռագործ և քահանային. այլ մի նոյն քահանայ և պատարագ և պատարագիչ և տաճար, որ 'ի Հոգւոյն կազմեցաւ. այլ և վերջինն է Երուսաղէմ, որոյ գաւիթ է նիւ-թականս այս եկեղեցի և աղօթարան և ճըշ-մարտութեան գաղափար. իսկ 'Ճշմարիտն ժողովեալ հաւատն է հանրական կաթուղի-կէ, որ ժողովէ զտիեզերս ամենայն 'ի մի խա-ղաղութիւն և 'ի մի յոյս կոչման 'ի մի կե-րակուր և 'ի մի վերարկու. և մի կարծիքն որ

տալ բազմութիւն մահապարտ քահանայից. քանզի հաւատան որ է եկեղեցի սուրբ, զայդ ոչ ուսուցանէ. զի ամենեքեան սոքա անդամք են միոյ անմահական գլխոյն. կարգեալ ըստ նմա յաւիտենական յուսով. և կենաց՚ի կեանս փոփոխումն՝ մահ ոչ է. և հետեւեալքն նովիմք պատկերեալք նոյնպէս պատարագաւ և իմանալի խորանաւ ըստ զանգի նոցա, և 'ի նմանապէս ձեռնադրեցին նովին առաջնորդաւ յաջորդեալք, ըստ զնոյն օթեվան 'ի փառս բարի և անեղանէն յարկինն երկնաւոր և գերափառ խորանին:

Իսկ Տեառն մերոյ և Աստուծոյ կատարեալ զքահանայութիւն ասենն Ադամայ կենսատուր խաչիւն և բռնաւորեր յարութեամբն, և համբարձեալ յերկինս հայրենի կացք ամբեղինք և կամ հայրաբուն զօրութեամբըն, կատարեաց և զերկնաւորացն սրբագործ քահանայութիւնն. քանզի նախ քան զախրական տնտեսութիւնն սարկաւագունս տայց զեօթն դիր. և թէ Դիոնեսիոս քահանայապետութիւն կոչէ զնոսա. յայտ է թէ 'ի Պօղոսէ ուսեալ ասէր: Եւ սուրբն Պօղոս յետ համբարձմանն խնացաւ զնոսա. և թէ նախ քան զանօրէնութիւնն եւս յիշէ զնոցա պատիւն. քահանայապետս մերս ոչ է այնք հակա-

ռակ. զի մեք ասացաք զզանազանութիւն փա-
ռաց նոցա թէ ունին առաւելութիւն 'ի դա-
սս և 'ի պատիւս. այլ և գոյ առաւելութիւն
պատուոյ 'ի սարկաւագունս, որ առ մեզ են.
քանզի ոմանք մերձ կան սեղանոյն և հայ-
րապետին. և այլք գրունս պահեն. են և
շնորհօք և գիտութեամբ զանազանեալք, որ-
պէս և անդ թարգմանութիւն կոչման ան-
ուանց նոցա՝ ուսուցանէ մեզ զգերազան-
ցութիւն և զառաւելութիւն ոմանց 'ի նո-
ցանէ, և զայլոցն խոնարհութիւն:

Արդ բազում փոյթ եղեւ մեզ ցուցա-
նել, եթէ ամենայն պարգեւքն Աստուծոյ
քահանայական շնորհիւ բաշխեցաւ և տը-
ւաւ վերնոց և ներքնոց, և կատարումն 'ի
Քրիստոսէ եղեւ հրեղինացն և հողեղինացս.
և թէ նախ առ մեզ և ապա առ վերինսն կա-
տարումն այս Աստուծոյն խորք և անզննելի
դատաստանին անծանօթութիւնք. ուստի և
մարդասէր անուն ժառանգեաց. զի ոչ եթէ
զհրեշտակաց բուռն հարկանէ, այլ զզաւա-
կէն Ադամայ. զի յայտնեսցի արդ իշխանու-
թեանց և պետութեանց, որ յերկինս են 'ի
ձեռն եկեղեցւոյ բազմապատիկ իմաստու-
թիւն: Ո՞չ ապաքէն երաշխաւորէ զմերս
բան աստուածընկալին Պօղոս զայս ասելով.

քանզի երկնայինքն մատուցանելով Աստուծոյ բանեղէն պատարագ զխաղաղութիւն ոչ ունին այնպէս սրբավայելուչ պաշտօն պատարագի որովք հաղորդեսցին Աստուծոյ, որպէս և արդ զՔրիստոսական խորհուրդս. և ոչ վայելէին յերևմանէ նորա որպէս և այժմ. քանզի 'ի համբարձման Փրկչին մերոյ Յիսուսի բազմապատկեցաւ խնդութիւն լուսեղինացն դասուց, և առ ինն առեալ ուղիղ փառաց քահանայական և քահանայապետական ըստ պատշաճի և ըստ չափոյ նոցա, և ըստ դասու առաւելութեանցն և սաստկութեանցն ըստ նոցա չափուն. զի որ գուցէ տացի և յաւելցի առաց տէրն. և որպէս յարմարական բնութեան նոցա տուաւ պատարագել 'ի տնտեսութեանն Յիսուսի խորհուրդ. դարձեալ և նոքա անմխութապէս հաղորդին անձառելի քահանայագործութեանն Քրիստոսի աստուածատեսութեանն և աստուածացուցիչ խորհրդոյն, որպէս և մեք ազատեալ ակն ունիմք 'ի հանդերձեալ կեանսն, ոչ հացիւ ցորենոյ, և արեամբ խաղողոյ կցորդիլ Աստուծոյ մերոյ Յիսուսի: Որպէս և այժմու կենօքս որ մեզ է անկաւոր, որով մարմնական կեանքս պահուի 'ի մեզ. և յորմէ գոյաւորի 'ի մեզ արիւն. այսու յարե-

նամբ յանմահական կենդանութիւնն (1)։ Քրիստոսի. զի որպէս յետ յարութեանն եկեր և արբ ընդ առաքելոցն զայս. պաշտելի հաց և գինի. արբցէ և յարքայութեան անդ՝ նոր պատճառ միաւորութեան ընդ մեզ, որպէս և ինքն խոստացաւ անսուտ բանիւն. սակայն թէպէտ և է մեզ անիմանալի և անասելի երկնաւորացն քահանայութիւնն և քահանայագործութիւնն, բայց անփոխ են ասացեալքս ՚ի սննդենէ հոգեշունչ բանից։

Այլ և չէ անտեղի աստ զերիս երրեակ քահանայապետութիւնս նոցա։ Զառաջինոյն քահանայապետս և զերկրորդն քահանայս և զերրորդն սարկաւագունս. քանզի ամենայն զգալեաց իմանալի յարացոյց արժան է իմանալ ըստ բանին, որ ասացաւ առ Մովսէս, տեսջիր և արասցես զամենայն ըստ օրինակին, որ ցուցաւ քեզ ՚ի լերինն. և Մովսէս զգալի ինչ ոչ ետես, այլ իմանալի անմարմին աչօք լուսաւորեալ ՚ի Տէր. քանզի առ մեզ երեք են կատարելոցն դասք եպիսկոպոս և քահանայ և սարկաւագ։ Իսկ պատրիարքն աւելի միայն իշխանութեամբն է և պատուով հրամանին. և ոչ եթէ յատուկ ձեռնադրութիւն ունի և շնորհի առումն։

(1) Մի որի. ներկայութիւնն Քրիստոսի.

Են և ինն աստիճանք յօրինեալք առ մեզ, ըստ իննեակ դասուցն վերնոց. և է իմանալ զնոսա զանազանս փառօք ըստ դասուցն կարգի, որպէս և առ մեզս. և է եւթն քահանայագործութիւն տեսանել՚ի սուրբ եկեղեցւոջ ըստ եւթնեկի (1) շնորհաց Հոգւոյն սրբոյ։

Ա. Եպիսկոպոսն՝ որ է տեսուչ լման եկեղեցւոյ. և կատարէ քահանայս։

Բ. Եւ որ ունի պատրիարքութեան իշխանութիւն՝ որ է կաթուղիկոսութիւն, որ կոչի ամենակալ, նա կատարէ զեւղն օծութեանն, և ձեռնադրէ եպիսկոպոս։

Գ. Իսկ քահանայն որ կոչի հարուստ. որ է փարթամ հոգևոր շնորհիւն և սրբութեամբ մարմնոյն և գթութեամբ խնամոց առ հօտսն։

Դ. Առնէ պատարագ արժանաւորապէս և մկրտէ զմանկունս և օծանէ եւս։

Ե. Բայց լաւ իցէ թէ եպիսկոպոսն օծցէ։

Զ. Եւ այս եւս վեցերրորդ քահանայագործութիւն է յեկեղեցւոջ թողութիւն տալ մեղաց խոստովանողին, որ Աստուծոյ միայն է սեպհական թողուլ զմեղս. զոր կոչէ արժանաւոր և գիտուն խոստովանահայրն

(1) Մի ձեռ. ըստ վեցեկի շնորհաց.

զՀոգին սուրբ առ ինքն, և նովաւ թողուլ յանցաւորին :

Է. Քահանայագործութիւն յեկեղեցի ձէթ օրհնել յօծումն հիւանդաց առ ժամն. զոր կարէ օրհնել քահանայն ըստ Փրկչին օրինակի :

Զի սահմանեալ է զայս և ըստ կանոնացն Յակոբայ եղբօր Տեառն. զի և այս ոչ է առանց Հոգւոյն սրբոյ, որ կարող է բուժումն առնել ցաւոցն և մեղացն թողութիւն. և թէ մեռանիցի հիւանդն բաւական է նմա յօծումն թաղման ըստ մեծին Դիոնիսեայ, զոր գրեաց հրամանաւ առաքելոցն :

Եւ զայս ամենայն կարողութիւն զոր գործէ քահանայն, ունի գերագոյնն քահանայապետ. որոյ հրամանաւ կատարին ասացեալքս. զի նախ նա կատարէ զսուրբ խորհուրդն և տայ իշխանութիւն քահանայիցն, զոր ձեռնադրէ զնոյն առնել. և նորընծայ քահանայից արժան է իւրեանցն ձեռօք առնուլ զհաղորդութիւնն իսկոյն, զի երեւեսցի պատիւն զոր էառ և զատեալ ՚ի ժողովրդականութենէ և ՚ի սարկաւագութենէ. յայս եւթն զօրութիւն Հոգւոյն տուն իմաստութեան յեցեալ կայ. որով հաստատեցաւ աշխարհ աւուրբք եւթամբք յոչէից գոյացեալ.

սոքօք կործանի պարիսպք դժոխոց. որով զօրութեամբ յօրինակ այսորիկ հալեցան պարիսպքն Երիքովի շուրջ եկեալ զնոքօք զեւթն օր։ Եւ զեւթնօրեայ արարածոցս լինելութիւն, յեւթն փողն երգելով եւթնիցս յեւթներրորդումն աւուրն, եւ 'ի բանի անդ, թէ հանգեաւ Աստուած յաւուրն եւթներրորդի, անկանէին պարիսպքն ադամանդեայք եւթնեքեան. այս է եւթն աչք, որ հայէին ընդ ամենայն երկիրս. եւ այս բազումս ունի զարդարիչս մեկնութիւնս, որ կամիցի սոքօք իմաստասիրել։ Իսկ մեք եկեսցուք այսուհետեւ յոտն կարգին մերոյ։

Արդ յետ համբառնալոյն Տեառն Հրամանաւ Հոգւոյն սրբոյ եւ եկելութեամբ նորին՝ կարգեցան առաքեալքն քահանայապետս աշխարհի յաւուրն սուրբ Պենտեկոստէին. եւ առաջին եպիսկոպոս եկաց Երուսաղէմ Քրիստոսի եղբայրն Յակոբոս. Եւ հինն էանց եւ եղեւ ամենայն ինչ նոր. եւ արար զառաջինն պատարագն Յակոբոս բաշխելով զքրիստոսական մարմինն ընկերաց իւրոց եւ այլոց հաւատացելոցն կերակուր անապականն եւ պտուղ անմահական 'ի կենդանի տնկոյն, ուստի զրկեցաւ հաւատակիցքն մեր Ադամ. եւ եղեւ սկիզբն նիւթեղէն եկեղեցւոյս վե-

նատուհն և այս աշխարհամատուռն. և ըն-
կլիզըն հեթանոսաց մկրտութեան 'ի նոյն ա-
ռաջին ամին ներքինին Քուշայի, որում Փի-
լիպպոս քարոզեաց փոխմամիւս անուն, որ
և նա սկսաւ զքարոզութիւն Քուշայեցւոցն
հաւատալ աւետարանին:

Եւ սուրբն Թադէոս եւ կանխագոյն քան
զայլսն 'ի վիճակի իւր 'ի Հայս, և մկրտեաց
զնորընծայ Թագաւորն հեթանոսաց Աբգար
սկիզբն հաւատոյ ամենայն Թագաւորաց. և
լուսաւորեաց զՀայս և զԱսորիս, և կատա-
րեցաւ յԱրեւելս 'ի Սանատրկոյ Թագաւորէ
Հայոց, Թողլով անդէն զգեղարդն և զփշե-
ղէն պսակն և զեւղն օծման 'ի Բրխատուէ
տուեալ, զոր ընդ ինքեան ունէր:

Իսկ Յակոբոս եղբայրն Յովհաննու 'ի
նոյն ամի գնացեալ մինչեւ 'ի Սպանիա յա-
րեւմուտս կոյս, քարոզեաց անդ զբանն կե-
նաց. և ձգեցաւ բուռն խաչին 'ի Թադէէ և
'ի Յակոբայ յարեւելս և յարեւմուտս. և
դարձաւ անդրէն Յակոբոս յԵրուսաղէմ,
և կատարեցաւ 'ի ձեռն Ագրիպպայ, սրով
զգլխատ հատեալ: և ընկեցեալ զմարմինն
'ի ծովն տարան զնա ալիք ծովուն 'ի վիճակն
իւր 'ի Սպանիա. զոր և Պօղոս առաքեալն 'ի
գնալն իւր իմացոյց 'նոցա զամենայն ինչ, և
հաստատեաց անդ եկեղեցի:

Իսկ սուլթան Անդրէաս գնացեալ 'ի Սն-ջերկերեայս յԱսիա և 'ի շանագլուխս քարոզեաց անդ. և նմա կոչի աթոռն Ասիոյ զառաջինն. մինչեւ յետ երկոտասան ամի չոգաւ անդ Յովհաննէս աստուածաբան 'ի փոխման Մարիամու Աստուածածնին. և ապա նմա առացաւ վիճակն։ Իսկ Անդրէի անուանեցաւ կոստանդնուպօլիս որ 'ի Թրակիա, զի և անդ քարոզեաց նա. և անցեալ 'ի Սպարտա Ելէլադացւոց կատարեցաւ խաչիւ յԵգիատեայ իշխանէ։

Իսկ սուրբն Թովմաս երթեալ 'ի կողմն Սաբայ եմուտ 'ի ներքսագոյն Հնդիկս, քարոզեաց անդ և հաստատեաց եկեղեցի. եւ կատարեցաւ 'ի թեմն որ կոչի Չոլխանդ. և առաջին մայրաքաղաք է անդ, որ Ալինջն անուանի, որ է մեծանիստ. և այժմ կայ գերեզման նորա 'ի Չուձր մեծաշահ քաղաք. և անուն երկրին Չոլխան կոչի։ Եւ այսպէս մակագրի խոստոյնակ խաչին 'ի Հիւսիս և 'ի հարաւ։

Ի նոյն կողմ Թովմայի չոգաւ սուրբ Բարդողոմէոս և եմուտ յաշխարհ Սոդուց, և քարոզեալ անդ դարձաւ 'ի Հայս 'ի վիճակն Թադէի. և հաստատեաց անդ եկեղեցի. և կատարեցաւ 'ի ներքին Հայք 'ի նոյն

Թագաւորէն Սանատրկոյ․ Թողլով անդ որպէս ասեն երիս հատս մանանոյ զոր ունէր ընդ ինքեան։

Եւ Յուդայ Յակովբեան և Սիմէոն եղբայր նորա, և նոքա կատարեցան ՚ի Հայս։ Իսկ Սիմէոն կանանացի ՚ի հարաւ աշխարհի քարոզեալ կատարեցաւ։ Իսկ Մատաթիա փոխանն Յուդայի ՚ի Միկկլեա երթեալ քարոզեաց․ և անդէն վկայեաց։ Եւ սուրբն Փիլիպպոս առ ծովեզերեայս շրջեալ կատարեցաւ․ առ սահմանօքն Անտաքայ ՚ի Մնբէճ, որ նա ինքն է Յարապօլիս որ կոչի քաղաք քահանայից։

Եւ սուրբ առաքեալն Յակովբոս Ալփեայ քարոզեալ ՚ի Միջագետս առ Ասորոց կատարեցաւ ՚ի Սրուճ ՚ի փառս Աստուծոյ (1)։

(1) Հին օրի․ Պետրոս ելեալ յԵրուսաղեմէ եկն յԱնտիոք աշակերտելով ՚ի ճանապարհին զհեթանոսս զերկուս ամս յամելով ՚ի գաւառն։ Եւ յԱնտիոք եդ հիմն եկեղեցւոյ, և ձեռնադրեաց եպիսկոպոս զԵւոդիոս։ Ասեն թէ զՎարշամակ Տեառն ունէր, և զայն արկանէր ՚ի վերայ գլխոյ ձեռնադրելոցն և տնօրինեաց զաշակերտեալսն քրիստոնեայս։ Եւ եդ անդ աթոռ, և գնաց ՚ի Հռովմ․ և կատարեցաւ ՚ի Ներոնէ Պօղոսիւ համանգերձ․ յերեքտասան ամի թագաւորութեան նորա ՚ի Մայիսի 29։ Եւ Անդրոնիկոս ասէ թէ ՚ի 23ն Քանանուն։ Եւ զկնի Պետրոսի եկաց եպիսկոպոս ՚ի Հռովմ Լինոս առաջին եպիսկոպոսն՝ մետասան ամ։ Եւ յԵրուսաղէմ զկնի Յակովբայ Շմաւոն Կղէովպեանց ամս քառասուն երկու։

Նատանոր դիցուք զբան Տեառն մերոյ Յի-սուսի Քրիստոսի զաբարչականն որ ասաց ց-Պետրոս. դու ես վէմ հիման Սիոնի. և յայդր վէմս շինեցից զեկեղեցի իմ. և յանձնեաց նմա երիցս զհօտն իւր արածել կենսաբեր արօտիւ. և կալ մնալ արժան է տէրունական հրամանին, ըստ որում եկեալ 'ի Պաղեստինէ սուրբ առաքեալն Պետրոս ընդ Փիւնիկէ ընդ Գերմանիկեցւոց աշխարհն քարոզութեամբ աւետարանին, և մտեալ յԱնտաք ե հար նի-զակաւ Հոգւոյն զապստամբն սատանայ, որ մտեալ էր անդ, և սպար զնա հալածական, և էարկ անդ հիմն եկեղեցւոյ. և անուանեաց անդ զաշակերտեալսն Քրիստոնեայս. և ձեռ-նադրեաց անդ եպիսկոպոս զԵւոդիոս, եւ հաստատեաց զնա յաթոռ:

Եւ երթեալ անտի գնաց 'ի Հռովմ նա-խաթոռ ամենայն Եւրոպիոյ. և շինեաց անդ զեկեղեցիս և ձեռնադրեաց անդ ե-պիսկոպոս զԼինոս: Նոյն ասեն եդիտ զնա Պօղոսի ձեռնադրեալ, և հաստատեաց ընդ նմա. ասեն եթէ կրէր ընդ ինքեան զվարշա-մակն Քրիստոսի և պնու դնէր ձեռս 'ի գը-լուխս ձեռնադրելոցն: Եւ զկնի Կլինոսի Բասեղոս յաջորդեաց զաթոռն սուրբ: Իսկ սուրբն Պետրոս առաքեաց 'ի Հռովմէ զՄար-

կոս աւետարանիչ 'ի նախաթոռ քաղաքն ամենայն Եգիպտոյ Աղեքսանդրիայ . որ և անդ հաստատեալ եկեղեցի և նախաթոռութիւն. և որպէս ասէ սուրբ հայրն Նիկողա[1] 'ի խնդրոյ թագաւորին Աւձերի յաղագս նախաթոռութեան , եթէ բաժանեալ է ամենայն աշխարհ յերիս մասունս Ասիա , Եւրոպիա , 'ի Լիբեայ , վասն երից որդւոյն Նոյի , որք ժառանգեցին զերկիր միայն :

Եւ զի նախ քան զայլսն 'ի Պետրոս յանձնեաց Տէր զհօտն հեթանոսաց պարտ էր նմա սահմանել յամենայն հաստածս երկրի սուրբ եկեղեցի զոր և արարն իսկ : Ասիա եդ զաթոռըն Անտիոքու . Եւրոպիա զաթոռն Հռովմայ , և 'ի Լիբեայ զաթոռն Աղեքսանդրու 'ի ձեռն աշակերտին իւրոյ Մարկոսի :

Արդ ունի աշխարհն Հռովմ զամենայն արեւմուտս մինչեւ ցԻւզանդիա յարեւելս կոյս և ամենայն կղզիս , և զաշխարհ Սպանիայ և զմեհագոյն նորա զԳալլիա , որ կոչի Իտալիա և եւս մեհագոյն զԻւրիտանիան և այլ բազումս : Իսկ Անտիոք ունի զամենայն արեւելս որ մինչև ցայժմ կաթուղիկոս ձեռնադրէ . և առաքէ 'ի Խորասան , և 'ի Պարս և 'ի Բաբելոն և Եւրկինոյպօլիս , որ է քաղաք

(1) Երկու օր. Նէղոս :

խաղաղութեան . ունի և զՀայս և զՎիրս և զԱղուանս ։ Եւ Աղեքսանդր ունի զամենայն Լիբէացիս զԵւթովպիայ և զՀնդիկս մինչև ՚ի Սարմարիտոն ։

Իսկ զի ՚ի հինն ունէին քաղաքս այսոքիկ անուանս պատուոյ , եղան կոչմունք նոցա ՚ի վերայ եպիսկոպոսացն . Հռոմ պապ կոչէր յԵւրոպիայ. նոյնպէս և յԱղեքսանդրիայ պապ անուանէր . և Անտիոք պատրիարգ լինէր կոչեցեալ ։

Եւ այսպէս կոչին աթոռակալքն պապ Հռովմայն՝ որ ասի երէց. նոյնպէս Աղեքսանդրուն . և Անտիոքուն պատրիարգ՝ որ է նախահայր . բայց ՚ի սոսա նախապատիւ է Հռովմայն յՕգոստոսէ հետէ , և ոչ ՚ի Պետրոսէ . որպէս Լատինքդ կարծեն . զի թէ այդպէս էր , առաջ նախ Անտիոք է պատուելի . զի անդ առաջին ձեռնադրութիւն արար Պետրոս ։

Եւ զինչ պիտոյ է ասել զԵրուսաղեմէն, զի քահանայապետն Որիասոս անդ խաչեցաւ , և քանզի հեռագոյն են ՚ի միմեանց աթոռքս , հարկ եղեւ ՚ի մէջ աշխարհաց և գաւառաց զմայրաքաղաքաց եպիսկոպոսս պատուել . զի նոքա ՚ի պատրիարգացն ձեռնադրեալք այլոցն՝ առաջնորդեսցեն մերձակայեցըն ՚ի հարկաւոր պէտսն . վասն որոյ կոչեցան

Մետրապօլիտայք ։ Եւ վասն արքունական քա-
ղաքացն որոց իշխեն, արքեպիսկոպոս լինին
կոչեցեալք ։

Իսկ յորժամ եղեւ մեծ սինհոդոսն ՚ի Նիկիա, պատշաճ համարեցան հայրապետքն պատուել զԵրուսաղէմ՝ վասն սրբոյն Յակոբայ, հաւասար երից աթոռոցն. եւ կոչել զեպիսկոպոս նորա պատրիարք, եւ զատանել ՚ի վիճակէն Աղեքսանդրու. եւ տալ նմա Մետրապօլիտս եւ եպիսկոպոս. քանզի նախ Երուսաղէմ ընդ ձեռամբ Աղեքսանդրու էր յորժէ յաւերմանէն հետէ Հռովմայեցւոց, որ շինեցաւ յԱելիանդրիանու Թագաւորէ. որ կոչեցաւ Ելիուպօլիս. եւ եմուտ Երուսաղէմ ընդ իշխանութեամբ Կեսարու, Պաղեստինեայ Մետրապօլտի. քանզի զկնի աւերմանն ձեռնադրեաց Երուսաղէմի եպիսկոպոս Մետրապօլիտն Կեսարու. եւ յորժամ պատրիարք եղեւ յԵրուսաղէմ, ձեռնադրեաց զձեռնադրողն իւր զԿեսարացին ։

Եւ քանզի պարտ էր մարմնոյ եկեղեցւոյ կատարեալ լինել զգայարանօք, զի ամենայն մարմին կատարեալ կենդանի ընդ հինգ զգայութեամբ է. վասն այնորիկ զԿոստանդնուպօլիս որ ընդ Հռովմայ իշխանութեամբն էր եւ Հերակլեայ Մետրապօլտեան ձեռնադրէր. նմա

եպիսկոպոս, յորժամ եղեւ ժողովն առ Թէոդոսիւ՝ պատուեցաւ Թագաւորեալ քաղաքն և եղև պատրիարգարան և զատեաւ ՚ի Հռովմայ. և յոլով մասն Ասիոյ եմուտ ընդ իշխանուԹեամբ նորա. քանզի Թէպէտ Կոստանդիանոս Նոր Հռովմ կոչեաց զքաղաքն իւր, և զաւետարանչին զՅովհաննու զերեզմանն անդ կամեցաւ փոխել և աԹոռ կոչել զնա. այլ ոչ հաստատեցաւ մինչեւ ցայնժամ որ առաջաքըն առ Թէոդոսիւ։

Այլ և յանուն աւետարանչայն սմանք դնեն զաԹոռքս այս. զՀռովմայն՝ Ղուկայ կոչեն. և զԱնտիոքայն՝ ՄատԹէոսի, և զԿոստանդնուպօլսին՝ Յովհաննու։

Բայց Ղուկաս որդի Կոստանդեայ Սուրբ և մօր յունի յԱնտիոք գրեաց զաւետարանն և տեղին յայտնի է հաշակեալ եկեղեցին ուր գրեացն. և ՄատԹէոս յԵրուսաղէմ գրեաց. և Յովհաննէս ՚ի Պատմոս, ընդէ՞ր ուր գրեցան չեղեն աԹոռք, և նոքօք կոչին։

Սակայն երկոտասան առաքելոցն աԹոռս խոստացաւ Տէրն ՚ի հանդերձեալն. աստէն ընդէ՞ր ոչ մանաւանդ կալցին աԹոռս. այլ ըստ տասցեալ խորհրդեանց յօրինեցան աԹոռք. Գիտել արժան է և զայս զի են յարեւելս մեծամեծ և փառաւոր իշխանուԹիւնք՝ զոր մեծ

Հայք կոչեմք որ է սրբազան աթոռ և ազատ և ինքնագլուխ. որ ունի ընդ ինքեամբ բազում մետրապօլիտս և եպիսկոպոսս յոլովս, և ոչինչ վճարէ յաթոռն Հռոմայ որպէս և ամենայն պատրիարգունք երկրի. և ոչ առնուն ձեռնադրութիւն ուստեք, և ոչ ՚ի Հըռոմայ որպէս և այլքդ. քանզի պատուեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի՝ և մանաւանդ ասացեալ սուրբ առաքելոյն որք անդ կատարեցան. և վասն այնորիկ նոցա կաթուղիկոսն յիւրոց եպիսկոպոսացն առնու ձեռնադրութիւն մինչեւ ցայսօր ժամանակի. և է պատուական և արժանապատիւ աթոռ. որպէս և կղզին Կիպրոս. զի և նա ինքնագլուխ է և ոչ ումեք հնազանդեցաւ. քանզի գտեալ եղեւ անդ գերեզմանն Բառնաբայ, և ՚ի վերայ սրտին աւետարանն Մատթէոսի։

Եւ ինքնագլուխ և արքեպիսկոպոսն Բուլղարաց. քանզի Բուլղարք ոչ են բուն Բուլղարք, այլ քանզի Բուլղարինոս ՚ի նոյնն տիրեաց, յանուն նորա կոչեցան Բուլղարք. և յաղագս յաղթող թագաւորութեանն ոչ ումեք հնազանդի արքեպիսկոպոսն նորա, այլ յիւրոցն առնու ձեռնադրութիւն որպէս և Հայոցն մեծաց։ որ թէպէտ Վասիլ կայսրն ծիրանածին հնազանդեաց զնոսա, այլ ոչ թա-

զԻն զպատիւ աթոռոյն իւրեանց. և ոչ եկաց այնր հակառակ, զի ոչ վնասէր ինչ հաւատոյ սրբութեան:

Արդ այսպէս կարգ քահանայութեան Տեառն մերոյ Յիսուսի տարածեցաւ ընդ աշխարհս ամենայն. և է մի քահանայութիւն և ոչ բազում. զոր սահմանէ աւանդն հաւատոյ ուղղափառութեան, զոր կարգեցին առաքեալքն, և աւետարանիչքն գրեցին և աւանդեցին, և Հոգին սուրբ կնքեաց և կատարեաց:

Իսկ արմատն(1) չարութեան ոչ կարաց հայել հրացեալ աչօք և նախանձախտոյ ոտիւք. վասն որոյ ոչ դադարեաց ատել զմիեղենութիւն սուրբ եկեղեցւոյ, և հնարել պատճառ քակման զէն առեալ զոմանց իշխանասիրութիւն. և զկիսոց ագահութիւն, և զայլոց ընդդարձակութիւն և զմարմնասիրութիւն և զոմանց զախտասիրութիւն, և որոշեաց այսոքիւք զանդամս Քրիստոսի, և արար պատերազմ ՚ի տան միում և ՚ի մարմնի միում, և ընդդէմ ամենայն բարութեանցն Աստուծոյ զոր արար ազգի մարդկան. եդիտ նա հակառակ սիրոյն զատելութիւնն, և խաղաղութեան՝ զպատերազմն, և խոնարհութեան՝ զհպար-

(1) Ոմանք կամամարտն:

տութիւնն, և չափաւորութեան՝ պատուե-
լատացութիւնն, և ճշմարտութեան՝ զկեղ-
ծաւորութիւնն, և լուսոյ՝ զխաւարն, և կե-
նացն՝ զմահն, և այսոքիւք որոշմամբ փարթա-
մացեալ մշակն անօրէնութեան որ կոչէ ան-
վաստակ զերկինս և զերկիր, և որ այլ ևս
հրաշալին է զանհատականն անդունդս. որք են
խորութեան խորոցն Աստուծոյ ըմբռնմունք
(այսինքն է) հաւատոյն վարժմնալեք որով
զարդարի սուրբն Սիոն, և պարծի 'ի փառս
անզուգականս. զոր ջանաց շարժել զօրու-
թիւնն ապստամբ. և թէպէտ զիրքն ոչ կա-
րաց խախտել, զի աստուածապատուէր(1) էր,
սակայն զբազումս 'ի բաց տարաւ 'ի նմանէ. և
կապտեաց կողոպտեաց և արար ծաղր, և ամօ-
թալից. և ոչ սակաւ շարժեաց արտաքուս և նա-
խանձ առողջից մնացելոց եղբարց որք ցու-
ցին մեծ հանդէս նովին հաւատով խրախու-
սեալք յԱստուած. և ձայն տուեալ միմեանց
սպառազինեցան աւետարանական պատրաս-
տութեամբն, և ամենայն զօրութեամբ ջա-
նացան անդրէն դարձուցանել զհեռաց-
եալսն 'ի կենաց, այսինքն ասեմ զմեծ Սիւն-
հոդոսն ըստ թուոյ կենդանարար Երրոր-
դութեանն, զՆիկիայն, զԿոստանդնուպօլսին

(1) Երեք օրի. աստուածարկու.

զՆեփետոսին, որ թէ զկորուսեալն ոչ կարացին գտանել, զի գիրն լցցի 'ի վերայ կամախոտոր կործանելոցն, այլ զկացեալսն 'ի փարախն Յիսուսի և զշինուածն որ ունի զհիմն, 'ի զգուշութիւն պահեցին և պահեսցեն. որպէս և է տեսանել զլծութեամբն Աստուծոյ ըստ յուսոյ և փառատակոց հարցն մերոց ոչ սակաւաթիւ զմնացեալսն յերախտիսն Քրիստոսի և զաշակերտեալսն կեցուցիչ հաւատովքն ։

Եւ ահա ամենայն Եգիպտոս և Բուշացիք և Հնդկաստան աշխարհք և քաղաքք մեծամեծք որպէս Պանիան, Պուրշաւր, Խազնի, Լահուր, Խմշիր, Պանկլուր (1), Տելուլ, Սումնաթա(2), Բամթայթ, Պլատրա որ հարիւր հազար գեւղ ունի, Շաքմիքն, որ երկու հարիւր հազար գեւղ ունի, և այլք քաղաքք մինչև 'ի Սելան կղզին. որ ասեն թէ զԱդամ հանեալ 'ի դրախտէն Աստուած՝ անդ բնակեցոյց զառաջինն. և այլ աշխարհք ընդարձակք ուր հերձուածչարութեան ոչ եմուտ. և որպէս յառաջին գիրսն ցուցաք թէ քսան եւ չորս դերատ է աշխարհս, և տասն և վեց դերատն նոքա են. որ կրեն յուղղափառութեան, և ամենայն Յակոբիկ Ասորիք և ամենայն

(1) Մի օրի. Պանկլար։ (2) Մի օրի. Սումնաթա։

Հայք զոր պահեաց շնորհն Աստուծոյ 'ի սահման հաւատոյ ուղղափառութեան կրօնից. և այսօր քահանայութեան և քահանայապետութեան և հայրապետութեան աթոռք արկեալ են 'ի նոսա, յաջողեալք ողորմն Տեառն զօրութեանց 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Յորս և լիցի քաղցր ողորմութեան Աստուծոյ մարդասիրին պարգեւքն, և արժանիս արասցէ մասին որոց իւրոց հաւատոց և գործոց որ այսպէս դաւանեմ։

## Դաւանութիւն Միխայէլի պատրիարքի Ասորւոց։

Դաւանեմ զնա, սուրբ և զուգափառ Երրորդութիւն աներբ և անուր անսկիզբն և անվախճան և միշտ անկարօտ և բնրկրեալ յամենայն կատարեալ բարւոք իմացեալ, զոր բնաբար ունի, և աննուազաբար տայ կարօտիցն ինքն ունելով զամենայն. Երրորդութիւն կատարեալ անճառելի և աննուազ՝ անճամբ բաժանեալ. և է զի անուամբ և 'ի միութիւն կացեալ և կայ փառաւորեալ և փառաւորի 'ի բնութեանն յաստուածութեանն և 'ի զօրութեանն և 'ի կամսն յիմաստութիւնն

’ի գործն ’ի մեծութեանն և մանաւանդ յանհասութեանն և յանասելի ողորմութեանն, յոր հաւատամ յայսմանէ և ’ի սիրոյ եկեալ միոյն անձամբ չափ ’ի կոյսն, որ սուրբ էր հոգւով և մարմնով, և ’ի պատճառս փրկութեան մերոյ մարդացեալ ’ի նմանէ սահմանաւ բնութեանս մերոյ հոգի, շունչ, միտք, մարմին, որ ինչ և է կատարեալ մարդ մեղուցեալ բնութիւնս Ադամայ ուստի, Մարիամու էր, զոր առեալ Աստուած գործեաց առանց շփոթման և այլայլման անփոփոխ լուսոյն ճառագայթն զփոփոխականութիւն և զապականութիւն բնութեանս որքեալ անփոփոխ և անախտ գործեաց զթանձրութիւնն պահելով. և ոչ յանմարմնութիւն դարձուցեալ, և ոչ զանմարմին աստուածութիւնն ’ի մարմին շրջեալ. այլ որպէս ոչ գոյ ասել և ոչ իմանալ միաւորեալ քան զամենայն օրինակ խառնման նոր և չքնաղ խառնուածս: Վասն որոյ մինն որ յէութենէն Հօր առ ’ի կուսէն զմերս գոյութիւն, մնաց միածին մի որդի մի անձն մի Քրիստոս: և ճըշմարտապէս մի բնութիւն, մի կամք, և մի ախորժակք, մի գործ, մի ծնունդ կուսութեամբ, մի մայր առանց Հօր որ և նախ քան զյաւիտեանս առանց մօր ծնեալ: Նա խոստո-

վանիմ զմայրն Էմմանուէլի Աստուածածին մինչեւ յաւիտեան . և զԷմմանուէլն Աստուած մինչեւ յաւիտեան նովին մարմնովն . և որ զհետ ծննդեանն եկն զամենայն անօրինականն խոստովանիմ գործ Աստուծոյ. զխոնարհագոյնսն զբարձրագոյնսն և զկիրսն անքամբաւելի, զոր վասն մեր կրեաց , ոչ բաժանեմ, այլ մի յատուկ ասեմ 'ի Տէրն իմ, և ոչ իմանամ շփոթումն : Այլ նզովեմ զխմացողն և զասողն շփոթումն :

Այլ նոյնպէս զկիրքն խաչին խոստովանիմ Աստուծոյ խաչ և մահ . ոչ էական բնութեանըն ասեմ մահ կամ 'ի մարմնոյն բաժանումն , այլ զիմ բնութիւնն միացեալ յաստուածութիւնն և աստուածացեալ Աստուած խոստովանիմ , որով մեռաւ անմահն զբանականն հոգին աւանդելով 'ի ձեռս հօր . աստուածութիւնն ոչ բաժանեալ 'ի մարմնոյն և 'ի հոգւոյն միաւորեալ անքակելի. ըստ որում և զդժոխքն աւերէր հոգւովն և զմահ սպանանէր. և մարմինն լուծանէր զապականութիւնն , որպէս զԱստուած և զԱստուծոյ մարմին ընդ ամենայն գերեզմանս արձակելով ճառագայթս , յարուցանելով զքաղուածս , փխտելով զաւամանեալ ժամանակն 'ի լանջս երկրի հզօրագոյն թուովն յառնէր ոչ միայնաքար ըստ

Յովհաննու 'ի ձկանէն, այլ լռմամբ հոգւոյն մահականուլ, որ յԱդամայ 'ի դժոխսոց եւ յոլովիւք մարմնովք հողացելովք 'ի գերեզմանացս ելանէր յերկինս կուսութեամբ անլոյծ կնքոյն 'ի գերեզմանէն, որպէս յարգանդէն Մարիամու. եւ վերացեալ մտանէր յերկինս կուսութեամբ անձեղքելիս՝ որպէս 'ի վերնատունն դրամբք անբացիւք. զի յայտ լիցի եթէ 'ի վեր է քան զբնութիւն մարմնոյ. զի մարմնոյ բնութիւն մահկանացու ապականացու եւ ախտալի եթէ յատկացի ըստ ինքեան, եւ ընդ մարմին ոչ կարէ մտանել անծանօթապէս, այլ տերունականն։

Այլ տէրն լռով ունելով զճշմարիտն մարդկութով սահմանովն, սակայն շողացեալ եւ փայլատակեալ աստուածութեամբն ներգործէր զվայելչականն Բանին, զոր շօշափեցին ձեռօք դասք առաքելոցն, եւ տեսին երանելի աչօք զանտեսակն տեսակացեալ։

Խոստովանիմ զնա նովին մարմնովն եկեալ 'ի փառս հայրենիս դատաւոր արդարութեանըն կենդանեաց եւ մեռելոց։

Հաւատամ 'ի միշտ Հայրն, հաւատամ 'ի միշտ Որդին, հաւատամ 'ի միշտ եղեալ 'ի Հօրէ Հոգին սուրբ. յայն՝ որ առնու յարդ-

ւոյ և լոյս զամենայն, և ինքն ոչ լինի լցեալ-յումեքէ :

Հաւատամ ՚ի նոյն Երրորդութենէն եղեալ յոչէից զէղեալքս ամենայն, և զԱ՛դամ պատկերեալ բարւոյն, և յանցանօք լուծեալ ՚ի մահ անձնիշխան կամօք. և ՚ի նոյն արարչէ վերստին նորոգեալ անտեսութեամբ միոյն Միածնի կամօք Հօր և Հոգւոյն :

Հաւատամ ՚ի համօրէն յարութիւն բանականացս որ յԱ՛դամայ, ՚ի նոյն զօրութենէ ստեղծողին և նորոգողին :

Հաւատամ յարդար յիրաւունս աւուրն լոյս արժանեաց, և ՚ի հատուցումն յաւիտենական կենաց և տանջանաց :

Այս է իմոյս հաւատոյ համառօտ խոստովանութիւն, և ամենայն հաւատացելոց ուղղափառաց. որոց մասնաւորեսցէ զմեզ Տէր ՚ի շնորհս ողորմութեան իւրոյ.

Արդ զայս դաւանութիւն յորում մեան աշխարհաց ունի. և պահէ ուրբաղէս բազմաւորութեամբ, զոր պարտ է յամենայն քահանայապետութեան տալ զայս խոստովանութիւն մեծ քահանայապետին : Եւ պահանջել յայնցանէ զորս ձեռնադրելն կամին. և առաջ յանձնամնէ նորանել զգայլքն առաջնանիշեն, զամենայն զհերետիկոսացն հերձուածս

յիւրում և ի նմին հերձուածն մինչեւ ցայսօր ժամանակի. և դաւանել զամենայն ուղղափառսն, զհոգևորսն եկեղեցւոյ՝ որք ընդ ճշմարտութիւն առաջնորդեցին հօտին Քրիստոսի, և յարօտս կենսաբեր սնուցին. և ապա իջանէ Հոգին յայնպիսի սեղանն որբութեան և հանգչիցի յընծայեալսն. Այն որ փորձէ ճանաչել զօտարսն և զհեստանիսն որպէս զգ.խոնակսն և զիմաստուն հոգևոր կացուցանել, որ կարասցէ 'ի կեանս կոչել զարժանիսն կենաց, այսինքն առ Աստուած ածել. զի այս է պարկայ սպասաւորութեան խոյզ և արեամբ գնեալ հաւատացելոց. ոչ միայն 'ի չարացն 'ի թաց կալ, այլ և քարեացն զհետ գնալ. զի ոչ սակաւ արիւն և քիրտն փոխէ հեղեալ վասն իւր սուրբ եկեղեցւ. այլ զմեծն զԱստուծոյն և զաստուածակիր առաքելոցն, որոյ զգուշութիւն պիտոյ է, որք խնամեն զսա յիւրաքանչիւր ժամանակս։

Արանդնեցին և Յոյնք քանի՞ ե. մեծ սամիւճանս յեկեղեցի, և եւթն այլ եւս զատ առանձինն, որ առանձինք 'ի նոցանէ հարկաւորք են յոյժ։

Ա. Այսպէս շրջագն ընդ վանորայսն և տեսանել զանզօրութիւն և զչենութիւն, և պատմել Արքեպիսկոպոսին։

Բ. Որպէս որք տեսանեն զպարկեշտութիւն կանանց վանաց ։

Գ. Բանտապետսքն՝ որք տեսանեն թէ որք են զուր եւ զրպարտութեամբ արգելեալք ՚ի բանտս յիշխանացն, եւ պատմել հայրապետին. զի փոյթ տարասցէ եւ հանցէ զնոսա ։

Դ. Ընտիր դատաւորքն, որք քննեն իրաւամբք զդատաստանս ամենայն ըստ գրոց եւ կանոնաց հրամանի ։

Ե. Օրհնողքն գրոց որք ուսուցանեն զուսումն ընթեռնլոյ զգիրն սուրբ ՚ի ժամ պաշտմանն ։

Զ. Յարմարողն երգեցողութեան Սաղմոսին եւ Շարականին ։

Է. Որ տեսանէ թէ որում եկեղեցւոյ պէտոյ է առաջնորդ, եւ յիշեցուցանէ հայրապետին ։

Ը. Որ շրջի ընդ քաղաքս եւ ընդ գեօղս եւ տեսանէ զյօրինեալ կարգս եկեղեցւոյ, թէ որպէս առնիցեն ։

Թ. Որ պահէ զսենեակ հայրապետին եւ զգուշանայ ։

Ժ. Որ պահէ զորբութիւնսն եւ տայ ՚ի տեսութիւն խնդրողացն ։

ԺԱ. Որ կայ ՚ի գլուխ (դատուց) սար

կաւատգացն և դպրացն , և բաժանէ զգործս նոցա , և չտայ զմիմեամբք ելանել :

ԺԲ. Որք կրեն զմոմեղէնս առաջի սուրբ խորհրդոյն :

Այն և սուրբ եկեղեցւոյ տասն Միաքն զոր պարտին արկանել 'ի սեղանաւորս արժանացեալքն. քանզի ըստ առաքելոյ եդ. Աստուած յեկեղեցւոյ առաքեալս, մարգարէս, վարդապետս, զօրութիւնս, շնորհս բժշկութեան, օգնութիւնս, վարիչս, ազգս լեզուաց, թարգմանութիւնս լեզուաց , ընտրութիւնս հոգւոց . քանզի հաւատամք եթէ միոյն հոգւոյ որ յայնժամ աղբիւրանայր աւազանաւն , այժմ ունի եկեղեցի ըստ ժամանակին պիտոյից . զոր թէ ոք անաչառու. վստահութեամբ , և անագահ հաւատով և անախտական մտօք վարէ. զառաջնորդութիւն եկեղեցւոյ՝ ըստ Քրիստոսի զքահանայութիւնս , ինչ ոչ թաքչի 'ի նմանէ և ոչ սխալէ յընտրողութենէ և 'ի զօրութենէ բժշկութեան, 'ի նոյն պարգեւաց Հոգւոյն առաջնորդեալ և յաջողեալ 'ի հաճոյսն Աստուծոյ . 'ի փոքու աստ հաւատարիմ գըտեալ և բազմին արժանանայ 'ի պատշաճ յաւիտենին :

Ունի սուրբ եկեղեցի զշնորհս և պատիւորբս Աստուածածնին անախտ ծնանելով

որդիս Աստուծոյ ոչ յարենէ և ոչ 'ի կամաց մարմնոյ այլ 'ի Հոգւոյն սրբոյ և 'ի զօրութենէ բարձրելոյն 'ի ժառանգակցութիւն և յեղբայրակցութիւն (1) միածնի Որդւոյն Աստուծոյ :

Ունի յինքեան և 'ի վերայ ինքեան սուրբ եկեղեցի զխաչն կենսակիր վերելականն (2) 'ի նոյն պատիւ պաշտելեալ 'ի մէնջ որով բաշխին 'ի մեզ երկնաւոր շնորհացն աստուածութիւնք :

Վասն որոյ հանդէս տանելի է ումեք՝ որք չզգեն 'ի մէջ նորա ահիւ և դողութեամբ լինել 'ի տան Աստուծոյ կենդանւոյ . զի ահ մեծ է անկանել 'ի ձեռս Աստուծոյ, կենդանւոյ և ազդոյ է սուրբն յորդուշումն մանր .քննութեանց և զատելոցն (3) որպէս հորդեցին ճանապարհ հիմնարկութեան և հիմունքն եկեղեցւոյ :

Եւ մի նմանել խորթոցն և կամ որամանցին, որք յետոյ մտին, զորոց ընդունանան գրբերմեանբուածօք զատայեալ եւ թէն անթառոյգաթուականալաց մինչեւ յամենեւին խորանին (4). զորս թողումք յիշատակ կենդանութեան :

(1) Մի օրի. յազգակցութիւն.

(2) Երկու օրի. վերելե- լեան :

(3) Երկու օրի. զատելոյն

(4) Երեք օրի. խորանին :

ԿԹ. Աթանաս.
Հ. Գէորգ.
ՀԱ. Յովսէփ եպս.
ՀԲ. Կիրակոս.
ՀԳ. Դիոնէսիոս.
ՀԴ. Յովհաննէս.
ՀԵ. Իգնատիոս.
ՀԶ. Դիոդոս.
ՀԷ. Դիոնէսիոս.
ՀԸ. Յովհաննէս.
ՀԹ. Յովհան.
Ձ. Վասիլիոս.
ՁԱ. Յովհան.
ՁԲ. Դիոնէսիոս.
ՁԳ. Աբրահամ։
ՁԴ. Յովհաննէս.
ՁԵ. Աթանաս.
ՁԶ. Յովհաննէս.
ՁԷ. Դիոնէսիոս.
ՁԸ. Յովհաննէս.
ՁԹ. Աթանաս.
Ղ. Յովհաննէս.
ՂԱ. Վասիլիոս.
ՂԲ. Աբրոն.
ՂԳ. Դիոնէսիոս.
ՂԴ. Աթանաս.
ՂԵ. Յովհան.
ՂԶ. Գրիգոր.
ՂԷ. Յովհան.
ՂԸ. Աթանաս.
ՂԹ. Միխայէլ ես։

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ՀՌՈՎՄԱՑ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| | Ա. | Պետրոս առաք. | Զ. | Աղեքսանդրոս. | 12 |
| 12 | Բ. | Լինոս. | Է. | Քսեստոս. | 30 |
| 11 | Գ. | Անիտոս. | Ը. | Ալեսփոր. (1) | 11 |
| 9 | Դ. | Կղեմէս. | Թ. | Մեղուքիանոս. | 4 |
| 8 | Ե. | Եւարոս. | Ժ. | Փիոս. | 15 |

(1) Հին օր. Տալեսփորոս։

| | | | | |
|---|---|---|---|---|
| 20 | ԻԸ. | Տիմոթէոս հրտ. | ԽԵ. | Յոհան երկաբնակ. |
| 3 | ԻԹ. | Տիմոթէոս (1). | ԽԶ. | Դամիանոս. |
| | Լ. | Յովհան հրձ. | ԽԷ. | Անաստաս. |
| 12 | ԼԱ. | Պետրոս. | ԽԸ. | Անդրոնիկոս. |
| 7 | ԼԲ. | Աթանաս. | ԽԹ. | Բենիամին. |
| 9 | ԼԳ. | Յովհաննէս. | Ծ. | Կաւրեա հրձ. |
| 11 | ԼԴ. | Յովհան միւս։ | ԾԱ. | Ագաթոն. |
| 1 | ԼԵ. | Դիոսկորոս. | ԾԲ. | Յովհաննէս. |
| 11 | ԼԶ. | Տիմոթէոս. | ԾԳ. | Շմաւոն. |
| 38 | ԼԷ. | Դէոդոր (2). | ԾԴ. | Ստակքէ (3). |
| 1 | ԼԸ. | Պետրոս. | ԾԵ. | Աղէքսանդրոս. |
| | ԼԹ. | Գայիանէ հրձ. | ԾԶ. | Կոզմաս. |
| 40 | Խ. | Պօղոս. | ԾԷ. | Յովհան. |
| 1 | ԽԱ. | Օուկլիոս. | ԾԸ. | Մարկոս. |
| 2 | ԽԲ. | Ապողինար. | ԾԹ. | Յակոբ. |
| 3 | ԽԳ. | Թէոդորէ. | Կ. | Շմաւոն. |
| 1 | ԽԴ. | Պետրէ. | ԿԱ. | Յովսէփ. |

(1) Զամանէ հինն եւ ոմանք տանին ուղղափառ. եւ ոմանք հերձուածող կամ ուրացող։

(2) Հին օրի. Դիոսկուրոս. Մի օրի. Դիոսկորոս։

(3) Հին օրի. Սահակ։

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԵՓԵՍՈՍԻ

ամ.

2 Ա. Անդրէաս առաքեալ.
10 Բ. Ստախոս.
14 Գ. Տիմոթէոս.
17 Դ. Պօղիկարպոս.
5 Ե. Յուլիս (1).
8 Զ. Սաքէ.
8 Է. Դիոգինէ (2).
13 Ը. Անտալթէ.
9 Թ. Ալաթորոս.
10 Ժ. Փիլիպպոս.
11 ԺԱ. Պօլիկարպոս.
5 ԺԲ. Ուղլիոս.

ամ.

ԺԳ. Լաւրենտիոս. 8
ԺԴ. Աղուբիանոս. 7
ԺԵ. Պրոտանիկէ. 18
ԺԶ. Մարկոս. 13
ԺԷ. Կիւրեղ. 10
ԺԸ. Կուռնելիոս (3). 8
ԺԹ. Դիդիոս. 7
Ի. Դոմետրիէ (4). 11
ԻԱ. Պրոբաս սա փոխեցաւ աթոռն Եփեսոսի 'ի Կոստանդնուպօլիս:

## ԱԹՈՌԱԿԱԼՔ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ

5 Ա. Պրոբաս (5).
Բ. Աղեքսանդրոս 23

(1) Հին օրի. Գուլիզ: Երկու օրի. Գուլիա:

(2) Հին օրի. Դիոգինիա:

(3) Երկու օրի. Կոռնելիոս:

(4) Երկու օրի. Դոմետրիէ:

(5) Սա այս Պրոբաս վերջին Աթոռակալն Եփեսոսի փոխեաց զաթոռն 'ի Կոստանդնուպօլիս:

Զ Կոստանդնուպօլսի Աթոռակալաց ցանկ 'ի հին օրինակէն առեալ գնեմք աստ զի այլքն օրինակք, անկարգըս դասաւորեն զսոսա վասն

# ԱԹՈՌԱԿԱԼՔ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

Ա. Յակոբ.
Բ. Շմաւոն.
Գ. Յուստոս.
Դ. Զակքէ.
Ե. Տուբիայ.
Զ. Բենիամին.
Է. Յովհան.
Ը. Մատթէոս.
Թ. Փիլիպպոս.
Ժ. Սենեկաս.
ԺԱ. Յուստոս.
ԺԲ. Ղեւի.
ԺԳ. Եփրեմ.
ԺԴ. Յովսէփ.
ԺԵ. Աղեքսանդրիաս.
ԺԶ. Ափիմաքոս.
ԺԷ. Գայիոս.
ԺԸ. Յուլիոս.
ԺԹ. Կապիտոնիս.
Ի. Յուդաս որքս ամենեքեան հրեայք էին
ԻԱ. Նարկեսոս.
ԻԲ. Մարկոս.
ԻԳ. Կասիանէ.
ԻԴ. Պուպլիոս.
ԻԵ. Մաքսիմոս.
ԻԶ. Յուլիոս.
ԻԷ. Վաղէս.
ԻԸ. Դոլքիոս.
ԻԹ. Նարկէսոս.
Լ. Դիոսէ.
ԼԱ. Գերմանիէ.
ԼԲ. Գորդիոս.
ԼԳ. Նարկեսոս.
ԼԴ. Աղեքսանդր.
ԼԵ. Հիմենոս.
ԼԶ. Փերմիաս.
ԼԷ. Հերմին.
ԼԸ. Պապոսոս.
ԼԹ. Հրմէ սա է ձեռնաւթիւն Ս. Գրիգորի Լուսաւորչին.
Խ. Մակար.
ԽԱ. Մաքսիմոս. որոյ խաւարեցուցին զաչս.
ԽԲ. Կիւրեղ.

Նորա մինչեւ ցայս վայր յայտնի՝ և 'ի ծածուկ լինէին յաԹոռակալացն յայսցանէ ուղղափառուԹեան, վասն որոյ բերումք զչարս նոցա 'ի դրի ասեմ: Իսկ վասն զի զայսու առաջնորդօք բնաւին 'ի բաց կացին 'ի ճշմարտուԹենէն, զի՞նչ կայ մեր և նոցա չարել զնոսա 'ի կարգս ուղղոյ, զորս և ոչ հայրապետըն արժան է մեզ զնոսա կոչել և զանուանըս նոցա արձանագրուցանել, և կամ բնաւ խօսս յիշատակել, և ոչ պատշաճաւոր է զանգականեալ նուԹան դնել 'ի վերայ սուրբ հիմանըն: Այլ մեք մի տրտմեսցուք 'ի վերայ այսոցիկ, այլ և մխիԹարեսցուք, քան զի եԹող մեզ շնորհք դԹուԹեանն Քրիստոսի զսուրբ եկեղեցին Հայաստանեայց, զսուրբ կենդանուԹեան և սերմն ազնուական անձման ուղղափառուԹեան, զկայսն միշտ զշառաւեղեալն յանխափան արփիանոյն, (1) զպայծառկերպեալն յիմոյն Յիսուսէ զանդրանիկ հաւատով 'ի ձեռն Աբգարու արքայի: Որ ունէր ընդ իւրում խաղաղուԹեամբ իւրով զՀայս և զԱսորիս և նստէր յՈւռհայ քաղաքի, Թողեալ զարեւելս 'ի Մանաւորուկ ազգականն իւր. և էառ 'ի

(1) Հնագոյն օրի. մի ու... [illegible] ... Ա. Ա. Թարգ. [illegible]

ձեռն հաւատոց և զերկնից արքայութիւնն ։

Քանզի լուաւ նա զլուր սքանչելեաց Տեառն մերոյ զոր կատարէր յերկիրն Հրէաստանի, և առաքեաց առ նա զԱնանէ հաւատարիմ իւր ընն Նարաւքբ՝ աղաչել զՏէր գալ առ նա յԵդեսիա ; և թագաւորել ընդ նմա անհոգութեամբ և ազատել 'ի ազգանող և յապստամբ ազգէն Հրէից ։ Եւ կատարէր գիրն՝ եթէ յաւուր յայնմիկ եկեսցեն արք տասն խնդրել զՏէր կարօտութեամբ 'ի սէր ջերմութեան, զորս յիշատակէ Յովհաննէս աւետարանիչ 'ի ձեռն Փիլիպպոսի և Անդրէի մատչել առ Յիսուս . և նորա պատասխանեալ ասաց . Եհաս ժամ զի փառաւորեսցի Որդի մարդոյ ։ այսինքն թէ՝ արքայն հեթանոսաց երաց դուռն հաւատոյ ամենայն հեթանոսաց փառաւորել զիս ։

Եւ դարձեալ զկատարումն անտեսութեանն զեկոյց զխաչն, զի եկեալ հասեալ էր, և չէր ժամանակն գնալ նմա և խօսել 'ի չարչարանայն որովք ապրէր ամենայն մարդ որ գալոց էր յաշխարհ ։ Եւ տայր հրաման Թովմմայի առաքելոյն գրել առ Աբգար երանութեամբ հանդերձ պատասխանս չերթալոյն, և զխնդիրն նորա լնուլ խոստանայր 'ի ձեռն միոյ յաշակերտաց իւրոց զոր առաքելոց էր առ

լոց ։ Բայց հաւատն հաստատեալ առաքելական հիմամբ՝ ոչ պակասեաց մինչև ՚ի գալն առ նոսա սուրբ նահատակացն Հռիփսիմեանց. և ՚ի պատճառս նոցա հաւատալ մեծին Տրդատայ ՚ի նմին ցեղէ Աբգարու՝ ՚ի ձեռն մեծահանդէս փառաւորին Գրիգորի. որ և նա ցեղակից անդրանկին պսակաւորին ՚ի Քրիստոս Աբգարու երանեցելոյն ՚ի Տեառնէ ։ Աւասիկ երեւեալ կենդանութիւնն պտղաւէտ երկնահաս և երկնաւոր՝ սքանչելին եւ նորանշանն այն եւ տիեզերալուր վկայն՝ սրտառուչն աշխարհաշարժ, որ միանգամայն ելից զերկիր ծաղկէ ՚ի ծագ զարմանագործ նշանօք որ նովաւն գործեցաւ ՚ի փառս Աստուծոյ. նա էառ և ժառանգեաց զաստուածն և զանունն և զաթոռ առաքելոցն որբոց Թադէի և Բարդողիմէի. որ ելից զպակասութիւն չարչարանացն Քրիստոսի ՚ի մարմնի իւրում. և զմնացուածս գործոց հոգեւոր մշակացն յանդաստանս նոցա. և ելից աւետեացն (1) լուսով ծայրէ ՚ի ծայր զամենայն Հայաստանեայս և զԱղուանս և զՎիրս և որ շուրջ բոլորոք աշխարհք և իշխանութիւնք, զորս ըստ կարգի փոխեցին որդւոց նորա զաստուածանսն և զառաքինութիւն. զգուշ վարուք և անաշխատ

(1) Հնագոյն օրին. լուսով ։

բանիւք զընթացս իւրեանց կատարելով 'ի պատուիրանս Աստուծոյ պէտպէս վարուք և նահատակութեամբ ։

Եւ թէպէտ արեանառուք նորա դադարեցին ժամանակօք, այլ քրտանցն նորա քարութիւնք, այսինքն ուղղափառ հաւատն որով ժառանգեցոյց (1) զժողովուրդ իւր, ոչ սպառեցաւ յաւիտենից, այլ եկաց մնաց հաստատուն յոյժ հոգւոյ ծնունդս նորա. որք կացին անյաղթելիս ընդդէմ բազմատարափ փորձանաց և դիպուածոց աջոյ և ձախոյ, այսինքն փառօք և պատուանօք և փշոտօք անատելեօք յորդւոցն Յունաց, որք 'ի ժամանակս բարձրութեան իւրեանց ջանային ընդ անյաղթելի վիմին ։

Եւ զի թէպէտ ոմանք 'ի նոցանէ տկարացան ըստ անպէտն որքոյն Գրիգորի 'ի սակաւ ժամանակս և 'ի տեղիս, այլ ճշմարտութեան արմատն մնաց հիմամբ կենդանի, մինչեւ անցին (2) աւուրք և դարձեալ էառ հիմն զշինուածն իւր վայելչական աստուածարկու և առաքելաջան արդեանցն շահեկանութեամբ յաղօթս մեծի Լուսաւորչին և մինչեւ ցյաւիտեան արթուն և հաս-

(1) Ձեռագրոյն օրի. զաւակն ։ ուղղելին յանդգնարք ։

(2) Ձեռագրոյն օրինակք

կող անձին նորա յաղագս հօտին իւրոյ առա-
ջի Աստուծոյ։ Եւ եղեն նոքա մեզ Ասորւոցս
ուղղափառաց յոլով նպաստ և մխիթարու-
թիւն և վկայք հաստատութեան. զի թէ-
պէտ և աթոռն Աղեքսանդրու և ամենայն
Հնդկաստան և Եթովպիա ազգք և լեզուք
և (1) ժողովուրդք ընդարձակք և բուռն և
ձոխ թագաւորութիւնք դաւանակիցք են
մեր և անեղի պարծանաց, այլ սակս հեռա-
ւորութեանն և բացակայութեանն միայն
համբաւոյն և ոչ արդեամբք կարեն մեզ
կարեկցել և ամբառնալ զգլուխս մեր առաջի
նեղչաց մերոց։ Իսկ ազգն Հայաստանեայց
զի մօտաւորք են և ընդ մեզ խառնեալ, բա-
զում եղեն մեզ առիթ բարեպաշտութեան,
և գրեթէ նոքօք կարացաք տեւել ամենայն
անցիցն որ եկին ՚ի վերայ մեր մինչեւ ցայսօր
ժամանակի, և ուխտ խաղաղութեան և դա-
շին սիրոյ է ՚ի միջի մերում հաստատեալ։ Վա-
սն որոյ մեր սկիզբն արարեալ խորհրդոյ քա-
հանայութեան յանսկզբնական Հօրէ՝ առա-
տեացուք ՚ի նոցա քահանայապետութիւնն,
որ շնորհօքն Աստուծոյ կայ և կացցէ մին-
չեւ ցյաւիտեան։

Եւ զի շնորհք քահանայութեանս զոր

(1) Հնդկացոյն օրէ. ալլինս.

ստացաք՝ 'ի Քրիստոս լցեալ կատարմամբ, որ քակեալ է ստուեր առաքելոցն օրինաց և նորօք յամենայն տիեզերս բաշխեցաւ, յորոց լըւաք եթէ չորքն մոլին 'ի Հայս և քարոզեցին և անդէն կատարեցան: Նախ Թադէոս, և ապա Բարդողոմէոս, և Յուդա և Սիմոն եղբարք՝ որք էին որդիք Յովսեփայ՝ եղբարք Յակոբայ, որք և Տեառն մերոյ կոչին ըստ մարմնոյ: Սոքա արկին առ նոսա հիմն հաւատոյ և եղեն նոցա քահանայապետք առաջին զոր կարգեցոյց ոճով, և զորս հոգւոյ ծնունդս ծնոյս հաստուցաւք մինչև առ մեզ, և յանդ հանգցուք զասպարէզս վաստակոց մերոց՝ հայելով 'ի նաւահանգիստ խոստմանն Աստուծոյ, որ է սկիզբն և կատարումն ամենայն բարեաց և կայ 'ի փառս իւր անբաւականս:

Ա. Յիսուս Քրիստոս անսկիզբն 'ի ժամանակէ, և սկիզբն և կատարումն ամենայն քահանայութեան՝ որդին Աստուծոյ:

Բ. Առաքեալն Յիսուսի Թադէ՝ յազգէ Շմաւոնի, որ նա ինքն է Պետրոս՝ որ է սիրտ, և կոչեցաւ Թադէոս՝ որ է սիրելի:

Գ. Առաքեալն Բարդողոմէոս 'ի ցեղէ Ասերայ, որոյ անուն կոչի զարմ առոյգ Աստուծոյ ըստ հաւատոյ և հոգւոյ:

Դ. Առաքելոյն Յուդայ Յակոբեան 'ի ցեղէ Յուդայ, որ կայ 'ի յԱրմի Հայոց.

Ե. Առաքելոյն Սիմոն յեւթանասնից անտի, որ գնաց յԱրուսթաւա գաւառ 'ի Թիկանց Արմեայ, մտեալ 'ի վկիձակ եղջօրն՝ որ նախիքն է Յուդայ՝ որդիք Յովսեփու.

Զ. Առաքելոյն[1] Կադիւ յեւթանասնից անտի, որ չոգաւ հրամանաւ Թադէոսի 'ի մեծն Հայս և առ հիւսիսիւ, և լուեալ բզ կատարումն առաքելոյն Թադէի՝ դարձաւ եմուտ 'ի փոքր Սիւնիք, և կրօնաւորեալ անդէն կատարեցաւ, և տեղին յանուն նորա կոչեցաւ Կադիա.

Այս են սկզբմունք և հիմունք հաւատոյ և քահանայապետութեան Հայաստանեայց և սերմանողք կենարեր ցորենոյն. Այլ առ սեն նշան շնորհաց բերեալ հին և նոր՝ 'ի Հայս, երեք մնանանոյ 'ի Նարգաղամէտաւ և եդեալ տիրոյ 'ի հիմն եկեղեցւոյ որ հանդէպ հայի Պողթան գաւառի առ Երասխ գետով, 'ի տեղւոջն զոր Սաղարթն կոչեն. Այլ գեղարդն տուստածանմուխ պատկաւն փչեաց 'ի Թադէոսէ բերեալ, և կայ անդէն 'ի Հայս 'ի պարծանս ազգին և 'ի փառս Աստուծոյ. Նայց երկիրն այն արեամբք և քրտամբք հա

(1) Հնագոյն օրի. Թադէոս.

գեւաք մշակացն առուեալ՝ պահեաց յինքեան ծածկապէս արմատս և ուռս սակաւս 'ի տեղիս տեղիս, մինչեւ երկնեալ ծնաւ երկիւղիւ և ահիւն Աստուծոյ զմարդն երկնաւոր՝ ըղձավայելուչ զաւակն սրբոց առաքելոց և զարմանապէս փոխանորդ. Նոցին զպարթեւն Գրիգորիոս, զոր և 'ի չորս առաջնոյն կարգեսցուք քահանայապետաց (1) ։

Է. Տէր Գրիգորիոս սուրբ պատրիարքն 'ի 17 ամի Տրդատայ արքայի ժառանգէ զաթոռ սուրբ առաքելոցն յ307 ամի գալստեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և պաշտէ ամս 30, և կատարի անյայտ երեւակի ։

Ը. Տէր սուրբն Արիստակէս որդի նորին՝ ամս 7, և կատարի վկայութեամբ օրինացն Քրիստոսի յիշխանէն Արքեղայոսէ ։

Թ. Տէր սուրբն Վրթանէս ամս 15, և վճարի իւրով մահուամբ ։

Ժ. Տէր սուրբն Յուսիկ՝ ամս 6, և վկայէ Տեառն 'ի Տիրանայ թագաւորէ ։

ԺԱ. Տէր սուրբն Փառներսեհ յայլմէ ցեղէ՝ ամս 5, յամս Տիրանայ ։

(1) Միւս այլ թարգմանութիւնն յիշատակէ 'ի գաւազանագրին և զսոսա. Եղիշէ, Խադ, Թէոփիլոս, Աղդէ, Զաքարիա, որք քարոզեցին նախ քան զԹադէոս որ յեւթանասնից ։

ԺԲ. Տէր սուրբն Ներսէս Թոռն որդոյն Գրիգորի մեծի՝ ամս 34, յամս Արշակայ և Պապայ, և վկայէ Տեառն պատուիրանին ՚ի Պապայ:

ԺԳ. Տէր Սահակ յայլմէ ցեղէ՝ ամս 4, յամս Վարազդատայ:

ԺԴ. Տէր Զաւէն նորին եղբայր՝ ամս 4, յամս Արշակայ և Վաղարշակայ թագաւորաց և եղբարց որդւոյն Պապայ:

ԺԵ. Տէր Ասպուրակէս նոյին եղբայր Սահակայ և Զաւենայ՝ ամս 7:

ԺԶ. Տէր սուրբն Սահակ Թոռն մեծին Գրիգորի՝ ամս 51, յամս Վռամշապհոյ եւ Խոսրովու եղբօր նորա և Շապհոյ որդւոյ Յազկերտի և Արտաշրի թագաւորացն, առ որով բարձան Արշակունի թագաւորք, և մարզպան եղեւ սուրբն Վարդան մամիկոնեան՝ աշխարհին:

ԺԷ. Տէր Յովսէփ աշակերտ որդոյն Սահակայ՝ ամս 2:

ԺԸ. Տէր Գիւտ՝ ամս 15, ՚ի մարզպանութեան Վարդանայ:

ԺԹ. Տէր սուրբ Յովհան Մանդակունի՝ ամս 12, ՚ի մարզպանութեան Մանդնոսի Մամիկոնեյ:

Ի. Տէր Բարդէն՝ ամս 5, յաւուրս նորին Մանգնոսի:

ԻԱ. Տէր Մուշէ՝ ամս 8, 'ի մարզպանութեան Վահանայ Մամիկոնեայ:

ԻԲ. Տէր Սահակ՝ ամս 5, և սա 'ի ժամանակս Մամիկոնեայ Վահանայ:

ԻԳ. Տէր Քրիստափոր՝ ամս 5, 'ի նոյն աւուրս Վահանայ:

ԻԴ. Տէր Ղեւոնդ՝ ամս 2:

ԻԵ. Տէր Ներսէս՝ ամս 9, 'ի նոյն ժամանակս Վահանայ:

ԻԶ. Տէր Յովհաննէս՝ ամս 15, 'ի մարզպանութեանն Վարդանայ Մամիկոնեայ:

ԻԷ. Տէր Մովսէս ամս՝ 30, 'ի մարզպանութեան Մժեժայ, առ որով եղաւ Թուականն Հայոց, և վկայեաց սուրբն Իզտբուզիտ 'ի փառս որդւոյն Աստուծոյ:

ԻԸ. Տէր Աբրահամ՝ ամս 23, 'ի մարզպանութեան Տաճկաց:

ԻԹ. Տէր Յովհաննէս 'ի Կոգովտայ՝ ամս 26, 'ի մարզպանութեանն Դաւթի: Սա եղ աթոռ 'ի Կոտայն յաւուրս Մօրկայ թագաւորին Յունաց:

Լ. Տէր Կոմիտաս Աղցից՝ ամս 8, յաւուրս Դաւթի մարզպանի: Սա ընդարձակեաց զվկայարանն սրբոց Հռիփսիմեանց:

ԼԱ. Տէր Քրիստափոր յազատ տանէ յազգէ Աբրահամու՝ ամս 4, առ նոյն իշխանաւն Պաւլթի։

ԼԲ. Տէր Եզր՝ ակարացեալն կաշառօք 'ի Հերակլեայ. բայց մեծ մասն Հայոց և վանորայքն մնաց շնորհիւ Տեառն և յաղօթս սրբոյն Գրիգորի։

ԼԳ. Տէր Ներսէս շինող մեծ եկեղեցւոյն 'ի Վաղարշապատ և սրբոյն Սարգսի 'ի Դրուին և Վկրայքն, 'ի մարզպանութեան Թէոդորոսի ամս 20։

ԼԴ. Տէր Անաստաս յԱկոռւոյ՝ ամս 6, յաւուրս Համազասպայ մարզպանութեանն։

ԼԵ. Տէր Իսրայէլ Վանանդացի՝ ամս 10։ Սա եհան զՆերսէս հերետիկոս 'ի Պարտաւայ՝ կամօք Աղուանից, որ էր նոցա կաթողիկոս։

ԼԶ. Տէր Սահակ 'ի Ձորոյ փորոյ 'ի գեղջէ Արքունեայ՝ ամս 25, 'ի մարզպանութեանն Ներսեհի և Աշոտոյ։ Սա էր որ եկն 'ի Խառան և անդ մեռաւ։

ԼԷ. Տէր Եղիա յԱրճիշոյ՝ ամս 13, 'ի մարզպանութեանն Սմբատայ։

ԼԸ. Տէր սուրբն Յովհան յՕձնայ, իմաստնասէրն և նշանագործն՝ ամս 10։ Սա եբարձ զչարն Եզրայ։

ԼԹ. Տէր Դաւիթ 'ի Կեսարիոյ՝ ամս 13 յանիշխանութեանն։

Խ. Տէր սուրբն Տրդատ 'ի Մանանաղայ՝ ամս 23։

ԽԱ. Տէր Տրդատ միւսն՝ ամս 3, յանիշխանութեանն։

ԽԲ. Տէր Սիոն յԱշտձնեաց՝ ամս 8, յանիշխանութեանն։

ԽԳ. Տէր Եսայի յԵղիպատրուշ գեղջէ՝ ամս 13։

ԽԴ. Տէր Ստեփանոս՝ ամ մի, յանիշխանութեանն։

ԽԵ. Տէր Յովաբ՝ ամիսս 6, 'ի Սիւրբաղադատէն։

ԽԶ. Տէր Սողոմոն 'ի Գառնոյ՝ ամ մի, յանիշխանութեանն։

ԽԷ. Տէր Գէորգ 'ի Բիւրականից՝ ամս 3։

ԽԸ. Տէր Յովսէփ յեկեղեցւոյն որբոյն Գրիգորի՝ ամս 11, այր բարի։

ԽԹ. Տէր Դաւիթ 'ի Մազազայ՝ ամս 25։

Ծ. Տէր Յովհաննէս 'ի Կոտայից՝ ամս 22, յիշխանութեան Սմբատայ։

ԾԱ. Տէր Զաքարիա 'ի Ձագայ՝ ամս 22, յաւուրս Աշոտոյ իշխանաց իշխանի, որ և թագաւորեաց 'ի տանէ Բագրատունեաց. և Յիսէ որդին Շեխոյ ապամեա, պղինքն ըզ-

րոշ՝ Օքսարխոյ, բառնալ ՚ի վերայ նորա խաչ։

ԾԲ. Տէր Գէորգ ՚ի Գառնոյ՝ ամս 21։ յաւուրս թագաւորութեանն Աշոտոյ որդւոյ Սմբատայ որ գերեցաւն, և Համամ բարեպաշտ թագաւորն Աղուանից եհան։

ԾԳ. Տէր տէրն Մաշտոց խոստովանողն՝ ամս 7։

ԾԴ. Տէր Յովհաննէս՝ ամս 28, ՚ի թագաւորութեանն Սմբատայ և որդւոյ նորին Աշոտոյ։

ԾԵ. Տէր Ստեփաննոս՝ ամ մի։

ԾԶ. Տէր Եղիսէ ամս 7։

ԾԷ. Տէր Թէոդորոս՝ ամս 11, ՚ի թագաւորութեանն Աշոտոյ և եղբօր իւրոյ Աբասայ։

ԾԸ. Տէր Անանիա Մոկացի՝ ամս 22, յամս թագաւորացն Աբասայ և Աշոտոյ որդւոյ նորին։

ԾԹ. Տէր Վահան՝ ամ մի, յամս նոյն թագաւորաց։

Կ. Տէր Ստեփաննոս՝ ամս 2, ՚ի թագաւորութեանն Աշոտոյ։

ԿԱ. Տէր Խաչիկ՝ ամս 22, ՚ի թագաւորութեանն Աշոտոյ և Աբասայ։

ԿԲ. Տէր Սարգիս՝ ամ մի եկաց, և եթող զաթոռն և աղօթից պարապեաց։

ԿԳ. Տէր Պետրոս՝ ամս 39։ Զսա ամ մի

արգելլին 'ի Աջնի. և բերին յաԹոռն զԴէոս-կորոս հայր Սանահնին. և նա ամ մի կա-լեալ զկաԹուղիկոսուԹիւնն, և կաԹուղիկոսն Աղուանից երԹեալ առ Թագաւորն ետ հա-նել զտէր Պետրոս 'ի բանտէն, և Դէոսկորոս չոգաւ 'ի վանս իւր. և տէր Պետրոս երԹեալ 'ի Կոստանդինուպօլիս՝ դարձաւ 'ի Սևաստ և անդ կատարեցաւ ։

ԿԴ. Տէր Խաչիկ քուրորդի նորին՝ ամս 2, և կատարեցաւ 'ի Սևաստ նոյնպէս ։

ԿԵ. Տէր Վահրամ որդի Գրիգորի Մա-գիստրի առեալ զաԹոռն զկնի չորից ամաց խափանուածոյն՝ եԹող (1) զկաԹուղիկոսու-Թիւնն և չոգաւ 'ի ԹարգմանուԹիւն 'ի Կոս-տանդինուպօլիս, և դարձաւ յԵրուսաղէմ նախ գնալ և յակամայս եհան ծովն զնա 'ի Մսր. և զկնի երկուց ամաց եկեալ առ Գող Վասիլն՝ կատարեցաւ (2) 'ի Կարմիր վանս ։

ԿԶ. Տէր Գէորգ սնուցիչն Վահրամայ՝ ամս 3 ։

ԿԷ. Տէր Բարսեղ ազգականն Վահ-րամայ՝ ամս 12 ։ Սա մեռաւ յանկմանէ 'ի վե-րայ նորա հեծանի 'ի շինուԹիւնս ինչ եւ Թաղեցաւ 'ի Կարմիր վանսն ։

(1) Նորագոյն օրինակքն՝ ԵԹող ջանաս և չոգաւ ։

(2) Հնագոյն օրին. 'ի [illegible] [illegible] ։

ԿԸ. Տէր Գրիգոր ազգական նոցին Վահրամայ և Բարսղի՝ ամս 53, որ փոխեաց զաթոռն 'ի Ծովքն դղեակ և անտի 'ի Հռոմկլայն։

ԿԹ. Տէր Ներսէս եղբայր նորին՝ ամս 7, որ էր յաւուրս մեր շնորհազարդ վարդապետութեամբ։ Այսմ շարակարգութեանս իւ.. դիր արարեալ գոյք և կարգեցաք ստուգիւ յաւարտման մերոյ քաղուածի որպէս ձամուկ 'ի մեկնողի, յուսալով 'ի Տէր և յերկրպագուս նորա՝ ողորմութիւն գտանել յաւուրն կարեաց վասն աղօթից արանց աննախանձից։ Բայց զՉուանակ և զՅուսիկ՝ որ զկնի մահուանն սրբոյն Ներսիսի եղեն, ոչ կարգեցաք՝ չհաճելով, և ոչ զՍուրմակ հակառակն և ոչ զքամբասեալ Ասորին Բրդիշոյ և զՇմուէլ՝ զընդդիմակայսն սրբոյն Սահակայ։ Իսկ զկնիսն այլք լցեն։

Տէր Միխայէլ մինչեւ ցայս վայր. աստի Վարդան սիսանի վարդապետոն:

Արդ և մեք հետևեալքս և պատահեալքս այսմ՝ հասուցուք մինչեւ առ մեզ նովին յուսովն Աստուծոյ։ Յետ կատարման պատուական հայրապետացն Գրիգորի և Ներսիսի

երկուց եղբարցն՝ էառ զաթոռն եղբօրորդի նոցա՝

Հ. Տէր Գրիգոր՝ ամս 20։ Սա շինեաց զ-գեղապաճոյճ եկեղեցին ՚ի Սկայն և զարդարեաց զնա մեծապէս ։

ՀԱ. Տէր Գրիգորիս Տղայն՝ ամ մի ։ Սա արգելական եղեալ յարքայէն Լեւոնէ, ջանաց ՚ի գիշերի իջանել յամրոցէն, և կորեալ պարանին՝ անկաւ և մեռաւ ։

ՀԲ. Տէր Գրիգորէս Նախրաւն կոչեցեալ՝ ամս 7 ։

ՀԳ. Տէր Յովհաննէս մեծաքարոզ և յաղթասէր՝ ամս 18 ։

ՀԴ. Տէր Կոստանդին յերրորդ մանէ Հայոց, ՚ի դղեկէ Բարձրբերդոյ՝ որ հայի հարաւով ՚ի դաշտն Կիլիկիոյ և ՚ի ծոցն Ադրիանու կոչեցեալ, որդի առն արդարոյ և խաղաղականի Վահրամ կոչեցելոյ . յորովայնէ ընտրեալ յաստիճան առաքելական ՚ի Հոգւոյն, և օրինօք Նորին անեալ, և ըստ կարգի յամենայն գործս եկեղեցւոյ վարժեալ ՚ի շնորհս քահանայութեան և յառաջնորդութիւն վանից և յեպիսկոպոսութեան տեսչութիւն, և յամենայնի ընտիր գտեալ և հանդիսաւոր ։ Վասն որոյ և ՚ի կատարման հոգեւորական և մարմնական հասակի վկայու-

թեամբ Աստուծոյ և մարդկան մեծի գահոյի և աթոռոյ հայրապետութեան Հայաստանեայց արժանաւորեալնք լեալ 'ի չնորհէն և 'ի քնաւ լոմանէն Եկեղեցւոյ բռնադատեալ. բաս որում և փորձն ցուցաւ և արդիւնքն յայտնի արարին, և միաբանեցաւ ընդ նմա չնորհն: Եւ է այժմ քան և հինգ ամ հայրապետութեան նորա, 'ի դղեակս աստուածային Հռոմկլայ կոչեցեալ, խաղաղասէր բարուք և անարատ վարուք առ ամենեսին խաղաղութիւն կալեալ. վկայութիւն բարի և դրուատիս յարտաքնոցն առեալ. այցելու որբոց՝ և այրեաց խնամածու, և գերելոց անխնայ ծախիւք դարձուցիչ և զարդարիչ, հայրենի գթովք զամենեքումբք փարելով. և եղեալ առատաձեռն առ ամենայն կարօտեալս ողորմածութեամբ, եւ եկեղեցեաց բազմաց պիտոյից լցուցիչ.

Եւ յաւել և 'ի յայլ բարիսն և զայս մատեան 'ի գանձս եկեղեցւոյ. և ետ բաղձանօք թարգմանել զսա յասորոց 'ի հայս, պիտանի լեալ և չահաւէտ բուրաստան, լայն և երկայն իմաստիւք լցեալ, և կարճառօտ բանիւք՝ բովանդակեալ, որ 'ի սուղ ժամանակս կարող է զպատահեալսն 'ի վերայ կացուցանել հին և նոր դիպուածոց: Այլ և հինն

հաստատ և աշտարակ անշարժ իսկ է հայա-
դաւան հաւատոյ և ուղղափառ խոստովա-
նութեանս, վկայս բազում ցուցանելով յաղ-
գաց Ճշմարիտ ուղեգնացութեամբս՝ հիմամբ
աստուածական և առաքելադիր կայիւք ամ-
րացեալ։ Այլ և յոլովք տարակոյսք և հան-
դոյցք լուծանին ՚ի սմա։ Նա չէ ինչ զարմա-
նալ ընդ նորալուր և անծանօթ բանսն որ
գտանին ՚ի սմա. քանզի Սուրբք բնակու-
թեամբ իմն գաղտնաց և բարիւք լեզուաց
մօտաւորք են միշտ Հրէիցն լեալ քան զա-
մենայն ազգերդ, և ՚ի դէպ է նոցա մանա-
ւանդ ծանօթս զոլ հնոյ կտակին քան այլոց։
Նաև որ զայս մատեան շարադրեալ է, ՚ի Յու-
նաց և յԵգիպտացւոց և ՚ի Քաղդէացւոց
դիւանաց և ՚ի դպրոցաց է հաւաքեալ։ Վասն
որոյ առաւել սիրելի և պիտանի և հաւա-
տալի է. և փորձս բազումս կալցի առաջի
Աստուծոյ և երախտիս յեկեղեցիս ուղղափա-
ռաց՝ փառաւորեալ այրն բարեփառ տէր
Անփայէլ, զի յոլով սէր և գութ երեւի նա
ունել առ ազգս մեր ՚ի գրոց աստի։

Արդ ՚ի յամի ութերորդի քառասներորդի
երկերիւրերորդի հազարերորդի թուական-
բութեան անժամանակ որդւոյն Աստուծոյ
գալստեանն, և ՚ի ՈՂԷ թուականութեանս

Հայոց՝ թարգմանեցաւ գիրքս այս յասորւոց 'ի Հայս 'ի հայրապետութեան Հայոց տեառն Կոստանդեայ և 'ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ քրիստոսապսակի, և զգուշակենցաղ թագուհւոյն իւրոյ Զապելի՝ դստեր Լեւո-նի արքայի, ըստ Աստուծոյ քաղաքավարելոց հնգից եղելոյ նոցա զաւակաց ծիրանածնաց, երկուց ուստերաց և երից դստերաց, որոց անուանքն Լեւոն և Թորոս, անուամբ հա-ւուն իւրեանց(1), որոց հօրանի լիցի ամենակալ Բազուկն հայրենի, ածելով 'ի գահ հայրենի արքայութեանն եղերօք Հայաստանեայցս:

Յայսմ ամի կենդանի էր կորովամիտ և ա-ջողեալն 'ի բարիս արքայահայրն Հայոց պա-րոն Կոստանդին, և բերկրեալ այլովք ու-ստերօք չորիւք, տէր Բարսեղ տէրն Դրա-զարկուն, և պարոն Սմբատ սպարապետն Հա-յոց, և պարոն Օշին տէրն Կիւռիկոսայ, և պարոն Լեւոն, որոց զօրանալ լիցի ըստ Ա-ստուծոյ և աճել արիութեամբ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ:

Նաև էր պատրիարք Ասորւոց ուղղափա-ռաց Մար Իգնատիէ Անտիոքու, որ զօրինա-կըն շնորհեաց և փոխեցաւ 'ի ձեռն Իշօխայ որբասնեալ քահանայի վարժելոյ 'ի հանճար

(1) Հնագոյն օրի. յաւելու՝ ի [illegible] [illegible].

բժշկական արհեստի, որոց վարձատու լիցի
տէր Յիսուս 'ի շնորհս իւր :

Այլ և մեք իսկ(1) տառապեալ ոգի Վար-
դան վարդապետ, որ ըստ մերում կարի կա-
տարեցաք 'ի գիրքս յայս, ունիմք հաւատ
և յոյս 'ի գթութիւն Աստուծոյ և յետ նո-
րա 'ի բարեխօսութիւն և յաղօթս ծառայից
նորա՝ առ մեզ դարձուցանել զերեսս ողոր-
մութեանն Քրիստոսի 'ի վերայ անկշռելի
պարտուց մերոց անթուապատիկ բիւրուց
տաղանդացս: Քանզի այսու անխղճութեամբ
ընդոստուցաք զմեզ մոռանալ զանձնականից և
զընդունայնացեալս մեր տկարութիւն մարմնոյ և
բազմազան տրտմութիւն և զցնորս հոգւոյ
խորհրդոց վասն անշահաւոր տարաշրջութեա-
նըս. այլ և յաղագս Թշուառացուցիչ ժա-
մանակիս զոր ածին չարիքն մեր յաճախեալ:
Քանզի սակաւ քան զչափ մեղաց մերոց ար-
բոյց մեզ Տէր արտասուս, և նուազ քան զյոր-
դաբուխ ախտիցն մերոց ջրհեղեղս խաղա-
ցին առ մեզ վտակք արեան, և ըստ գաղա-
նակին փնոցիցն մերոց յադեցան գաղանիք 'ի
մարմնոյ մերոյ :

Քանզի շնչեաց բարկութիւն Տեառն

(1) Հնագոյն օրի. պակասէ բառք.
տառապեալ ոգի Վարդան վար.

ճանճուն արեւելեան հիւսիսայնոյ օտար եւ անընդել ազգին, որպէս ասեն՝ Թորգոմազունք եւ 'ի զարմէն Հագարու. եւ հողմով անօրէնութեան մերոյ ած զնոսա մինչեւ առ մեզ ըստ նախասուս մարգարէութեան նախնի սուրբ հօրն մերոյ Ներսիսի արտասուապատում ողբոյն, զոր լալով նախաձայնեաց զկորուստ հոգեւոր երկանց իւրոց ծննդոց, զոր ինչ կրեցաքն յազգէն Նետողաց. զորոց զանուանս կոչէ սուր եւ Թեթեւ, զի Թերեւս Թաթարն սուր եւ Թեթեւ ասի ըստ լծորդացդ փոփոխման. եւ կամ (1) հար եւ տար՝ որ է տաթար, քանզի հարին անյագաբար եւ տարան անկերկիւղաբար զորդիսն Սիոնի 'ի արկութիւն գերութեան: Նու ասէ զնոսա սուրբն Ներսէս 'ի միացորդացն Հագարու, եւ Մովսէս ասեն զնոսա Թորգոմեանս, յայտ է՝ խառնեալ ազգին Գոմգայ որ 'ի Թորգոմայ ընդ զարմին Հագարու՝ որք ունին զՍկիւթիս մասն աշխարհի, որ սկսանի յԻթլ գետոյ եւ ձգի առ Իմաւոն լերամբն՝ ուր բնակեալ են ազգք բազմաւուն եւ երեք, որք խուժական անուամբ կոչին յիւրեանց լեզուս. եւ գլխաւորն նոցա Թուշխ անուանի. եւ անուն միոյ ազգին Թուղարք ասի, զոր կարծեմ Թէ

(1) Յօրինակն՝ պար եւ պար:

այս են Թաթարքս։ Եւ որպէս լուաք յոմանց ՚ի նոցանէ, եթէ ելին առաջինք նոցա ՚ի Թուրքաստան աշխարհէ. և մեկնեցան մինչև ՚ի կողմ արեւելեան, և կային աղքատութեամբ ՚ի գործս աւազակութեան և յափշտակութեան. և պաշտօն ինչ ոչ ունէին, բայց ընդ արեգական զարմանային, և ՚ի պատճառս հրմայութեան ունէին պատկերս ինչ Թաղեայ, զորս տախաւլին կրէն ընդ ինքեանս։

Եւ զկնի ժամանակաց անցելոց՝ ոմանց ՚ի նոցանէ զգայուն արանց նեղեալ ՚ի Թշուառական կենաց իւրեանց, կոչեցին զերկնաւորն Աստուած որ զամենայն ինչ արար՝ յօգնականութիւն անձանց։ Եւ ուխտեցին նմա ուխտ, և ելին ՚ի վերայ քաղաքի միոյ փոքու, յափշտակեցին զնա ՚ի տէրանցն, և բնակեցան անդ։ Եւ յայնմանէ ոյժ առեալ տիրացան երկրին, և կոչեցին յերկրէն իւրեանց Թիկունս և զօրացան ՚ի վերայ Պարսից, և առին զիշխանութիւնս նոցա։ Ուսան և ՚ի մօգուց անտի զարուեստ կախարդութեան, և առեալ հրամանս ՚ի դիւթոց անտի՝ եթէ տուեալ է նոցա յԱստուծոյ զաշխարհ ամենայն, ելցեն վստահութեամբ և ժառանգեսցեն զնա։ Եւ չէ ինչ զարմանալ, զի Նաբուգոդոնոսոր արքայ Բաբելացւոց հմայիւք

եւ Երուսաղէմ, և մատնեաց Տէր 'ի ձեռս նորա. և զԿիւրոս Պարսից արքայ ածեալ իւր կոչէր Աստուած և առաքէր 'ի վերայ Բաբելոնի: Նա և ինքեանք խոստովանին զամենայն ինչ Աստուծոյ առնել, և զինքեանս նորին հրամանաւ ասեն (1) եկեալ:

Արդ հաւատացեալ նոցա հրամանի իւրեանց երեւմանն, եղեն նոցա երեք բաժին ընտրութեամբ իւրեանց թագաւորին զոր Խաքանն կոչեն, որ է խանն: Մին առաջին գնաց 'ի կողմն Հնդկաց, և միւսն երկրորդ չոգաւ առ անապատօք հիւսիսոյ, և երրորդ բաժինն ընդ մէջ Պարսից աշխարհին՝ և եկն մինչեւ առ մեզ: Եւ ասէին թէ երեք էին գլխաւորք, և մինն բարեբարոյ քան զերկուսն, զոր (2) Չարմաղանն կոչէին. որ և զկնի բազում աշխարհաց աւերման և կոտորման՝ նստեալ 'ի խորհուրդ զոր Խուռուլթայ կոչեն, և ասացեալ Չարմաղանին թէ՝ Բաւական է աւերս և կոտորածս, յայսմ հետէ զհնազանդեալսն մի ջնջեսցուք 'ի սպառ, զի մի բարկասցի Աստուած: Իսկ երկու գլխաւորքն հակառակեալ ընդ նմա ասացին թէ՝ Ոչ է պարտ մեզ ապրեցուցանել և ոչ զոք, որովհետեւ աջողէ մեզ Աստուած: Եւ ապա

(1) Նորագոյն օրինակք՝ ելեալ: (2) Նոր. օրինակքն՝ Չաղման

մաւթեամբ ննջեցին զգիշերն զայն . և յայնմ գիշերի մեռան երկոքեանն որ զանողորմութիւնն կամէին , և զարմացան զօրքն և հաւատացին ըքանն առ Պանն : Իսկ առաքեաց հաստատեաց զկամս Չարմաղանին՝ օրինօք խնայել ի հնազանդեալսն և դնել ի ներքոյ հարկի . և զնա միայն հաստատեաց ի գըլխաւորութիւն , զի այն է ասէ կամք Աստուծոյ . վասն որոյ և կան ի նոյն մինչեւ ցայսօր։

Իսկ զժամանակ ելանելոյ նոցա ասէ մեծն Ներսէս , եթէ զկնի իմոյ փոխմանս յորժամ անցանէ եւթն հարիւր ամ՝ սկսանի լինել : Իսկ արդ ըստ վճռոյ սրբոյն հարիւր յիսուն ամ է զօրանալոյ նոցա և յաղթութեան . եւ յորմէ հետէ մտեալ են յարեւելեան աշխարհն Հայոց՝ քսան և ութ ամ է : Իսկ զոր ինչ գործեցին ապականութիւն երկրին և տապալումն քաղաքաց և դղեկաց և աւեր եկեղեցեաց և մահս ազգի ազգիս և գերութիւնս . և թէ որպէս յետ այնորիկ հաւատեցան ընդ Թաթարդան ի ձեռն իշխանաց աշխարհին և պարոնին խնամութիւնս , և մինացեալ եկեղեցեացն և եկեղեցականացն դիւրութիւնս և ազատ կամօք կալ ի կրօնս իւրեանց . ամենայն անըռապէս պահանջումն հարկաց ճշգիւ և անխնայաբար ըստ գլխոյ

արանց և անասնոց՝ բաց 'ի մանկանց եկեղեց-ւոյ և ամենայնի որք զձեւ աղօթական կարգի ունիցին ։ Զայսոսիկ զամենեսեան գրեալ է լեալ 'ի տեղիս տեղիս . և մեք մի չփոխեացուք զոձ չարագրայն կարգի՝ որ յատուկ խնդրէ հատուածս և պարապումն ժամանակաց և հաստատութիւն 'ի տեսիլ աչաց գործեցելոց ։

Սակայն զյոլովս տեսաք աչօք մերովք 'ի նախանձայնեալ աղէտից սուրբ նահատակին Ներսէսի ։ (1) զեկեղեցիսն մեր նսեմացեալ և զսեղանսն սուրբ կործանեալ, զմատեանս աստուածայինս այրեցեալ և առ ոտն կոխեալ, զսպասսն սրբութեան և զքրիստոնէական նշանսն անարժանից ձեռօք շօշափեալ և նախատեալ և յանարգ պէտս վարեալ, զաշխարհս մեր անապատացեալ, զքաղաքս բնակութիւն լեալ գազանաց ։ Քանզի լցան լերինք և անապատք մեր անզերծ փախստէիւք և դաշտք դիակամբ ոսկերօք կոտորելոյն, և անդաստանք մեր և հովիտք ոռոգեցան արեամբ, և կերպք ծնուցողքս զհասկ սննդեան այնպիսի արտորէից ։ Ազատքն մեր 'ի ծառայութիւն իջին և փափուկքն մեր յանըմբելի չար-

(1) Նորագոյն օրինակքն [illegible] չարչարս նոցա՛ և ջա-յաւելուած. և մեք [illegible] 'ի Գերմանիան [illegible] ։

չարանս ։ Դարձունքն մեր խոնարհեցան , և փառաւորքն մեր յանարգութիւնս ընկճեցան ։ Մնունդքն հովասուն լերանց խորշակահարք եղեն յարեւու ։ Կուսանքն մեր օտարայ եղեն , և երիտասարդքն մեր հովիւք և (1) կուտպանք այլասեռից ։ Կարօտացաք ողբոցն Երեմիայի և կրեցաք զպատուհաս հնոյն Իսրայելի ։ Տղայք աշխարհաց մերոց որբք եղեն և մարք նոցա այրիք ։ Որդիք վերինն Սիօնի զուգակշիռք ոսկւոյ՝ իբրեւ զանօթ անպիտան հարան զքարի ։ Ցրուեցաւ հօտն Տեառն , ճապաղեցան զառինք արօտի նորա ։ Վաճառակուր եղեն յազգս հեռաւորս գնեալքն արեամբն Քրիստոսի ։ Բաժանեցան ծնունդք 'ի ծնողացն . մեկնեցան հարազատքն 'ի միմեանց . հեռացան բարեկամք 'ի սիրելեաց . դարձաւ տօնն մեր 'ի սուգ և ուրախութիւն մեր յարտասուս , և ոչ գոյ թիւ աղաղակի մերում , զի չիք համար չարեաց մերոց ։ Եւ 'ի վերայ այսր ամենայնի ոչ է 'ի մեզ զղջումն և ոչ ապաշխարութիւն . ոչ պատառեցաք զսիրտս մեր , և ոչ խարշեցան փորոտիք մեր , և ոչ դարձաք 'ի գնացից մերոց խոտորնակաց , այլ և յաւելաք վէրս յանօրէնութիւնսն մեր յառաջինս , և խաւարեցան

(1) Հնագոյն օրէ . Ջոկարածս ։

անմտութեանք խորհուրդք մեր ։ Եւ ո՛վ ոչ զարմացի ընդ լրբութիւնս մեր, զի տակաւին պիտի մեզ արեւս այս, և խնդրեմք հընարիւք զսէր և զվայելս աշխարհիս և զփառս սորա զփախստականս ։

Բայց ես մանաւանդ զանձնէ ասեմ զոր գիտեմ, միայն զկիրս և զկամս սորաքարշս անյագապէս եղեալ մոխրասէր յաւուրս իմ, և միայն 'ի ձեռն սակաւ սատարիս այսմ ունիմ ակն մեծի դթութեան Աստուծոյ վասն աղօթից ձերոց զոր հայցեմ լրութեամբ գրոյս, իբրեւ զտուեալ սպասեակս առընթեր սեղանոյ մեծատանց ։ Եւ յաւելում 'ի մաղթանս իմ զբարեխօսութիւն սրբոց՝ եդեալ առաջի ձեր նուէրս՝ առ ի ածել զգութըս ձեր սիրով զիջանել ընդ իս, և խնդրել ինձ 'ի սրտէ ողորմութիւն 'ի կամեցող և 'ի կարող խնամոցն Յիսուսի ։ Եւ այն որ մեծ է ողորմութեամբ՝ այն յաջողակ Հօրն բարձրելոյ, որոյ բնաբար է փրկելն և կեցուցանելն, թէպէտ և 'ի մէնջ բռնադատեալ հարկանէ յուսով խրատու, այն որ ոչ(1) ցաւելի և կամաւք չարչարէ զանդամս իւր, նա բժշկեսցէ զվիրաւորեալ մարմին իւր զսուրբ Եկեղեցի, և զցրուեալ հօտս իւր հաւաքեսցէ առ

(1) Ամենայն օրի. ուներին՝ ոչ ունոյ ունէլ ։

*ճիգն յարօտս խաղաղութեան բարերար կամօք իւրովք, 'ի փառս անուան իւրոյ. և զերկոսին ակունս զայնոսիկ զպատուական՝ զկայծ և զկանաչ, զաթոռքս հայրապետական և արքայական հայադաւան ազգիս ուղղափառութեան, զոր եթող մեզ զաւակ յուսոյ Տէրն զօրութեան, յորս գոյ օրհնութիւն Տեառն ամենակալի. զսոսա հաստատուն անսասան պահեսցէ զօրութիւնն ամենակիր և ամենաստեղծ արժանաժառանգ աթոռակալօք մինչև յաւիտեան: Եւ զայժմու նստեալքն արժանաւոր կոչմամբ Հոգւոյն սրբոյ զտէր Կոստանդին Հայոց մեծաց և հանուրց վերադիտող, և զնոյնազարմ ազգիս պսակակիրն Հեթում պարագայց ամօք առողջակիր մարմնով և անուանի փառօք խնամեսցէ 'ի գովեստ ամենասուրբ տէրութեան իւրոյ, զաւակօք և զարմօք որ ըստ հոգւոյ և որ ըստ մարմնոյ. և յետ աստեացս անանցելի աթոռոյն և անթառամ պսակին արժանաւորեսցէ:*

*Եւ որք այժմ ընդ մեզ հարք և եղբարք, եպիսկոպոսք և վարդապետք և պատկառելի ծերունիք, և ժրաջան ճգնաւորք, և պատարագօղք և կղերիկոսք. և գործաւորք մարմնական պիտոյից, և խնամածուք աստուածապահ դղեկիս, և սպասաւորք սրբա-*

զան աԹոռոյս, որք են ամենեքեան առ միմեանս սիրովք և առ մեզ աննախանձք, և փոխման մատենիս յօժարամիտք և յորդորիչք, զամենեսեան առաստաձեռն պարգեւօք լի արասցէ Թագաւորն փառաց հոգևոր և մարմնաւոր յաջողուածովք, 'ի մեծութիւն և 'ի փառս անուան իւրոյ. որ է օրհնեալ և փառաւորեալ, գովեալ և գոհաբանեալ յազգս և յազինս բոլոր բանականաց, յաւիտեանս յաւիտենից. ամէն։



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

---

* Աստի սկսեալ օրինակն՝ նորոգեալ գրել ՌԿԹ թուին.